

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ

•

ՏԵՂԱԳՐԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

•

ՀԱՄԱԴՐԵՑ՝

ԱՐՇԱԿ ԱԼՊՈՅԱՃԵԱՆ

1961

ՏՊ. ՍԵՒԱՆ

ՊԷՅՐՈՒԹ

A PUBLICATION OF
EDUCATIONAL SOCIETY OF MAŁATIA

# HISTORY

# OF THE ARMENIANS IN MALATIA

With Topographical, Historical and Ethnographical Information

Edited by
**ARSHAG ALBOYADJIAN**

Printed by
**SEVAN PRESS**
P. O. Box 2669
BEIRUT (Lebanon)



Էջ



# Ա. ՄԱՍ

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Դ

# Բ. ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ

•

## ՄԱԼԱԹԻՈՅ ՆԱԽՕՍՄԱԿԱՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ՝ ՔԱՐԱՅԻՆ ՇՐՋԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՍԼԱՄԱԿԱՆ ԳՐԱՒՈՒՄԸ

Գրեց՝ **ԵՂԻԱ Ս. ՔԱՍՈՒՆԻ**

# Գ. ՄԱՍ

# ՀԱՅԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

## (ՀԻՆ ՕՐԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

Էջ



# Դ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա

## ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԸ



## Բ.

## ՄԱԼԱԹԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

# Ե. ՄԱՍ

# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ

## Ա.

### ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Բ.



Գ.



# Զ. ՄԱՍ

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

1

## Չ

## ՅԱՐԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԵՒ ՕՏԱՐ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

### ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ



### Բ.

### ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

# Է. ՄԱՍ

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ



# Ը. ՄԱՍ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ



# Թ. ՄԱՍ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Էջ



# Ժ. ՄԱՍ

# ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ

# ԺԱ. ՄԱՍ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

# ԺԲ. ՄԱՍ

## ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ



# ԺԳ. ՄԱՍ

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԷՄՔԵՐԸ



# ԺԴ. ՄԱՍ

## ՄԱԼԱԹԻԱՑԻՔ ՄԱԼԱԹԻԱՅԷ ԴՈՒՐՍ

Էջ

# ՑԻՍՆԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ



ՄԱԼԱԹԻՈՅ

ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

ԱՅՍ ՊԱՏՄԱԳԻՐՔԸ

Կ'ԸՆԾԱՅԷ

ՄԱԼԱԹԻՈՅ

ՆԱՀԱՏԱԿԵԱԼ ՀԱՅՈՒԹԵԱՆ

ՅԻՇԱՏԱԿԻՆ



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Մալաթիոյ Հայոց Պատմութիւնը պատրաստելու համար որոշում տրուեցաւ 1952 թուին, Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Քառասունիններորդ Պատգամաւորական Ժողովին մէջ, գումարուած՝ Նիւ Եորք (տեսնել Ներկայ Պատմագիրքիս մէջ էջ 1409)։*

*Պատմութեան Յանձնախումբի անդամներ ընտրուեցան ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՓԱՐԹԵԱՆ, ՏԻԿ. ՎԱՐԴԱՆՈՅՇ ՓԱՊՈՒՃԵԱՆ եւ հանգուցեալ ԲԵՆԻԱՄԻՆ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ։*

*Պատգամաւորական ժողովը լրանալէն քանի մը շաբաթ ետք, Մալաթիոյ պատմութեան ծրագրին պատրաստութեան համար, Կեդրոնական Վարչութիւնը՝ մասնակցութեամբ Պատմութեան Յանձնախումբին՝ ժողով գումարեց Նիւ Եորք, ուր հրաւիրուած էր նաեւ նախկին առաջնորդ Տիրան Արքեպս. Ներսոյեան, որուն ջանքերուն շնորհիւ ստացանք Կարապետ Քահանայ Պէննէեանի «Մալաթիոյ Պատմութեան» ձեռագիրը, որմէ հեղինակը մեծապէս օգտուեցաւ: Տիրան Արքեպիսկոպոսի միշտ երախտապարտ պիտի մնանք մեր Պատմագիրքի հրատարակութեան իր տուած գնահատելի օգտակար թելադրութիւններուն համար։*

*Նոյեմբերի 2, 1952-ին Կեդր. Վարչութիւնը՝ մասնակցութեամբ Պատմութեան Յանձնախումբին, կրկին ժողով գումարեց Նիւ Եորք։ Սոյն ժողովին մէջ որոշուեցաւ Մալա-*

թիոյ պատմութիւնը պատրաստելու աշխատութիւնը յանձնել համրածանօթ բանաստեղծ եւ պատմաբան Պրն. Արշակ Ալպօյաճեանի (Գահիրէ), որ նման գործերու համար ծեռնհասութիւն եւ փորձառութիւն ունի:

Պրն. Ալպօյաճեան համառակ իր յառաջացեալ տարիքին, ումթ երկար տարիներու տքնաջան աշխատութեամբ եւ գնահատելի զոհողութեամբ պատրաստեց Մալաթիոյ Հայոց անցեալ եւ ներկայ պատմութիւնը:

Կասկած չունինք որ իր այս կոթողական երկասիրութիւնը անսպառ զանձարան մը պիտի ըլլայ ապագայ պատմաբաններու եւ պիտի ճոխացնէ Հայոց պատմութիւնը:

Մեր սրտագին գնահատութիւնը կ'ուզենք յայտնել բոլոր անոնց, որոնք իրենց տեղեկութիւններով եւ գրութիւններով մասնակցութիւն բերին եւ պատմութեանս էջերը ճոխացուցին եւ օգտակար եղան Հեղինակին, որ օգտուեցաւ անոնցմէ իր աղբիւր։

Մեր յարգանքը եւ ջերմ գնահատութիւնը կը յայտնենք նոյնպէս հանգուցեալ համրածանօթ պատմաբան Վեր. Եղիա Քասունիի, որ իր կարեւոր բաժինը բերաւ պատրաստելով Մալաթիոյ հնախօսականն ու պատմականը Քարայրի շրջանէն մինչեւ Իսլամական զրաւումը, 90 էջերէ բաղկացեալ պատմական արժէքաւոր աշխատութեամբ մը (տես Ներկայ Պատմագիրքիս մէջ, էջ 85—175)։ Կ'ուզենք նաեւ յիշատակել Կրթասիրացի վեթերան անդամներէն հանգուցեալ Իսրայէլ Տէր Յովհաննէսեանը, որ գրի առաւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան 50 տարուան պատմութիւնը։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը աւելի քան կէս դարէ ի վեր ծանօթ է հայ հասարակութեան իր ազգային, բարեսիրական, կրթական եւ հայրենասիրական գործունէութեամբ եւ մանաւանդ վերածնող Մայր Հայրենիքի վերաշինութեան եւ վերելքին բերած իր համեստ բաժինով՝ Նոր Մալաթիոյ հիմնարկութեամբ։

Պատմական Մելիտինէի, Մալաթիոյ պատմութեան հրատարակութիւնը եւս թող յաւերժական յիշատակարան մը

*ըլլայ ի փառս Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան, անոր գոհաբերող անդամներուն եւ բոլոր մեր հայրենակիցներուն, որոնցմէ շատեր մեզմէ յաւիտենապէս բաժնուած են։*

*Այս աշխատութիւնը կը կանգնենք իբրեւ յիշատակի կոթող Մալաթիոյ հին ու նոր հայ նահատակներուն, որոնք իրենց արեան գնով պաշտպանեցին Հայոց Եկեղեցին, Հայրենիքը եւ Մշակոյթը, եւ ճակատագրական պահերուն՝ դիւցազնաբար գիտցան կռուիլ եւ նահատակուիլ։*

МАЛАТИОЅ

ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ
ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



«ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ»
ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲԻ ԱՆԴԱՄՆԵՐ

**ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՓԱՐԹԵԱՆ**

**ՏԻԿ. ՎԱՐԴԱՆՈՅՇ ՓԱՊՈՒՃԵԱՆ**

**✝ ԲԵՆԻԱՄԻՆ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ**



# Ա. ՄԱՍ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

### ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԸ ԻԲՐԵՒ ԱՇԽԱՐՀԱՄԱՍ

*Մալաթիա կը գտնուէր Կապադովկիոյ եւ Եփրատի աջ եզերքին միջեւ եւ հիւսիսային կողմը Կոմմագինէի եւ հիւսիս-արեւելեան կողմը Կատաւոնիոյ, թէեւ ոմանց կողմէ Հայաստանի աշխարհագրական սահմաններուն մէջ նկատուած է. սակայն ճիշդ չէ այս տեսութիւնը:*

*Հայաստանի արեւմտեան բնական սահմանը միշտ Եփրատը համարուած է, եւ անոր արեւմտեան կողմը տարածուող հողամասերը Հայաստանէն դուրս կը մնային:*

*Մալաթիա հին ատեն Կապադովկիոյ մաս կը կազմէր, առանց աշխարհագրական միութիւն մը կազմելու անոր հետ, իսկ յետոյ պահ մըն ալ համարուած է մաս Կոմմագինէի:* Charles Texier *կ՚ըսէ թէ հիները դիտած էին որ Մալաթիոյ շրջակայքին կլիման կը տարբերէր Կապադովկիայէն, որ շատ բարձր լեռնադաշտ մըն է, մինչդեռ Եփրատի մեծ հովիտը Մալաթիոյ մօտերը* 300 *մեթրէն աւելի բարձր չէ ծովուն մակերեսէն (տես* ASIE MINEURE, *Description géographique, historique et archéologique des provinces et des villes de la Chersonèse d'Asie, 1882, p. 587*):

*Երբ Հռոմ տիրակալեց Փոքր Ասիոյ եւ հասաւ մինչեւ Եփրատի սահմանագլուխը, Եփրատի արեւմտեան կողմը տարածուող հայաբնակ բաւական ընդարձակ տարածութեամբ երկիրը ՓՈՔՐ ՀԱՅՔ անունը առաւ հակադրութեամբ Մեծ Հայաստանին եւ Հռոմի կողմէ բաժնուեցաւ երեք շրջանակներու՝ Առաջին, Երկրորդ եւ Երրորդ Հայք անուններով:*

Ասոնցմէ երրորդին մայրաքաղաքն էր Մելիտինէ (Մելտենի ալ կոչուած), որուն տեղին շատ մօտ է արդի ՄԱԼԱԹԻԱՆ, հարուստ եւ բազմամարդ կեդրոնը, որ հաստատուած էր Եփրատի արեւմտեան կողմը, անկէ երկու մղոն հեռու Մելաս գետին (Թողմա Սու) Եփրատի հետ միացման տեղին մօտ:

Երրորդ Հայքի մէջ կը գտնուէին նաեւ Սամոստիա կամ Սամոսատ, Քեսուն, Հիւսնի Մանսուր, Ռապան, Պեհեսնի եւ այլ քաղաքները:

Երրորդ Հայքը անփոփոխ եւ անբաժան չէ մնացած:

Անոր եփրատամերձ մասերը երբեմն կոչուած են Կոմմագինէ կամ Կոմմագ, որ հռոմէական գրաւման տակ առած է Եփրատացիք անունը: Թէ՛ Կոմմագինէ եւ թէ Եփրատացիք անհաստատ սահմաններ ունեցած են եւ իրենց գլխաւոր քաղաքը Գերմանիկ կամ Մարաշն էր: Հոն կը գտնուէին նաեւ Այնթապ, Կարկառ, Կուրիս, Թլպաշար եւայլն:

Այս երկրամասը տիրապետուած է շատ պետութիւններէ եւ ազգերէ եւ տեւական հաստատուն վիճակ մը չէ ունեցած, այլ չափազանց յարափոփոխ, մինչեւ որ Օսմանեան տիրապետութեան ենթարկուած է, եւ անոր վարչական զանազան բաժանումներու մաս կազմած:

## Բ.

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԴԻՐՔ

Մալաթիա քաղաքը հիւսիսային լայնութեան 38° 32ին եւ Կրինիչէն դէպի արեւելք 37° միջօրէականին վրայ, ծովէն 2852 ոտք (իբր 684 մեթր) բարձր դաշտի մը կեդրոնը կը գտնուի, որ ունի ամէն ուղղութեամբ 60 մղոն (20 ժամ) տրամագիծ:

Հիւսիսէն՝ Սարը Չիչէք եւ Տերսիմ, արեւմուտքէն՝ Աղճատաղ, հարաւէն՝ Պէկտաղ[1] եւ արեւելքէն՝ Խարբերդի դաշտը դատող լեռները կ'աղեղեն վէտ ի վէտ:

Այս հորիզոնը, ինչպէս Մկրտիչ Ս. Որբերեան (տես ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 68) կը նկարագրէ, «առանց բացառութեան զարդարուած է ցրդիի եւ կաղնիի ընդարձակ անտառներով եւ հազարումէկ անուշաբոյր ծաղիկներով, ո–

(1) Թուրքերը զայն կը կոչեն՝ Պէյ Տաղ: Ան մաս կը կազմէ Տաւրոս լեռնաշղթային (Ս. Մ. Ծոցիկեան, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, Նիւ-Եորք, 1947, էջ 374):

րոնց մէջ ամէն կողմէ գլգլացող առուները, բզզացող մեղուները, թռչող թիթեռնիկներն ու պճլտացող միջատները կարծել կու տան այցելուին թէ Եդեմի դրախտը կը մտնէ»:

Ըստ Գէորգ Մելիտինեցիի (ՆԱԽՃԻՐՆԵՐ 1915–1918, Պոստոն, 1929, էջ 13–4), «միջին հաշուով ութը ժամ երկայնութեամբ ու լայնութեամբ տարածութիւն մը, օժտուած արգասաբեր հողով, ինքնաբուխ ջուրի առատ հանքերով, բարձրաբերձ ու ստղարթախիտ ծառաստաններով, շրջապատուած երեք կողմերէն երկնասլաց լեռներով եւ մէկ կողմէն ջուրով» կը կազմէ Մալաթիոյ համայնապատկերը, ուր քաղաքը կը ներկայանայ երեւութապէս տափարակ դիրքով, եւ կը նկատուի դաշտային քաղաք մը, վասնզի իր շուրջը ունի մեծ տարածութեամբ հարթավայր մը շրջապատուած հսկայ լեռներով (Հմմտ. նոյն):

Մալաթիոյ տարածութիւնը, շրջակայքով միասին, 24 մղոն է արեւելքէն արեւմուտք եւ 18 մղոն հիւսիսէն հարաւ:

Այս կեդրոնական դիրք ունեցող քաղաքը գլխաւոր կեդրոնն է գաւառի մը, որ քաղաքին անունով կը կոչուի ՄԱԼԱԹԻԱ, եւ հազիւ երեք տասնեակ տարի է որ կուսակալանիստ վայր մըն է, իսկ անկէ առաջ կը կազմէր միւթեսարրըֆութիւն մը, ստորադաս Մամուրէթ–իւլ–Ազիզի կուսակալութեան:

Այս կառավարչութիւնը կը գտնուէր Էլ–Ազիզի կուսակալութեան հարաւ–արեւմտեան կողմը:

Պէննէեան Կարապետ քահանայ իր ընդարձակ ձեռագիր տեղագրութեան մէջ այս գաւառին սահմանները կը ներկայացնէ՝ արեւմուտքէն՝ Եփրատ գետը, հիւսիսէն՝ Մելաս (Թոխմա) գետը, հարաւ–արեւելքէն Աղճադաղի եւ Խալիքանի լեռները, հարաւէն Ապտ–իւլ–Խարապի լճակը, հարաւ–արեւմուտքէն՝ Սիւրկիւ եւ Խարապ Շեհիր եւ արեւմուտքէն՝ Սուլթան Սու վտակը:

Մալաթիա, կեդրոնական գաւառը համանուն կուսակալութեան, առանձին առնելով շրջապատուած է կուսակալութեան հետեւեալ գաւառակներով.

1. Կապան Մատէն, որ հիւսիսային կողմն է.
2. Քեախթէ, որ հարաւ–արեւելեան կողմն է.
3. Հիւսնի Մանսուր, որ հարաւային կողմն է.
4. Պեհեսնի, որ հարաւ–արեւմտեան կողմն է.
5. Աղճադաղ, որ արեւմտեան կողմն է:

Այս հինգ գաւառակները միանալով կը կազմեն Մալաթիոյ արդի կուսակալութիւնը, եւ կը ներկայացնեն գէթ արուեստական միութեամբ՝ վարչական բաժանում մը:

## Գ.

# ԵՐԿՐԱԲԱՆՈՒԹԻՒՆ

*Մալաթիոյ շուրջի երկրամասը այն շրջաններէն մէկն է, որ հնագոյն եւ նախապատմական ժամանակամիջոցներէն սկսեալ բնակուած է մարդերէ։*

*Քաղաքին շուրջ գտնուող դաշտին զանազան կողմերը ցցուող բլուրներուն, ժայռերուն եւ կրաքարի ընդարձակ խաւերուն մէջ գտնուած ջրային ճճիներու եւ անասնիկներու բրածոները, ինչպէս նաեւ զանազան տեղեր դուրս բարձրացող կաւային ու աւազային խաւերը խորհիլ կու տան թէ երբեմն, նախակենդանիներու դարաշրջանին, լիճ մըն էր Մալաթիոյ դաշտը եւ թերեւս Եփրատ ու Թոխմա այս ծովակին մէջ թափելով հարաւ-արեւելեան անկիւնէն կ'անցնէին ու կ'երթային* (*Մկրտիչ Ս. Որբերեան*, *ԲԻՒՐԱԿՆ*, 1900, *էջ* 70)։

*Այս տեսութիւնը հաստատուած կը կարծէ Մկրտիչ Որբերեան* (*նոյն*) *երբ քաղաքէն* 20 *մղոն արեւելք՝* Իզօղլի *գետին եզերքը գալով, կը տեսնէ բոլորովին աւազով ծածկուած դաշտը եւ քիչ մը վար լերան կուրծքը, որուն ստորոտէն կ'երթայ գետը. իսկ խաւ-խաւ տիղմը եւ հեղեղատի քարերը* 150 *ոտք վարէն սահող գետը միայն բերած կրնայ ըլլալ։ Հարկաւ այս բարձրութենէն երբ գետը կ'երթար, ետեւը դաշտին վրայ լճացած էր* (*նոյն*)։

*Որբերեան կը կարծէ թէ քաղաքին եւ շրջակայքի յատակը կրաքարերով խիտ կտրատած խաւ մըն է եւ այս պատճառով է որ երկրաշարժի ատեն անհաւատալի երեւոյթներ առաջ եկած են։*

*Այսպէս* 1893*ին պատահած մեծ երկրաշարժին, քաղաքին բոլոր թաղերը միեւնոյն ազդեցութիւնը կրած չեն. տեղ մը տուները հիմնայատակ կործանած են, ուրիշ տեղ մը ճեղքեր միայն ունեցած են եւ ուրիշ տեղեր անվնաս մնացած են* (*նոյն*)։ *Այսքան զարմանալի այլազանութեան պատճառը Որբերեան կը վերագրէ խաւին անհաւասար կտրատումին։*

*Այս իրողութեան ապացոյց մըն է նաեւ ջուրի ակերու առատութիւնը, քանզի խաւերը որքան ճեղքատուած ըլլան, լեռներու աւազանները այնքան աղբերակներ կ'ունենան։*

*Մալաթիոյ շրջակայ հողերը ապահովաբար ունեցած են փոփոխութիւններ հրաբուխներու հետեւանքով, որոնք սակայն շատ հին են։ Այսօր Մալաթիոյ շուրջը ընդարձակ հրաբերաններ չկան։ Որբերեան միայն Տէր Մեսիհի լերան կատարը գոյութիւնը կը հաստատէ փոքր հրաբերանի մը, որ*

*գուրս նետած էր երկու գոյնով՝ կարմրորակ եւ ճերմկեկ լաւա, որմէ կը հայթայթէին կամարներու եւ գմբէթներու չեչաքարերը* (ԲԻՒՐԱԿՆ, 1900, *էջ* 70)։

*Կարապետ քահանայ Պէննէեան* (Հ. 26) *կը հաստատէ թէ Մալաթիոյ շրջակայ լեռներու մեծ մասը հանգչած հրաբուխներ են, ինչպէս հին Մելիտինէի արեւելեան կողմը Մայրապ բլուրը, Քինոխւպէկի լեռը, Փորղայի լեռները, Ասխրունարի լեռը, Ճանպէկի լեռը եւայլն*։

# Դ.

# ԼԵՌՆԱԳՐՈՒԹԻՒՆ

*Մալաթիոյ գաւառը, ինչպէս Փոքր Ասիոյ մեծ մասը, լեռնային է. դաշտը, ուր քաղաքը կառուցուած է, շրջապատուած է լեռներով։ Դաշտին հիւսիսային կողմը կը գտնուին Սարը Զիչէկի եւ Տերսիմի լեռները, արեւմտեան կողմը՝ Աղճատաղը, հարաւային կողմը* Պէկտաղը, *եւ արեւելեան կողմը՝ միաշար լեռնաշարք մը, որ Մալաթիոյ դաշտը Խարբերդի դաշտէն կ'անջատէ* (*Որբերեան*, ԲԻՒՐԱԿՆ, 1900)։

*Պէննէեան քահանայ իր համառօտ տեղագրութեան մէջ* (*էջ* 25) *կը խօսի միայն Պէկտաղի լեռնաշղթային վրայ, որ իբրեւ Տաւրոսի մաս, հարաւ-արեւմուտքէն կ'երկարի հիւսիս-արեւելք*։

*Գաւառի լեռնագրութեան վրայ ամբողջական գաղափար մը տուած է Պէննէեան քահանան իր ընդարձակ տեղագրութեան մէջ* (*էջ* 26–9)։

*Անոր համաձայն «Մելիտինէի արդի քաղաքին ճիշդ թիկունքը եւ հարաւային կողմը բարձրադիր կանգնած է Տաւրոսի շղթաներէն Պէկտաղը, որ դէպի արեւելք ժամ մը երկարելով, Ս. Լուսաւորչի վանքի հանդիպակաց կողմը Ֆելասքինէ դաշտի հարաւային կողմէն երթալով, կը բարեւէ Աղճատաղը։ Իսկ դէպի արեւելք նոյնպէս ժամ մը երկարելէ ետք, Տէր Մեսիհի գըլուխէն սկսող* Քեահքամալաք *ձորակն ի վեր կ'երթայ եւ Ապտ-իւլ-Խարապ լճակին մօտ կ'ընդհատի*։

*Ուրիշ ճիւղ մը հարաւ-արեւմուտքէն Սուլթան Սուի դաշտը իր առջեւ ունենալով կ'երկարի մինչեւ* Սիւրկիւ, *ուսկից ալ* Քէօսթէճ *բռուած լեռը ծայր առած արեւմուտքէն կու գայ եւ կը յանգի* Աղճատաղի։ *Իսկ Աղճատաղ, սկըսեալ Փոլատի դաշտէն դէպի հիւսիս երկարելով եւ Մելասին ճամբայ մը տալէ ետք՝ կ'երթայ ու կը վերջանայ* Հաքիմխանի *մէջ։ Հաքիմխանէն ալ*

(հիւսիսային կողմէն) Սարը Զիչէկի եւ Արդաւանի լեռները շարք–շարք կու գան եւ կ'ընդհատին Եփրատ գետի աջ եզերքը։

Եփրատի միւս կողմէն կը սկսի Ս. Արփէն (Աշարոն) կամ Թըք. Ապա–էլ Վահապի լեռը, որ մինչեւ Քէօմիւրխան եւ դեռ անդին կը ձգուի։ Ու Եփրատին մէկ եզերքէն (արեւմուտք) Իզոլուի եւ Խալիքանի լեռները կ'աղեղեն ու կու գան այն տեղը, ուր Պէկտաղը կը դիտէ զիրենք։

Մալաթիոյ հորիզոնը կազմող սոյն լեռնաշրջանը շրջագայելու համար մարդ պէտք է 10–12 օր անընդհատ քալէ։ Որովհետեւ սոյն շրջանակը շատ ընդարձակ ըլլալով՝ իր մէջ կը պարունակէ ամէն կողմէն բարեբեր ու արգաւանդ դաշտեր. արեւելեան դէն՝ Իզօղլուի, Գրաճի, Զիփթլիկի եւ Տիւլուլոլի դաշտերը, հիւսիսային կողմը՝ մինչեւ Թողմա, կեդրոնին՝ հին քաղաքի, Ճուտասի, Խաթուն Սուի եւ այլ դաշտերը եւ Մելասէն անդին ալ Եփրատէն մինչեւ Աղճատաղ տարածուած է տափարակ Եազըլը խան անուն դաշտը։ Արեւմուտքէն Արղայի, Էօրէնի, Պալիանի, Զիփթլիկի, Էլեմենդիկի եւ Չէրքէզ Եազըսի բռուած դաշտերն ու Հաճի Ապտի, Սիւլիւկի եւ Հարինճի գաւառներու ընդարձակ արտերն են։

Մալաթիոյ լեռները Անդի–Տաւրոսի շղթային մաս կը կազմեն։ Աղճատաղի մէկ ծայրը կը հասնի Մարաշ՝ կեաւուր տաղ անունը ստանալով»։

Ըստ Սրուանձտեանցի (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ 321) Աղճատաղը ճիշդ նոյն Սեւ լեռներն են, որոնք Սուրբ լերինք ալ կոչուած են, եւ ինչպէս յայտնի է, ատեն մը լի էին սուրբի, յոյն եւ հայ միանձանց վանքերով։

## Ե.

## ՋՐԱԳՐՈՒԹԻՒՆ

Լեռներու առատութիւնը ջուրերու առատութեան պատճառ մըն է։

Հետեւաբար Մալաթիա եւ շրջակայքը ջրաշատ երկիր մը եղած է։

Իր ջրագրութեան խարիսխը կը կազմէ Եփրատը, որ Մալաթիոյ դաշտին հիւսիս–արեւելեան անկիւնէն կը մտնէ այս դաշտը եւ օձանման կը սահի եւ արեւելքի լեռնաշղթային քղանցքէն կ'իջնէ դէպի հարաւ–արեւելեան անկիւնը (Հմմտ. Որբերեան, անդ)։

«Այս մայր ջուրի երակին կը միանայ Աղճատաղի մէջտեղէն անցնող ջուրի երիզ մը, որ դէպի արեւելք Եփրատի մէջ կը թափի եւ դաշտը երկուքի կը բաժնէ։

Այս օժանդակ գետը Թոխմա[1] գետն է, որ Տարենտէի եւ Կիւրինի կողմերէն բխելով կու գայ միանալ Եփրատին։

Հիւսիս–արեւմտեան անկիւնէն կու գայ աւելի նեղ գետ մը, որ Թոխմայի բերնին չմօտեցած՝ կը միանայ Եփրատի։ Աս ալ Գուրու Չայն է, որ Հէքիմ Խանի քովերէն կը բխի, թէեւ ամառը երբեմն բոլորովին կը ցամքի։

Դաշտին հարաւային մասը՝ դէպի Թոխման վայրահակ ըլլալով, բոլոր ջուրերը կը թափին իր մէջը։ Այսպէս, հարաւային լեռներէն դէպի Թոխման, արեւմուտքէն սկսեալ յաջորդաբար եւ հաւասար հեռաւորութեամբ, Սուլթան Սուի, Էլեմենդիկի, Պէյլէր Տէրէսիի, Խաթուն Սուի եւ Փունար Պաշիի գետակները։

Պէյլէր Տէրէսիի եւ Փունար Պաշիի մէջտեղ, ճիշդ լերան քղանցքին վրայ կը գտնուի Մալաթիա քաղաքը։

Էլեմենդիկէն մինչեւ Աղձատաղի մօտ Սուլթան Համիտ ունէր ագարակ մը, որուն մէջտեղէն կ՚անցնէր Սուլթան Սուն։ Անոր ճիշդ դիմացը՝ Աղձատաղի ստորոտը կը գտնուէր Արղա, որ Աղձատաղի գաւառին կեդրոնն է։

Թոխմայի եւ Եփրատի միացած տեղէն դէպի հարաւ–արեւմուտք, դեռ քաղաքին չմօտեցած՝ կը տեսնուի պարիսպ մը, որ հին քաղաքին տեղը ցոյց կու տայ» (Որբերեան, անդ)։

Որբերեանի այս շատ հպանցիկ տողերը բաւարար չեն գաղափար մը տալու համար թէ որքան ջրառատ հովիտ ունէին Մալաթիան եւ իր շրջակայ գաւառները։

Գ. Մելիտինեցի իր ՆԱԽՃԻՐՆԵՐ (1915–1918) գիրքին մէջ բաւական ընդարձակ հատուած մը յատկացուցած է Մալաթիոյ ջուրերուն (էջ 18–22), աւելի յստակ ու պարզ ձեւով մը, որ աւելի դիւրըմբռնելի է կարծես։ Հետեւաբար զայն իր ամբողջութեամբ կ՚արտագրեմ այստեղ.—

«Մալաթիոյ ամենէն կարեւոր ջուրի հոսանքը, զոր կարելի էր օգտագործել, Եփրատ գետն է, որ միջին հաշուով ութ ժամ հեռաւորութեամբ իր արեւելեան սահմանը կը գծէ, բաժնելով Մալաթիան Խարբերդէն, եւ սակայն ոռոգման տեսակէտէն որեւէ օգտակարութիւն չունի, եւ չի ալ կրնար ունենալ, քանի որ տիրողը Թուրքն է։ Ատելութենէ չի բխիր այս կարծիքը։ Իրականութիւն է, անողոք փաստ, որ Թուրք տիրապետութեան վեց հարիւր տարիներու շրջանին Եփրատէն առուակ մը իսկ վերցուած չէ, դէթ իր անմիջական եզերքը ոռոգելու համար։

Երկրորդ կարեւոր ջուրի հոսանքը Թոխմա գետակն է, որ կը բխի Ալպիստանի քարուտ կողերէն, կը հոսի քաղաքի հիւսիսային կողմէն, մինչեւ երեք ժամ հեռաւորութեամբ։ Այս գետակը զիկզակ պտոյտներով հետ-

(1) Հիներու Մելաս կամ Մելա գետը։

զհետէ իր մէջ կ'առնէ Սուլթան Սուի եւ այլ կարեւոր առուներ, ու կը միանայ Եփրատին, Գորան գիւղէն գրեթէ կէս ժամ հեռաւորութեամբ: Թոխմա գետակը Եփրատի կարեւոր ճիւղերէն է. աշխարհագրութեան մէջ կը յիշուի որպէս Ալիս:

Տերմեսի, զոր իր կարգին կարելի է կոչել գետակ, կը բխի քաղաքին հարաւ-արեւմտեան կողմը պարսպող Պէկտաղի հեռաւոր եւ ապառաժուտ կողերէն. փոքր տարածութեան մը մէջ եւ եռացող հազարաւոր ակերու միացումով կ'առատանայ ու կը բաժնուի երկուքի: Առաջինը կ'ոռոգէ Վարի Պանագիի, Զըրմըգտիի, Պարղուզիի եւ այլ զանազան տեղերու մշակելի հողերը եւ կը միանայ Սուլթան Սուին, ապա կը թափի Թոխմայի մէջ: Երկրորդը դիրքի բարձրութեան առաւելութեամբ, կ'ոռոգէ Քիւնտիւպէկի, Վերի Պանագի, Թեժտէի, Ատափի, Չեքնիւկէի դաշտավայրերն ու ծառաստանները, ապա բազմաթիւ մանր երակներ հոսեցնելով քաղաքին մէջ, կը շարունակէ իր ընթացքը Գարնակի առջեւէն ոլորուելով դէպի հիւսիս, դէպի Հիւսէին Պէկ, Քէօրփէ Սու, Ճինկենլիք, Կամուրջ Բերան, Ալմա Սու, Վարի Քաղաք, ու կը միանայ Թոխմային[1]: Քաղաքին մէջ տարածուող բազմաթիւ երակներ, կատարելով իրենց գերազանցապէս մաքրութեան դերը, հետզհետէ կը միանան ու դուրս հոսելով կ'ոռոգեն քաղաքի ծայրամասերը:

Հին թէ նոր ատեններու Մալաթիոյ համեմատական բարգաւաճման մէջ Տերմեսի ջուրին բացառիկ կարեւորութիւնը ըմբռնելու համար կարելի է նմանցնել զայն կենդանական օրգանիզմի ակնաղբիւրը եղող սրտին, ուրկէ արիւնը կը բխի, եւ հազարաւոր երակներու միջոցով կեանք ու կենդանութիւն կը ճամբէ մարմնին բոլոր մասերուն: Այս, հաւաքելով անմաքուր տարրերը, կը վերադառնայ կեդրոն. միակ սա տարբերութեամբ, որ մինչ Տերմեսին կեդրոնախոյս է, սիրտը՝ կեդրոնաձիգ: Առաջինը անդառ է ու անվերադարձ, երկրորդը սահմանափակ է եւ կը վերադառնայ կեդրոն, դարձեալ շարունակելու համար իր ընթացքը: Տերմեսի ջուրը բնութեան շնորհած գերագոյն բարիքն է, կենսաբաշխ աղբիւրը բնակչութեան բոլոր խաւերուն անխտիր: Մալաթիան անոր կը պարտի գերազանցապէս բուսական կեդրոն մը, կանաչի աւազան մը ըլլալու իր առաւելութիւնը: Եթէ փոխուի տիրող իշխանութիւնը եւ Տերմեսի ջուրը օժտուի ջրաբաշխական արդիական առաւելութիւններով, Մալաթիան կը դառնայ նոյն ինքն «Երկիր դրախտավայր»ը:

Դարձեալ պէտք է յիշել Վերի եւ Վարի Պապուխտիններու Ջուրը, որ կը բխի քաղաքի հիւսիսային կողմը տարածուող այգեստաններու մէջէն: Այս ջուրերը ոռոգելով բաւականին կարեւոր թիւով դաշտավայրեր՝ մանաւորապէս ձմեռները կը միանան այլ առուներու եւ կը թափին Թոխմայի

(1) Ամառուան երեք ամիսներուն, առատ ոռոգումներու պատճառով ջուրերը կը նուազին ու կը ցամքին դեռ չհասած Թոխմային:

*մէջ։ Զոյգ Պալուխտինները իրենց բնական դիրքի գեղեցկութեամբ, կանաչագարդ պարտէզներու առատութեամբ, ամառները կ'ունենան մեծ թիւով այցելուներ, որոնք քաղաքի տաքէն ու տօթէն փախստական՝ կ'ապաստանին սաղարթախիտ ծառաստաններու զով հովանիին տակ գլգլացող առուակներու եզերքը։*

Գառնակ. *այս ջուրը կը բխի քաղաքի հարաւ-արեւելեան կողմը բարձրացող լեռներու ստորոտէն, ջրացայտ մը դարձնելու առատութեամբ. կը հոսի միայն չորս ամիս (Ապրիլ, Մայիս, Յունիս եւ Յուլիս) ու կը ցամքի։ Գառնակի ջուրի առատութիւնը (եւ ժամանակի փոքրիկ տարբերութիւնը) սերտիւ կապուած է լեռներու ձիւնի քանակէն, որուն հետ ուղիղ համեմատութեամբ կ'աւելնայ ու կը պակսի։*

Ինտերէի *ջուր. կը բխի նոյնանուն լեռներու մէջէն. ժամանակի տեւողութեան ընթացքին բուն ակը խորացած է լերան կողին մէջ, կազմելով խոռոչ մը (մուղարա) հինգ ոտք խորութեամբ. այցելուներ երբ երթան խոռոչի խորը, յստակօրէն կը լսեն խորարմատ ապառաժներու մէջէն ջուրի ձայնական ու հնչեղ գլգլումը, եւ իրենց վիզերուն կը զգան վերի ապառաժներէն ծորացող ջուրի սառ կաթիլները։ Ինտերէի ջուրէն քիչ մը դէպի արեւելք բարձրացող սէգ ապառաժներու մէջ է նաեւ* Մազէ Կամուրջ *կոչուած աւանդատեղին, ուր կը պատմուի թէ Գրիգոր Լուսաւորիչ ապաստանած է իր հալածական շրջանին։ Մեծ պատերազմի ընթացքին ձրի հայ գործաւորներու եւ արհեստաւորներու ծով քրտինքով Թուրք կառավարութիւնը Ինտերէի ջուրը հողաշէն լայն խողովակներու մէջ առնելով բերաւ մինչեւ քաղաքի զօրանոցին առջեւ։*

Փունար Պաշիի *ջուրը կը բխի քաղաքի հարաւ-արեւելեան լեռներու ստորոտէն. հինգ վայրկեանի տարածութեան մէջ բազմաթիւ ակերու միացումով կը վերածուի փոքր գետակի մը, ոռոգելով Օրտուզուի, Վարի Քաղաքի եւ ստորին Պորանի որոշ մասերը եւ կ'երթայ կը միանայ Եփրատի։* Խորաթա *կը բխի քաղաքին հարաւային կողմը բարձրացող Պէկտաղի հեռաւոր լեռնազօտիներէն. կ'ոռոգէ Վերի Պանազիի եւ Գառնակի որոշ մասերը ու ամառ ժամանակ կը սպառի։ Այս ջուրը ձմեռները երկու-երեք ճիւղերու բաժնուելով կը միանայ Տերմեսիին։ Խորաթայի ջուրը աւելի կարեւոր է որակով, քան քանակով. թեթեւ է ու խիստ առողջարար, համաձայն բժիշկներու եւ քիմիագէտներու վկայութեանց։*

*Վերեւ յիշուած գլխաւոր ջուրերէն զատ, Մալաթիան հարուստ է նաեւ հազարաւոր աղբիւրներով ու երկրորդական առուներով, որոնք տունէ տուն ամբողջ քաղաքը կ'ակօսեն, ոռոգելով տնական պարտէզներն ու այգիները։ Մալաթիոյ ջաղացքները, բոլորն ալ անխտիր, կը դառնան վերոյիշեալ ջուրերով»։*

*Այս ամփոփ նկարագրութենէն ետք, հարկ կը համարեմ ներկայացնել նաեւ Կարապետ քահանայ Պէննէեանի Մալաթիոյ ջրագրութեան վրայ տուած*

ընդարձակ տեղեկութիւնները, որոնք իր ձեռագիր ընդարձակ տեղագրութեան մէջ կը գրաւեն 38-50 էջերը, իսկ համառօտ տպագրեալ գործին մէջ՝ 38—48 էջերը:

Թերեւս տրուած մանրամասնութիւններէն ոմանք աւելորդ նկատուին, սակայն կ'ուզեմ ներկայացնել նաեւ նահատակ քահանային գրածները, որոնք ունին իրենց յատուկ կարեւորութիւնը, որքան կարելի է ամբողջական ըլլալու համար:

«Մելիտինէ գաւառակէն անցնող գետը Եփրատն է, որուն մէկ ճիւղը կը սկսի Կարնոյ հարաւ-արեւելքը Խաչափայտ[1] անուանեալ լերան մէջ գտնուող Տումլու լճակէն ու անոր շրջականերէն[2], եւ Դերջանէն, Երիզայէն ու Կամախէն անցնելով Ակն գաւառակը եւ անկէց երբ Կապան Մատան կը մտնէ, հոն Տարօնոյ կողմէն[3] եկող Արածանիին հետ միացած՝ կու գայ Գորուճուգ գիւղի առջեւ Մելասն ալ իր մէջ խառնելով՝ հանդարտընթաց կը հոսի մինչեւ Քէօմիւրխան: Իսկ երբ Քէօմիւրխանի հարաւային կողմը Քէօրխանէի նեղ կիրճը կը մտնէ, մինչեւ երեք ժամուան տեղ բախելով ժայռերու եւ ապառաժներու, քարուտ եւ հոսանուտ խոխոմներէն[4] մերթ փրփրալից եւ կարկաչասահ, մերթ խոխոջելով ու դղչալով եւ մերթ արեւելք ու հարաւ օձապտոյտ հոսելով՝ Ջեհոյի եւ Կերկերի լեռներն իր ետին թողած, հին Սամուսատը բարեւելով կը հասնի Պասրայի մօտ Գուրնա քաղաքը: Ու հոն, Տիգրիսի հետ Շադ-Իւլ-Արապը կազմելով կը մտնէ Պարսից ծոցը:

Եփրատի ջուրը կապուտագոյն եւ դաղջ է, բայց սքանչելի համ ունի, զոր կը բերէ դրախտի երջանկալի պարտէզէն: Եփրատի ափանց վրայ վարուցան կ'ըլլայ թէեւ, բայց այս գաւառակին մէջ ափ մը հող իսկ չ'ոռոգեր, բաւական խոր կերպով երկրի մակերեւոյթէն անցնելուն համար: Իր միջոցաւ արտածութիւն ու ներածութիւն ալ տեղի չ'ունենար: Միայն բալուցի լաստավարներ երբեմն գլուղա (սոխի մանր տեսակը) եւ փարջ փոխադրելու ատեն, իրենց ուռկանները լաստի ետեւէն ձգած՝ պատուական ու համեղ ձուկեր որսալով կը բերեն Մալաթիա եւ շրջականեր ու կը ծախեն:

Եփրատէն անց ու դարձ ընելու համար երեք միջոցներ կան, այսինքն նաւակ, տկալաստ եւ անցք (կէչիտ): Նաւակներն երեք տեղ են. Ա – Շէյխ Հասան, Բ – Հարտիֆ եւ Գ – Իզօլուի Բիրոթ գիւղին առջեւ: Աս նաւակները շինուած են կաղամախիի հաստ տախտակներէ եւ կը գործածուին երկու թիակով: Ասոնց իւրաքանչիւրը կրնայ տանիլ 40—50 մարդ, կամ 20 ձի

(1) Թուրքերու՝ Բէավլի:

(2) Սկզբնաւորութեան ատեն Կարինի կողմերը կը կոչուի Սեւ Ջուր (Գարա Սու):

(3) Աւելի ճիշդ Պայալխոի կողմերէն սկսելով՝ Պուլանըղէն եւ Մուշի դաշտէն հոսող ու Պինկէօլի բազմաթիւ ակերէն եւ այլեւայլ ակերէն գոյացեալ ու կազմեալ Արածանի (Մուրատ) գետին կը միանայ:

(4) Խոխոմ կը նշանակէ լեռներու մէջ ջուրի նեղ անցք:

եւ կամ 3—4 կառք: Նաւակներէն ամենէն բանուկը եւ շահաւէտը Իզոլուինն է, Սամսոն-Պաղտատի խճուղին անկէց անցնելուն համար:

Նաւակներու օրական անց ու դարձը առ առաւելն 10 անգամ կ'ըլլայ դէմ առ դէմ ուղղակի երթալու չկարողանալով, խոտորնակ եւ հոսանքն ի վար երթալուն համար: Նաւակներն ամէն տարի կառավարութեան (պէյլէտիէյի) վճարէ աճուրդի հանուելով, 20էն մինչեւ 25 հազար ղրուշի վարձու կը տրուին:

Տկալաստ.— Գետեզերքը բնակող ամէն գիւղացի տկալաստ (քէլէկ) կ'ունենայ: Տկալաստը կը կազմուի 15–20 մինչեւ 30 հատ ուռուցեալ տիկերով, որոնք կը հաստատուին ձողերու տակ. կրնայ տանիլ 2–2500 քաշ ծանրութեան: Ինչպէս ըսինք, ասոր ալ անց ու դարձը քիչ եւ վտանգաւոր է, մանաւանդ գետին յորդած ժամանակ եւ հոսանուտքէ անցնելու միջոցին, որովհետեւ իր շուրջը նեցուկ չունենալէ զատ, պզտիկ հովէ մը անմիջապէս տատանելով կը կորսնցնէ հաւասարակշռութիւնը ու կը տապալի:

Անցք.— Երկու անցք կայ. մին Շէյխ Հասանի եւ միւսը Քիլիսիկի առջեւ: Անցքերը միշտ ծանծաղ տեղեր կը գտնուին եւ երկու երեք տարին հազիւ մի անգամ տեղի կու տան անցնելու, այն ալ ամառը: Ասկից կ'անցնին ուղտերով, ձիերով եւ հետիոտն: Հարկ չկայ ըսելու թէ անց ու դարձի այս միջոցը էն վտանգաւորն է:

Զմոռնանք ըսել թէ՝ ճարպիկ լողորդներ ալ սոսկ կամ ուռուցեալ տիկի վրայ հեծած կամ խալէմ ըսուած խոշոր դդումներ անութին տակ կապելով կ'անցնին ու մասնաւոր երկժանիով փայտ դուրս կը հանեն գետէն:

Գետէն անցնելու էն ապահով միջոցը կամուրջն է: Դարեր առաջ հատ մը կայ եղեր Բիրոթի առջեւ, որուն հիմերը միայն կը տեսնուին ջուրին մէջ:

Քեքլիկ Սույու կոչուած գետակը, որ քաղաքէն երկու ժամ հեռուէն կ'անցնի, կապոյտ ջուր մը ունի: Երբ որ լուցկի մը վառելով ձգուի այդ գետակին մէջ, ջրերը կը սկսին վառիլ եւ բոցին հոսանքը կ'երկարի պահ մը, բաւական տեղ:

## ՄԵԼԱՍ—ՄԵԼՈՍ (ԹՐՔ. ԹՈԽՄԱ) ԳԵՏ

Մելաս=Թոխմա Սու գետը քաղաքէն չորս ժամ հեռու գտնուող դաշտավայրի մը մէջէն կ'անցնի եւ կ'երթայ կը միանայ Եփրատի: Ոմանք զայն Տաւրոս գետ ալ կը կոչեն: Թուրքերը զայն կը ճանչնան Թոխմա սու անունով:

Մելաս, որ յունարէն մեղր կը նշանակէ, ունի երկու ճիւղեր, որոնց մէկը կը սկսի Տերենտէի կողմը՝ Խապէկճոր (=սպիտակ-ջուր) ու Վերանշէհիր ըսուած տեղերէն, եւ Տերենտէի մէջէն անցնելով՝ երբ Աղճատաղ գաւառակը կը մտնէ, միւսը, Կիւրինի մէջէն եկող վտակին հետ խառնուելով՝ Քիւրնէ եւ Քիւրեճիկէ լեռներու ու Շողուլի նեղ կիրճերուն մէջէն Քիւրտ Ապտալըի դիմացը գտնուող Գարաբունար լճակի ջուրն ալ հետը առած ու միշտ դէպի

արեւելք Եագըլը խանի եղերքը քերելով՝ Գըրգկէօզի տակէն կը հոսի եւ Գորուճուզի առջեւ կը մտնէ Եփրատի գիրկը։

Մելոսի ունեցած օգտաշատութեան եւ այլ յատկութեանցը համար՝ տեղացւոց մէջ առած դարձած է սա խօսքը թէ՝ «Մելասի ափանց վրայ ոսկի ալ ցանես, կը բուսնի»։ Այո՛, Մելոսի շնորհքն է որ իր ոռոգած գետինները լիառատ կու տան անուշահամ բրինձ, լեցուն ու բազմահատ ցորենի եւ գարիի հասկեր։ Մանաւանդ իր ափանց վրայ կը հասցնէ քաղցր ու խոշոր սեխեր ու ձմերուկներ, որոնց երկու հատը հազիւ կրնայ բեռցուիլ անասունի մը։

Մելոս իր ամենայորդ ատենը խել հեզասահ ընթանալով՝ անցք կու տայ ճամբորդներու։ Իր մէջ կան մինչեւ 20 լիդր կշռող համեղ ձուկեր։

Հին քաղաքէն երկու ժամ վարը իր վրայ ձգուած է նշանաւոր կամուրջ մը՝ Գրգկէօզ անուամբ, 40 կամարներու վրայ հաստատուած, որուն հիմա 20–25 աչքերէն միայն ջուր կ՚անցնի։ Այս կամուրջի վրայէն դարեր անցնելով՝ որեւէ արձանագրութիւն չի տեսնուիր։ Բնակչաց աւանդութեանը նայելով ասոր շինութիւնը Սուլթան Մուրատ Դ․էն եղած է։ Եւ այս կամուրջն է Սվազ-Մալաթիա խճուղին միացնողը։ Ճիշդ այստեղէն կը սկսի այն Եագըլը խանի[1] լայնածաւալ դաշտը, զոր ոռոգելու համար Մելասէն գիծ մը բանալով տիպար ագարակ մը շինելու մասին պէտք եղած քարտէսը պատրաստուած է շատոնց ի վեր։ Բայց ինչ օգուտ որ խնդիրը դարձեալ թուղթի վրայ կը մնայ։

## ՍՈՒԼԹԱՆ ՍՈՒ (ԳԵՏԱԿ)

Սուլթան Սու[2] կը սկսի Աղճատաղի Փոլատ եւ Ֆընտըղ գիւղերու վըրայի լեռներէն եւ երկու ժամ վարը Մելետ Տերեսիին խառնուելով ու միշտ դէպ հիւսիս հոսելով՝ Խօրէնի, Արղայի եւ Խօրխուշկիւի դաշտերուն առջեւէն անցնելով՝ իր տակ գտնուած գիւղերու ջուր բաշխելէ, արտեր ու պարտէզներ թրջելէ ու ջրաղացներ դարձնելէ ետք՝ կը միանայ Մելոսին։

Այս գետակին վրայ երկու հսկայ կամուրջներ շինուած են, մէկը Մելետի կամուրջը Մալաթիա–Այնթապ ճամբուն, եւ միւսը՝ Մալաթիա–Արղա ճամբուն վրայ[3]։ Այս գետակի մէջ ալ համեղ ձուկեր չեն պակսիր։

Այս գետակը՝ իբր սահմանագլուխ իրարմէ կը զատէ Մալաթիա եւ Աղճատաղ գաւառակները։

---

(1) Այս դաշտը Մելասի աջ կողմը Կապան Մատան գաւառակին մէջ գտնուող գիւղախումբին մէջ 10 ժամ երկարութիւն, 4—5 ժամ լայնութիւն կամ 20,000 արտավար տարածութիւն ունեցող բերրի բարգաւաճ դաշտ մըն է։

(2) Այս գետակը ունի առատ եւ յորդ ջուրեր եւ կը թափի Մելասի (Թօզմա) մէջ։ Իր ակը կը գտնուի կրային կայտի մը տակ՝ դաշտէն 100 մեթր բարձր, եւ քաղաքին հարաւի կողմէն կ՚ոռոգէ շրջանակի երկիրը։

(3) Առաջին կամուրջէն 6 ժամ վար Չիֆթլիկ Քէօփրիւսի կը կոչուի։ Այս երկու կամուրջներէն զատ այս գետին վրայ Հեքիւքէի եւ Եաղմուրլըի առջեւ երկու փլած կամուրջներ կային (Պէննէեան քհ., Հ., էջ 38)։

19րդ դարու Ա. կէսին մէջ, Սապրի Մուսթաֆա փաշա վերոյիշեալ դաշտերն ոռոգելու նպատակով, այս գետակէն գիծ մը կը զատէ, բայց պատշաճ տեղերը ջուր չկարենալով իջեցնել՝ կը ձգէ երեսի վրայ, եւ դաշտը Աղճատաղի մօտ գտնուելով, բնակիչները խիստ կը նեղուին համանուն լեռնցիներէն ու կը ցրուին. որով առուն ալ բոլորովին կը խանգարի: Բայց 1866ին, անուանի հազարապետ Բահմի պէկ գալով՝ յիշեալ Քիւրտերը նուաճած եւ հին առուն նորոգելով ու բարեփոխելով՝ 18 ժամուան տեղ ջուր իջեցուցած եւ այլ եւ այլ տեղերէն մարդիկ բերելով՝ շատ մը գիւղեր հաստատած է: Բահմի պէկ շինած է նաեւ գետնայարկ, այլ ընդարձակ զօրանոց մ'ալ[1], որ մինչեւ Օսմանեան Սահմանադրութեան հրատարակութեան առեն Դ. Զօրաբանակի իրաւասութեան տակ կը վարուէր Չիֆթլիկի Հիւմայիւն կամ Հարրայի Հիւմայիւն (կայսերական ագարակ կամ տապատան) անուամբ[2]:

Այս ագարակը շատ օգտակար եղած է Մալաթիոյ գաւառին իր առատ արմտիքով, բրինձով եւն., եւն.:

Այս ագարակը հիմա Միլքիէի անցած ըլլալով՝ գրեթէ փլելու վիճակին հասած է:

Էսկեմենտիկ[3]. — Ասիկա ալ քաղաքէն դէպի հիւսիս չորս ժամ հեռաւորութեամբ համանուն բլրակի մը տակէն կը բխի երկու-երեք աղօրիք դարձնելու չափ առատութեամբ: Էսկեմենտիկի ջուրը պաղ եւ անհամ է, ճահճային եւ չամբուտ վայրէ բխելուն համար, սակայն մէջի մանրիկ ձկները շատ համեղ են: Աս ջուրն ալ իր տակ գտնուած արտերը թրջելէ ետք՝ կը թափի Մելասի մէջ:

Շահնա Սույու եւ Պէկլէր Տերեսի. — Ասոնցմէ առաջինը քաղաքէն դէպի հարաւ-արեւմուտք երկուք ու կէս ժամ հեռու Խաղողայի ճամբուն վրայ Սէյտուշաղիի լերան տակէն, Ինէկ Բունար[4] ըսուած տեղէն երկու ակունքէ բխելով՝ երկու ժամ վարը Տէր Մեսիհէն գտնուելով դէպի հող հոսող ջուրին հետ կը միանայ ու կը խառնուի Մելասի: Այս վտակի աջ եզերքին մասնաւոր կաւառներ (պենտ) կը գտնուին, եւ վարը, Իսկելէ ըսուած կամրջադաշտի միջոցաւ ջուր կը տարուի քաղաքի Թուրք մեծատուններէն Հարիճի եւ Հաճի Ապտի պարտէներու[5] բրինձի ընդարձակ արտերն ոռոգելու: Այս վտակը խորաձորէ

(1) Քաղաքին արեւմտեան կողմը 6 ժամ հեռու:

(2) Իբր «տիպար ագարակ» հաստատուած էր իբր թէ:

(3) Պէննէեան քհնյ. Համառօտ Տեղագրութեան մէջ հաւանօրէն սխալ ընթերցմամբ ԷՂԵՄԵՆՏԻԿ գրած է քանի մը անգամ (Պէննէեան քհնյ., Համ., էջ 39):

(4) Համաձայն տեղական առասպելի մը, տարի մը, ձմեռը երկար տեւելով, գարունը ձիւնհալէն եւ անձրեւներէն ջուրերը կը յորդին եւ ամէն կողմ կ'ողողեն. վերոյիշեալ ջրակներու մեծէն կով մը, իսկ պզտիկէն ալ հորթ մը դուրս կու գայ, որմէ կ'առնէ ջուրը իր անունը: Կ'երեւի թէ հաւանականաբար ակերու իրարմէ մեծ ու պզտիկ ըլլալն է այս անուանումը: (Ծանօթ. Պէննէեան քհնյ.ի):

(5) Պէննէեան քհնյ. Համառօտի մէջ կը յիշէ նաեւ Հաճի Զատէ, Սիւլիկ Զատէ Թուրք ընտանիքները:

մը անցնելով՝ որչափ վերերը ջուրը կատանելով կը պակսի, այնքան ալ աւելի կ'առատանայ վարը այլեւայլ ակերէ ջուր հաւաքելով։

Այս ջուրին վրայ մէկ մը Մօրէ Կէտիկլի, մէկ մըն ալ Բշըղլար ըսուած տեղը փլած կամուրջներու ոտքերը կը կենան։ Իսկ Ծահնախան գիւղի վերեւ կայ հսկայ կամուրջ մը, որուն արեւմտեան կողմը զառիթափին վրայ շինուած է քարուկիր պանդոկ մը Ծահնախան անուամբ, որմէ կամուրջ եւ վըտակ ընդունած են իրենց անունները։

Պալլը, Շիշմանի եւ Պեսքիրանի վտակ.— Ասոնց երեքն ալ քաղաքին արեւելեան կողմի լեռներու այլ եւ այլ ակունքներէն կազմուելով՝ Շիշմանի 7 ժամ, Պեսքիրանի 9 ժամ եւ Պալլը Չայ 2 ժամ հեռաւորութենէն եւ միշտ դէպի հիւսիս հոսելով՝ իրենց տակ գտնուած ցանքերը ջրելէ եւ ջրաղացներ դարձնելէ ետք, կը խառնուին պատկառելին Եփրատի։

Հոս հարկ կը զատեմ աւելցնել Պէնլէեան քահանայի սա յաւելուածական տեղեկութիւնները՝ այս երեք վտակներուն մասին (տես համառօտը, էջ 40–45).—

«Պալլը վտակը կը գտնուի քաղաքին արեւելեան կողմը՝ երեք ժամ հեռու, եւ կը սկսի Սէվէրէկի լեռնէն տաղի եւ անդի ու դէպի հիւսիս օձապտոյտ հոսելով՝ աղօրիքներ դարձնելէ եւ անթիւ արտեր ու դաշտեր ոռոգելէ ետք՝ Իմամ օղլու գիւղի առջեւ կը թափի Եփրատ գետ։

Պալլը վտակ զարունը կը յորդի եւ ամառը կը նուազի. իր մէջ ունի մանր ձուկեր։ Այսու ամենայնիւ այս վտակը իր տեսակին մէջ ամենէն օգտամատոյցն է։

Շիշմանի–Մամուքանի վտակ.— Սա եւս քաղաքէն 7–8 ժամ դէպի արեւելք գտնուած արտերն ոռոգելէ եւ ջրաղացներն դարձնելէ ետք՝ կը խառնուի Եփրատի մէջ։

Պեսքիրանի վտակ.— Ասիկա ալ նոյնպէս քաղաքէն դէպի արեւելք 9 ժամ հեռաւորութեամբ Իզօլլուի Գօլլուդ ըսուած գիւղին մէջէն եւ շրջականերէն ժողվելով՝ մի քանի աղօրիք դարձնելէ եւ արտեր ջրելէ ետք՝ մէկ ու կէս ժամ վարը կը խառնուի Եփրատի։

Տէր Մեսիհ[1].— Վերեւի գետակները յայտնի է թէ գաւառակեդրոնին

(1) Տէր Մեսիհ = Տէյր Մեսիհ արաբերէն կամ ասորերէն կը նշանակէ Տուն կամ Տաճար Քրիստոսի։ Ջուրը իր անունը առած է համանուն նուիրական շէնքէն, որ իր վրայ շինուած է (այժմ աւերակ), իսկ Թուրքերը Տերմէ սույը կ'անուանեն բազմաթիւ ակերէ բխելուն համար։

Կ'աւանդուի թէ Քրիստոսի աշակերտներէն մէկը (հաւանաբար Ս. Թադէոս Առաքեալ) այս կողմերը ճամբորդելու ատեն, երբ կը հասնի հոս, խիստ կը ծարաւի, բայց մօտերը ջուր չգտնելով վէմի մը շուքին տակ կը պառկի։ Պառկելու ատեն իրեն կ'ազդուի, որ ելլէ գաւազանը գետինը զարնէ. ընդոստ կ'ելլէ ու կը զարնէ գաւազանը։ Ջուրը կը բխի եւ ի նշան հրաշից այս գաւազանաձեւ գիծը կը մնայ ջրոյն երեսը։ (Ծանօթ. Պէնլէեան քհնյ.ի)։

երկու կողմը գտնուող գիւղերու եւ դաշտավայրերու ջուր կը մատակարարեն, սակայն հետեւեալները՝ կեդրոնին քաղաքին եւ արուարձաններուն։ Ատոնցմէ ալ նշանակենք կարգաւ.—

Տէր Մեսիհ.— Մելիտինէի այս ամենապատուական ջուրը կը բխի քաղաքին հարաւ–արեւմտեան կողմը չորս ժամ հեռաւորութեամբ Քիւնտիւպէկի վերեւ եւ Գայըր Ուշաղըի լերան ստորոտէն՝ քառակուսի աղբիւրէ մը եւ մօտակայ ակունքներէ առատութեամբ. այնպէս որ դեռ քարընկէց մը չգացած՝ այլ եւ այլ ակունքներէ ալ հաւաքուելով՝ կ՚աճի եւ կը յորդի անցք չտալու աստիճան։

Տէր Մեսիհի մէկ մասը Գաքուլըգ ըսուած տեղէն ծորակով մը կը դառնի Իճէկըուճարըին հետ ըրինձի արտերը ջրելու։ Իսկ միւս մասը, Քինտիպէկի եւ Զըրմըխտիի վրայէն, մինչեւ Քէլէյիկ՝ դէպի հիւսիս, անկէց ալ Թեժտէ, Պարղուզի եւ Աստաֆի արուարձաններէն մինչեւ Գառնակ՝ դէպի արեւելք հոսելով, մէն մի քայլափոխի ծորակներով եւ աղուղաններով բաժնուած՝ կ՚ոռոգէ ամբողջ վեց ժամուան միջոց մը գրաւող անհամար պարտէզները, այգիներն ու ածուները, կը դարձնէ աղօրիքներ, եւ ամբողջ տուներու ջուր մատակարարելէ ետք՝ նորէն դէպի հիւսիս դառնալով հին Մելիտինէի տակ Բուճար Պաշը վտակն ալ հետը առած՝ Գըրդկէօղի եւ Եփրատի միջեւ կը խառնուի Մելասի։

Այս ջուրը՝ գլուխէն մինչեւ երկու ժամուան տեղ, իր երեսը ունի դաւազանաձեւ ճերմակ, այլ հիասքանչ գիծ մը. կարծես թէ դեղերու բաղադրութեամբ կաթնառուակ մը կը հոսի ջուրին մէջտեղէն։

Տէր Մեսիհ Մելիտինէի բոլոր ջուրերու մայրն է եւ կրնանք ըսել առանց իրեն Մելիտինէն գոյութիւն չունի, որովհետեւ ամէն տարի գարունը երբ առուները մաքրելու եւ յատակելու համար ջուրը ուրիշ կողմ կը դարձնեն, քաղաքին բոլոր ջրհորներն ու ակերը բոլորովին կը ցամքին ու կը չորնան. այնպէս որ շատ անգամ կը ստիպուին մղոն մը տեղ երթալ ու ջուր բերել բոլոր պէտքերուն համար։

Տէր Մեսիհ ունի սա դեղեցիկ յատկութիւններն ալ։ Այն է՝ իր ջինջ գոյնըն ու ցրտութիւնը 5–6 ժամուան տեղ նոյնը կը պահէ եւ չունի իր մէջ որեւէ ջրային կենդանի։

Մին Քինտիպէկի վերեւ Եէլ Քէօփրիւ եւ միւսը Պարղուտիի մէջ Զաթալ Քէօփրիւ անուամբ երկու խոշոր կամուրջներ շինուած են. Տէր Մեսիհ ասոնց տակէն կ՚անցնի, Տավշանճ Տէրէսին եւ Խորաթան գինքը խաչաձեւելուն համար։ Աս կամուրջներէն դառ իր վրայ ձգուած կան 50–60 հատ քարաչէն եւ փայտաչէն կամուրջներ ալ։

Խորաթա վտակ.— Տէր Մեսիհէն ետք երկրորդ եւ կարեւոր ջուրն է Խորաթան, որ կը բխի քաղաքին հարաւային կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ վերին Պանազի վերեւ այգիներու մէջէն, մեծ մասը Ջիյարէթ ըսուած չէնքի մը տակէն՝ ակէ մը եւ մնացեալը՝ չորս կողմէն հաւաքուելով։

*Խորաթան գարունը Տէր Մեսիհի չափ առատութիւն ունի, բայց ամառը կը նուազի:*

*Գիւղէն քիչ մը վարը լերան ստորոտէն, քաղաքին հարաւակողմեան արտերն ու պարտէզները ջրելու համար ասկից ալ մէկ քանի առուներ զատուելէ ետք, մնացածը, ինչպէս իր անունէն յայտնի է, խաղալէն ու խնդալէն կը սահի մինչեւ* Զաքալ Պէօփրիւ, *ուր բարեւելով «Տէր Մեսիհ»ը կ'անցնի անոր տակէն եւ վարը* Թոփ Սէօկիւտ *ըսուած տեղը համանուն ջուրին հետ կ'երթայ ու կը խառնուի Մելասին:*

*Խորաթա ջուրին համար շատ թեթեւ է, կ'ըսեն, իր ոռոգած գետնին վրայէն դիւրաւ սահելուն համար: Ջուրը վերերը շատ ցուրտ եւ անուշ է թէեւ, բայց վարերը կը կորսնցնէ իր այդ յատկութիւնը: Աս ալ իր մէջ չի պարունակեր որեւէ ջրային կենդանի:*

Բունարպաշը.— *Ասիկա քաղաքին արեւելեան կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ Ս. Լուսաւորիչ եւ Ս. Փրկիչ վանքերու կեդրոնը, «Անծանօթ բժիշկ» ըսուած վանքի աւերակաց տակէն կը բխի բաւական առատութեամբ եւ կը դարձնէ իր տակ գտնուած մի քանի ջրաղացներն եւ կ'ոռոգէ ընդարձակ արտեր եւ* Օրտուզը *գիւղին ջուր մատակարարելէ ետք, նոյն գիւղի մէջէն դէպի հիւսիս հոսելով՝ հին Մելիտինէի տակը կը միանայ Տէր Մեսիհին:*

*Աս վտակի ջուրը պաղ եւ անհամ է,* Էպեմենտէկի *պէս չամբաւոր ըլլալուն: Բայց ունի մանր, այլ համեղ ձուկերու վտակ, որոնց որսացուիլը արգիլուած է կառավարութենէն: Իր վրայ ձգուած են մէկ քանի քարաշէն կամուրջներ:*

*Ս. Փրկիչ վանքի ջուրն ալ այս վտակէն կու գայ մասնաւոր առուակով մը: Կ'ըսուի թէ մինչեւ ԺԸ. դարուն մէջ, Բունարպաշըի թրջած արտերէն մասնաւոր տուրք մը կ'առնուէր նոյն վանքին համար:*

Գարնակ-Քառնակ.— *Գարունը հոսելուն եւ ամառը ցամքելուն համար, Գարնակ (Գարնանակ), իսկ քառասունի չափ ակներէ բխելուն համար Քառնակ կ'ըսուի այս ջուրը, որ կը բխի քաղաքին հարաւ-արեւելեան անկիւնը՝ Տէր Մեսիհի ընթացքին մօտ եւ Պէկտաշի ստորոտին բազմաթիւ ակներէ պղպղջալով անմիջապէս կը մտնէ Տէր Մեսիհին մէջ:*

Աղբունար.— *Սա ալ Ծուկային մէջ Կէպէչ Օղլու պանդոկի առաջքը երկու աղբիւրներէ կը վազէ ջինջ, ցուրտ ու ոպլխտակ եւ բաւական առատութեամբ. հոն կայ նաեւ մի կամարաշէն աղբիւր, որ առնցմէ վար չի մնար:*

Խոշլուկ Սույու[1].— *Կը բխի կառավարութեան պաշտօնատան կռնակի տներէն մէկուն մէջէն՝ աղօրիք մը դարձնելու չափ առատութեամբ, գոլ եւ գուլալ, որ շուկայի կեդրոնէն եւ* Ճամէներու *մէջէն անցնելով՝ պէտք եղած*

(1) *Համանուն աղբերակ մըն ալ կայ Զամաղանկ բլրոյն դիմաց, Տէր Մեսիհի աջ եզերքը, ուր լոգցնելու կը տանին այն հիւանդները, որոնք իրենց վրայ կ'ունենան ԽՈՇՐՈՒԿ (խոշորուկ) ըսուած հիւանդութիւնը, որ տեսակ մը մորթի հիւանդութիւն է:*

*մաքրութեան ծառայել, երեք–չորս ջրաղացներ դարձնել եւ Զարմուզըկ եւ Հայոց Թաղի պարտէզներն ու արտերը ջրել ետք կը խառնուի* Խաքուն Սուի *մէջ*:

Բաշ Լիպարիտ․— *Կը գտնուի Մայր–եկեղեցւոյ մօտ Սարաֆեաններու փողոցին տակը, տունին եզերքը, քաղաքին* Ենի Համամ *Թաղը, առուի եզերքը: Ջուրը պաղ եւ բարեհամ է: Բաշ Լիպարիտ պատմական անուն մըն է, որ ջուրին տրուած է: Ըստ աւանդութեան Կիլիկիոյ դիւցազուններէն Լիպարիտ Մալաթիա գալով՝ պտըտելու ատեն սոյն համանուն ջուրին կը հանդիպի, յորմէ խմելով զովութեան եւ անուշութեանը համար իր անուամբ կ՚անուանէ զաս «ԲԱՇ ԼԻՊԱՐԻՏ»*:

Ալթուն Գաշըգ․— *Կը բխի Թեճտէի ներքեւ այգեստանեայց մէջէն բոլորշի աւազանէ մը, յստակ, ջինջ եւ սառնորակ: Աս ջուրը իր տեսակին մէջ, մասնաւոր յատկութեանցը համար կ՚արժէ անուանել արդարեւ* «Ոսկէ Դգալ»:

Տավուլլը Բունար․— *Բէլէյէկի հիւսիս–արեւմտեան տակը Քիլիսէ* Պայըրը *ըսուած տեղը, ուր կը մնան աւերակաց հետքեր, վէմերու տակէն խոխոջիւն մը կը վիժէ բաւական առատութեամբ՝ ցուրտ ու անոյշ: Իր անունը առած է վիժելու ատեն հանած ձայնէն*:

Գայնարճա․— *Վարի զարմուզիի հիւսիս–արեւելեան ծայրը զով ու ջինջ աղբիւր մըն է* Գայնարճան, *որ իր ակէն բխելու ատեն կ՚եռայ կարծես: Մօտակայ տուներու Թուրք կիները հոս կու գան իրենց ճերմակեղէններու կտաւը սպիտակցնելու համար*:

Պապուխտի կամ Շուկոնի[1] .— *Իր համանուն զբօսավայրով շատ ուշագրաւ եւ հետաքրքրական է Պապուխտին, որ կը գտնուի քաղաքին հիւսիս–արեւմտեան ծայրը: Պապուխտին երկուք է՝ վերի եւ վարի: Ջուրը կը սկսի վերի Պապուխտիի մէջ քարերու փաթէն, գլգլալէն, պղպջալէն եւ բոլորտիքը գտնուած արտերու մէջէն այլ եւ այլ ակերէ, եւ երբ վարի Պապուխտի հասնի՝ Շուկոնի ըսուած աղբիւրն ալ եւ ուրիշներ ալ մէջը առնելով՝ վտակ մը կազմած եւ 10–12 ջրաղացներ դարձնել, մինչեւ հինգ ժամուան տեղ ընդարձակ դաշտավայրերներ ոռոգել եւ համանուն գիւղի առջեւ Խաթուն սույը անունը առնել ետք կը ժամանէ Մելասին*:

*Ի՜նչ սքանչելի զբօսավայր մըն է հապա սա* Պապուխտին․ *ի՜նչ զարմացում եւ զուարթութիւն չունին մարդոց համար․ երեկոները սոյն վայրի դալարեաց վրայ արեգակը կը սփռէ իր ոսկեճաճանչ եւ չառապոյն երփը, մանա–*

---

(1) *Շուկոնի աղաւաղեալն է քիւրտերէն* Շիր-գոնի *(կաթնաղբիւր) բառին եւ «շուկայ ունի» Հայ բառին: Մինչեւ հիմա կաթերը նուազ եղող կիներ հոդ կ՚այցելեն լուացուելու համար: Եւ Մալաթիա, Պօղթեփէի վրայ գտնուած ատեն, շուկան այս ջրոյն մօտ շինուած է եղեր, որ հին քաղաք փոխադրուելէ երկար ժամանակ յետոյ, ժողովուրդը երբ նոր քաղաք կու գայ, չմոռնալով բնակած տեղն ալ կ՚ըսէ թէ՝ «Երթանք այցելենք մեր պապերուն բնակած տեղն ալ»: Ուստի վերջին ատրուանդը կ՚անուանէ այս վայրը «ՊԱՊ ՈՒԽՏԻ»*:



ւանդ կիրակիները զբօսաշրջիկներու հոդ կատարած ուրախութեան ժամանակ, որովհետեւ կը տեսնէ երիտասարդներու կայտառ դէմքերը, խումբ-խումբ: Մին այս ակումբը հրջապատած, միւսը աղբերակի մը գլուխը նստած, մէկը կանանչ եղերքով առուակի մը եզերքը շարուած եւ մէկալը պարտէզի մը գիր-կընդխառնուած եւ դալարագեղ ծառերու հովանւոյն տակ ընկողմանած կ'աւաչէ, ղազալ կը կանչէ, կ'երգէ ու կը պարէ գոլացած օղիի շիշն ու բաժակը իրար զարնելով: Գեղերգող թռչուններ, սարեակն ու սոխակ եւս կը սկսին դայլայլիկն ու ճռուողիններն խառնել այդ կենդանի ձայներուն:

Ջուրերը համրելու ատեն պէտք չէ մոռնալ թէ քաղաքին վարի մասին, աւելի Հայոց Թաղերուն մէջ ամէն տան մէջ, կը գտնուի աղբիւր մը եւ կամ առուակ մը: Ամէն թաղի մէջ եւ ամէն եկեղեցիներ, մզկիթներ ու պանդոկներ ու հրապարակներ ունին իրենց առանձին ջուրերն ու աղբիւրները:

Շահնախոսնի Աղբիւր.— Հետաքրքրական եւ ուշադրութեան արժանի ջուր մ'ալ սաիկա է, որ կը բխի համանուն ձորակէն, կամուրջէն դէպի հարաւ: Ասոր հետաքրքրական կէտը հոս է. ջուրը կը հոսի քարերու փաթէն՝ ծակէ մը, տարւոյն ամէն եղանակին ալ միեւնոյն առատութեամբ, առանց մէկ ձուկ իսկ դուրս գալու, բայց գարնան մէջտեղի ամսուն մէջ, 8–10 օր միայն, 25–30 սանթիմ երկարութեամբ միօրինակ ձուկի վտառ մը կը հոսի շարունակ եւ յետոյ բոլորովին կը դադրի: Կ'ըսուի թէ ստորերկրեայ ընդարձակ աւազաններու կամ լիճերու մէջ գտնուած ձուկերն են որ կը տեղափոխուին. կը պատահի որ անոնց մանրները դուրս խուժեն այսպիսի ակերէ կամ ծակերէ...»:

Պէննէեան քահանայ (Հ., էջ 46) իբր «անուանի» նոյնպէս կը յիշատակէ հետեւեալները.—

«Շուկայի մէջ Սէօկիւտլիւ եւ Չինարլը մզկիթներու, Սարաճ պազարըի, Սուլու Գահվէսիի, Հայոց Մայր Եկեղեցւոյ կրկին աղբիւրները, Մալ Տաղը, Սըթմա բունարը, Տիչպըրտաք բունարը, Զամուչ օղլու եւայլն անուանեալ ջուրերը:

Եւ վերջապէս այս քաղաքին մէջ չկայ մզկիթ մը, եկեղեցի մը, պանդոկ մը եւ կամ տուն մը, որ իր առանձին աղբիւրը կամ ջրհորը չունենայ»:

Ինչպէս կը տեսնուի, Մալաթիա իր շրջականներով իսկապէս ջրառատ երկիր մըն էր, սակայն այս ջուրերը անօգուտ կերպով հոսած են եւ նպաստ մը չեն բերած ոչ արդիւնաբերութեան, ոչ հաղորդակցութեան եւ ոչ ճարտարարուեստական զարգացման:

Հողի ջրադացներ դարձնելու համար գործածուած կարգ մը ջուրի ընթացքներ կան, մինչ կարելի էր առաւելագոյն չափով օգտուիլ անոնցմէ:

Մասնաւորապէս Եփրատի նման ջուրի երակ մը, որ Մալաթիոյ սահմանը կը մտնէ Պիլալ Ուշաղիի քով Ս. Արփէն (Ահարոն) լերան ու Տէվէ Պոյնուի առջեւէն եւ մինչեւ Իւզ Օղլու արեւելքէն կ'եզերէ Մալաթիոյ երկիրը, բացարձակ ոչ մէկ օգուտ կ'ընծայէ Մալաթիոյ՝ ոռոգման տեսակէտով, վասնզի անկէ չեն օգտուած պզտիկ ճիգ մը ընելով:

Գ. Մելիտինեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 16) գիտել կու տայ թէ «Եփրատէ Մալաթիոյ Սահմանամուտ տեղէն, Պիլալ Ուշագիի եւ մասնաւորապէս Ս. Աֆրէն լերան ստորոտը գտնուող Տէվէ Պոյնուի առջեւէն կարելի է համեմատական փոքր ծախքերով վերցնել հսկայ առուներ՝ ոռոգելու համար Եադըլը խանի տարածութիւնը»:

Դժբախտաբար Թուրքերը չեն կրցած այս տեսակ շինարար եւ երկրին տնտեսական բարգաւաճութեան նպաստող ձեռնարկներ ընել: Ասոր համար, ինչպէս կը պատմէ Գ. Մելիտինեցի, գերման այցելուներ գիտելով Մալաթիոյ խիստ առատ ջուրերու անօգուտ ընթացքը, Թուրքերը ծաղրած են իրաւամբ անոնց երեսին ըսելով.

«Պու սու պէօյլէ ագար,
Սիզտէ էշէկ կիպի պագար»:
Այս ջուրը այսպէս կը վազէ,
Եւ դուք կը նայիք էշերու պէս:

Որքան իրաւունք ունէին:

## Գ.

## ԲՈՒՍԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Հարաւային Հայաստան, որ կը պարունակէ իր մէջ Հայաստանի հարաւ-արեւմտեան մասը, Կորդուաց լեռներէն Եփրատ, այսինքն մինչեւ Խարբերդ-Մալաթիա տարածուած երկիրները, ներառեալ Բղին եւ Սղերդը, յայտնի է ճոխութեան յորդառատ բեղմնաւորութեամբ:

Լեռները տեղտեղ հոս ծածկուած են ծառերով, որովհետեւ ձմեռը այս մասին մէջ նոյնքան խիստ չէ: Խոտերը հոս աւելի կը բարձրանան, վասնզի ձիւնը քիչ է եւ շուտ կը հալի, իսկ լեռնաստանները այլեւս տափակ եւ քարոտ կերպարանք չունին (հմմտ. Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹ., Հատոր Ա., էջ 35):

Այս արգաւանդ շրջանին մէջ էր Մալաթիա եւս, որուն օդը, ջուրը եւ հողը նպաստաւոր են բոյսերու աճման:

Հետեւաբար բուսականութիւնը շատ ճոխ էր, գէթ ի հնումն, վասնզի հակառակ Թրքական տիրապետութեան տակ Հայաստանի շատ կարեւոր մէկ մասին փճացման, ըստ հօրեղբօրս Պէննէեան Կարապետ քահանայի «Պէկտաշլի եւ ուրիշներու մէջ դեռ կը գտնուին անտառակներ ու մացառներ ցան ու ցիր,

Խալիքանի եւ Ալիքանի լեռները, Խազպայի եւ Պալիանի (Թաթար օվասը) լեռներն ու հովիտները տեղտեղ դեռ խիտ ու ընդարձակ են ասոնք։ Ցրդին, չատ դժուար աճելուն համար, դրեթէ սպառելու վրայ է»։

Կաղնիներ՝ գիւղացւոց մէջ «գոռի»ի[1] վերածուելով, բաժնուած են, ուսկից իբր ձմրան պաշար իրենց ոչխարներուն համար կը պատրաստէին դէզեր (եափրաղ) եւ փայտը բերելով քաղաք կը ծախեն։ Կաղնիէն եւ ցրդիէն կը պատրաստեն նաեւ ածուխ եւ շինութեանց համար սիւներ։ Եւ կարգ մը տեսակներու ծառերէն կը քաղեն գխտոր եւ աղտոր (սումաղ)։ Լեռներու մէջ, անտառազուրկ եւ խոպան վայրերը ՔԷվէն բուսած փշատունկը դրուած ըլլալով՝ վրայէն կը ժողվեն բուսական գազի խէժ (քիթրէ)։ Լեռներէն վայրի չրէչ (չիրիշ) եւ առատ սունկ եւ Մահմուտիէի արմատ եւ կոթ, ինչպէս նաեւ, սունկ եւ խաւարծի, կանկար, եւ որմէ մաղտակ ու հունտ կ'առնուի։

Դաշտերուն մէջ կը ցանուին ու կը մշակուին բարեխառն գօտւոյ տակ աճող ամէն տեսակ արմտիք եւ բոյսք։ Ծառեր, բանջարեղէններ եւ ընդեղէններ։

Քաղաքի, արուարձաններու պարտէզներն ու այգիները համբաւաւոր են իրենց ծառազարդութեամբ քան իրենց բերքովն ու արդիւնքով։ Ասոնք են ահա Մալաթիան դրախտ անուանողներն (Հ. ձեռ. էջ 78–79 ժ.)։

Մօտաւորապէս 1000 տարի առաջ Քրիստոսի 982–ին գրուած աշխարհագրութեան մէջ Յ. Քիւրտեան այս տեղեկութիւնը գտած է.

«Մալաթիա, մեծագոյն սահմանապահ վայր Լուքամ լերան այս կողմը։ Իր պտուղները ձրի կը տրուին եւ տէր չունին» (Hudud Alam, London, 1937, էջ 149), իսկ 1340 Թուականի Համտ–Ալլահ Մուսթաֆի Ղազվինցին (1340) իր աշխարհագրութեան մէջ կը գրէ Մալաթիոյ Զորրորդ շրջանը կը գտնուի երկայնութեան 71 եւ լայնութեան 39 աստիճանին վրայ։ Հոն կայ ամուր բերդ մը, զոր Արքալուտիս կը կոչեն։ Պտղոմէոս, հեղինակը ԱԼՄԱՃԵՍԹԻ, Մալաթիացի էր։ Մեծ քաղաք մըն է, ընտիր կլիմայով եւ հոսուն ջուրերով, եւ ընդարձակ արօտատեղիներով։ Իր բերքերն են ցորեն, բամպակ, խաղող եւ առատ պտուղ»

Իսկ մօտաւորապէս 150 տարի առաջ Հ. Ղուկաս Վրդ. Ինճիճեան (տես ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, Ա. Հտ. էջ 321) մեծ գովեստով խօսած է Մալաթիոյ բուսական արդիւնաբերութեան վրայ. «Պատուականութիւն բուսոց Մալաթիոյ երեւելի է ի Փոքր Հայս, վասն պատուականութիւն ջուրց իւրոց, զի դրեթէ յամենայն բոյսս եւ ի միրգս զընտիրն եւ զպատուականագոյն պտղաբեր է. տանձ նորա մեծ եւ քաղցր, սերկեւիլ նորա զանցանէ ծանրութեամբ քան զմի օխայ, եւ մինչեւ 2 օխայ գտանել ասեն երբեմն, խնձոր նորա քաղցրաճաշակ. պատմէ Քեաթիպ Չէլէպին թէ ի հասունանալ խնձորոյն բնակիչքն առեալ եւ անուանս գծեալ ի վերայ թղթոյ, եւ երբեմն նաեւ ողջոյն տողս տողից յար-

(1) Տեսակ մը հաւաքական սեպհականատիրութիւն։

մարեալ մածուցանեն զԹուղԹն ի վերայ պտղոյն յարեգդէմ կողմանէ նորա, յետ քանի մի աւուրց իւրաքանչիւր տառք կարմրանին տպաւորեն ի վերայ խնձորւոյն. իսկ տեղիք ներքոյ մնացեալք ԹղԹոյն դեղնագոյն մնան: Որով երեւին իբրեւ տառք կարմիր ներկիւ գրեալք ի վերայ դեղին պտղոյն:

Ունի եւ ընկոյզս եւ այլ միրգս ինքնաբոյս»:

Մալաթիոյ արդիւնաբերութեան ճոխութիւնը կը հաստատեն բոլոր Մալաթիա այցելողները: Որբերեան, որ իր ծննդավայրին վրայ տեղագրական բաւական ընդարձակ տեսութիւն մը ունի (տես ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 398) ինքն կը հաստատէ թէ Մալաթիոյ հողը «բարեբեր» եւ «բազմաբեր» է եւ մեծ յարմարութիւններ կը ներկայացնէ ստուար բնակչութեան մը բնակավայրը ըլլալու:

Երկրագործական տեսակէտով ուշագրաւ կեդրոն մըն էր Մալաթիա, վասնզի իր շուրջը ունէր ընդարձակ դաշտեր, արտեր, արօտավայրեր, բազմաթիւ այգիներ, պարտէզներ:

Պտղատու ծառերը առատ են նոր քաղաքին մէջ, այգիները՝ հարուստ, ողկոյզներ ունին անհաւատալի մեծութեամբ:

Ստրաբոն կը յիշատակէ Մոնարիտ գինին, անշուշտ այս խաղողէն պատրաստուած (Որբերեան, ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 398):

Հոն կ'աճին նաեւ բոլոր բարդիներ, հսկայ սօսիներ, վիթխարի ընկուզենիներ, ահագին թթենիներ:

Ծաղիկներուն ամենէն հոտաւէտներն ու երանգաւէտները, պտուղներուն ամենէն գեղեցիկներն ու համեղները, աֆիոնի ամենէն յարգին Մալաթիա ընդունակ է արտադրելու: Ս. Փրկիչ վանքին մօտիկ սօսիի խոռոչաւոր ահագին ծառ մը կար, որուն ներքին խոռոչին տրամագիծը 12 ոտք էր եւ արտաքին շրջապատը 45 ոտքի չափ: Դաշտին անմշակ տեղերը եւ լեռները՝ աճող խոտերուն շնորհիւ, համբաւաւոր պանիրը եւ ամենէն փափկաճաշակ քիմքերուն յագուրդ տուող մսացու կենդանիները յառաջ կու գան:

Այրեցեալ գօտիի բոյսերէն զատ բարեխառն գօտիին ամէն տեսակ ծառերը կան:

Մալաթիա կ'արտադրէ մեծ քանակութեամբ ամէն տեսակ բերքեր, ցորեն, գարի, ափիոն, ծխախոտ, չերամի բոժոժ, պտուղներ եւայլն:

Տարեկան միջին հաշուով շրջակայ քաղաքները կ'արտածուի 180·000 լիդր խնձոր եւ տանձ, 12·000 լիդր կտամէջ (ծիրանի), 36·000 լիդր չորցած ծիրան (միշմիշ ղապուղը):

1·000 լիդր խոզակ կամ չերամի բոժոժ:
20·000 » բրինձ:
100·000 » չամիչ:
10·000 » ափիոնի հունտի իւղ:
100·000 » չոր Թութ:
100·000 » խաղողէ եւ Թութէ պաստեխ:

50·000 հատ այծի կամ ոչխարի մորթ եւայլն :

1900–ին 8000 օխա ափիոն արտածուած է, մինչ աւելի առաջները մինչեւ 48·000 օխա եղած է[1] :

Ասոնցմէ զատ կարեւոր տեղ կը գրաւէին իբրեւ առեւտուրի նիւթ գլխտորը, քիթրէն, աղուեսամորթը, գորգը, կապերտը, կտաւը, իւղը, պանիրը, ծխախոտը, ցորենը, մեղրը եւ տորոնը :

Այս ամէնը ոչ թէ կ'արտածուէին, այլ տեղւոյն վրայ ալ կը սպառէին, բացի ափիոնէն, մորթերէն, քիթրէէն եւ կտամէջէն :

Մանաւորապէս շատ ընտրուած եւ հաստատուած է Մալաթիոյ ափիոնին ընտիր տեսակէ ըլլալը (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա·, էջ 323) :

Մալաթիոյ գաւառին մէջ կը մշակուէին ցորեն, գարի, ծխախոտ, բամպակ, բրինձ, ընտիր միրգեր՝ թութ, միշմիշ, որ փոքր, բայց համեղ ծիրան է, տեսակ-տեսակ տանձեր եւ խնձորներ, խոշորահատ խաղող եւ շամիչ, մանաւորապէս Պեհեսնէի եւ Ատիեամանի մէջ, խայսի եւ սեւ սալոր եւայլն, որոնց չիրերը շատ երկիրներ ծանօթ են (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա·, էջ 323) :

Նկատելով որ Մալաթիացիք կը սիրէին ըմպել օղին եւ գինին եւ համբաւուած էր իրենց գինին երկու հազար տարիէ ի վեր ըստ Ստրաբոնի վկայութեան, նախ ըսենք թէ Մալաթիոյ խաղողները եւ անոնցմէ պատրաստուած ճերմակ եւ սեւ չամիչներն ալ նշանաւոր էին :

Մալաթիա ունէր զանազան տեսակ խաղողներ, զորս կը ներկայացնեմ օգտուելով Թէոդիկի «Որթն ու իր բերքը, այգեբանական եւ մատենագրական ուսումնասիրութիւն»էն (ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1926, էջ 26–170) եւ Պէննէեան Կարապետ քահանայի ձեռագիր ընդարձակ տեղագրութենէն :

Անոնք կը յիշատակեն հետեւեալ խաղողի տեսակները·

1·— Հաճի կռան, զոր կը նոյնացնէ Թէոդիկ զանազան հայախօս գաւառներու, ինչպէս Արարատեան նահանգին մէջ եզան աչք կամ եզնակ եւ Թրքախօս կարգ մը գաւառներու մէջ էօքիւզ կէօզիւ կամ տանա կէօզիւ եւ տէվէ կէօզիւ կոչուած խաղողին հետ (տես, նոյն, էջ 71), որ բաց կարմիր գոյն ունէր եւ արմաւէն խոշորահատ : Թէոդիկ սոյն անունը կը կարծէ թէ թերեւս հաճի քերիմ յատուկ անունի ձայնափոխեալն է (նոյն, էջ 79) :

2·— Խաթուն մատ, որ Հիսնի Մանսուրի, ինչպէս նաեւ Ակնի եւ Հաճընի գաւառներուն յատուկ խաղող էր՝ ճերմակ, արմաւի չափ, երկայնահատ, սրապտուկ եւ նրբամաշկ եւ զոր Թէոդիկ կը նոյնացնէ Թուրքիոյ զանազան վայրերը մշակուած գատըն-փարմաղըին եւ փարմաք իւզիւմիւ հետ (նոյն, էջ 74) : Պէննէեան քհն· իր ձեռագիր ընդարձակ տեղագրութեան մէջ տիկնամատ կը կոչէ այս խաղողը՝ փակագիծի մէջ խաթուն բարմաղը ձեւով յիշելով զայն :

---

(1) Սրուանձտեանց (Թորոս Աղբար, Ա. էջ 309), որ 1878—1880-ի տարիները այցելած է Մալաթիա, կը հաւաստէ թէ տարին առնուազն 120,000 ոսկի հասոյթ կը բերէ ափիոնի վաճառքը:

Զայն կարմրաթրիկ եւ խոշորապտուղ կը ներկայացնէ։

3․— Կուռեզ, վայրի խաղող, ճերմակ, կլոր եւ ուշ հասուկ, յարգէ ինկած, անշահ, որ անհետանալու վրայ է ըստ Գէորգ Արքեպ․ Արսլանեանի։

Թէոդիկ կը կարծէ թէ կուռեզ բառը աղաւաղումն է գորուգին (նոյն, էջ 78)։

4․— Աճլի կը հասնէր Հիւսնի Մանսուր․ իսկական ճերմակ, կլոր, անպակ եւ ուշ հասուկ խաղող մըն է։

5․— Միֆերին Մալաթիոյ յատուկ թախաճճէպի[1] կոչուած դեղնորակ ու սեւ ընտիր խաղողներուն մէկ զունակն է, որ ճերմակ է եւ ուտուելիք։ Աստնք հասնելէ վերջ է որ կը հասնին աթմալիճ եւ շամը թրքանուն տեսակները (Թէոդիկ, նոյն, էջ 92)։

6․— Մաչուլը կլոր եւ թանձրամիս խաղող մըն է (Պէննէեան քհն․)։

7․— Շամը, զոր Թէոդիկ կը յիշէ, ուշ հասնող տեսակ մըն է (տես, նոյն, էջ 82)։ Պէննէեան քհն․ կլոր եւ ջրուտ կը նշանակէ (Հ․ ձեռ․, էջ 82)։

8․— Սեւ խաղող մը երկարապտուղ եւ քաղցր։

Տեղական գինին անկէ կը պատրաստեն։

Անկէ կը պատրաստեն չամիչ ալ, որուն նմանը այս կողմերը քիչ կը գտնուի (Պէննէեան, նոյն, էջ 82)։

Պէննէեան քահանայ խաղողէն զատ Մալաթիոյ բոլոր պտուղներուն համար կու տայ մանրամասն տեղեկութիւններ, առանձին-առանձին խօսելով անոնցմէ ամէն մէկուն վրայ, ինչ որ հետաքրքրական է եւ կը հաստատէ թէ Մալաթիա մասնաւորապէս պտուղի ինչ առատութիւն ունէր։

Ահա պատուական քահանային տուած տեղեկութիւնները․

Տանձ․— Մանր դեղին տանձը, որ էն առաջ կը հասուննայ, խոշոր դեղին տանձ՝ պինդ, այլ քաղցր, որ աչնան վերջերը կը քաղուի։ Եազպէկ, որ ամրան սկիզբը կը հասնի, կիզպէկ՝ ամրան վերջերը, իսկ գըլ պէկի՝ աշնան վերջերը։ Երեքն ալ ջրուտ եւ թթուաշ։ Ձմրան տանձ՝ մանրիկ եւ քաղցր։ Զէլէմ արմուտը՝ իրօք չողգամի կը նմանի մեծութեամբ եւ տափակութեամբ եւ է ջրուտ եւ քաղցր։ Հաճի համզէ՝ ամենախոշոր, երկայն, կակուղ ու մեղրահամ։ Պալ արմուտը՝ կլոր եւ մեղրահամ ու կակուղ, եւայլն։ Ասոնցմէ մէկ քանին մինչեւ տարի մը կը դիմանայ առանց վնասուելու ու համը կորսնցնելու։

Խնձոր․— Թեփոտ խնձոր՝ դեղնագոյն, կակուղ ու քաղցր, շըխշըխը՝ շիկակարմիր, երկար եւ անոյշ։ Երբ ձեռքիդ մէջ կէտկէտցնես կամ կորես, «շըխշըխ» ձայն մը կը հանէ։ Քեավի էլմասըն՝ կարմիր եւ երկայն ու շատ համեղ է․ այս խնձորը էն պատուականն է, բայց քիչ կը դիմանայ։

Խնձորներն ալ իրենց տեսակներն ունին դեռ, բայց անոնցմէ եազըլը

(1) Պէննէեան քհնյ. Թաիլին իապր կը կոչէ այս խաղողը եւ կ՚ըսէ թէ խնկագոյն եւ երկարապտուղ է։

բուսածը ցուցնեմ միայն, որ շատ հետաքրքրական է: Այս խնձորը՝ դեռ աղէկ մը չհասած՝ ծառին վրայ թէ փրցնելով՝ վրան մելանով կը գրեն ոտանաւոր մը կամ գեղեցիկ խօսք մը եւ կը թողուն 8–10 օրի չափ, որ կեղեւը բոլորովին կարմրանալով գիրերուն տեղը միայն կանանչ կը մնայ, զոր սրբելով, իբրեւ նուէր իրարու կու տան:

Ծիրան[1] ·— Երկու տեսակ է՝ պատուաստեալ եւ հասարակ: Պատուաստեալներէն անուանի են կեավուր աշըսը, հաճի գըզ, հաճի խալիլ օղլու եւ եկէճ բուսածները, որոնց թարմը ուտելէ զատ, չիր ընելով կը ծախուի: Ասոնց ինչպէս կեղեւը, նոյնպէս կուտը անուշ ըլլալով կը ծախուի: Վերոգրեալներուն մէջ էն արժէքաւորը կեավուր աշըսը բուսածն է, շատ մսոտ եւ շատ քաղցր ըլլալուն համար, այնպէս որ մարդ մը հազիւ 15 հատ կրնայ ուտել անկից: Ինչպէս պատուաստեալի, նոյնպէս հասարակի քանի մը տեսակներուն թէ՛ թարմը կ'ուտեն եւ թէ՛ կը չորցնեն: Հասարակ տեսակին կուտերը լեղի կ'ըլլան ընդհանրապէս:

Զում-(գըզըլճըգ) ·— Երկու տեսակ կայ սուլթանի եւ խուտայի (հասարակ)· անկից կը պատրաստեն բէչէլ եւ օշարակ կամ մրգօղի:

Սերկեւիլ ·— Աս ալ մէկ քանի տեսակ է: Հատը մինչեւ մէկ քաշ կշռող խոշորութիւն ունի: Սերկեւիլին թարմը այնքան ուտելու չի գար՝ թթուաշ ըլլալուն համար, սակայն անկէց պատրաստուած կերակուրը ամենապատուական ըլլալով՝ սեղանի վրայ մեծ տեղ կը գրաւէ:

Բալ ·— Բալի մէկ տեսակ մը միայն գտնուելով, կ'ուտեն ու մրգօղի ալ կը պատրաստեն:

Դեղձ ·— Երեք տեսակ կայ անկից, որոնք ծանօթ են շամ, հինտ եւ ֆիւնտէպէկ շէփթալը կ'անուանեն: Ֆինտէպէկ բուսածը հասարակ տեսակն է եւ մանր, իսկ շամը՝ խաւոտ եւ խոշոր, եւ հինտը անխաւ: Շամ բուսածին մէջ մինչեւ 100 տրամ կշռողներ կ'ըլլան: Դեղձէն ալ խոշափի համար չիր կը պատրաստուի:

Սալոր ·— Սալորի տեսակներն ալ շատ են, ինչպէս պօլտիկ սալոր· ճեղքելուդ պէս կուտը մէջէն կը ցատկէ ցամաք ըլլալուն համար: Աս սալորը բնաւ չ'որդնոտիր: Իսթամպօլ էրիկի՝ խոշոր, ջրոտ եւ անոյշ, ճան էրիկի՝ չիկակարմիր եւ անոյշ: Կարմիր սալոր, ջրոտ եւ անոյշ ու բոլորովին կարմիր: Մըճչիկ սալոր, մանր, այլ անոյշ, ձմրան սալոր՝ աշնան վերջերը հասուննալուն համար, ճերմակ սալոր, կանանչ, երկար եւ անոյշ, սեւ սալոր, երկար եւ անոյշ, ֆէչէ մէմէսի՝ սեւ եւ հաւկիթի խոշորութեամբ, անոյշ, եւայլն, եւայլն:

Սալորներու թացը ուտուելուն պէս՝ չիր ալ կը պատրաստեն, ինչպէս

(1) Մալաթիա կը նկատուի ծիրանին հայրենիքը, թէեւ աւելի հաւանական է որ ան Հայաստանէն տարածուած ըլլայ ուրիշ երկիրներ:

(2) Պատուաստումը հայէ մը եղած ըլլալուն համար:

*վերջերս կը պատրաստեն նաեւ պաստեղ եւ ուրիշ բաներ ալ:*

Թութ․— *Մալաթիոյ պարտէզներու պտղատու ծառերուն գոնէ կէսը թթենիներ են: Ուստի արդիւնքն ալ կը համեմատի միւսներու արդիւնքին: Թութը կը չորցնեն ուտելու եւ օղիի համար: Իսկ թացը եփելով կը պատրաստեն ատատ ռուպ, պաստեղ, հատապլիթ (քէմէճէ) եւայլն: Թութին կարմիրը հազուագիւտ է:*

*Եւ վերջապէս շատ կը գտնուին ընկոյզ, կաղին, կեռաս, նուռ, նուշ, թուզ, եւայլն:*

Ձմերուկ եւ սեխ․— *Ձմերուկի տեղական տեսակներէն զատ վերջին տարիներս մուտ գտած են* ռուս *եւ* թէքիրտաղ *բուսած տեսակներն ալ: Սեխերէն՝ մինակ շամամը կը գտնուէր առաջ, բայց հիմա* տիարպէքիր *բուսածը եւ ուրիշ ազնիւ տեսակներէն շատ կը ցանուին:*

Տոմաթէս եւ Փաթաթէս․— *Հազիւ 40–50 տարի է որ մուտք գտած են հոս: Եւ սակայն երկուքն ալ շատ օգտակար եղած են իրենց կարգին:*

*Մալաթիոյ մէջ միայն ձիթենի չի հասնիր, ծովէն հեռաւորութեան եւ բարձրութեան համար:*

Ծաղիկներ․— *Ի մէջ այլոց ծանօթ են վարդն՝ իր տեսակով, թանթըրուենի, մեխակ, յասմիկ, շուշան,* մոռ *մանուշակ,* պապըլիկ (*կապոյտ մանուշակ*)*, րեհան, սմբուլ, թաւիշ, կակաչ, անթառամ, հարսնուկ* (կէլինճէք չիչէյի) *այգազարդ, ապրիմ մեռնիմ, արեւածաղիկ, մեկոն, ձնծաղիկ, տիկնարիր* (խաթուն քիբրիկի)*, բաղեղ, եւայլն:*

*Ասոնք համրելէ եւ նկարագրելէ ետք, կ՚արժէ որ մի անգամ այցելենք ու շրջագայինք դաշտն ու պարտէզը: Ծառաստանն ու ծմակը, տեսնենք ու վայելենք երփներանգ գոյներով եւ անուշահոտ, ծանօթ ու անծանօթ բազմօրակ եւ անհամար ծաղիկներու հրապուրիչ եւ զմայլելի տեսարանները, որոնք կը պարզուին աչքիդ առջեւ: Ծաղիկներ՝ տեղ մը կարմիր, տեղ մը դեղին, վերը ճերմակ, մէջը կանանչ եւ վարը երկնագոյն, անդին գորշ մանիշակագոյն, անդին խարտեաշ եւ խատուտիկ: Հոս՝ բոյլ-բոյլ մեղմաթոյր, հոն՝ ղալարագեղ եւ անուշաբոյր: Կարծես գեղանկար գորգեր եւ կապերտներ սփռուած են, որոնց մէջ փաթն ու վրան ո՜րքան թիթեռներ կ՚ոստոստեն ու կը թռչկոտին, եւ ո՜րքան մեղուներու տզտզուքն ու բզզիւնը կը լսուին: Ի՜նչ հաճոյք չես զգար հապա երբ կը տեսնես ծառերու ճիւղերէն կոյզ-կոյզ կախուած պտուղները, որոնք կը հրապուրեն քեզ իրենց մօտենալու, թող թռչնոց կտցահարելէն թափածները, որ մարդոց ոտքերուն տակ կը ճզմուին, հաւաքէ՛ սաղարթազարդ ճիւղերու փաթէն թափի թափ գլուխիդ եւ գոգդ ինկածները, որոնք շատ խնամով պիտի քաղուէին յետոյ պարտիզպանին կողմէ»:*

*Ինչպէս կը տեսնուի, Մալաթիա իսկապէս պտղառատ երկիր մըն է, ճոխ բուսականութեամբ օժտուած:*

*Իր պտուղները իրենց տեսքով, համեղութեամբ, խոշորութեամբ, գե-*

ղեցկութեամբ եւ առատութեամբ անգերազանցելի են :

Հայաստանի ներքին գաւառներուն համար, ձմրան եղանակին մէջ մանաւորապէս, Մալաթիան կը կազմէր չոր միրգերու անսպառ շտեմարան մը :

Համբաւաւոր էին Մալաթիոյ, մանաւանդ խոշորահատիկ, մսոտ ու քաղցր, դեղնորակ շամիչը, ինչպէս նաեւ խաղողի հիւթէն շինուած պաստեղը նշոտ, բլիթը, շարոցը, եւայլն (Ծոցիկեան, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, էջ 378) :

## Է.

# ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ
## ԵՒ
# ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹԻՒՆ

Մալաթիոյ գաւառին կեդրոնական լեռը Պէկտաղն է, եւ ունի այն նշանակութիւնը ինչ որ Արարատը ունի Այրարատեան նահանգին եւ Արգէոսը՝ Կապադովկիոյ համար :

Պէկտաղը, որուն ստորոտն է Մալաթիա քաղաքը, մշակելի քիչ հող ունի, բայց Պռնազալցիներ, Գարակէօղցիներ եւ ուրիշներ ամէն կողմ այգիներ կը մշակեն :

Խիստ անուանի են այս լերան արօտավայրերը, մարմանդները եւ կաղնիի ու ցրդիի խիտ անտառները, բազմերանգ ու երփնագոյն ծաղիկներով ու խոտերով : Գարնան երբ ալ ձիւները կը հալին, խոտերը իրենց գլուխները գետինէն դուրս կը հանեն : Այս լերան վրայ կու գան Ալեճան, Մոլուճան, Թաշեճան եւ Խտրասոր ըսուած վաչկատուն քիւրտ ցեղեր ու գիւղաբնակներ ուր 4–5 ամիս մնալով, զով ու առողջարար օդը ծծելէ, վճիտ ու սառնորակ աղբերակներու եւ առուակներու ջուրերը խմելէ եւ իրենց բազմաթիւ տաւար եւ ոչխարներն արածելէ ետք, աշնան ցուրտ հովին փչել եւ ձիւներն գալ սկսելուն պէս՝ կը չուեն կ'երթան իրենց ձմերանոցները :

Տեսնուեցաւ թէ Մալաթիա եւ իր շրջակայքը ճոխ բուսականութիւն ունին, շնորհիւ ջրառատ հողին եւ նպաստաւոր կլիմային :

Նոյնպէս արօտատեղիներու առատութիւնը մեծագոյն նպաստն է արջառաբուծութեան, որ զարգացած էր շատ : Արդէն յիշուեցաւ թէ Մալաթիոյ

*խոտառատ դաշտերուն վրայ կ՚արածէին մացու անասուններ։*

*Հովելոյս Կարապետ քահանայ Պէննէեան իր համառօտ տեղագրութեան մէջ Մալաթիոյ կենդանիներու համար բացառութիւն մը ըրած է թուելով բոլոր կենդանիները անոնց ամէն մէկին ածական մը տալով* (*Համ. էջ* 70–1), *մինչ իր ընդարձակ գործին մէջ սեղմ տողերով ընդհանուր գաղափար մը կու տայ եւ զանց կ՚առնէ կենդանիներու վերադիրները։*

*Նախընտրեցի այդ տողերը արտագրել վասնզի Հ.ի մէջ իր պճնազարդեալ տողերն ոչ մէկ Մալաթիոյ յատուկ տեղեկութիւն ունէին, քանի որ գրեթէ բոլոր Փոքր-Ասիոյ կենդանիներն էին, որ կը թուէր, ինչ որ աւելորդ աշխատանք մըն էր եւ ոչինչ կը պարունակէր հետաքրքրական։*

*Ահա այս ամփոփ բայց խղճամիտ տողերը, որոնք բաւական են ամբողջական գաղափար մը տալու համար.—*

*«Մալաթիոյ գաւառին իւրաքանչիւր կողմը լի է դալար ու ոչխարներով։ Կան հեծանելի եւ բեռնակիր ձիեր ու ջորիներ ընտիր տեսակէն։ Կովերու տեսակները այնքան գովելու չեն գար։ Դաշտերու մէջ ոչխարը, իսկ լեռներու մէջ այծը յարգի է։ Վայրի կենդանիներէն կը գտնուին գայլ, արջ, խոզ, ոզնի, նապաստակ, աղուէս, այծեամ, փորսուղ, սանսար, վայրի կատու, եւայլն։*

*Ընտանի թռչուններէն, հաւ, բադ, սագ, սիրամարգ, հնդկահաւ, տատրակ, աղաւնի, եւայլն գտնուելուն պէս՝ վայրի թռչուններէն բադ, սագ, կաքաւ, կարապ, արծիւ, բազէ, շահէն, ցին, ագռաւ, անծեղ, յոպոպ, փայտփոր, կռնեխ, սարեակ, սոխակ, ծիծեռնակ, ճնճղուկ եւ բու։ Ինչպէս այլ տեսակ յափշտակիչ եւ երգող թռչուններ կը լեցնեն լեռներն ու դաշտերը։*

*Կը գտնուին միջատներ ալ, ինչպէս նաեւ սողուններ։ Օձ, մողէս, գոդոշ, կրիայ, գորտ, խխունջ, կարիճ, տզրուկ, ճպուռ, ծղրիդ, մեղու, մրջիւն, պատիկ, շերամ, թիթեռ, ճանճ, իրենց համասեռներով ու տեսակներովը, եւայլն։*

*Գոմէշ եւ ուղտ քիչ քանակութեամբ կը գտնուին։ Ուղտը կը պահեն Սինանցիներ եւ Խօրենցիներ միայն։ Դաշտեցիներ առհասարակ կը պահեն բեռի համար էշ, իսկ լեռնցիներ՝ ջորի։ Էշի եւ ջորիի գործը լեռներու մէջ յաճախ եզները կը կատարեն* (*Պէննէեան, Հ., էջ* 77)։

*Ինչ որ առանձնայատուկ է Մալաթիոյ, Պէկտաղի ամէն կողմ կատարուած մեղուաբուծութիւնն էր որ ոչ միայն քիւրտ լեռնաբնակները կը կատարէին, այլ նաեւ քաղաքացիք, վասնզի երբ թութի քաղցուն* (*շիրէ*) *կը փռուէր տանիքներու վրայ, մեղուները չջնջելու համար, քաղաքացիք ալ իրենց փեթակները կը փոխադրէին հոն, ուր մեղուներ հիւթալի ծաղիկներէն առատ մեղր կը պատրաստէին, այնպէս գեղեցիկ ու համեղ, որուն հետ եւ ոչ մէկ լերանը կամ տեղինը կրնայ համեմատուիլ* (*Պէննէեան քահանայ, Ը., էջ* 28–29)։

*Պէկտաղի շուրջ բոլոր գտնուող արօտավայրերը իրենց գեղեցիկ խոտե–*

րով եւ բուսականութեամբ կը նպաստէին ոչ միայն մեղրին համ ու հոտ տալու, նոյնպէս անուշահոտ եւ համեղ ճաշակ դարձնելու ոչխարներու միսը, իւղը, պանիրն ու կարագը, որոնք շատ անուանի էին (նոյն, Ը․, էջ 29)։

Նոյնպէս նշանակելի է որ հակառակ անոր որ Մալաթիա ցամաքային քաղաք մըն է, սակայն բնակչութիւնը զրկուած չէր ձկնեղէններէ, որոնք մասնաւորապէս նահանգին արեւմտեան սահմանը գծող Եփրատ մեծ գետէն կը ստացուէին։

Ըսուեցաւ արդէն վերը թէ Բալուցի լաստավարներ երբեմն գըսղսւ (սոխի մէկ տարեկանը) եւ փարչ փոխադրելու ատեն, ուկան կը ձգէին լաստի ետին եւ պատուական ու համեղ ձուկեր որսալով կը բերէին Մալաթիա եւ հրջակաները, ու կը ծախէին։

Եփրատէն զատ Մելաս (Թոխմա) գետն ալ ունէր առատ ձուկ։։ Անկէ կ'որսային մինչեւ 20 լիդր կշռող համեղ ձուկեր (նոյն, էջ 39)։

Համեղ ձուկեր ունէին նաեւ Սուլթան Սու եւ Խտեմենտիկ, որոնց առատ եւ յորդ ջուրերը կը թափին Մելասի մէջ։

Տէր Մեսիա գետը, Քարանց Այտին մօտերը, տարուան ջրառատ եղանակին մէջ, կ'ունենար անհագին քանակութեամբ ձուկ։ Եւ գետը, ժողովուրդին պատեհութիւն կու տար առատ ձուկ որսալու միայն 11 օր, Ապրիլ 7-էն մինչեւ 18։

Երբոր այդ տարապայման ձկնառատութեան որոշ հրջանը կազմող 11 օրը կը լրանայ, չի գիտցուիր ուրկէ՞ եւ ի՞նչպէս, հսկայ օձ մը կու գայ իբր թէ ջուրերուն հետ, եւ ձուկերը, իրենց ահէն, կ'աներեւութանային իսկոյն։ Ու բնական այս յոյժ տարօրինակ երեւոյթը, ամէն տարի, նոյն վայրին ու եղանակին եւ միեւնոյն օրերուն մէջ, կը կրկնուէր, զարմանալի կանոնաւորութեամբ մը։ Միայն ձկնորսները բոլոր պարտին իրենց ձեռք բերած ձուկերէն հաւասար բաժին ունենալ, եթէ ոչ կը տուժեն, կը պատժուին (Ս․ Մ․ Ծոցիկեան, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, էջ 373)։

Պէննէեան քահանայ աւելի իրապաշտ եւ աւելի զերծ նախապաշարումներէ նոյնը կը հաստատէ գոհացուցիչ բացատրութիւն մը տալով այս անսովոր երեւոյթին (տես Ը․, էջ 49–50), որ արդարեւ հետաքրքրական է։ Պէննէեան քահանայի համաձայն Շահնախանի աղբիւրը, որ կը բխէր համանուն ձորակին մէջ, կը հոսի քարերու փաթէն ծակէ մը տարուան ամէն եղանակին ալ միեւնոյն առատութեամբ, առանց մէկ ձուկ իսկ դուրս տալու, բայց գարնան մէջտեղին ամսուան մէջ 8–10 օր միայն, 28–30 սանթիմ երկարութեամբ միօրինակ ձուկի վտառ մը կը հոսի շարունակ եւ յետոյ բոլորովին կը դադրի։ Կ'ըսուի թէ ստորերկրեայ ընդարձակ աւազաններու կամ լիճերու մէջ գտնուած ձուկերն կը տեղափոխուին․ կը պատահի որ անոնց մանրները դուրս խուժեն այսպիսի ափերէն կամ ծակերէն (Պէննէեան, Ը․, էջ 50)։

## Ը.

# ՀԱՆՔԱՅԻՆ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ

*Ինչպէս Փոքր Ասիոյ ամէն մասերուն, նոյնպէս Մալաթիոյ ընդերքը տեսակ տեսակ հանքեր ունէր, սակայն դժբախտաբար դարերով գրեթէ անոնցմէ ոչ մէկը շահագործուած էր, մասնաւորաբար փոխադրութեան միջոցներու չգոյութեան պատճառով:*

*Արդարեւ, «Քաղաքէն ոչ շատ հեռու կը գտնուին զանազան տեսակ քարեր, բորակ, հանքածուխ: Իսկ հեռուները՝ պղինձի հանք, երկաթ, եւայլն, զորս կը նշանակենք համառօտակի, եւ նախ քարը:*

*Սալաքար կամ թերթաքարի ազնիւ մէկ տեսակը կայ Օրտուղի հիւսիսարեւելեան կողմը դաշտին մէջ խաւ-խաւ: Աս քարով կը ծածկեն ապուպաներ: Խոշորներն ու թանձրները իբրեւ կամուրջ կը ձգեն առուակներու վրայ, եւ տուներու գաւիթներն ու սրահներն կը սալայատակեն» (Պէննէեան, Ը., էջ 33):*

*Մալաթիոյ մէջ կար նաեւ աղահանք մը: Աղի լիճի մը ջուրը ամառը կը չորնար եւ տակը նստած աղէն տարեկան մէկ միլիոն օխայի չափ կը ժողվուէր եւ կուսակալութեան մէջ եւ շրջակայքը կը սպառէր, ինչպէս կը տեսնուի Նեճմետտին Սամիի ԳԱՄՈՒՍ ԻՒԼ ԱԼԱՄԻ մէջ:*

*Այս ընթացիկ եւ առօրեայ գործածութիւն ունեցող եւ դիւրաւ ստացուող եւ մատչելի հանքային մարմիններէն զատ Մալաթիա ունէր Պէննէեան քահանայի ընդարձակ տեղագրութեան համաձայն նաեւ՝*

«Երկանաքար·— *Գլխաւորաբար կը գտնուի* Գարաքէօյ*ի տակ* Պալըչայ*ի եզերքը, Ս. Լուսաւորիչ վանքին քաղաքակողմեան ծիրանեաց պարտէզին վերեւ ու վանքէն* Բունար պաշ*ը երթալու ճամբուն խճուղիին միացած տեղը: Աս երեքէն գլխաւորը Գարաքէօյինն է, անոր գայլախազի բաղադրութեան շատութեան պատճառաւ:*

Ջօղաքար-յօղաքար·— *Ասիկա խնկագոյն եւ պայլեցի պէս դիւրափըշրելի քար մըն է, որ առատութեամբ կը գտնուի Պէկտաղի Ս. Կարապետ ըսուած կիրճին մէջ: Աս քարը կը գործածեն երկաթագործներն ու դարբինները, երբ բաղադրելիք պողպատը կամ երկաթը հրաչէկ դառնան, իրարու վրայ բերելէ ետք, այս քարփոշիէն վրան ցանելով՝ կ'երերցնեն լաւ մը. որով կը հալի ու կը յօդէ:*

Զեչաֆար.— Երկու հանք կայ չէչաքարի, մին Ֆլէաֆինի բլրոյն վրայ եւ միւսը Քէօնախալէկի վերեւ Տէր Մեսրոպի եղերքը: Ասիկա ծակոտկէն եւ ոսկրագոյն ըլլալուն համար ֆեմիւֆ քար ալ կ'ըսուի, եւ կը գործածուի քարաշէն հաստատութիւններու գմբէթներն ու կամարները ծածկելու:

Հրաֆար (կրաքար կամ օջախի քար).— Կը գտնուի վերին Պանազըի տակ խորաքա ձորակի եղերքը եւ ուրիշ տեղեր ալ: Աս քարը մութ մոխրագոյն եւ աւազախառն է: Ասկէ կը շինեն փուռեր, օջախներ եւ ասոնց պատուանդանքարին ու երախներու տակ փռուած հողը տաքցնելու համար անուակաձեւ քարը: Այս քարը մութ մոխրագոյն ու աւազախառն է, եւ հարիւրաւոր տարիներ կը դիմանայ կրակին:

Որձաֆար կամ որմնաֆար.— Գլխաւոր երեք հանք կայ ասկէց, մին՝ Զամաչաճիֆի, մին՝ Երխըլը խանի եւ միւսն ալ Մաղրապ կամ Կելինճիկ Թեփեսի մէջ: Առաջին երկուքը հիմերու, պատերու, իսկ վերջինը, կապտագոյն, եւ կամարներու յարմար:

Մարմարիոնի ճերմակ եւ լաւ տեսակը կը գտնուի Չէօշնիւկ ըսուած տեղւոյն չուրջը առատօրէն:

Կրաֆար.— Թէեւ ամէն տեղ առատօրէն կը գտնուի, բայց կիրը պատրաստելու համար Պէկտաղիի երեսը գտնուածները կը գործածեն, որ թերթ-թերթ պառկած է հոն:

Գաճ կամ բուռ.— Ասոր մէկ ընդարձակ խաւը կը գտնուի Խաթուն Սուի մօտերը՝ բլրակի մը կուշտը:

Բորակ.— Թէեւ շատ մը տեղեր կը տեսնուին ասկէց, բայց աւելի կը գտնուի հին քաղաքի եւ Իզօղլուի մէջ. անկէ կը պատրաստեն այս գաւառին մէջ սպառած բոլոր վառօդը:

Քարածուխ (հանքածուխ).— Որչափ ուրիշ տեղեր ալ կան, աւելի մէկ ընդարձակ խաւը կը գտնուի Խաթուն Սուի ճամբուն վրայ՝ համանուն վտակին եղերքը:

Ըստ Մկրտիչ Որբերեանի (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 70) Մալաթիայէն 3 մղոն դէպի հիւսիս արտի մը մէջ հանքածուխ տեսնուած է 1900ին, նոյնիսկ հողին երեսը: Դժբախտաբար անոր կարեւորութիւնը ըմբռնող չէ եղած, եւ շահագործելու փորձ անգամ չէ կատարուած:

Կ. Պոլսոյ Թուրք ամենէն կարեւոր թերթերէն մին՝ Ճիւմհուրիյէթ, 26 Հոկտ., 1953ին (Թ. 10502) իբր նոր յայտնութիւն մը կը հաղորդէր թէ Հեքիմ խան գազային ենթակայ Մեկկրմէ գիւղին մէջ շատ հարուստ հանքածուխի խաւ մը գտնուած է, զոր շահագործել կարելի պիտի ըլլա՞յ, չենք գիտեր: Նաեւ երկաթի նշաններ տեսնուած են Պալեան գիւղախմբի Պուտալա եւ Կէօչեճէ գիւղերու մօտ (°) գտնուող երկար բլրաթեւին վրայ:

Պղնձահանք.— Խալիքանի եւ Ծենդէկ լեռներու մէջ կայ պղնձի հանք մը, որ այժմ չի շահագործուիր:

1862ին Խարբերդի կուսակալ Իզզէթ փաշա փորձած է այս հանքը շա-

հագործել եւ վարպետներ ու գործիքներ բերած եւ երեք տարիի չափ բանեցնելէ ետք, երեսի վրայ ձգուած է: Բայց յետոյ Եւդոկիացի Ասլանեան Մանուկ չահագործել ուզելով, երկու տարի եւս բանեցուցած եւ առանց օգտուելու թողած է (Պէննէեան, Հ., էջ 32):

Հաւանօրէն այս հանքին կը վերաբերէր 1917ին հրատարակուած այն կայսերական իրատէն, որով կը ջնջուէր Մալաթիոյ Թեփեխան վայրը գտնուող եւ 1289 Զիլհիճճէ 25 (1872–3) Թուական ֆերմանով Սարաֆ Ասլան Օղլու (Ասլանեան) Գէորգ եւ Սամանճը Օղլու (Սամանճեան) Գէորգ էֆենտիներու տրուած պղինձի հանքին մենաշնորհը (տես ԺԱՄԱՆԱԿ օրաթերթ, 15 Փետրուար, 1917)[1]:

Հաւանական է որ Մալաթիայի շուրջ, այս հանքերէն զատ՝ աւելի կարեւոր՝ քարիւղ ալ գտնուի, ինչպէս վերը յիշուեցաւ:

Քեքլիկ Սույու կոչուած գետակը հաւանօրէն քարիւղ պարունակող հողամաս մը կ՚անցնի, քանի որ եթէ լուցկի մը ձգուի ջուրերը, կը վառին (տես Ս. Մ. Ծովիկեան, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, էջ 375):

Թրքական Ճիւմհուրիյէթ լրագիրը իր 16 Նոյեմբեր 1953ի 10523 թիւին մէջ կը հաղորդէր թէ Ատիեամանի եւ Քահթէ գաւառի միջեւ Ադվանուիք գիւղին մէջ հարուստ քարիւղի երակ մը գտնուած է:

Եթէ ճիշդ է Թուրք լրագիրին այս տեղեկութիւնը, կը հաստատուի, թէ Մալաթիոյ շուրջը քարիւղի երակներ կան, որոնք եթէ շահագործուին, կրնան երկրին բարգաւաճման նպաստել:

Նոյնպէս Թուրք թերթերը 1955ին կը ծանուցանէին թէ Նահանգին բազմաթիւ շրջաններուն մէջ այլազան հարուստ հանքերու երակներ գտնուեցան: Ասոնց կարգին՝ Բէօթիւրկէի Թեփեհան աւանին մէջ հարուստ ոսկեհանք մը գտնուեցաւ եւ հանածոները Անգարայի Հանքային Հետազօտութեան Էնստիթիւթին ղրկուեցան, քննելու համար: Քրոմի, կապարի, մանկանէզի, արսէնիքի, զինկի, երկաթի եւ քարիւղի հանքեր եւս գտնուեցան Նահանգին մէջ:

Եթէ բոլոր այս գիւտերը հնարուած չեն Ամերիկացիներու ուշադրութիւնը դարձնելու համար Թուրքիոյ վրայ եւ անոնց տոլարներուն մօտենալու խայծեր չեն, ցոյց կու տան թէ Մալաթիա հանքերով շատ հարուստ հողամաս մըն է:

Այնպէս որ կարելի է ըսել, որ եթէ Մալաթիոյ հողին երեսը հարուստ է իր բարեբերութեամբ, նաեւ հարուստ է հողին ընդերքը հանքային հարստութիւններով, որոնք դժբախտաբար չեն շահագործուած մինչեւ հիմա:

(1) Հաւանօրէն սխալ մը կայ, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, Եւդոկիացի Ասլանեան Մանուկ ունէր այս տեսակ մենաշնորհ մը:

## Թ.

# ԿԼԻՄԱՅ

*Հայաստանի հարաւային կողմը բնորոշուած է երկրին միւս մասերէն իր կլիմային բոլորովին առանձնայատուկ յատկութիւններով, Միջերկրականի հովերու ազդեցութեան տակ (հմմտ. Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա. հտ., էջ 42)։*

*Այս նպաստաւորուած գօտիին մաս կը կազմէր Մալաթիա, որուն կլիմային եւ առողջապահական պայմաններուն մասին դժբախտաբար իրարու անհամաձայն տեղեկութիւններ գրուած են։ Հետեւաբար եթէ իրար հակասող տողեր տեսնուին, այս մասին պատասխանատուն այս տողերը գրողը չէ, այլ՝ իր աղբիւրները։*

*Հնագոյնը այդ աղբիւրներուն, զոր ես տեսած եմ, Հ. Ղուկաս վրդ. Ինճիճեանի ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՉՈՐԻՑ ՄԱՍԱՆՑ ԱՇԽԱՐՀԻ հատորներու առաջինն է, որ նուիրուած է Հայաստանի, եւ տպուած՝ անցեալ դարուն սկիզբները (1806)։ Հոն (էջ 321) կը կարդանք թէ* «Ցրտութիւն օդոյ Մալատիէ թեմին սաստիկ է ի ձմերայնի»։

*Հաւանօրէն գիրքէ մը քաղուած այս տեղեկութիւնը թերեւս չափազանցութիւն մըն է կամ ասոր հակառակը ըսողները կրնան տարբեր չափանիշով մը դատելով Մալաթիան բարեխառն գաւառ մը նկատած ըլլալ, բայց Մալաթիոյ կլիմային մասին բոլոր խօսողները — տեղացիներ ըլլալով իսկ — իրարու համաձայն չեն։*

*Այսպէս, ժամանակակից Մալաթիացիներէն Յակոբ Ագըլքութուսըեանց*[1]*, բնիկ Մալաթիացի, 1881ին կը գրէր թէ Մելիտինէ քաղաքը 1839էն առաջ* «միմեանցմէ երկու ժամուան ճամբայ հեռաւորութեամբ երկուքի բաժնուած էր, վարի քաղաք կամ հին Մելիտինէ, որ հին դարերու անթիւ յիշատակներով լի ըլլալէ ի զատ, կլիման եւս չոր ու առողջ է եւ ծառեր բնաւ չկայ։ **Վերի քաղաք կամ Ասպզէ**, որոյ կլիման թէեւ խոնաւ, բայց աննման պարտէզներով, զուարճալի այգիներով, անուշ պտուղներով, վճիտ ու յստակ

---

*(1) Այս անձը աշակերտած էր Էջմիածնի Գէորգեան Ճեմարանին։ Յետոյ իր մականունը Ագըլեանի վերածած է։ Եղած է 1908-ին, Սահմանադրութենէն ետքը, Ազգ. Ժողովի մէջ Մալաթիոյ երեսփոխան։*

տզբիւրներով, գետերով, գետակներով եւ այլ բերք ու բարիքներով լի է» (*ՄԱՍԻՍ*, 1881, *թ*. 2845)։

*Ուրիշ Մալաթիացիներ ալ, որոնք առիթ ունեցած են խօսելու Մալաթիոյ կլիմային վրայ, միշտ իրարու համաձայն չեն, բայց աւելի գովեստ ունին քան դժգոհութիւն կլիմայէն։*

*Հետեւաբար թերեւս դժուար պիտի ըլլայ հաշտեցնել իրարու անհամաձայն այս տեղեկութիւնները, որոնք Մալաթիոյ կլիմային համար տրուած են, սակայն պիտի ջանանք գոնէ գանոնք ներկայացնել, ընթերցողին թողլով եզրակացութիւններ հանել։*

*Նահատակ Կարապետ քահանայ Պէննէեանի, որ յայտնի է թէ մեծ սէր ունի իր ծննդավայրին նկատմամբ եւ իր կարողութեան սահմանին մէջ եւ իր ըմբռնումներուն համաձայն, հնարաւոր խղճմտութեամբ, ինչպէս բացատրուած է վերը, երկու անգամ, առաջին անգամ՝* 1899*–ին եւ երկրորդ անգամ* 1912*–ին, կարեւոր յաւելուածներով եւ սրբագրութիւններով պատրաստած է երկու տեղագրութիւններ, որոնց առաջին համառօտին մէջ*[1] (*էջ* 24) *կը գրէ թէ* «Մելիտինէ գաւառակի թէ՛ կեդրոնական մասին (քաղաքին) եւ թէ՛ գիւղերու կլիման է բարեխառն, գեղեցիկ եւ առողջարար։ *Կլիմայի սոյն հանգամանաց գլխաւոր պատճառն է հիւսիսային հեղաշունչ եւ զովարար զեփիւռը եւ Տաւրոսի լեռնաշղթայքը, որ շրջապատած են ամբողջ գաւառակը, արգիլելով խորշակին եւ ցուրտ քամիին, որ գուն ուրեք չարժեն իրենց թեւերը այս գաւառակին վրայ, որով հոս ոչ ամառը խիստ տաք եւ ոչ ալ ձմեռը խիստ ցուրտ կ՚ըլլայ, այլ տարւոյն չորս եղանակներն ալ կանոնաւոր պարբերութեամբ մը կը յաջորդեն իրարու։*

*Բայց պէտք չէ մոռնալ թէ՝ քաղաքին, արուարձանաց, ինչպէս նաեւ Դիլէկի, Օրտրդրի, Վերին Պանազըրի, եւայլն օդը՝ բաղդատմամբ միւս տեղերու՝ խոնաւ ու ծանր է։ Ուստի այս տեղերը թէ՛ խիստ ծառալից եւ թէ՛ խոնաւ են, ուստի անպակաս են յօդացաւ, թանջք* (մայասըլ), *տենդ* (սըթմա), *աչացաւն, եւայլն։*»

*Պէննէեան քահանայ իր ընդարձակ գործին մէջ* (*էջ* 26) *նոյնութեամբ առած է այս տողերը հազիւ դրիչի պզտիկ հպումով։*

*Գ. Մելիտինեցի, որ նոյնպէս տկարութիւններ ունի հանդէպ իր ծննդավայրին, կը գրէ թէ* «Մալաթիա իր աշխարհագրական դիրքով մօտ լինելով Միջերկրականին, օժտուած է բարեխառն կլիմայով մը։ Տարուան չորս եղանակները միայն ամիսներու անուններով կամ օրացոյցի մատնանշումներով չէ որ կ՚որոշուին, այլ անոնց մուտքը բնականօրէն կը զգացնէ մարդոց՝ եղանակի փոփոխութիւնը։

Շատ տեղեր կան քարտէսի վրան, որ գարնան եղանակին կարծես ամեն

---

(1) *Մալաթիոյ տեղագրական եւ ազգագրական աշխատասիրութիւն, տպ. 1954-ին Պէյրութ։*

է որ կը շարունակուի, կամ ամառ ու աշունը խառնուած են իրար: Այսպէս չէ սակայն Մալաթիոյ կլիման: Փոքր Հայքի այս դրախտավայր քաղաքին մէջ երբ գարունը գայ, *մարդիկ կը զգան եւ կ'ապրին որպէս գարուն*, որովհետեւ եղանակի մուտքին հետ անյապաղ բոլոր դաշտերը կը կանանչնան: Արեւի մեղմ ճառագայթներուն տակ յղի ու յուռթի հողի ծոցէն հազարաւոր բոյսեր կը բողբոջեն, պտղատու ծառաստաններ գոյնզգոյն շապիկներ կը հագնին, սար ու ձորեր ծաղկի բոյրով կ'օծանուին, մէկ խօսքով, ողջ բնութիւնը կ'առնէ գեղածիծաղ ու հանդիսաւոր երեւոյթ մը, որ տօնակատարութիւնն է, կենսատու մուտքը գարունին:

Այսպէս նաեւ տարուան միւս եղանակները, որոնք իրենց մուտքը զգալի կը դարձնեն իրենց մասնայատուկ գոյնով, համով ու հոտով, առանց իրարմէ ժամանակ գողնալու: Եթէ պատահի որ այսինչ կամ այնինչ եղանակը իր սահմանէն դուրս ելլէ, կամ օրինակ, ձմեռը իր մետասաներորդ ժամուն պահած ձիւնն ու կարկուտը տեղայ աստուածային օրհնութեամբ յղի գարնան գլխուն ու թօշնեցնէ կոկոնն ու ծաղիկը, որ գիւղացիին յոյսն ու արեւն են, բարի ու հաւատաւոր ժողովուրդը երկնից նզովքը կը համարէ այդ, ու կը կրկնապատկէ աղօթքն ու աղաչանքը աղէտի վերացման, չքացման համար:

Այժմ աւելի քան երբեք հասկնալի կը դառնայ, թէ ինչո՛ւ բանաստեղծ Ռուբէն Որբերեան[1] իր *«Գիւղիս ճամբան»* բանաստեղծութեան մէջ Մալաթիան կ'անուանէ *«կանաչի աւազան»*, բառին լայն իմաստով:

Իրաւ ալ, Մալաթիան բարեխառն կլիմայի չորս կանոնաւոր եւ ճշգրիտ եղանակներն ունի, պտղատու անվերջ ծառաստաններ, մշակելի առատ հողեր (ինքնաբաւ), նոյնքան առատ ջուրի երակներով ակօսուած եւ այս բոլորը պարսպուած երեք կողմէն երկնասլաց լեռներով ու մէկ կողմէն Եփրատ գետով» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 23–24):

*Բրոֆ. Մկրտիչ Որբերեան, նոյնպէս Մալաթիացի, չորրորդն է Մալաթիան տեղագրողներուն, որ կը խօսի գաւառին կլիմայի վրայ, եւ ինչպէս պիտի տեսնուի, բաւական տարբեր բաներ կ'ըսէ:*

*Անիկա ալ կը հաստատէ խոնաւութիւնը.—*

«Ծառերու խտութիւնն ու ջուրերու առատութիւնը միշտ խոնաւ կը պահեն մթնոլորտը:

Յուլիսի մէջ իսկ բացօթեայ տեղ պառկող մը առաւօտուն վերմակներսը թօնուտ պիտի գտնէ...:

Պէտք է ըսել թէ սառնորակ աղբիւրները ամառուան ու վառելանիւթի առատութիւնը ձմեռուան մէջ տանելի կ'ընեն բնութեան սոյն հակոտնեայ խստութիւնները:

Օդային շարժում չեղած ատեն, ծուխն ու փոշին ծառերուն փաթ կը կենան, անանկ որ, դուրսէն դիտող մը պիտի խորհի թէ սոյն նիւթերէն վրան

(1) *Սխալմամբ «Բրոֆ.» տպուած է այս բառը:*

մը քաշուած է անտառին վրայ :

Օդը առողջարար է, թէեւ լեռնային մթնոլորտի մը պէս ազատ շարժում չունի, սակայն ծառերու արտաշնչումը, կենդանիներուն եւ այս վերջիններու արտաշնչումը բոյսերուն կենսուէտ ըլլալուն բնական օրէնքով՝ մարդիկ եւ կենդանիներ առողջ, խոշոր՝ ինչպէս նաեւ ծառերը հսկայ են :

Կենդանական զարշահոտութիւններէն մթնոլորտը ազդուած չէս զգար, որովհետեւ բնակարանները ցրուած են եւ տեղը ընդարձակ է:

Կը պատմուի սակէ կէս դար առաջ[1] կանգուն-կանգուն ձիւն տեղալ սովորական բան է եղեր, մինչ հիմա խիստ հազուադէպ :

Տարուան չորս եղանակներն ալ, առանց իրարու սահմանները ափարկելու, իրենց յատուկ բնորոշութիւններով կու գան ու կ'երթան» (*տես* **ԲԻՒՐԱԿՆ**, 1900, էջ 69–70) :

*Մալաթիացիներու այս չորս վկայութիւնները, որոնք իրարու կը նմանին, տարբերութիւններով, կը ժխտեն Սրուանձտեանցի կարծիքը (**ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ**, Ա., էջ 315), որ շատ աննպաստ արտայայտուած է Մալաթիոյ կլիմային եւ անոր հետեւանք տեղւոյն առողջապահական վիճակին վրայ :*

*Տեսնենք թէ ինչպէս կ'արտայայտուի այս եկեղեցականը, որ գրեթէ Հայաստանի եւ Փոքր Ասիոյ բոլոր կողմերը շրջած է եւ ուսումնասիրական ակնարկով դիտած եւ զննած է :*

*«Ես, կ'ըսէ Սրուանձտեանց, որ ոչ ծովէն ու ցամաքէն, ոչ Չէրքէզէն ու Քրդէն, ոչ աքնելէն եւ քրտնելէն չէի տկարացած, Մալաթիոյ մէջ օրէ օր, ժամէ ժամ, վայրկեանէ վայրկեան անգամ զգալի ծանրութիւն մը եւ տկարութիւն մը կը զգամ : Բոլոր քաղաքը հիւանդ է, ծառոց խտութենէն օդ չի խաղար, ջրոց շատութենէն եւ լերան ստորոտը շինուելէն՝ խոնաւութիւն կայ, արջառոց հիւանդութեան կոտորած՝ չորս կողմը սատակներով լցած, ոչ ոք է որ զանոնք թաղէ, արեւի կիզիչ, աղբ եւ աղբիւս, փորոտիք եւ կղկղանք, խոտերուեւ միրգերու ապականած վիճակը ամէն տեղ թոյն կը սփռեն, բնակիչք զանազան ախտից բռնուած, մարդ չկայ, որ գոնէ տենդ չունենայ, հիւծողականն,* վերեմն, *տեղական ախտից կարգին է․ ո՞վ կրնայ ասոնց հասկցնել առողջապահական զգուշութիւնները, օրէնքները : Աստուծոյ հակառակ խօսիլ էր, եւ թէպէտ* Մեմլեքեթ հէքիմի *ալ ունէին, բայց կը զանգատէր՝ թէ երբեք բանձերս ուշադրութիւն չեն առներ : Փախչիլ որոշեցի եւ աճապարեցի վիճակագրութիւնս լրացնել» (**ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ**, Ա., էջ 315) :*

*Ես կը կարծեմ թէ Սրուանձտեանց աւելի իրականութեան համապատասխան կերպով արտայայտուած է քան Մալաթիացի տեղագրողները, որոնք իրենց ծննդավայրին սիրով տկարացած՝ բուն իրականութիւնը չեն*

---

*(1) Այսինքն՝ աւելի քան հարիւր տարի առաջ, քանի որ այս տողերը 1900-ին գրուած են:*

կրցած տեսնել եւ լսել։

Մալաթիա ամէն բանէ առաջ ջերմոտ էր եւ ասիկա կը բաւէր լսելու համար, որ իր կլիման առողջ չէր։ Գաւառը իբր միջավայր իր բեղմնաւոր բուսականութիւնը կը պարտի իր ջուրերու առատութեան, որ եթէ արգասաբեր կը դարձնէ հողը, սակայն կը ստեղծէ խոնաւութիւն մը, որ վտանգաւոր է մարդկային առողջութեան։

Յետոյ նոյնքան մարդկային մարմնոյն համար ցնցիչ է օդի բարեխառնութեան ելեւէջը, որ ամառուընէ ձմեռը մեծ է։

Պէննէեան քահանայ սանթիկրատ ջերմաչափով ամառը 25—30°, իսկ ձմեռը զերոյէն վար 18—24° ցոյց կուտայ բարեխառնութիւնը, զոր Բրոֆ. Մկրտիչ Որբերեան ամառը մինչեւ 33° աստիճանի կը բարձրացնէ եւ ձմեռը զերոյէն վար 15°-ի կ՚իջեցնէ։

Երկու պարագային ալ 40-էն 50 աստիճան այս փոփոխութիւնը նկատողութեան արժանի պարագայ մըն է, զոր կարելի չէ անտեսել։

## Ժ.

## ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ

Մալաթիա կը գտնուի կարեւոր ճանապարհներու խաչաձեւման կէտին վրայ, իր աշխարհագրական դիրքին բերմամբ։ Բրոֆ. Ռամսէյ, որ Փոքր Ասիոյ պատմական աշխարհագրութեան համար նշանաւոր հեղինակութիւն մըն է, իր THE HISTORICAL GEOGRAPHY OF ASIA MINOR շատ ծանօթ գործին մէջ (էջ 46) խօսելով Փոքր Ասիոյ հաղորդակցութեան ուղիներուն վրայ՝ կ՚ըսէ.

«Փոքր Ասիա ընդհանուր առմամբ խաղաղ երկիր մըն էր եւ ճամբաները մեծ մասամբ հաստատուած էին մասնաւորաբար վաճառականական նկատումներով, որպէսզի դիւրացնեն դէպի Իտալիա փոխադրութիւնը ապրանքներու։

Բայց կան զանազան բացառութիւններ այս ճամբաներու մասին։ Արեւելեան Կապադովկիոյ եւ Փոքր Հայքի ճամբաները շինուած էին սահմաններու պաշտպանութեան նպատակաւ։ Մելիտինէ մեծ զինուորական կայան մըն էր։ Այն ճամբաներուն վրայ, որոնք Մելիտինէ կը տանէին, հեռաւորութեան չափերը փորագրուած էին մղոնաքարերով։ Լեռնադաշտին հարաւային երկայնքին՝ կարգ մը ուրիշ ճամբաներ շինուած էին դաշտերու

մէջ՝ Իսաւրիայի եւ Պեսխտիոյ անզուսպ լեռնականներէն պաշտպանուելու համար։

Այս ճամբաները շինուած էին Օգոստոս կայսրի ժամանակ, որ կարգ մը հռոմէական գաղութներ եւ ամրոցներ շինեց Տաւրոսի քղանցքի երկայնքին, որոնք միացուած էին կեդրոնական գաղութին՝ Անտիոք Պեսխտիոյ։

Այս ճամբաներու շինութիւնը վստահօրէն ենթադրել կու տայ Օգոստոսի ծրագիրը՝ հռոմէական գաղութները եւ ամրոցները զինուորական պաշտպանութեան ենթարկելու։ Սակայն իրական ապացոյցներ կը պակսին։ Վաւերագիրներէն ոչ մէկը խօսած է այս կարգ մը ճամբաներու մասին եւ ոչ մէկ գրող անոնց մասին ակնարկած է։ Իրապէս՝ միակ օտար աղբիւրէ գիտցած եմ մղոնաքարերու գոյութիւնը, որոնցմէ գտած եմ հատ մը երկու տարի առաջ անծանօթ գաղութի մը կողմերը, որ կու տար Ք· Ա· 6 թուականը, Օգոստոս կայսեր եւ փոխ-կառավարիչին անունները, թիւ մը, որ կրնայ միայն բացատրուիլ իբր զինուորական կեդրոնէն մինչեւ Անտիոք Պեսխտիոյ[1] հեռաւորութիւնը։ Ուստի այդ քարը կ՚ապացուցանէ ճամբու մը գոյութիւնը, որ շինուած էր միացնելու այս գաղութը Անտիոքի հետ։ Նոյն տարին Օգոստոս հիմնեց իր գաղութները· իսկ նման ճամբայ մը կրնայ ապացուցանել միւս գաղութներու պարագան։ Այս ճամբաներու այնքան մութ մնալուն պատճառը այն է, որ Պեսխտիոյ լեռնականները յաղթած էին եւ մտած կայսրութեան մէջ յաջորդ դարու ընթացքին, եւ որ Իսաւրիացիներու վախ պատճառեց։ Այսպէս գաղութները շուտ կորսնցուցին իրենց զինուորական արժէքը, եւ զինուորական ճամբաներու դրութիւնը կործանուեցաւ եւ ընդհանուր առմամբ Անատոլեան դրութեան ենթարկուեցան»։

Բայց մինչեւ այդ թուականը, որ Հռոմ տիրակալեց իր բոլոր զօրութեամբ Փոքր Ասիոյ, եւ մինչեւ այն թուականը, որ իսլամական աշխարհը հասաւ Եփրատի արեւելեան եզերքը եւ զայն անցնիլ փորձեց, Մալաթիա իր աշխարհագրական դիրքով պահակ մը հանդիսացաւ Եփրատի կամրջագլուխին վրայ, թէ՛ Հայաստանի լեռնադաշտին եւ Փոքր Ասիոյ եւ թէ Փոքր Ասիոյ եւ Սուրիոյ միջեւ։

Արդարեւ, ինչպէս Գեր· Սահակ Կոգեան դիտել կու տայ, «հին աշխարհի ամենէն կարեւոր զինուորական պողոտաները կ՚անցնէին Մալաթիայէ։

Եփեսոսէն մեկնող պողոտան Մալաթիոյ վրայով կ՚երկարէր մինչեւ Բաբելաստան ու Հնդկաստան։ Սեւ ծովէն պողոտայ մը կ՚իջնէր դէպի Միջերկրական ծով ու իր սիրտը կը գտնէր Մալաթիոյ մէջ։ Ազգեր խուժած են այս պողոտաներէն· անոնք թէ՛ դարձուցած են վաճառաշահ քաղաք եւ թէ կողոպտած» (տես Մելիդ, Մելիտինէ, Մալաթիա, էջ 9)։

Պատմական անժխտելի իրողութիւն մըն է որ հռոմէական բանակնե-

(1) Անտիոք Պեսխտիոյ՝ այժմ Ագշեհիր։

ըր Պարթեւներու դէմ իրենց արշաւանքներուն ատեն, «թնդացուցին Մալաթիոյ պողոտան՝ անցնելու համար Հայաստան եւ Հայոց պարտադրելու Ծերակոյտին կամքը» (տես Գերպ. Սահակ Կոգեան, Նոյն, էջ 12)։

Իսկ աւելի հին ժամանակներու մէջ գլխաւոր կապ ապահովող եղած է Հիւսիսային Սուրիան, ուր Հայերը եւ Եգիպտացիք, ինչպէս նաեւ Ասորացիք՝ Հաթերու հետ մաքառած են, նուաճելու համար երկիրը, ինչպէս յետոյ հոն պիտի մաքառէին Սուրիոյ տիրապետութեան համար Արաբները եւ Բիւզանդացիք, ինչպէս պիտի տեսնուի Մալաթիոյ պատմական անցեալին վրայ խօսուած ատեն։

Հետեւաբար Մալաթիայէն դէպի արեւելք՝ Հայաստան եւ Պարսկաստան գացող ռազմուղիներու չափ եւ աւելի կարեւոր էր թերեւս այն ճամբան, որ Մալաթիայէն կ'անցնէր երկարելու համար մինչեւ Ամանոս լեռները, անկէ լեռնանցքէ մը անցնելով մտնելու համար Սուրիա։

Արդարեւ, ինչպէս կը տեսնուի, կար Ամանոս—Մալաթիա պողոտայ մը՝ շատ հին ժամանակներէ ի վեր յայտնի եւ պատմական կարեւոր դեր կատարող։

Այսպէս, կը յիշուի թէ Ուրարտայի թագաւոր 751 Ն. Ք. «Սարտուրիս Բ. ...իր արշաւանքն ուղղեց հիւսիսային Սուրիոյ վրայ Մալաթիոյ ճամբով։ Անկէ անդին դէպի հարաւ ճամբան կ'երկճղէր ու մին Կատաւոնիոյ (այսինքն, կա՛մ Կոմանայի եւ կամ Կոկիսոնի) վրայէն անցնելով Սսոյ մօտ կ'իջնէր Կիլիկիոյ դաշտը, իսկ միւսը արեւելեան Տաւրոսի կիրճերէն կ'իջնէր Կոմմագինէ» (Եղիա Քասունի, ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 406)։ 748–ին (Ն. Ք.) Սարդուրիս կրկին Սուրիա կը դառնայ իր նուաճումները շարունակելու համար եւ կը նուաճէ Խուրա եւ Նուշինի քաղաքները Ութխիշա երկրին մէջ, ապա կը գրաւէ Բիէ քաղաքին գաւառը, որ Բաշտանի թագաւորին կը պատկանէր։ Յետոյ կը նուաճէ Իրսինի (կամ Սուրսնի) եւ Մելիտա (կամ Մելինէ) քաղաքները, որոնց թագաւորը իր առջեւ կու գայ հպատակութիւն յայտնելու ( Adontz, *HISTOIRE d'ARMENIE,* էջ 170 եւ Քասունի, ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 408—409)։

Ե. Քասունի կ'ըսէ թէ «թերեւս պէտք է Մալաթիայէ Մարաշ եւ Այնթապ տանող կարաւանի ճամբուն վրայ փնտռել արձանագրութեան մէջ յիշուած տեղերը եւ այս հաւանականութիւն կը ստանայ՝ եթէ Մելիտս ընթերցումն ուղիղ է» (տես Քասունի, Նոյն, էջ 409)։

Այս ճամբան ըստ Ե. Քասունիի՝ «Հայկական բարձրաւանդակի եւ հիւսիսային Սուրիոյ միջեւ հազարամեակներէ ի վեր միակ մնայուն հաղորդակցութեան ճամբան էր» (Նոյն)։

Եղիա Քասունի, այս հիման վրայ «Ութխիշա (Լուխզու, Լակոտինա) երկրին Խուրա եւ Նուշինի քաղաքները» կը նոյնացնէ յիշեալ պողոտային վրայ արդի Կէօզենէ եւ Սիւրկիւ հանգրուաններուն հետ։ Իսկ Բաշտանի թագաւորին պատկանող Բիէ քաղաքին մարզը՝ արդի Վէրանշեհիրի եւ Հէն

Զուպադրայի հետ» (*ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ*, էջ 409)։

*Հիմա Մալաթիայէն Կէօլպաշ եւ ապա Փազարճըգ եւ Ամանոս լեռնող երկաթուղին կը հետեւի առհասարակ Ամանոսէն Մալաթիա տանող հին կարաւանի ճամբուն, որ Մալաթիոյ արեւմտեան կողմը եղող Սուլթան Սույու գետակին հեղեղատին զուգընթաց կ'ընթանայ մինչեւ Սիւրկիւ։*

20 *Փետրուար* 1956 *թուականով իր մէկ նամակին մէջ Մանուէլ Քասունի իր եղբօր տեղագրական վերոյիշեալ տողերուն վրայ հիմնուելով՝ կ'եզրակացնէ թէ քանի որ Բիէն Ատըեամանի մօտ է, ուրեմն Վերանշեհիր – Զուպատրա Մալաթիայէն կը հեռանայ եւ Ատըեամանի կը մօտենայ։*

*Այս շրջանակին մէջ է որ տեղի ունեցած է վճռական ճակատամարտ մը Ուրարտուի եւ Ասորեստանի միջեւ, որուն վայրին մասին անհամաձայն էին Եղիա եւ Մանուէլ Քասունի եղբայրները, որոնք այդ շրջաններու ծանօթ են։*

*Վեր. Ե. Քասունի Կիշտան=Կէօստէն հաւասարութիւնը կը պաշտպանէր, իսկ Մանուէլ Քասունի՝ Կիշտան=Քիւշտամ նոյնացումը, եւ կը ջանար այդ դէպքին շուրջ հիւսել Այնթապ—Հռոմկլայ ճամբուն տեղագրականը։*

*Տոքթ. Ն. Պաղտոյեան (այժմ Ուինչիստր, Ամերիկա), որ իբր բժիշկ երկու անգամ երթալ-գալու առիթով տեսած, շրջած եւ պատմական հետեւութիւններ հանած էր, այս առթիւ իրեն եղած հարցումի մը պատասխանելով* 1952–*ին մասնաւոր նամակով մը կը նկարագրէ Մալաթիա—Ամանոս պողոտային ինչ ինչ կէտերը, որ սերտօրէն առնչութիւն ունի Վերանշեհիր — Զուպատրայի դիրքը որոշելու տեսակէտէն գլխաւորապէս։*

*Այդ նամակը, որմէ քաղուած մը ազնուօրէն մեզի տրամադրած է Տիար Մանուէլ Քասունի, կը պարունակէ սա հետաքրքրական տողերը. «Որքան կը յիշեմ,* 1907–*ին, ուշ աշնան — նախ քան անձրեւները, իջայ Աղճատաղէն, Փոլատի* Տերպենտէն *(կիրճ) (Պաչեարըի եայլայէն) եւ երկու օր մնացի Վերանշեհիրի – պատմական Սեզոփեթրայի մէջ, եւ* Սիւրկիւի*, Կէօստէնի, Էրքէնէքի եւ Թութի վրայով իջայ Պեհեսնի եւ Ատըեաման։ Պօզտաղի լեռնանցքները բաւական լաւ կը ճանչնամ։ Եղիային (Քասունի) մեկնութիւնները ճիշդ են հոս։ ... Հարկ է ի մտի ունենալ որ Կոմմագենեան Տաւրոսներու շրջանին մէջ (եւ բոլոր Տաւրոսներու երկայնքին) ամենացած խազը* ( notch ) Կէօստէնն *է, ծովու մակերեսէն հազիւ* 4000 *ոտք բարձր։ Իրական ջրբաշխը կ'իյնար այս լեռնանցքէն հիւսիս, Սիւրկիւի հովտին մէջ։ Սիւրկիւ վտակը նախապէս կը հոսէր Կէօքսուի մէջ, Էրքէնէքի մէյտանի բարձրութեանց եւ Շահին Գայասիի կիրճին միջեւ։* 1907–*ին Սիւրկիւի ջուրը նորափոր ջրանցքով մը առաջնորդեցին եւ թափեցին Սուլթան Սուի մէջ, ոռոգելու համար Արկայի մէջ Սուլթան Համիտին պատկանող Չիֆթլիկի Հիւմայունի արտերը։ Ես այդ ձեռնարկը դիտած ու սերտած եմ Թոխմայի ստորին աւազանին մէջ»։*

Տոքթ. Պաղտոյեան, նոյն խնդրոյն նուիրուած Մայիս 1954-ի թուականով ուրիշ նամակով մը կը կրկնէ իր նախորդ ըսածները, սա ձեւով.

«1907-ին Աղճատաղէն (Մալաթիոյ շրջանակ) գացի մինչեւ Պեհեսնի եւ Ատըեաման, croo country [1] միշտ լեռներու վրայէն. Պաչեարըէ ետք Փոլատի տերպէնտին տակ իջանք Վերանշեհիր, պատմական Սեզոփեթրա:

Այս տեղը բնակուած էր Կովկասէն եկած մուհաճիրներով: Ես հետաքրքրուեցայ աւերակներով: ...Կիւղենէ եւ Սերկիւ հարթավայրով ընթանալով՝ բարձրացանք Կէօստէնի սարահարթը: Կէօստէնը շատ հին ճամբայ մըն էր. արհեստականօրէն չէր շինուած, այլ երկար դարերու ընթացքին գործածութեամբ մաշած եւ բաւականին վար իջած: Կէօստէնի լեռնանցքը՝ Տաւրոսներու վրայ՝ կարելի է ըսել ամենացած կապանն է, որ կը կապէ Հայկական Բարձրաւանդակը հարաւին՝ Սուրիոյ. հետեւաբար մեծ աշխարհակալութեանց դասական ուղին է: Եթէ Կէօստէնի լեռնանցքը շարունակէինք, պիտի իջնէինք Փերվերիի կամուրջը (հռոմէական), Կէօքսուի վրան: Սակայն մենք շարունակեցինք դէպի արեւելք եւ գացինք Խրքէնէքի ու Սինկա գիւղերու վրայէն դէպի Թութ գիւղը:

Թութէն դուրս գիշերեցինք, եւ աւազակներու դէմ հսկում կատարելու ստիպուեցանք: Թութ գիւղէն ետք, Կէօքսուն անցանք հռոմէական միականի կամուրջով դէպի Պեհեսնի:

Խալիֆայական շրջանին Արաբները, որոնք առաւելապէս կը կռուէին իրենց այրուձիով, անտեսած են ընդհանրապէս ամառները Պէյլան – Կիւլէքպողազը ճանապարհը եւ ընտրած են «Կաղնը եոլու»ն, որ 14—18-րդ դարու կէսը միշտ գործածուած է արաբ, քիւրտ եւ թիւրք կէօչէրներուն կողմէ Ուզուն Եայլա երթալ-գալու համար:

Այս ճամբան սակայն ձմեռը բացարձակապէս անանցանելի է:

Ինչպէս քիչ առաջ գրեցի, գտնուած եմ Կէօքսուի վերեւ Խրքէնէք — Սինկա — Թութ շրջանին մէջ: Յետոյ Կէօքսուն անցած եմ Թութ գիւղէն վարը կեցած հռոմէական կամուրջով եւ Պեհեսնի գացած: Եւ անկէ ետքը Կէօքսուն կտրելով երկու շաբաթուան չափ այցելած եմ Ատըեամանը եւ Փիրէ (Փիէ) հռոմէական աւանը:

Կէօստէնը՝ Տաւրոսներու վրայ՝ ամենահին ճամբաներէն մին է, որ կը կապէ Հայկական Բարձրաւանդակի արեւմտեան մասը վարի դաշտերուն: Սինկա գիւղը յաջողած է իր անունը պահել մօտ 3000 տարիներ: Կէօքսուի որոտը կարելի է լսել Սինկա գիւղէն. գետակի խրամատն ալ տեսանելի է Սինկա գիւղէն: Անկարող եմ ըսելու թէ Սինկա գիւղն իր անունը առած է Սինճ գետէ՞ն թէ հակառակը:

Կիշտանը հարկ է մեկնուի Սիւրկիւի եւ Բավրալուի[2] միջեւ կեցած

(1) Ըսել կ'ուզէ՝ ուղիղ գիծով:

(2) Տիար Մանուէլ Քասունի կը նոյնացնէ Փերվերիի հետ:

*վիմափոր եւ բարձրադիր լեռնանցքով* — Կէօստէնով» :

*Արդ, ինչպէս Տիար Մանուէլ Քասունի կ'եզրակացնէ, յայտնի է որ Զուպատրա – Սեզոփեթրա – Վերանշեհիր Սուլթան Սուի ակերուն մօտ ըլլալով՝ Նոր Մալաթիայէն* 35—40 *մղոն հեռու է*[1] :

*Նոյնպէս կայ, ըստ Մանուէլ Քասունիի, դէպի Ատըեաման կարճ ճամբայ մը, Զրմուխտիի վրայով, որ շուրջ* 50 *մղոն երկարութիւն ունի* :

*Այս բոլոր տեղեկութիւնները կը հաստատեն այն տեսութիւնը թէ Մալաթիա, ինչպէս ճանապարհներու խաչաձեւման վայր մըն էր եւ անկէ անցնող կարաւանի ճամբաներն էին որ Փոքր Ասիան կը կապէին մէկ կողմէն Հայաստանի եւ միւս կողմէն Սուրիոյ* :

*Իսկ գետային հաղորդակցութիւններ չկային հին աշխարհի այս կարեւոր երկրամասին մէջ, հակառակ անոր որ Եփրատի պէս ջուրի մեծ երակ մը կ'եզերէր Մալաթիոյ գաւառը արեւմուտքէն* :

*Դժբախտաբար Եփրատ ոչ մէկ օգուտ կ'ընծայէր գաւառին, վասնզի հողին մակերեւոյթէն բաւական խոր անկողին մը ունենալով հողի ամենադոյզն մաս մը չոռոգելէ զատ, իբրեւ լայն ջուրի հոսանք մը գոնէ իբր հաղորդակցութեան ճամբայ չէր ծառայեր, իր եզերքներու վրայ հաստատուած վայրերուն միջեւ* :

*Այսպէս այս տեսակէտով ալ ծառայութիւն մը չի մատուցանէր Մալաթիոյ գաւառին, որուն հաղորդակցութիւններուն նպաստելու տեղ արգելքներ կը ներկայացնէ, վասնզի անկէ անցնելու համար դժուարութիւններ կան* :

*Պէննէեան քահանայ* (Ը., էջ 37–8) *անոր վրայէն անցնելու համար երեք միջոցներ կը նշանակէ*. 1. *նաւակ*, 2. *տկալաստ եւ* 3. *անցք* (կեչիտ) :

1.— Նաւակներ.— *Կը գտնուէին երեք տեղ. Ա. Շէյխ Հասանի (Հասէն), Բ. Հարդիի եւ Գ. Իզօղլուի Թիրօթ գիւղին առջեւ: Այս նաւակները շինուած էին կաղամախիի հաստ տախտակներէ, եւ կը գործածուէին երկու թիակով: Անոնք կրնային փոխադրել գետին մէկ եզերքէն միւսը* 40–50 *մարդ կամ* 20 *ձի եւ կամ* 3–4 *կառք* :

*Նաւակներէն ամենէն բանուկը եւ շահաւէտը Իզօղլուինն էր, վասնզի Ցամսոն–Պաղտատ խճուղին ասկէ կ'անցնէր* :

*Նաւակներու օրական անցուդարձը առ առաւելն* 10 *անգամ կ'ըլլայ: Ուղղակի դէմ դիմաց անցնիլ անկարելի էր հոսանքին պատճառով* :

*Նաւակները ամէն տարի քաղաքապետութեան (պէլէտիէ) կողմէ աճուրդով* 20–25 *հազար ղրուշի վարձու կը տրուէին անհատներու* :

2.— Տկալաստ (*քէլէկ*).— *Ունէին գետեզերքը բնակող բոլոր գիւղացիները: Ասիկա կը կազմուէր* 15–20 *կամ մինչեւ* 30 *հատ փչուած տիկերով*,

(1) *Մանուէլ Քասունի կ'ըսէ թէ նորագոյն Թրքերէն ատլաս մը նոյն տեղերը Տօղանշեհիր մը կը նշանակէ իբր երկաթուղիի կայարան, եւ հաւանական կը նկատէ որ Վերանշեհի անունը փոխուած է Տողանշեհիրի (ծնող քաղաք) Քեմալականներու կողմէ*։

որոնց տակը կը հաստատուէին փայտէ ձողեր։ Տկալաստը կրնայ վերցնել 2000–2500 քաշ ծանրութիւն։ Ասոր ալ անցուղարձը քիչ եւ վտանգաւոր էր, մանաւանդ գետին յորդած ժամանակները եւ հոսանուտքէ անցնելու միջոցին, որովհետեւ իր շուրջը նեցուկ չունենալէ զատ, պզտիկ հովէ մը անմիջապէս տատանելով՝ կը կորսնցնէ հաւասարակշռութիւնը եւ կը տապալի։

3·— Գալով անցքերուն, կարելի է ըսել թէ անոնք երկուք էին. մին՝ Շէյխ Հասանի եւ միւսը՝ Քիլիսիկի առջեւ։ Անցքերը միշտ ծանծաղ տեղեր կը գտնուէին եւ երկու երեք տարին անգամ մը հազիւ թոյլ կու տան անցնելու, այն ալ ամառը։ Անցքը կը կատարուի ուղտերով, ձիերով եւ հետիոտն։ Անցուղարձի այս միջոցը ամենէն վտանգաւորն էր։

Ճարպիկ լուղորդներ երբեմն առանց ոեւէ միջոցի եւ երբեմն ուռած տիկի վրայ հեծած եւ կամ խալէմ ըսուած խոշոր դդումներ իրենց անութին տակ ունենանլով կ՚անցնին Եփրատը ու մասնաւոր երկժանիով փայտ դուրս կը հանեն գետէն։

Գետէն անցնելու ամենէն ապահով միջոցը կամուրջն է։ Դարեր առաջ հատ մը կայ եղեր Բիրօթի առջեւ, որուն հիմերը միայն կը տեսնուին ջուրին մէջ (Պէննէեան Ը., էջ 38)։

Եփրատի վրայ Մալաթիա միակն է, որ կը ներկայացնէ յարմարագոյն վայրը ոչ միայն կարաւաններու, այլ նաեւ բանակներու անցքին, ինչպէս կը տեսնուի։ Հետեւաբար կամուրջի մը շինութեան գաղափարը անշուշտ մտածուած պէտք է ըլլայ ապահովելու համար Հայաստանի եւ Փոքր Հայքի, Սուրիոյ եւ Փոքր Ասիոյ ու Միջագետքի միջեւ հաղորդակցութիւնները։

Պատմական յայտնի իրողութիւն մըն է որ Դարեհի եւ Քսերքսէսի ատեն երբ Պարսից տիրապետութիւնը կը հասնէր մինչեւ Յոնիական ծով, ամբողջ պարսիկ ընդարձակածաւալ տէրութեան մէջ երթեւեկի դիւրութիւն եւ աշխոյժ կար։

Արքունի կրկին պողոտաներ Շօշը եւ Եկբատանը կը կապէին տէրութեան հեռաւոր մասերուն հետ։

Մելիտինէ, ուր կը նստէր Տրիբազ Սատրապը՝ «բարեկամ թագաւորին» (401 Ք. Ա.), իր դիրքին պատճառով այս ճամբաներուն մէկուն վրայ կը գտնուէր անպատճառ։

Այդ ճամբաներուն մեծ ուշադրութիւն եւ խնամք կը տարուէր։

Կանոնաւոր օթեւաններ կանգնուած էին ամէն 3–5 փարսախին, ուր արքունի սուրհանդակներ ձիերը կը փոխէին։

Որքան ալ այս տեղերը սովոր էր իջնել եւ օթեւանել իր ճամբորդութիւններուն ժամանակ, ճամբան կարեւորագոյն տեղերը բերդեր կառուցուած էին եւ պահապաններ դրուած։

Այս արքունական ուղին հաւանօրէն կառուցած էր Դարեհ։

Հերոդոտոս (Ա. 75 եւ Ե. 52) կը հաստատէ որ Կրեսոսի ժամանակ կա–

յին արդէն Ալիսի կամուրջները եւ արքունի ճանապարհին շինութեան առեն տրամաբանօրէն Եփրատի վրայ ալ կամուրջ մը պէտք էր շինուած ըլլար։

Արքունի այս պողոտան, որ կ'անցնէր Կեսարիա–Կոմանա–Մելիտինէ գիծով, Բիմբոյա (*Bimboa*) լերան բոլորտիքը հիւսիսէն ոչ թէ հարաւէն պատելով կը դառնար։ Անկարելի է որ հոն ընդհատուած ըլլար։

Առեւտրական այն պողոտան, որ միջազգային վաճառականութեան կարեւոր երակ մըն էր եւ աշխոյժ գործունէութեան մէջ էր նաեւ Ալեքսանդրի աշխարհակալութեան յաջորդող դարերուն, կու գար Մելիտինէէն եւ Եփրատը կ'անցնէր եւ կ'երկարէր մինչեւ Ամիդ (Տիարպեքիր) (հմմտ. Ստրաբոն, ԺԲ. 2. 1. եւ ԺԴ. 2. 29., նաեւ Թ. Ռէյնախ ՄԻՀՐԴԱՏ ԵՒՊԱՏՈՐ, Մ. Ա. Գարագաշեան. ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 131, Ե. Տիչոյեան ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՉՆԱԿ, 1933, էջ 1064)։

Նոյնպէս հռոմէական մեծ ուղին, որ ասկէ կ'անցնէր, չէր կրնար ընդհատուած ըլլալ Եփրատի առջեւ։ Արդարեւ անիկա Եփրատէն անդին կը շարունակուէր, ինչպէս ցոյց կու տան մինչեւ հիմա մնացած հետքերը այդ ճամբուն։

Մասնաւորապէս ուշագրաւ է որ Մելաս (Թոխմա) գետը, որ Մալաթիա գաւառը կը կիսէ եւ կը միանայ Եփրատի, հին քաղաքէն երկու ժամ վարը ունի իր վրայ ձգուած նշանաւոր կամուրջ մը Գըրքկէօզ անունով, 40 կամարներու վրայ հաստատուած, որուն հին 20–25 աչքերէն միայն ջուր կ'անցնի (Պէննէեան քհնյ. Ը., էջ 39–40)։

Այս կամուրջը ոեւէ արձանագրութիւն չունի, եւ պատմական յիշատակութիւն մը չունինք անոր մասին. աւանդութեան մը համաձայն շինուած է Սուլթան Մուրատ Դ.էն (1622–1640), որ ապստամբներով եւ տէրէպէյիներով գրաւուած օսմանեան պետութեան ասիական գաւառները նուաճելու եւ հնազանդեցնելու համար՝ իր բանակը շարժուն վիճակի մէջ պահած էր եւ հաղորդակցութեան միջոցներու պէտք ունէր։ Հետեւաբար անհաւանական չէ որ իր բանակներու անցքը դիւրացնելու համար շինուած ըլլայ այս կամուրջը, որ Սըվազ–Մալաթիա խճուղին կը միացնէր։

Այս կամուրջը եթէ ԺԷ. դարուն շինուած է, շատ հաւանական է որ հին առեն գոյութիւն ունեցող կամուրջի մը տեղը հաստատուած ըլլայ, վասնզի եթէ աւանդապահ արեւելքի մէջ սառած ու անփոփոխ բան մը կայ, ան ալ ամենէն աւելի հաղորդակցութեան ճամբաներն են, որոնք տակաւին նախնեաց բացած նոյն գիծերուն վրայ կը շարժին։

Առայժմ ուղտն ու ձին, էշն ու սայլը կը շարունակեն երթեւեկել այն ճամբաներուն վրայ, որոնցմէ կ'օգտուէին դարեր առաջ։

Օթեւաններու աւերակները, մղոնաքարեր, դիտարան բլուրներ եւ կամըրջագլուխներ յայտնի կը ցուցնեն ճամբաներուն ուղղութիւնը (հմմտ. Zimmerer, Հ. Ա. 1900 էջ 35)։ Հետեւաբար բնաւ պէտք չէ զարմանալ որ Մալաթիա ալ վաղեմի ճանապարհներու վրայ կը գտնուէր։ Իբրեւ առեւ–

*տըրական կեդրոնավայր եւ երթեւեկի ճամբու վրայ ինկած քաղաք մը՝ խըճուղիներով կապուած էր շրջակայ կեդրոններու հետ։*

*Մասնաւորապէս բաւական լաւ խճուղիներով կապուած էր հին ժամանակներէն ի վեր Սեբաստիոյ եւ Խարբերդի հետ։ Սեբաստիոյ խճուղին քաղաքէն դէպի հիւսիս, Հին Մալաթիոյ ճիշդ քովէն կ'երկարի դէպի Մելաս (Թոխմա գետ), դիմելու համար դէպի հիւսիս-արեւմուտք։ Եփրատին վրայ խճուղի մը կար, որ Խարբերդ կ'երթար։*

*Նոյնիսկ* 1870*-ական թուականներուն, այսինքն մօտաւորապէս* 70—80 *տարիներ առաջ, ճանապարհները «խիստ բանուկ» եւ «դիւր» էին, ինչպէս կը հաւաստէ Սրուանձտեանց* (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., *էջ* 324)։ *Ան կը վկայէ թէ Մալաթիա յարաբերութիւն ունէր Հալէպի, Մարաշի, Իսկէնտերունի, Տիարպեքիրի, Խարբերդի, Սեբաստիոյ, Կարինի եւ շրջակայ փոքր քաղաքներուն հետ, եւ ինչպէս անիկա կ'ըսէ, «իբրեւ պորտ» կը ներկայանար «Բաղդատի եւ Կ. Պոլսոյ մէջ» (նոյն)։*

*Նկատելի է որ բոլոր գլխաւոր ճամբաները, որ Մալաթիայէն կ'անցնին, արեւելքէն արեւմուտք եւ փոխադարձաբար կ'երթան, վասնզի Թոհըրպախի տեսութեան համաձայն՝ Հայաստանի մէջէն արեւելքէն արեւմուտք ու փոխադարձաբար երթալ ուզող մէկը շատ դիւրաւ կրնայ գտնել հովիտներ եւ դիւրանցանելի անցքեր, բայց երբ հիւսիսէն հարաւ եւ փոխադարձաբար երթեւեկել փորձէ, պարտի բազմաթիւ բարձր ու դաժան լեռնաշղթաներ բարձրանալ։*

*Արեւելք արեւմուտք բնութենէն նախասահմանուած հաղորդակցութեան գլխաւոր ճամբան կ'անցնի անմիջականօրէն Արարատի հարաւէն եւ հայ-իրանական լեռնաշղթայէն, Պայազիտի վրայով կը հասնի Կարնոյ դաշտը, անկէ Երզնկա՝ արեւմտեան Եփրատի եզերքը եւ ասկէ ալ դէպի Սեբաստիա՝ Ալիս գետին եզերքը, Փոքր Ասիոյ պատկանող առաջին եւ կարեւոր քաղաքը։ Հարաւային ճամբայ մը Ուրմիոյ աւազանէն կը տանի դէպի Վանի ծովը։ Հոս ծովին արեւմտակողմի վերջաւորութեան վրայ ճամբան երկուքի կը բաժնուի, որոնցմէ մէկը Բաղէշի ժայռահատուածներու մէջէն՝ դիւրաւ կ'անցնի հայկական Տաւրոսը եւ դէպի Տիգրիսի հովիտը կը հասնի, իսկ երկրորդը Մշոյ դաշտէն կ'անցնի եւ անկէ ալ ամայի լեռնաքարերու մէջէն՝ Բալուէն անցնելով դէպի Խարբերդ եւ Մալաթիա կը հասնի, միացեալ Եփրատի անցքին հանդիպակաց կողմը։ Խարբերդէն Արղընի-Մատէն կիրճէն անցնելով եւ Տաւրոսի ճամբով՝ Տիարպեքիր (Տիգրիսի վրայ), իսկ Մալաթիայէն, ուրիշ մը՝ արեւմտակողմէն՝ Կեսարիա, ուր կը միանայ Փոքր Ասիական ճամբաներու ցանցը (հմմտ.* ՀԱՅԱՍՏԱՆ ԸՍՏ ՌՈՀՐՊԱՀԻ 1919-Ի ՏԵՍՈՒԹԻՒՆ, *էջ* 9 *կամ* ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա. *հտ., էջ* 71)։

*Սովորական այս ճամբաներէն զատ, որոնք քիչ-շատ ապահովուած են, կողմնակի ճամբաները շատ չէին եւ անապահով, մինչեւ* 100–150 *տարի առաջ։*

*Մոլթքէ, որ իբր մարզիչ օսմանեան բանակին՝* 1838–*ին Փոքր Ասիոյ մէջ պտոյտ կատարած է, նոյն թուականի Նոյեմբերի գրած իր մէկ նամակին մէջ կը պատմէ թէ ինչպէս Գոնիոյ եւ Կեսարիոյ կողմերը շրջած ատեն փափաքած է լեռներու մէջէն ուղղակի ճամբայ մը գտնել դէպի Մալաթիա եւ իրեն ըսուած է թէ այսպիսի ճամբայ մը չկայ եւ բոլոր անցքերը բռնած են Աւշարները:*

*Ճամբան այնքան անապահով էր որ Տէվէլիի* միւսէլլիմը *(կառավարիչ) բանակին ընդհանուր հրամանատար Հաճի Ալի փաշայի յանձնարարականին համաձայն անձնական պատասխանատուութիւն չէ ուզած ստանձնել բրուսացի զօրավարին կեանքին ապահովութեան համար, եւ հրամանատարին խորհուրդ տուած է դիմել Թոմարզայի Հայոց վանքին վանահօր, որ Աւշարներուն վրայ իրեն ունեցած ազդեցութեամբ կրցած է արդարեւ Մոլթքէի փափաքած անցքը ապահովել անոր (տես* ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, *էջ* 662–663):

*Հին ժամանակներու մէջ հակառակ Անատոլուի մէջ տիրող այս անապահովութեան՝ Մալաթիա միշտ կեդրոնավայր մը եղած է զինուորական եւ առեւտրական եւ երթեւեկ ունեցած է շրջակայ քաղաքներուն հետ:*

*Հանդ. Պէննէեան քահանայ (Հ., էջ* 78–79) *կազմած է ցուցակ մը, որ ցոյց կու տայ թէ Մալաթիա որքան հեռու է Անատոլեան զանազան քաղաքներէ:*

*Այս ցուցակին համաձայն Մալաթիայէն հեռու են.*

| | | | | |
|---|---|---|---|---|
| Տարենտէ | դէպի | արեւմուտք | 18 | ժամ |
| Կիւրին | » | » | 23 | » |
| Կեսարիա | » | » | 56 | » |
| Էլպիստան | » | » | 18 | » |
| Մարաշ | » | հարաւ-արեւմուտք | 38 | » |
| Պեհեսնի | » | » | 22 | » |
| Այնթապ | » | » | 50 | » |
| Հալէպ | » | » | 74 | » |
| Հիւսնի-Մանսուր | » | հարաւ | 18 | » |
| Ուրֆա (Եդեսիա) | » | » | 36 | » |
| Սեւերեկ | » | » | 28 | » |
| Տիարպեքիր | » | հարաւ-արեւելք | 46 | » |
| Չնքուշ | » | » | 18 | » |
| Խարբերդ | » | հիւսիս-արեւելք | 18 | » |
| Բալու | » | » | 34 | » |
| Կապան Մադէն | » | » | 20 | » |
| Տիվրիկ | » | » | 38 | » |
| Ակն | » | » | 36 | » |
| Արաբկիր | » | » | 18 | » |
| Սեբաստիա | » | հիւսիս-արեւմուտք | 42 | » |
| Եւդոկիա | » | » | 60 | » |

*Այսօր այս հեռաւորութեան ժամերը իրենց արժէքը կորսնցուցած են, քանի որ Մալաթիա Անատոլուէն անցնող երկաթուղիի ցանցին կապուած է եւ շատ բան փոխուած է, բայց մեղք որ հայ ստեղծագործ միտքը եւ շինարար ձեռքերը այլեւս գոյութիւն չունին հոն, ընծայուած պատեհութենէն օգտուելու համար:*

## ԺԱ.

## ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐ

*Պատմական Մելիտինէն, ինչպէս տեսնուեցաւ, անցքի մը վրայ հաստատուած վայր մըն էր եւ կամուրջ մը շատ մը ազգերու համար, որոնք կը ձգտէին դէպի արեւմուտք՝ Փոքր Ասիա, իրենց տիրապետութիւնը տարածելու համար:*

*Այս գաւառը իբր ճամբայ չէ կրցած տեւականօրէն միակ պետութեան մը կապուած երկրամաս մը դառնալ, այլ բոլոր զօրաւոր իշխանութիւններ, որոնք հիներու ծանօթ աշխարհին տիրակալելու փորձ ըրած են, ատոր կոխան ըրած են այս աշխարհամասը, որ կռուախնձոր եղած է անոնց միջեւ եւ միշտ զօրաւորագոյնէն յափշտակուած:*

*Այս իսկ պատճառով անյիշատակ ժամանակներէ սկսեալ հաստատուն եւ տեւական վիճակ մը չէ ունեցած եւ շարունակ տէր փոխած է, ինչպէս պիտի տեսնուի իր պատմութեան մէջ:*

*Խօսիլ շատ հին ժամանակներու վրայ եւ սեպագրական շրջանի դասական դարերու մէջ Մալաթիոյ երկրամասին ո՛ր պետութեան պատկանելուն եւ վարչական ի՛նչ բաժանումներու մաս կազմելուն վրայ, դժուար է, վասնզի շատ բան տակաւին մութ է եւ նոր յայտնութիւններու պէտք կայ:*

*Սակայն պարսիկ մեծ կայսրութեան կազմութենէն ետք, երբ արեւելքի պատմութիւնը կանոնաւոր շարայարութեամբ մը կը ներկայանայ, այլեւս հնարաւոր կը դառնայ Մելիտինէի շրջանակին պատմութեան հետեւիլ եւ ճշդել թէ այդ գաւառը ի՛նչ պետական եւ վարչական շրջանակներու մաս կազմած է:*

*Արդարեւ պարսիկ մեծ կայսրութիւնը երբ իր իշխանութիւնը կը տարածէ մինչեւ Եգէական ծով, Մելիտինէ կ'ենթարկուի այդ կայսրութեան՝ իբր ճամբու վրայ գտնուող երկիր: Առանց Մելիտինէն գրաւելու՝ Պարսիկները չէին կրնար գրաւած ըլլալ Փոքր Ասիան եւ Սուրիան եւ հասնիլ մինչեւ Եգիպտոս:*

*Պարսկական տիրապետութեան շրջանին Մելիտինէ անոր սատրապութիւններէն, այսինքն վարչական բաժանումներէն մէկուն կեդրոնն էր, եւ հոն կը նստէր Տիրիբազ սատրապը, որ «բարեկամ թագաւորին» կը կոչուէր: Պատմութիւնը իր մասին տուած է բաւական տեղեկութիւններ, բայց մութ կը մնայ թէ այդ շատ ազդեցիկ սատրապը, որ դրամ իսկ հանած էր, արեւմըտեան Հայաստանի սատրա՞պն էր թէ ընդհանուր Հայաստանի սատրապին ենթակայ կուսակալ մը:*

*Այս մասին համաձայն չեն պատմագիրները: Մեծն Աղեքսանդրի աշխարհակալութիւններէն ետք, Մելիտինէ ենթարկուեցաւ Սելեւկեան թագաւորութեան եւ ապա մաս կազմեց Կապադովկիոյ անկախ թագաւորութեան, որուն հարաւային մասին մէջ կը գտնուէր:*

*Ստրաբոն եւ Պտղոմէոս Մելիտինէն միեւնոյն տեղը ցոյց կու տան: Սահմաններն էին արեւելքէն՝ Եփրատ, հիւսիսէն՝ Փոքր Հայք, արեւմուտքէն՝ Սարկարաւուսէնէ*[1] *եւ Կատաւոնիա*[2] *եւ հարաւէն Կոմմագինէն*[3] (Ramsey, *THE HISTORICAL GEOGRAPHY OF ASIA MINOR, 313*):

*Հաւանաբար՝ Պտղոմէոսի կողմէ նշանակուած Լաւիանեզինէ*[4] *եւ Սաւրասինէ*[5] *բաժանումներուն քաղաքներէն ոմանք Մելիտինէի մէջ կը մտնէին, իսկ մնացածները կը պատկանէին Կոմմագինէի կամ Կատաւոնիոյ, բայց անոնց մեծագոյն մասին վրայ այնքան քիչ ծանօթութիւն կայ որ կարելի չէ անոնց տեղերը որոշել* ( Ramsey, *նոյն, էջ* 313) :

*Դժբախտաբար բոլոր այս բաժանումները հաստատուն եւ տեւական չեն եղած: Ստրաբոն (Ն. Ք.* 63–19 *Ք. ետք), որ կապադովկիացի մըն էր, ինքն կ'ըսէ թէ Կապադովկիան շատ մասերու բաժնուած էր եւ այդ բաժանումները միշտ փոփոխութիւններ կրած էին: Ուստի կարելի չէ որոշ տուեալներ ներկայացնել թէ Մալաթիա իր վարչական ո՛ր բաժանումին կը պատկանէր:*

*Ստրաբոն ունի քանի մը յիշատակութիւններ այդ շրջանին մասին, որոնք թէեւ ամբողջական գաղափար մը չեն տար, սակայն մասամբ կը լուսաբանեն Մելիտինէի դիրքը Կապադովկիոյ կառավարական կազմին մէջ: Ստրաբոն կ'ըսէ թէ* «Մելիտինէ Կապադովկիոյ տասներորդ մասն է, երկրին տասը կուսակալութեան բաժնուելէն ի վեր» (Նոյն): *Եւ որովհետեւ Հերոդոտոսէն (Ա.* 72 *եւ Ե.* 54) *գիտենք թէ Կատաւոնիա Կիլիկիոյ մասն էր, ուրեմն Մելիտինէ Կիլիկիայէն անջատուած եւ Կապադովկիոյ կցուած էր, եւ*

(1) ***ՍԱՐԿԱՊՍԵՆԷ*** *ըստ Գերպ. Անդրէաս Վրդ. Աղեքսանդրեանի. արդի Նեվշեհիրի շուրջն էր* (***ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ***, *էջ* 17):

(2) ***ԿԱՏԱՒՈՆԻԱ*** *կը համապատասխանէ Կէօքսունի, Հաճընի եւ Զէյթունի շրջանակին (նոյն):*

(3) ***ԵՓՐԱՏԱՑԻՔ*** *ըստ հայ հեղինակներու:*

(4) ***ԼԱՒԻԱՆԵԶԻՆԷ*** *ըստ Գերպ. Աղեքսանդրեանի (էջ 17) եւ համապատասխան է արդի Կիւրինի, Թօնուզի եւ Ազիզիէի շրջանին:*

(5) *Ըստ նոյն հեղինակին՝ արդի Բեահթէի շուրջը:*

Մելիտինէ ու Կատաւոնիա միասնաբար կազմած էին Կապադովկիոյ տասը նահանգներէն մէկը։

Ստրաբոն, որ ապրած է 63 Ք. Ե. առաջ — 19 Ք. ետք, կ՚ըսէ թէ «Իմ ժամանակս այս երկուքին (Կապադովկիոյ եւ Կատաւոնիոյ) իւրաքանչիւրն ալ իր յատուկ կուսակալն ունէր։ Բայց որովհետեւ ասոնց եւ Կապադովկիացւոց մէջ ոչ լեզուի եւ ոչ սովորութեանց ոեւէ տարբերութիւն կայ, իրենց ցեղային տարբերութեան հետքերը զարմանալի կերպով բոլորովին անհետացած են»։

«Թէպէտ բաժնուած էին, բայց ԱՐԻԱՐԱԹԷՍ Կապադովկիոյ առաջին թագաւորը իր պետութեան հետ միացուց (տես Zimmers, ԳԱՄԻՐՔ, ՀԱ., 1900, էջ 112. ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 219–220)։

Իսկ այն տեսութիւնը, որ Մելիտինէն կը դնէ Փոքր Հայք կոչուած աշխարհամասի մը մէջ, շատ երկբայելի է, վասնզի Փոքր Հայքը որոշ եւ հաստատուն, ճշդուած սահմաններով երկիր մը չէր, այլ շատ առաձգական բնոյթ ունեցող աշխարհամաս մը։

Ոմանք Փոքր Հայք ըսելով կը հասկնան հնադոյն Փոքր Հայքի (ARMENIA MINOR) Թագաւորութեան սահմանները ընդգրկող շատ փոքր աշխարհամասը, որ ըստ Կիպերտի, Եփրատով Հայաստանէն բաժնուած՝ կը հասնէր մինչեւ Արածանիի խառնուրդէն քիչ մը վարը, սահմանագիծն ըլլալով Դասկուսայի եւ Կիակայի միջեւ, ուրկէ ետք կը բաժնուէր Մելիտինէի շրջանէն գիծով մը, որ կը հասնէր Տոնասայի մօտերը՝ աղեղնաձեւ մը կազմելով, եւ այնուհետեւ հիւսիս-արեւելեան ուղղութեամբ կը հետեւէր լեռնագիծին (scordises լերինք), քիչ-շատ զուգահեռական նաեւ Ալիսի, որ Փոքր Հայքէ բխելով՝ կ՚անցնի Կողոփենէ եւ հարաւ-արեւմտեան ուղղութեամբ կը հոսի, զուգընթաց նաեւ Կողոփենէի մէջ մնացող Սեբաստիա-Կամիսա-Զարօ գիծին, ուրկէ ետք դէպի հիւսիս կը ձգուի Պարխարեան շրջանին մէջ (Կիպերտ, նաեւ այլք, վերջնական Փոքր Հայքը այստեղ չեն հասցներ չիտակ մինչեւ Մելանթիոս, այլ սահմանագիծը աւելի դէպի արեւելք կը գծեն), եւ այն Պարխարեան-Խաղդեան ջրբաժանով բաժնուած վերոյիշեալ ծովեզերեայէն կը հասնի մինչեւ Բարձր Հայքի սահմանները, ուր Փոքր Հայք այս ներս մտած ծագին թէ՛ արեւելեան եւ թէ հարաւային սահմանը կը կազմէ «մինչեւ ցգոյն դարձուած Եփրատայ ի հարաւակոյս» (Հ. Յ. Տաշեան, ՀԱ., 1939, էջ 20)։

Փոքր Հայքի այս սահմանագծումը պատմական տուեալներու վրայ հիմնուած իրականութեան համապատասխան է։ Սակայն ուրիշներ անոր կուտան տարապայման ընդարձակութիւն մը։ Անոնք Եփրատի արեւմտեան կողմը տարածուած ընդարձակ երկիրները, որոնք հռոմէական վարչութեան տակ Հայք անունով զանազան նահանգներու բաժնուած էին, հակադրելով Եփրատի արեւելեան կողմը գտնուող Մեծ կամ Բուն Հայաստանին, աններելի սխալով մը Փոքր Հայք կը նկատեն։

Հայ դասական մատենագիրները եւ պատմիչները չէին ճանչնար «Փոքր Հայք» անունով աշխարհամաս մը։ Հայ մատենագիրներուն համար Եփրատի արեւմուտքը գտնուած երկիրները ընդհանուր կերպով «Յունաց աշխարհ» են։ Նոյնիսկ անոնք Առաջին, Երկրորդ, Երրորդ եւ Չորրորդ Հայք կոչումներն ալ միշտ օտար նկատած եւ անոնց մասին այլ ընդ այլոյ եւ խեղաթիւրուած ծանօթութիւններ տուած են։

Փոքր Հայքի վրայ որոշ տեղեկութիւններ տուած է Պտղոմէոս աշխարհագիր, որ կը ճանչնայ այս երկիրը։

Անիկա այս երկիրը կը բաժնէ հինգ գաւառներու, որոնք էին.

1. Որպալիսինէ (արդի Գարահիսարի շուրջը)
2. Տեսսուպանա (արդի Աղչեհիրապատի շուրջը)
3. Էտինիքա (արդի Կերճանի շուրջը)
4. Հորսէնն (արդի Ակնայ շուրջը)
5. Օրբիսինէ (արդի Արաբկիրի եւ Արկուայի շրջան)։

Այս հինգ գաւառները բոլորովին անծանօթ են մեր մատենագրութեան, եւ ինչպէս անոնց արդի վայրերուն նայելով կը տեսնենք, Մալաթիա անոնց մէջ չէ, ինչ որ կը հաստատէ թէ անիկա Փոքր Հայքի մէջ չէր։

Նոյնպէս եթէ քննութեան առնենք անունները այն քաղաքներուն, զորս Պտղոմէոս կը յիշատակէ Եփրատի եզերքը եւ երկրին ներքին կողմերը՝ լեռներուն վրայ, կրնանք տեսնել թէ այս հինգ գաւառները, որոնք կը գտնուէին Եփրատի արեւմտեան կողմը կամ աջ եզերքը, Կիւմիւշխանէի սահմանէն մինչեւ Մելաս եւ հիւսիսէն դէպի հարաւ կը տարածուէին, Մալաթիա չէին հասներ։

Professeur W. M. Ramsey կազմած է հետաքրքրական տախտակ մը, ուր Պտղոմէոսի հետ հնութեան ուրիշ հեղինակներէ յիշատակուած Փոքր Հայքի բոլոր տեղանունները կը հաւաքէ (տես *Historical Geography of Asia Minor*, էջ 71)։

Այս ցուցակին ուշադիր քննութիւնը պիտի ցոյց տայ թէ Փոքր Հայք որքան սահմանափակ տարածութիւն ունեցող երկիր մըն էր, եւ պարզապէս փոքր կամուրջ մը կը հանդիսանար Կապադովկիան եւ Պոնտոսը Մեծ Հայաստանի միացնող։

Փոքր Հայքը մեծ տարածութիւն մը չունէր եւ Մելիտինէ կապ չունէր Փոքր Հայքի հետ։ Կապադովկիա կանուխէն կրցաւ իւրացնել Մելիտինէի շրջանը եւ հասաւ մինչեւ Եփրատ։

Իսկ Փոքր Հայք անունով պզտիկ թագաւորութիւնը ենթարկուեցաւ պոնտական իշխանութեան եւ դէպի ծով դիմեց՝ Պոնտոսի մէջ ձուլուելով, կամ Հ. Յ. Տաշեանի բառերով «պոնտանալով» (ՀԱ., 1937, էջ 26)։

Տիգրանի շրջանին՝ Փոքր Հայք Հայաստանի հետ վարչական ոեւէ կապ չունէր եւ Մելիտինէ-Կեսարիա գիծին հիւսիսակողմը Փոքր Հայք-Պոնտոս չէր կրնար ալ ունենալ, քանի որ այդ շրջանին գլխաւոր տիրակալողը եւ Հը-

ռոմի ոյժին դէմ մաքառողը Պոնտոսն էր՝ Միհրդատ Մեծին վեհապետութեան տակ, որ խաղաղօրէն կլլած էր մինչեւ այն ատեն անկախ Փոքր Հայքը, որ այս միջոցին պահ մը իսկ Հայաստանի մաս չկազմեց եւ Հռոմայեցիներուն անցաւ իբր Պոնտոսի մասը եւ ոչ թէ Հայոց ձեռքէն առնուեցաւ (Հ. Յ. Տաշեան, ՀԱ., 1937, էջ 25–26)։

Մինչ Մելիտինէ, որ կանուխէն Կապադովկիայէն զատուած էր եւ կազմած էր այս թագաւորութեան տասը գաւառներէն մէկը, զատուած էր Հայերէն, անմիջապէս որ Մեծ Հայաստանի աշխարհակալ Արքայից Արքան՝ Տիգրան Բ. (95–56 Քր. ա.) անցաւ Եփրատը, ուր Մելիտինէի գրաւմամբ հասած էր Կապադովկիոյ թագաւորութեան սահմանները։ Մեծն Տիգրան, 77–ին ոչ միայն Մելիտինէն, այլ եւ ամբողջ Կապադովկիան գրաւեց, առանց սակայն Մալաթիան բաժնելու Կապադովկիայէն եւ կցելու Մեծ Հայքի Ծոփքին, որ Եփրատի ձախ կողմն էր Մալաթիոյ դիմաց (Յ. Մանանդեան, ՔՆՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, 1944, Ա. հտ., էջ 154)։

Կարճատեւ եղաւ նուաճումը թէ՛ 77–ին եւ թէ 67–ին, երբ Տիգրան Մեծ, Տիգրանակերտի անկումէն (69) ետք, կրցաւ յաղթական Լուկուլլոսը պարտութեան մատնել իր վերակազմած բանակով Արածանիի մօտ եւ վերագրաւել Կապադովկիան Մալաթիայով միասին (Մանանդեան, նոյն, էջ 225)։

Պոմպէոս վերջ տուաւ 64–ին ոչ միայն Մալաթիոյ եւ Կապադովկիոյ վրայ հայ տիրապետութեան, այլ նաեւ ամբողջ հայկական կայսրութեան (Կողեան, նոյն, էջ 12)։ Մեծն Տիգրանի եւ Մեծն Միհրդատի ընկճուելէն ետք Հռոմայեցիք Պոնտոսէն զատուած Փոքր Հայքի (Armenia Minor) թագաւորութիւնը եւ հայ թագաւորութենէն տիրապետուած Կապադովկիան վերակազմեցին՝ առանց անոնց անկեղծ նեցուկ ըլլալու։

Հռոմ սովոր էր իր սահմաններու մօտ գտնուող տէրութիւններուն նախ բարեկամ ձեւանալ եւ զանոնք հովանաւորել եւ ապա միջամտելով անոնց ներքին գործերուն՝ «Բաժանեա զի տիրեսցես»ի իր պառակտիչ սկզբունքը կիրարկել եւ զանոնք ի վերջոյ իր պետական կազմին մէջ առնելու շնորհը ընել, եւ այսպէս վերջնապէս զանոնք կցել իր կայսրութեան։

Բոլոր Փոքր Ասիոյ փոքրիկ թագաւորութիւնները այս կերպով ջնջուեցան՝ Պոնտոսի եւ Հայաստանի Մեծն Միհրդատ եւ Մեծն Տիգրան գլխակից թագաւորներուն զօրաւոր պայքարէն ետք։

Անոնց ընկճուելէն ետք Հռոմ սիրաշահելու համար էր որ անոնց նուաճուած երկիրները, ի մասնաւորի Փոքր Հայքի եւ Կապադովկիոյ թագաւորութիւնները, վերակազմեց։

Անոնց առաջինը՝ Փոքր Հայք՝ շատ կարճ կեանք մը ունեցաւ եւ քանի մը անգամ ջնջուելէ եւ վերակազմուելէ ետք, վերջապէս կցուեցաւ Հռոմէական կայսրութեան, անոր նահանգներուն մէջ ներմուծուելով։ Այս թագաւորութեան վախճանին հետ նոյնիսկ «Փոքր Հայք» բացատրութիւնը, որ հռոմէական էր, սկսաւ գործածութենէ իյնալ եւ անհետանալ, առանց մոռ–

ցուելու երբեմն այս անունով ճանչցուած երկիրին հայկական նկարագիրը։ Այլեւս Փոքր Հայք մաս կը կազմէր Հայք ընդհանուր կոչումով եւ Առաջին, Երկրորդ, Երրորդ եւ Չորրորդ եւ այլ կոչումներով վարչական բաժանումներէն մէկուն կամ միւսին՝ ըստ ժամանակին, որուն ընթացքին փոխուած սահմաններ ունեցած են անոր չորս վարչական բաժանումները (Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 4)։

Իսկ Պոմպէոսի Տիգրանի հետ կնքած Արտաշատի դաշինքով ոչ միայն Մելիտինէն վերստին դրուեցաւ Կապադովկիոյ թագաւորութեան (Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԵՍԱՐԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 184), այլ եւ նոյնիսկ Ծոփքը տրուեցաւ Կապադովկիացի արքային, որ Հռոմէն հովանաւորեալ մըն էր։ Այսպէս Հռոմի պաշտպանութեամբ Կապադովկիոյ թագաւորութիւնը տարածման կ'ընդարձակուէր, Կապադովկիա նահանգին Կիլիկիոյ թագաւորութեան մի քանի մասերը միացնելով (Հ. Մակուարտ, ՀԱՅ–ԿԵՍԱՐԻԱ, էջ 132), բայց Ծոփքէն, զոր Հռոմ Կապադովկիոյ շնորհած էր։

Այս պետութեան մաս պէտք էր կազմած ըլլար Մելիտինէ մինչեւ այն թուականը որ Կապադովկիոյ թագաւորութիւնը կը ջնջուէր Հռոմի սովորական մեթոտներով։ Իսկ Ծոփքը, որ բնիկ եւ անբնական կերպով միացած էր Կապադովկիոյ, հայկական երկիր մըն էր եւ չէր կրնար այսպէս մնալ։ Ան կրկին Հայաստանի մաս եղաւ եւ մնաց, բայց Մելիտինէ ալ չտեսաւ երբեք հայ արքայ մը, եւ որչափ ալ շատ կարճատեւ էր Հայոց տիրապետութիւնը, Հայոց ձեռքէն անցաւ Հռոմի։

Այսպէս հայ տիրապետութեան շուտով յաջորդեց հռոմէականը Կապադովկիոյ եւ Մալաթիոյ վրայ, ուսկից վերջին անգամ իբր ոչ–հռոմէական նահանգէ, անցած էր Անտոնիոս՝ 36–ին։

Գերմանիկոս էր որ զայն վերածեց հռոմէական նահանգի Քրիստոսէ առաջ 17–ին (Մանանդեան, նոյն, էջ 308)։

Քրիստոսէ ետք 61–ին եւ 64–ին Կորբուլոն եւ Պետոս, Կապադովկիոյ Հռոմէ կարգուած կուսակալները եւ Պարթեւներու դէմ պատերազմին հռոմայեցի զօրավարները, Մալաթիան կայան ըրին իրենց բանակներուն՝ Հայաստանը նուաճելու համար։

Այս երկարատեւ անդուլ պատերազմներէն ծնաւ 66–ին հայ արշակունի հարստութիւնը՝ երկու հզօր պետութիւններու միջեւ իբր արգելակ պետութիւն եւ առաջին Արշակունին՝ Տրդատ Մալաթիայէն անցաւ Հռոմ երթալու համար (Կոզեան, նոյն, էջ 13)։

Այդ թուականէն ետք Մելիտինէ իբր սահմանապահ զօրքերու բանակատեղի՝ ստացաւ կարեւորութիւն։

Դիոկղետիանոս կայսրը (284–305), որ ստեղծած էր վարչական նոր կազմակերպութիւն մը եւ սահմանած էր գաւառական նոր բաժանումներ, արեւելքի կուսակալութիւնը բաժնեց հինգ թեմերու, որոնք էին. 1. Արեւելք, 2. Եգիպտոս, 3. Ասիա, 4. Պոնտոս եւ 5. Թրակիա։

Կապադովկիա ենթարկուած էր Պոնտոսի, իսկ ընդարձակագոյն Փոքր Հայքը բաժնուած էր Կապադովկիայէն եւ առանձին նահանգի մը, որուն մայրաքաղաքն էր Մելիտինէ եւ կը կառավարուէր պրետորով մը (Ramsey, նոյն, էջ 313)։

Դիոկղետիանոսի այս կազմակերպութիւնը առաջին անգամ փոփոխութեան ենթարկուեցաւ Կոստանդիանոսի կողմէ (306–337), որ համէական կայսրութիւնը վարչական նոր կազմակերպութեամբ մը օժտեց, պայն բաժնելով նահանգներու, որոնք իրենց կարգին կը ստորաբաժանուէին վիճակներու եւ վիճակները՝ գաւառներու։

Այս նոր բաժանումներուն համաձայն արեւելեան նահանգին ենթակայ Պոնտոսի վիճակին մէջ կ'իյնար Փոքր Հայքը, որ երկու գաւառի բաժնուած էր, իւրաքանչիւրը իր գլուխը ունենալով Պրետորներ։

Այս երկու գաւառները կը կոչուէին՝ 1· Արմենիա Առաջին կամ Առաջին Հայք, 2· Արմենիա Երկրորդ կամ Երկրորդ Հայք։ Ասոնցմէ առաջինին վարչական կեդրոնն էր Սեբաստիա, եւ այս գաւառին մէջ կը գտնուէին նաեւ Սեբաստուպոլիս, Նիկոպոլիս, Կողոնիա, Սատաղա, Ամփիպոլիս, Պերիսա, Հերակլեպոլիս կամ Պետաքաւլէ քաղաքները։

Յետոյ աւելի եւս ընդարձակուեցաւ այս գաւառը, եւ անոր կցուեցաւ նաեւ Երիզա, Կամախ եւ Թէոդոսուպոլիս գաւառները։

Արմենիա Երկրորդին կեդրոնն էր Մելիտինէն եւ անոր սահմաններուն մէջ կը գտնուէին նաեւ Արկա, Կոմանա Կապադովկիոյ, Արապիսոս եւ Կիթարիձոր։

Երբեմն այս գաւառին կցուած է նաեւ Սոփինէ (=Ծոփք) եւ Տրապատիս կամ Տիապոնտիս (ՊԱՏՄ· ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 15)։

335–ին Կոստանդիանոս կայսրը նոր վարչական կարգադրութիւններ ըրաւ Փոքր Ասիոյ մէջ, եւ Կապադովկիան, Պոնտոսը եւ Փոքր Հայքը միացուց եւ կազմեց թագաւորութիւն մը, որուն գլուխը դրաւ իր եղբօրորդին եւ փեսան Աննիբաղիանոսն, բայց ան աւելի միայն անուանական վեհապետ մըն էր եւ միայն երեք տարի (335–338) կրցաւ իշխել, վասնզի Աննիբաղիանոս իր զօրքերէն սպաննուեցաւ, Կոստանդիանոսի մահէն ետքը (Գեր· Անդրէաս Վրդ· Ալեքսանդրեան, ՊԱՏՄ· ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 48)։

Բայց Փոքր Հայքը, զոր Հռոմայեցիք ստեղծած էին, հետզհետէ ընդարձակուեցաւ եւ Սարաբոնի կողմէ յիշուած 10 նահանգներէն եօթը փոխանակ Կապադովկիոյ՝ Փոքր Հայքի մասերը նկատուեցան ժամանակի ընթացքին։ Ասոնց առաջինը Մելիտինէի նահանգն էր։

Յետոյ այս նահանգն ալ երեքի բաժնուեցաւ՝ Առաջին, Երկրորդ եւ Երրորդ Հայք անուններով։

Մելիտինէ մայրաքաղաքը եղաւ անոնցմէ միայն մէկուն կամ միւսին։ Այսպէս 378–ին մայրաքաղաքն էր Երկրորդ Հայքի։

*Հռոմ շուտով Փոքր Հայքը կցած էր կայսրութեան եւ շուտով ենթարկած հռոմէական օրէնսդրութեան, տալով բնակչութեան Հռոմէական քաղաքացիական իրաւունքներ, մինչ Եփրատէն արեւելք Հռոմի տիրապետութեան ենթարկուած Հայաստանի մասերը կը պահէին իրենց ներքին ազգային կազմակերպութիւնը, նախարարական դրութեամբ։*

*Երբ* 384*ին Հռոմ եւ Պարսկաստան համաձայնեցան Հայաստանը իրենց միջեւ բաժնելու, Թէոդոսիոս կայսրը* (379–395) *նոր կարգադրութիւններ ըրաւ հռոմէական տիրապետութեան ենթարկուած հողերուն համար։*

*Այսպէս*, 378*էն* 386 *Փոքր Հայքը կրկին բաժնեց երկու մասի՝* Առաջին Հայք *եւ* Երկրորդ Հայք *անուններով* (Guterbob, *ROMISCH ARMENIA*, 5 *եւ* 23, *Հիւպշման*, *ՀԻՆ ՀԱՅՈՑ ՏԵՂԻՈՑ ԱՆՈՒՆՆԵՐԸ*, *էջ* 76), *անջատ* Հռոմէական Հայաստանէն, *որ կը բաղկանայ գլխաւորապէս Փոքր Հայքի դրացի Եկեղեաց գաւառէն, Դերջանէն, Խորձեանէն, Կարինէն եւ հին հռոմէական սատրապութիւններէն, ինչպէս Ծոփքէն, Անգեղտունէն եւայլն, եւ կը կառավարուէր կոմսով մը, որ «կոմս Հայաստանի»* (*Comes Armeniae*) *տիտղոսը ունէր եւ կուսակալ մըն էր պարզապէս, զոր կայսրը ինք կ՚անուանէր։ Երկիրը կը պահէր իր նախկին տեղական օրէնքները, իսկ* Առաջին Հայք *եւ* Երկրորդ Հայք *մտած էին կայսրութեան ընդհանուր վարչական կազմին մէջ։*

*Այս կարգադրութեամբ* «Փոքր Հայք»*ի ոչ միայն բաժանումը, այլ նաեւ անունը գոյութենէ կը դադրէր եւ «Փոքր Հայք» աշխարհը մաս կը կազմէր* Առաջին Հայք*ի, Կողոնիէի* (*Սեբաստիոյ շրջանակ*)։

*Յուստինիանոս կայսրը* 536*–ին աւելի մեծ քայլեր առաւ։*

15 *Ապրիլ* 536*–ին հրովարտակով ջնջեց Հայաստանի բոլոր առանձնաշնորհները* (*ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՑ*, *էջ* 346)։ *Եւ Հայաստանի երբեմնի թագաւորութեան հողերը եւ միւս* Հայք *կոչումներով երկիրները չորս* (4) *վարչական շրջանակներու բաժնեց.*

1.— *Ա. ՀԱՅՔ*
2.— *Բ. ՀԱՅՔ*
3.— *Գ. ՀԱՅՔ*
4.— *Դ. ՀԱՅՔ*

*Իսկ* Փոքր Հայք*ը միացուց Հայաստանի* Բարձր Հայք *գաւառին հետ եւ կազմեց* Ներքին Հայքը *կամ* Յուստինիանոսի Առաջին Հայքը։

*Այս անգամ Եփրատի արեւմուտք արտահայաստանեան չորս նահանգներէն* Գ. Հայքի *կուսակալանիստ քաղաքը եղաւ* Մելիտինէ *եւ գլխաւոր քաղաքներէն էին* Արկա (*արդի* Կերկերը) Արաբիսոն (*արդի* Եարբուզ՝ *մերձ* Զէյթունի), Արիարաթիա (*արդի Ազիզիէ կամ Կիւրին*), *Կապադովկեան Կոմանա* (*հիմա Հաճընի եւ Ազիզիէի միջեւ գիւղ մը*), Կոկիսոն (*արդի Կէօքսու*)։

*Ուրեմն Մելիտինէ կը ներկայանար իբր առանձին վարչական շրջանակի մը կեդրոնը* (*ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ*, *էջ* 346–7)։

Այս կարգադրութիւնը շատ երկար ատեն չտեւեց, վասնզի Մօրիկ կայսեր ատեն (587–603), 591-ին, նորէն Հայաստանը կամ աւելի ճիշդ սահմանումով՝ հայաբնակ հողերը բաժնուեցան 8 նահանգներու, որոնց առաջինն էր Առաջին Հայքը, իբր մայրաքաղաք ունենալով Մելիտինէն:

Իսկ Փոքր Հայքը բոլորովին անհետացաւ, վասնզի ներմուծեցաւ «Մասն Մեծ Հայոց» շրջանին մէջ (ՀԱ, 1937, էջ 44):

Է. դարէն ետք Մելիտինէի շուրջ ամէն ինչ շփոթ է, վասնզի իր շրջականերով Մելիտինէ կռուախնձոր եղած էր բիւզանդական կայսրութեան եւ արաբ խալիֆայութեան միջեւ:

Երբեմն Արաբները տիրած են եւ երբեմն՝ Բիւզանդացիք. այնպէս որ բնաւ հաստատուն եւ խաղաղ շրջան մը չէ ունեցած: Արաբներու պատմութեան ասպարէզ գալէն հազիւ հարիւր տարի վերջ Լեւոն Իսաւրացի կայսրը (717–741) պարտաւորուած է ջնջել քաղաքային վարչութիւնները եւ զանոնք միացուցած է զինուորական հրամանատարութիւններու:

Այսպէս, երկիրը դարձած է մշտնջենական պատերազմի դաշտ մը, ուր ամէն բանէ առաջ էին պատերազմական պահանջները, որոնք մէկ օրէն միւսը կը հարկադրէին փոփոխութիւններ:

Արաբներուն յաջորդեցին Կեդրոնական Ասիայէն դէպի արեւմուտք արշաւող բարբարոս եւ վայրենի մարդկային զանգուածներ, որոնց դէմ թէեւ Բիւզանդիոն պայքար մղեց, բայց չկրցաւ դէթ Եփրատի գիծը պաշտպանել եւ պարտաւորուեցաւ անոնց առջեւ տեղի տալ:

1021-էն մինչեւ 1315 (Մալաթիոյ գրաւումը Օսմանցի Թուրքերէն)՝ այս քաղաքը բնաւ չունեցաւ հաստատուն եւ տեւական վիճակ մը եւ շատ մը փոփոխութիւններու ենթարկուեցաւ համաձայն արշաւող բարբարոսներու եւ պաշտպանող ոյժերուն փոխ-յարաբերութիւններուն:

Օսմանեան պետութեան տիրապետութեան ենթարկուելէն ետք, ան մաս կազմած է Անատոլուի, եւ հին բաժանումներու համաձայն Մարաշի էյալէթին, որ իր գլուխը ունէր Պէյլէր Պէյի մը եւ կը բաժնուէր չորս գաւառի կամ սանճագի, որոնց երկուքն էին Մալաթիա եւ Սամոսատ, որոնք վերջը իրարու կցուեցան. Սամոսատ մաս եղաւ Մալաթիոյ սանճագին (Ինճիճեան Հ. Ղուկաս վրդ., ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ, Ա., էջ 320), եւ իր շրջականերով կը կազմէր այդ էյալէթին (=կուսակալութիւն) մէկ սանճագը կամ լիվան (գաւառը):

Ինճիճեան արքունի դիւանագիրին մէջ գրուած է կ'ըսէ՝ «Լիվա Մալաթիոյ յորում նստի Երկտուղեան փաշայ, եւ գատըլըդ (այսինքն թեմք) պարունակեալք յայս Լիվա են սոքա.

Ա. Մալաթիէ

Բ. Քեախթէ

Գ. Դաշապատ

Դ. Ծուրէ հանդերձ Պուճաղիւ

Ե. Քիւրքիւր (Կերկեր) լիվա
Զ. Սամսար Լիվա (որ թերեւս է Սամսատ)
Է. Տիյուրիկի լիվա
Ը. Հիւսնի Մանսուր
Թ. Պեհեսնի
Ժ. Մալիրէ

Եւ յիւրաքանչիւրումն ի թեմից աստի նստի դատը, այսինքն դատաւոր։

Քեաթիպ չէլէպին ի Ճեհաննիւմային զՇուրէն կոչէ Շուրիմագ եւ զՏիյուրիկին՝ Տիվերէկի»։

Մալաթիոյ սանճագը ժամանակ մը Խարբերդի եւ ժամանակ մըն ալ Տիարպեքիրի կուսակալութեան միանալէ ետք՝ Սուլթան Ապտ-իւլ-Ազիզի (1861–1876) իշխանութեան առեն Խարբերդի գաւառին հետ կազմած է նոր կուսակալութիւն մը, Մամուրէթ-իւլ-Ազիզ անունով։ Մալաթիա գաւառը (սանճագ) Մամուրէթ-իւլ-Ազիզի կուսակալութիւնը կազմող երեք գաւառներէն մին էր ու հարաւ-արեւմտեան կողմն էր։

Մալաթիոյ լիվան կամ սանճագը, որ միւթէսարըֆութիւն ալ կոչուած է, բաժնուած էր հինգ գազաներու կամ գայմագամութիւններու, որոնք են.

1. Մալաթիա (կեդրոն)
2. Արկա կամ Ագլէ տաղ
3. Քեահթա
4. Հիւսնի Մանսուր
5. Պեհեսնի

Ասոնք երկու մասի կը բաժնուէին, ըստ իրենց դիրքին։

Հիւսիսային մասը կը բովանդակէր Մալաթիա եւ Արկա եւ հարաւային՝ Քեահթա, Հիւսնի Մանսուր եւ Պեհեսնի (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 392)։

Մինչեւ Թուրք հանրապետութեան հաստատութիւնը, վարչական այս կազմակերպութեամբը կառավարուած են Մալաթիա եւ իրեն ենթարկուած հինգ գաւառները, որոնք ըստ Շեմսետտին Սամիի Գամուս-իւլ-Ալեամ-ին (տպ. 1898) ունէին 27 Նահիէ (գիւղախումբ) եւ 1240 գիւղ։

1903-ին հրատարակուած ուրիշ վիճակագրութեան մը համաձայն Մալաթիոյ միւթեսարըֆութեան հինգ գազաներն են.

1.— Մալաթիա, ունէր 66 գիւղ
2.— Հիւսնի Մանսուր, ունէր 174 գիւղ
3.— Պեհեսնի, ունէր 115 գիւղ
4.— Ագճէ տաղ, ունէր 122 գիւղ
5.— Քեախտէ, ունէր 146 գիւղ։

Մուսթաֆա Քեմալի Միլլի կառավարութիւնը կայսրութեան ժամանակի բոլոր կուսակալութիւնները, որ իր իշխանութեան տակ մնացած էին, ջնջեց եւ հին բոլոր կուսակալութիւններուն գաւառները վերածեց կուսակալութիւններու։ Մամուրէթ-իւլ-Ազիզի կուսակալութեան երեք գաւառներն

ալ, որոնք էին Խարբերդ կամ Էլազիզ, 2· Տերսիմ, 3· Մալաթիա, երեքն ալ վերածուեցան կուսակալութիւններու:

Այսպէս, Մալաթիա կազմեց կուսակալութիւն մը, որուն ենթարկուած են հինգ գաւառներ, որոնք են.

1·— Մալաթիա (կեդրոնական գաւառ)
2·— Հիւսնի Մանսուր կամ Ատըեաման
3·— Պեհեսնի
4·— Քեախտէ
5·— Աղճատաղ:

Մալաթիոյ քաղաքին բոլորտիքը գտնուող 147 գիւղերը կեդրոն գաւա-յին (Մերքեզ գազա) կը վերաբերին: Արեւմտեան կողմի բոլոր գիւղերը Աղ-ճատաղի եւ Թոխմայէն անդին Արղաւունի բոլոր գիւղերը Մատէնի վարչու-թեան տակ են:

## ԺԲ.

# ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐ
# ԵՒ
# ՊԱՏՄԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ

Մալաթիա Փոքր Ասիոյ հնագոյն քաղաքներէն մէկն է եւ ունի պատ-կառելի պատմական անցեալ:

Ամենահին ժամանակներէ սկսեալ իր անունը խառնուած է աշխարհի պատմութեան:

Այն շրջանակը, որ այսօր Մալաթիոյ կուսակալութիւնը կը ներկայա-ցընէ, մաս կը կազմէ պատմական հաթեան կայսրութեան, որ մեծ քաղաքա-կըրթութիւն մը ունեցած է եւ Փոքր Ասիոյ սիրտին վրայ ամենակարեւոր դեր կատարած է:

Իր յիշատակարանները կը մնան ցարդ, ինչպէս Փոքր Ասիոյ բազմա-թիւ վայրերուն, նաեւ Մալաթիոյ մէջ եւ չուրջը:

Հաթեանց ժամանակ, գոնէ մինչեւ Քր·է առաջ 1200, այս շրջանակը կը կազմէր Տիգարամա նահանգը եւ կը պարունակէր երեքը Կումմուխ (Կոմ-մագինէ), Մելիտինէ (Մալաթիա) եւ Տիլ–Գարիմմէնի (Կիւրին) կոչուած

տեղերը, եւ յետոյ միայն բաժնուեցաւ այս երեք մասնական աշխարհներու (Ե. Քասունի, ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 80, Տաշեան, ՀԱ, 1931, էջ 67–8, Խաչատրեան, ՍԵՊԱԳՐԱԿԱՆ ՇՐՋԱՆԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 238 եւ 395):

Մինչեւ 1200 Քր. Ա. ոչ Մելիտ եւ ոչ Կումմուխ կը յիշուին:

Հաթ՝ Խատտուսիլ Գ. (1298–1260 Ք. Ա.) Իշուվայ Ուգաշտա արեւմըտեան նահանգը կցեց Մելիտինէի թագաւորութեան, որ առաջին անգամ ըլլալով կը յիշուի եւ որ Խանին Գալբատ անունն ալ կը ժառանգէ, կ'երեւի անոր համար որ Միտանի կամ Խուրրի պետութիւններու վերապրող ազնուականներէն մեծ մասը Մելիտինէ քաշուած էր (Ե. Քասունի, ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 134):

Հաթերը գրաւեցին Մելիտինէն, որ առանձին թագաւորութիւն մըն էր եւ որ ատկէ յետոյ յաճախ իբր հաթ պետութեան բաղկացուցիչ բազմաթիւ թագաւորութիւններէն մէկը յաճախ յիշուիլ սկսաւ:

Երբ հաթ մեծ կայսրութիւնը կործանեցաւ, իր բեկորներէն կազմուեցան դէպի հարաւ–արեւելք շատ մը մեծ ու փոքր տեղական թագաւորութիւններ, ինչպէս Մելիտինէ, Գուրգում (Մարաշ), Կումմուխ (Կոմմագինէ=Սամոսատ), Քարքամիուս (Կարկամիշ), Խաթինա (Հաթայ=Իսկենտերուն) եւ Եմաթ, եւայլն:

Ասոնք թէեւ մերթ ընդ մերթ արտաքին թշնամիներու դէմ կը միանային, սակայն ընդհանրապէս զատ–զատ կը գործէին (Ե. Քասունի, ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 56):

Դեռ չորս դար շարունակեցին ասոնք իրենց յատուկ կեանքը եւ քաղաքակրթութիւնը, եւ նշանակելի է որ գիտուններու ընդհանուր համոզումը այն է որ «Հաթեան» (Hittite) կոչուած յիշատակարանները, ինչպէս դիտել կու տայ Ե. Քասունի (նոյն, էջ 57), գրեթէ բոլորովին այս մասնակի թագաւորութեանց մնացորդներն են եւ ոչ թէ մեծ կայսրութեան:

Այս Նոր–Հաթեան փոքր թագաւորութիւնները նկատելի է որ սերտ շփումներ ունեցած են Ուրարտուի հետ, երբեմն թշնամական եւ երբեմն բարեկամական:

Նոյնպէս պէտք է գիտնալ, թէ Նոր–Հաթեան քաղաքակրթութեան բուն վառարանն ըլլալ կը թուի Մելիտինէ, որ Հայաստանի այնչափ մօտ էր:

Ուրարտայի թագաւորներու արձանագրութիւններէն կը հասկցուի, թէ հարաւ–արեւմտեան Հայաստանի այս նահանգները, զորս Հաթերը «խատիաստան» կ'անուանէին, Մալաթիոյ թագաւորին իշխանութեան տակ կը գտնուէին:

Այս շրջանակը Ասորեստանի եւ Ուրարտուի պայքարի ատեն կռուախնձոր եղած է երկու պետութեանց միջեւ:

Այսպէս, Ուրարտուի Մենուաս (810—785 Ք. Ա.) թագաւորը իր թագաւորութեան կցած է Մելիտէ=Մելիտինէ (Ղափանցեան, ՈՒՐԱՐՏՈՒԻ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 151 եւ Ե. Քասունի ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 296—7), որ ուրարտեան դաշնակից թագաւորութիւններէն մէկը կը կազմէր (Ե. Քասունի, Նոյն, էջ 302):

Ուրարտեանք հոն հանգիստ չեն ձգուած, վասնզի Մալաթիոյ աշխարհագրական դիրքը, որ կերտած է այդ երկրամասին պատմութիւնը, թոյլ չէր տար այդ անդորրութեան եւ հանգիստին, վասնզի այդ շրջանակը՝ ինչպէս ամենահին ժամանակներէն սկսեալ՝ բախման վայր մը եղած էր բազմաթիւ ժողովուրդներու եւ իշխանութիւններու, նոյնպէս նաեւ այդ շրջանին նոյնը հանդիսացաւ:

Մասնաւորապէս Մալաթիա, Փոքր Ասիան Հայաստանէն անջատող մեծ ջուրի հոսանքը՝ Եփրատը անցնելու յարմարագոյն վայրը եւ Տաւրոսեան լեռնաշղթայէն դէպի Սուրիա անցնելու ամենէն գլխաւոր ճամբան կը հանդիսանար:

Հետեւաբար իրարու յաջորդող անկէ անցնող կամ հոն տեղաւորուող բազմաթիւ ազգեր հոն ձգած էին յիշատակարաններ: Մասնաւորապէս այս տեսակէտով նշանաւոր էին հաթեան կայսրութեան բեկորներէն կազմուած Փոքր Ասիոյ արեւելեան ծայրը եւ Սուրիոյ հիւսիսը կազմուած մանր թագաւորութիւնները, որոնք բազմաթիւ յիշատակարաններ թողած են այդ երկրամասերուն մէջ: Այդ աշխարհամասին մէջ առանձնապէս Մալաթիա եւ իր շրջակայքը ամենէն նշանաւորներէն մէկը եղած է. հետեւաբար եթէ ըսենք թէ իր բազմաթիւ հնութիւններով ամենանշանաւոր վայր մը եղած է, չափազանցութիւն ըրած չենք ըլլար:

Է. Հոնիկման ( E. Honigmann ), որ խոյամ երկիրներու պատմութեան մասնագէտ մըն է, ENCYCLOPEDIE DE L'ISLAMի մէջ (Գ. հտ, էջ 208) Մալաթիոյ վրայ խօսած ատեն քաղաքին պատկանելի հնութիւնը ինքն ալ կը հաստատէ եւ կուտայ տեղեկութիւններ, որոնց ուրիշ տեղ չեմ հանդիպած. ուստի վերապահութեամբ կը ներկայացնեմ:

Է. Հոնիկման կը գրէ թէ «Այս քաղաքը յիշուած է ասորեստանեան բեւեռագիր արձանագրութեանց մէջ Մելիտտա[1] անունով եւ Մալաթիոյ մէջ (աւելի ճիշդ Արսլան Թեփէ, Մալաթիոյ քիչ մը հարաւը) կը գտնուին Հիթիթական երկու կոթողներ[2]:

Հաւանական է որ այս քաղաքն է որ յիշուած է M. L. Z.ի (վերջին գիրը կասկածելի է) սահմանները իբր հողամաս, Համաթի Z. H. R. թագաւորին արձանագրութեան մէջ (Ք. Ա. 800-ի առեններէն), զոր Rognon գտաւ Հալէպի մօտ Աֆիս:

Պլինիոս (ԲՆՈՒԹԵԱՆ ԳԻՐՔ, Դ. 8) այս քաղաքը կը յորջորջէ Melita

(1) Հաւանօրէն Գերպ. Կոդեանի Մելիդը:
(2) E. Honigmann իր տեղեկութեան աղբիւր նշանակած է Messesechmidt, Cospus inseriph hettitic p. m. VAG, 1900, IV, էջ 13, 1906, V, էջ 7:

*a Semiramida condita* · «*Առասպելական հիմնադիրին անունը թերեւս դեռ պահուած է Շամիրին ամրոցին անունին մէջ, զոր Միքայէլ Ասորի կը յիշէ* ( *MICHEL LE SYRIEN*, *թրգմ.* Chabot, *Գ. հտ., էջ* 272) *ԺԲ. դարուն Սաւատ* ( Sawad ) *կոչուած երկրին մէջ, Մալաթիայի շրջակայքը*։»

*Է. Հոնիկման յետոյ կը խօսի այն մեծ բարգաւաճման վրայ, զոր հռոմէական կայսրութեան տիրապետութեան տակ ունեցած է Մալաթիա, մանաւորապէս հռոմէական բանակին իբր կայան։ Այսքան հին եւ շարժուն երկրամասի մը մէջ շատ բնական է որ պիտի գտնուէին մեծ քանակութեամբ հնութիւններ, շատ մը այլազան իշխանութիւններու եւ դարերու պատկանող։*

*Արդարեւ շատ հարուստ կեդրոն մը եղած է Մալաթիա հնութիւններու, որոնք կը գտնուէին նահանգին չորս որոշ շրջանակներուն մէջ եւ զորս ցոյց կու տայ Հ. Եփրեմ Վրդ. Պօղոսեան։*

*Այս չորս հնութեան մեծ կայաններն էին՝*

1·– *Քեախտէ*

2·– *Հին Մալաթիա*

3·– *Ասլան Թեփէ*

4·– *Քէօմիւր – խան — Իզօլու* (*Եագըլըխան*)։

*Այս հնութիւնները պատահարօրէն կամ մասնակի պեղումներով երեւան հանուած, գիտական մեթոտներով չեն քննուած, եւ ոչ ալ պէտք եղած խուզարկութիւնները կատարուած են՝ նահանգին բոլոր հնութիւնները երեւան հանելու համար։ Այնպէս որ գաւառէն գտնուած հնութիւններէն ոմանք յայտնի չէ նոյնիսկ թէ ի՛նչ ծագում ունին եւ ո՛ր ազգին, ո՛ր պետութեան կը պատկանին։*

*Հոգելոյս Պէնճէեան Կարապետ քհնյ. այս պատճառով առանց խոր ուսումնասիրութիւններու մէջ մտնելու եւ յայտնի հնութիւններուն սուրբերան, հաթեան, խալթեան կամ ուրարտեան, ասորեստանեան եւ այլն ըլլալը առանց ճշդելու պատասխանատուութիւնը յանձն առնելու, միայն անոնց տեղերը ու ինչ ըլլալը նշանակելով բաւականացած է։*

*Իր այս մասին գրած տողերը հետաքրքրական են, եթէ ոչ այն տեսակէտով որ հնագիտական արժէք մը կը ներկայացնեն, այլ գոնէ ցոյց կու տան թէ ո՛րքան առատ հնութիւններ կային Մալաթիոյ գաւառին մէջ։*

*Հետեւաբար կ՚արտագրեմ իր այս մասին գրած տողերը նոյնութեամբ։*

*Ահա իր տուած տեղեկութիւնները*·–

«ԲԼՈՒՐՆԵՐ ԵՒ ՀՈՂԱԿՈՅՏՆԵՐ (ԹԻԼ)·– «*Մալաթիա ունի իր մէջ, աւելի հնագէտներու հետաքրքրութեան եւ ուշադրութեան արժանի բաւական բնարլուրներ եւ հողակոյտներ ալ, որոնցմէ նշանակենք*·

1·– Արսլան Թեփեսի·– 70—80 *մեթր բարձրութեամբ հողակոյտ մը*

*Օրտուղիի հիւսիսային կողմը։ Վրան տապանագրերը անընթեռնլի վիճակի հասած գերեզմանատուն է։ Այստեղի հողը բորակախառն ըլլալով՝ շաղախին խառնուած յարդը կանաչանալ եւ անձրեւի կաթիլները տակը իջնելու չթողլուն համար, քաղաքացիք տանիքները ծեփելու հողը միշտ ասկից կը տանին։ Փորուած ատեն կը գտնուին հին հողամաններ, սլաքաձեւ երկաթներ, գործիքներ, քար արձան եւայլն։ Ասկից 18—20 տարի առաջ այս բըլրոյն շրջակայ արտերէն մէկուն մէջէն գտնուած էր մէկ մեթր երկայնութեամբ եւ 3 քառորդ մեթր լայն քար մը, որուն վրայ ամենայն ճարտարութեամբ քանդակուած էր ձիու լծուած կառք մը, կառքին վրայ աղեղնաւոր մը կանգնած՝ ձիուն առաջակողմը կեցող առիւծի կուրծքին նետ մը արձակելով՝ անոր վէս պարանոցը ետ դարձնելէ յետոյ, կը պատրաստուի աղեղը լարելով դարձեալ նետահարելու։ Ձիուն փորին տակ շուն մը (առիւծի երկիւղէն անշուշտ) ինքզինք կը պահուըտէ, իսկ միւս տարին, Պոլիս կայսերական հնութեանց թանգարանը փոխադրուած է։*

2.— Ըլխըլը խան.— *Ասիկա ալ Խարբերդի խճուղիին եւ Օրտուղիի միջեւ բաւական բարձր բնաբլուր մըն է։ Այս բլուրը Մալաթիոյ էն առաջուան հաստատութեան ատեն ժողովրդեան ամառանոցն է եղած։ Իսկ հիմա բացի հարաւային կողմէն ամբողջ տեղը այգիներ են։ Այս բլրոյն վրայ, ինչպէս իր անունէն յայտնի է, կը տեսնուի 80 ոտք երկար եւ 40 ոտք լայնութեամբ շէնքի մը փլած պարիսպը, որ կա՛մ դիտարան եւ կա՛մ դղեակ մը ըլլալու է։ Բոլորտիքէն կը գտնուին քանդակեալ քարեր, մարդոց ոսկերոտիք եւայլն։*

*Այս բլրոյն վրայ խմելու ջուր չգտնուելուն, Ս. Լուսաւորիչ վանքի ջուրը փողրակներով եւ ագուգաններով բերած են հոս, որ դեռ այս փողրակներու հետքը կ'երեւան տեղ–տեղ։*

3.— Հիւյիւք Թեփեսի.— *Քաղաքէն երեք ժամ հեռաւորութեամբ,* Պալըքչայի *եզերքը, խճուղիին աջ կողմը,* 100—110 *ոտք բարձրութեամբ կոնաձեւ բլուր մըն է (Երզմա)։* 19–*րդ դարուն սկիզբը թաղեալ գանձ* (տեֆնէ) *գտնելու յոյսով ոմանք ասոր գագաթէն պեղած ու խորած են, բայց առանց բան մը գտնելու ետ քաշուած են յուսահատ։*

*Ասկից մօտ երեսուն տարի առաջ դարձեալ (այս անգամ կառավարութեան արտօնութեամբ), միեւնոյն նպատակով փորձ փորձած եւ հին ծակերէն եւ կողերէն ալ նոր ծակեր բանալով խորշընդխորշ («քէօշէ պուճագ») պեղելու պրպտելով իջած են մինչեւ յատակը։ Սակայն եւ այնպէս ասոնք ալ բան մը չեն գտած, եթէ ոչ արոյրեայ տապար մը եւ լայնամանեակ ոսկի մատանի մը։ Կը պատմեն, թէ յատակը լիք էին մարդոց ոսկորներով։ Կը գտնուէին դիւրափխրելի («քէվէքէ») քարէ արձաններ, երկաթներու բեկորները եւայլն։*

4.— Սաման Գալեսի.— *Ասիկա ալ հողակոյտ մըն է* 70—80 *ոտք բարձրութեամբ համանուն գիւղին առջեւ կանգնած, որուն առջեւէն կը բխի վըճիտ ու սառնորակ ջուր մը բաւական առատութեամբ, այն է* Սթմա Բունար։

Այս բլրակին ալ գագաթէն թէ կողերէն ծակեր բացուած են, եւ քաղաքի տանիքներուն համար անկէց ալ հող կը փոխադրեն։

5.– Թիլեկ – Թելակ (թրք. Դելէկ).– Համանուն գիւղին վերեւ բաւական մեծկակ բլուր մըն է, որուն վրայ տուներ, ստորոտը՝ գոմ եւ փարախներ շինուած են։

Այս տեղւոյն համար, Ալիշան կ'ըսէ թէ Մելաս գետ մէջտեղէն կ'անցնէր, բայց սխալ գրուած է, որովհետեւ այս աւանը Մելասէն դէպի հարաւ երկու ժամ հեռու կը գտնուի։ Կարելի է թէ դարեր առաջ Տէր Մեսիհ եւ Խորաթա վտակները միացած անկէց հոսած ըլլան։

6.– Աղ Սեքիւ.– Աղ Սեքիւ Զըրմըգտըի դիմաց սուր եւ բարձր բնաբլուր մըն է, իր անունն առած է տեղւոյն բնական գոյնէն։ Հովիւներ կը զգուշանան իրենց հօտերը հոս արածելու, ոչխարներու մահ առթող խոտի տեսակ մը գտնուելուն համար։

Աղ Սեքիւի աջ կողմը, գիւղին վերեւ, Մեզարլըք ըսուած վայրը կը գտնուի տեսակ մը աւազախառն հող, որուն կիրի աստիճան սպիտակութեան համար, Մալաթիոյ տան պատերու երեսները սուով կը ծեփեն։

7.— Իմամ Տեփեսի.– Սա ալ կը գտնուի հին քաղաքի հիւսիս-արեւելքը երկու ժամ հեռաւորութեամբ, Եփրատի եզերքը, ուր կը խառնուի Պալըքչայ. բաւական մեծ թիլ մըն է։

Ըստ տեղական աւանդութեան մը, այս բլուրին ստորոտը՝ գետակին տակ թաղուած կայ գերեզմանը այն թագաւորին, որ այս բլուրը հաստատած է հոս։

8.— Գուշ Տողա՝ Տեփեսի.— Սա ալ կը գտնուի իր համանուն գիւղին վերեւ։ Ասոր բոլորտիքը բազմաթիւ շէնքերու աւերակներ են։ Քանի տարիներ առաջ բլուրը եւ շրջակայքը խուզելով՝ գտնուած են շղթաներ, հողամաններ, սալ եւ արոյրեայ խաչ մը։ Կ'երեւի թէ սոյն վայրի կործանումը այնքան կանուխ չէ։

9.— Պոզ Տեփէ.— Ասիկա բնաբլուրներու շարախումբ մըն է, որ կ'երկարի քաղաքին վարէն մինչեւ Սամանճէօյ եւ մինչեւ Մեզերէ ու Թելակ։ Վերջերս շատ մը տեղերը որթատունկեր տնկուած են։ Թէեւ վարուցան ալ կ'ըլլայ, բայց ապարդիւն, բաւահողի պակասէն։

10.— Զամաչանկ կամ Զեմեչենք.— Պոզ Տեփէի պէս, քաղաքին վարի ծայրէն սկսելով՝ իբր օղակաւորումը շատ մը բլրակներու կ'երկարի մինչեւ հին քաղաք եւ մինչեւ Մելաս գետ։

Մալաթիոյ գաւառակին, դաշտային մասին մէջ ընդհանրապէս դեռ շատ կան այս կարգի տեղեր, բայց մենք այսքանը միայն նկարագրելով կը բաւականանանք» (Պէննէեան, Ը., էջ 29–33)։

## ԱՅՐԵՐ ԵՒ ՆՇԱՆԱՒՈՐ ՎԱՅՐԵՐ

Ինտարա կամ Ինտերէ·— *Քաղաքին արեւելեան կողմը կիրճի մը մէջ, հիւսիսային կողմը կան մէկ քանի քարայրներ, որոնց կերպարանաւորում մը տուած է արհեստը։*

*Այս այրերու մէջ մտնելու համար մահը յանձն առնելու է մարդ, որովհետեւ այրերը խիստ բարձր պահուանդէի մը լերկ երեսը գտնուելով՝ նեղ ու վտանգաւոր ճամբայ մը անցնելու պէտք կայ։ Աստ անցքը տեղացիք Մաղէ կամուրջ կ'անուանեն։ Եւ ով որ այդ կամրջակէն անցնելով կը յաջողի մեծ այրին մէջ մտնել, իր* մուրատը *կ'առնէ Լուսաւորիչէն։*

*Հայեր այս վայրը այցելելու ուխտի կ'երթան Զատկի Նոր Կիրակին, խուռն բազմութեամբ. ամուլ կիներ կը ջանան Մաղէ կամուրջէն անցնիլ զաւակ ունենալու յոյսով։ Քարայրներէն մէկուն մէջ կայ տապանաձեւ փոս մը եւ մարդու պատկեր մը քանդակուած պատին վրայ։ Լուսաւորիչ այս այրին մէջ ճգնելու ատեն թթխմորը դնելու համար բզուկ մըն ալ փորած է քարէն։*

Խոշրուֆի Մաղարա·— *Ասիկա ալ մահուան կիրճին հարաւային կողմը լերան կուշտն է։ Ասոր մուտքը լայն եւ ճամբան դիւրին է։ Շուրջանակի ունի խորշեր, եւ ձեղունէն կը կաթկթի կրախառն ջուր։ Ձեռքի եւ երեսի վրայ խորշուք ունեցողներ եթէ լուացուին այդ ջրով, կ'անհետանայ իրենց հիւանդութիւնը։ Աս պատճառաւ իր անունը դրած են* Խոշրուֆի Մաղարա։

*Ժամանակաւ հետաքրքիր ոմանք այս կիրճին մէջէն* տեփնէ *գտնելու յոյսով տեղտեղ պեղած են, բայց ի զուր, առանց բան մը գտնելու «խելօք ախպար ինչ կը բանիս, ինչ դրիր որ ինչ առնիս» կ'ըսեն ու կը ձգեն պեղումը։*

Թեփէ Մաղարասը·— *Սուլթան սու գետակի աջ եզերքը դաւիթափին վրայ կայ զարմանալի քարայր մը Նափոլիի (Իտալիա) «գանայր»ին պէս։ Այսինքն այս այրին մէջ ալ, բնական պատճառով մը, տիղ (կէնէ) չ'ապրիր բնաւ։ Ուստի հովիւներ միշտ իրարու հետ կը ծեծուին այս այրին վրայ, իրենց հօտերը մտցնելու համար։*

Էկրինէ·— *Բնութեան ամէնարուեստ գործերէն է ասիկա, եւ կը գտնուի* Խաչոպայի *ճամբուն վրայ։ Էկրինէ երկու կողմը 2–300 մեթր բարձրութեամբ ահագին եւ միաձոյլ ժայռերով եւ հազիւ 2 մեթր լայնութեամբ եւ երեք ժամ երկայնութեամբ աստիճանաբար եւ օձապտոյտ նեղ ու հիանալի կիրճ մըն է, այնպէս նեղ որ երբ երկու կողմէն բեռցուած գրաստներ իրարու հանդիպին իրարու անցք տալու համար, մէկը պէտք է ետ դարձնել, մինչեւ որ լայն տեղ մը գտնելով դուրս տարուի։ Ուստի ճամբորդներ երբ կը մտնեն այս կիրճին մէջ, կը սկսին սուլել կամ խաղ կանչել անպատճառ։*

Սու Պաքա·— *Մալաթիայէն Հիւսնի Մանսուր տանող ճամբուն առա—*

ջէն իջնանք կեդրոնը, լեռներու մէջտեղ, ձագարաձեւ ծակ մըն է. չուրջի ջըրէջքներէն կազմուած բոլոր ջուրերը կը խորասուզուին անկէց ներս: Չի գիտցուիր թէ ուսկի՞ց դուրս կը բխին եւ ո՞ւր կ'երթան յետոյ: Ոմանք Բունար Պաշը կամ Էպեմենտիկ վտակներուն համար անկէց գոյացած են, կ'ըսեն, որ հաւանական չէ, որովհետեւ խիստ խոր ձորերով Սու Պաթանէն բաժնուած են երկուքն ալ:

## ԱՆՇԱՐԺ ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐ, ԽԱՆԵՐ ԵՒԱՅԼՆ

Մալաթիոյ գաւառին ամէն կողմն ալ աչքի կը զարնեն տեղտեղ դեռ կանգուն կամ կիսակործան խաներ, զորս ժամանակին կանգնել տուեր է երկրին իշխանը կամ թագաւորը: Այս խաներու մօտէն ձգուած կը տեսնենք հին կառուղիներ ալ հաստաքարով շինուած: Խաներէն դեռ կը տեսնուին Եազըլը խան՝ համանուն դաշտին մէջ, Քէօմիւշ խան՝ Մելասի ձախ եզերքը, Շահնախան՝ Պէյլէր Տէրէսիի մէջ, Եարմճա խան՝ Պալը Չայի եւ համանուն գիւղը, Չիփթէ խան՝ Մամուրաքի լերան ստորոտը՝ Պալը Չայի եզերքովը, Խանէ Բուրուֆան (քրդերէն տղոց պանդոկ) Խալեքան լեռներու միջեւ, Շիշման խանը՝ համանուն գիւղին մօտ վտակին եզերքը, Խէյրպազ խան՝ Իզօղլուի Ծափըլար ըսուած տեղը են.:

Թեքմէ Թաշ.— Հին քաղաքի հիւսիսային կողմը մէկ ժամ հեռաւորութեամբ խճուղիէն եզերքը ցցուած կոթող մըն է. գետինէն դուրս գտնուած մասը ունի 3 մեթր բարձրութիւն եւ երկու գիրկ շրջապատ: Որեւէ արձանագրութիւն չի տեսնուիր վրան. գագաթը թասի պէս փոս մը ունի միայն:

Կ'աւանդեն թէ՝ իր երկիրը շրջագայելու ելլող թագաւորը՝ ժողովուրդը փորձելու համար այդ փոսին մէջ ոսկի լեցնելով կը մեկնի, եւ վերադարձին կը տեսնէ թէ ոչ ոք համարձակած չէ ձեռնամուխ ըլլալ ատոր: Ըստ ամէն հաւանականութեան՝ սահմանաքար մը ըլլալու է ատիկա, սակայն որեւէ տեղ ուրիշ մըն ալ չի տեսնուիր ներկայի մէջ:

## ՆՈՒԻՐԱԿԱՆ ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐ (ԿՈՐԾԱՆԱԾ ԿԱՄ ԿԱՆԳՈՒՆ)

Ինչպէս ըսած ենք, դարերու ընթացքին, Մալաթիան քաղաքական եւ այլ փոփոխութիւններու շատ ենթարկուած ըլլալով՝ գետինը իր տակ ծածկած է հեթանոսական թէ քրիստոնէական հնութիւնները. այնպէս որ դատարկ տեղ մը պիտի չգտնես երբ կը պեղես երկրին այս կամ այն տեղը: Ահաւասիկ մի քանին քրիստոնէական դարերու թողուածներէն:

Ս. Կարապետի ժամ.— Քաղաքին վրայ համանուն կիրճին բերանը տափարակ գետնի վրայ դեռ կը մնայ յարակից երկու եկեղեցիներու հիմունքը, որոնք հազիւ թէ անկէց երկու դար առաջ կործանած են: Քաղաքին Ս. Յարութեան եկեղեցւոյ շինութեան ատեն ժողովուրդը հոս փոխադրած է անոնց

պատերու կարեւոր քարերը:

Քաղաքին հիւսիսային կողմը Տ. Մեսիհի եզերքը պեղելու ատեն գըտնուած են ընդարձակ եկեղեցիի մը հիմունքը եւ պարիսպը, որուն քարերու կարեւորները տեղւոյն վրայ եւ ներկայ զօրանոցին մօտ շինուած հաստատութեան մը գործածուած է: Այդ քարերուն մէջ՝ չուրջը յունարէն գրերով գրուած խաչքար մըն ալ կայ:

Պալեանի Քիլիսէ գիւղին վերեւ վէմերուն վրայ հաստատուած եւ կիսակործան կը կենայ եկեղեցի մը, որուն մէջ գիւղացիները իրենց տաւարը եւ ոչխարները կը լեցնեն հիմա:

Մելետ Տերեսի ըսուած ձորին հիւսիսային կողմը կը տեսնուին եկեղեցւոյ մը պատերը միայն: Նոյնպէս այս ձորին գլուխը՝ Միլէտ պաշի ըսուած տեղը:

Խոչապա գիւղի արեւելեան կողմը, լերան ստորոտը բլրակի մը վրան ու բոլորտիքը քրիստոնեաներու գերեզման ըլլալը տեսնուելէ զատ, առջեւի տափարակ գետինը բռնած են քաղաքի մը աւերակներու քարակոյտերը:

Նոյն գիւղի կռնակի լերան ետին Ֆատըլ ըսուած տեղն ալ, ուր հիմա գիւղացիներն իրենց ուխտավայր ըրած են, կը տեսնուի եկեղեցւոյ մը հիմունքը:

Վերին Մաստըճանի (Իզոլլու) վերեւ Սեքիւլէր ըսուած տեղն ալ կայ եկեղեցւոյ մը հիմունքը: Հոդ կը տեսնուին, ինչպէս անունէն (սեքիւ) յայտնի է, աստիճանաւոր բերդի մը փլած պարիսպները:

Իզոլլուի Կեավուրան (քրդ. Հայկ) գիւղի մէջ կը տեսնենք հին եկեղեցի մը եւ ընդարձակ գերեզմանատուն: Կեավուրան, ինչպէս իր անունէն ծանօթ է եւ ինչպէս ներկայ բնակիչները կը կարծեն, մինչեւ ԺԶ. դարուն վերջերը հայաբնակ է եղեր: Բայց անկից յետոյ հարեւան Քիւրտերու պատճառով՝ սկսած են քաղաք եւ ուրիշ տեղեր գաղթել. քաղաք գաղթողներէն ծանօթ են հիմա Իմրիկեանք եւ Ծերենիկեանք:

Ծուպաս գիւղախումբի Քելեսիկ գիւղի (Եփրատի եզերքը) պարտէզներուն մէջ ալ կայ հին եկեղեցի մը: Գիւղին արդի բնակիչները Ուրբաթի եւ Նամազի գիշերները ճրագ վառելով ասոր մէջ կը դնեն:

Ներկայ քաղաքի Հայոց գերեզմանատան արեւելեան եզերքը՝ Ս. Օվաննէս անուանեալ եկեղեցւոյ մը հետքը կը տեսնուի դեռ: Հայ մամիկներ, դեռ քիչ տարիներ առաջ, հաւաքուելով ուխտի կ'երթային հոն՝ մոմ վառելով եւ մուրատ ուզելով: Նոյն վայրի մօտէն (գերեզմանատան եզերքէն) 1889-ին գտնուած է գետնափոր շիրիմ մը, որուն կափարիչին վրայ յունարէն տառերով գրուած էր հետեւեալը. «Ով որդիք Բոլոնիայի, ժեթացւոց գլխաւորներն եղող երկու ճարտարապետներուն վրայ ողբացէք, որ Տէրը հանգիստ քնոյ մը մէջ հանգչեցնէ»: Այս քարը անարժէք բան մը համարելով կոտրած եւ Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ պատին մէջ ձգած են:

Շիրիմ մ'ալ Խօրէն ըսուած Հայոց գերեզմանատունէն գտնուած է: Աս

վերջինը թէեւ վերինէն փառաւոր ու ընդարձակ, բայց որեւէ գիր կամ արձանագրութիւն չունէր: Զարմանալի զուգադիպութիւն որ այս երկու հին չիրիմները նոր գերեզմանատանց մէջէն կը գտնուին:

Հոգելոյս Պէննէեան Տ. Կարապետ քհնյ.ի այս տեղեկութիւններէն անհատաբար եւ զանոնք առանց կարդացած ըլլալու Տոքթ. Միքայէլ Քեչիչեան ունի ցուցակ մը Մալաթիոյ հնութեանց (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 25, էջ 9), ուր կը թուադրէ եօթը հնութիւններ, որոնք էին.—

1.— Քեախթէ Նեմրութ լեռը, կամուրջը, բերդը, Հիւսնի Մանսուրի ճամբուն վրայ բրգաձեւ արհեստական բլուրներ եւ այլն.

2.— Արղայի գետնափոր եկեղեցին, յունական մոզայիքներով.

3.— Արսլան Թեփէն՝ Հիթիթներու օրերէն մնացած.

4.— Հին քաղաքը (վարի քաղաքը) Լէնկթիմուրի օրով կործանած, 40 իշխան Նահատակաց գերեզման: Ուստա Շեկերտ Կիւպպէսին, Ուլու Ճամին, Մեծ Խանը, պարիսպը, Ս. Թորոսը, որուն աղաւաղեալ ձեւով Զոտըրոզ կ՚ըսեն.

5.— Տերմեսիի եկեղեցին եւ հրաշալի ջուրը, համանուն լերանց մէջ յիշատակարաններ, Տիքիլի Թաշ եւայլն.

6.— Գըրք Կէօզի կամուրջը.

7.— Անարծաթ Բժիշկ եկեղեցին, Թադէոս եւ Բարթողիմէոս առաքեալներու քրիստոնէութիւնը տարածելու ատենները շինուած 40 մատուռով, որ կը գտնուի Մելիտինէ քաղաքէն մէկ ժամ հեռու դէպի արեւելք Բունար Պաշիի քովը, եւ որուն աւերակները դեռ նշմարելի են:

Տոքթ. Միքայէլ Քեչիչեանի թուած այս հնութիւններէն Անարծաթ Բժիշկը, որուն վրայ քանի մը տող խօսած է, հնօրեայ վանք մըն է, որուն վրայ պիտի խօսուի վանքերու բաժնին մէջ:

Իսկ մնացեալ վեց հատուածներու մէջ Տոքթ. Քեչիչեան պարզ թուումն մասանցով մը բաւականացած է առանց ուեւէ տեղեկութիւն տալու, եւ ինչպէս Յ. Գոճապաշեանի մէկ գրութենէն (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 30, էջ 11) կ՚երեւի, հաւանօրէն պզտիկ սխալներ ալ սպրդած են այս գրութեան մէջ: Այսպէս, Յ. Գոճապաշեան կ՚ըսէ թէ Տիքիլը Թաշը Տերմեսիէն հեռու հին քաղաքէն դէպի Գըրք Կէօզ երկարող ճամբուն վրայ պէտք է ըլլայ եւ ոչ թէ Տերմեսիի ջուրին մօտ:

Տոքթ. Քեչիչեանի գրութիւնը դժբախտաբար նոյնպէս անխնամ աշխատութիւն մըն է եւ լայն տեղեկութիւններ չի տար Մալաթիոյ նահանգին հնութիւններուն վրայ, եւ ոչ ալ անոնց ո՛ր դարուն պատկանիլը կը ճշդէ:

Իսկ Գ. Մելիտինեցի իր ՆԱԽՃԻՐՆԵՐուն մէջ (էջ 24-7) ունի հատուած մը՝ Պատմական Վայրերու նուիրուած, ուր իբր «հնութեանց վայրեր» կը յիշատակէ.

«Ա. Ասլան Թեփեսի կը գտնուի քաղաքէն երեք ժամ հեռաւորութեամբ Վարի Քաղաքի արեւելեան կողմը: Միջակ բարձրութեամբ բլուր մըն է, ո-

րուն կողերէն դեռ մակերեսային խորութեամբ գտնուած են քարի վրայ քանդակուած զանազան նկարներ (մեծ մասամբ անանուն) եւ այլ սեպաձեւ գրութիւններ, որոնցմէ տեղական ժողովուրդը ոչինչ հասկցած է: Ո՞ր շրջաններէն մնացած են հոն թաղուած հնութիւնները, եւ ի՞նչ արժէք կը ներկայացընեն քաղաքակրթական տեսակէտէն: Ասոնք հարցեր են, զորս կրնան լուծել միայն գիտնական հնախոյզներ, եթէ միայն արտօնուին անոնք կատարելու իրենց պեղումները:

Բ. Ինճիրլիք Տեփեսի կը գտնուի Վարի Բաղաքի դարձեալ արեւելեան կողմը առաջինէն քառասուն վայրկեան հեռաւորութեամբ. սար ստորոտներէն ալ գտնուած են քարէ ու հողէ ամաններ, որոնք ակներախ կը վկայեն հոն թաղուած հնութեանց մասին:

Գ. Վարի Բաղաք, բաղդատմամբ առաջիններուն աւելի նոր, ունի եկեղեցիներու, պարիսպներու եւ այլ շէնքերու կիսակործան փլատակներ, որոնք կը կրեն հայկական ու առաւելապէս բիւզանդական դրոշմ: Լենկթիմուր եղած է պարիսպի գլխաւոր քանդողը, որուն երկայնքին փորուած խորութիւնը (ջուրով լեցնելու համար) կը վկայէ քաղաքի երկար ժամանակ պաշարուած մնալը: Գլխաւոր վայրերն են՝ Ալաճա Գափու, Զոռ Տը Տող, Ուլու Ճամի, Ս. Ստեփանոսի եկեղեցին, Թոփ Գափու եւայլն: Ուլու Ճամին նախապէս եղած է յունական եկեղեցի, ապա օսմանեան տիրապետութեան շըրջանին վերածուած է մզկիթի: Պատերը զարդարուած են կանաչ, կարմիր ու ճերմակ, եռանկիւն ու քառանկիւն նրբօրէն տաշուած քարերով, որոնք ցարդ անաղարտ կը պահեն իրենց գոյները:

Դ. Օրտուզի կը կրէ ամբողջովին հայկական դրոշմ, մինչեւ համաշխարհային Ա. Պատերազմը. անցեալի փառաց միակ կոթող՝ կանգուն կը մընար եկեղեցի մը Ս. Փրկչաց նուիրուած:

Ասիական բարբարոսներու արշաւանքներէն շատ առաջ[1], հին նախահայրեր Բունար Պաշիի ջուրին ակերուն վերեւ կառուցած են Անարծաթ Բժիշկ եկեղեցին (որուն հիմերը դեռ ցցուած են հողի երեսին՝ մասամբ), որ ունի եղեր քառասուն խորան, քառասուն սուրբերու նուիրուած: Լենկթիմուր տեսնելով այս սրբատեղիի պաշտելի նուիրականութիւնը ժողովրդեան վրայ հիմնայատակ քանդած է, եւ անթիւ զօրքերու ու գերիներու տաժանակիր աշխատութեամբ քարերը թափած Եփրատ գետը, սպառ ջնջելու համար անոր յիշատակը: Կը պատմուի թէ հին ատեններ Օրտուզիի Ս. Փրկչաց եկեղեցին եւ Անարծաթ Բժիշկ վանքը յարակից եղած են իրենց ընդարձակ բաժանումներով»:

Գ. Մելքոնեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 27) այս տեղեկութիւնները տալէ ետք կ'ըսէ թէ «զանց ընելով նուազ կարեւոր տեղերու թուումը, անգամ մը ալ չեշտենք որ... ցարդ ոչինչ կամ գրեթէ ոչինչ լոյս աշխարհ հանուած է

(1) Այսինքն ըսել կ'ուզուի ԺԱ. դարէն առաջ:

*իր (Մալաթիոյ) ծոցին մէջ թաղուած թանկագին հնութիւններէն...»։*

*Մալաթիոյ հնութիւններով զբաղած է նաեւ Գէորգ Արքեպիսկոպոս Այլանեան իր առաջնորդութեան շրջանին եւ զանոնք նկարագրած է զանազան հրատարակութիւններու մէջ (ինչպէս ԲԻՒԶԱՆԴԻՈՆի, ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑի եւ ԲԱԶՄԱՎԷՊի)։*

*Այլանեան Արքեպիսկոպոսի այս նկարագրութիւնները ի մի ամփոփած է Հ. Եփրեմ Վրդ. Պօղոսեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 61,* Մալաթիոյ Հնութիւնները)՝ *չորս կարեւոր վայրերու վրայ բաժնելով այս հնութիւնները, ինչպէս կը ներկայացնէ Հ. Եփրեմ Վրդ. Պօղոսեան, նոյնպէս առանց ճշդելու թէ այդ հնութիւնները ո՞ր ազգերուն եւ ո՞ր ժամանակներուն կը պատկանին.—*

Ա.— Քեախթէի Հնութիւնք. *Մալաթիոյ կուսակալութեան Քեախթէ գաւառը կը ներկայացնէ ամենէն հարուստը թանկագին հնութիւններով, որոնք կը պատկանին զանազան ազգերու եւ ժամանակներու, եւ անշուշտ կը կարօտին գիտական լուրջ ուսումնասիրութիւններու, որոնք չեն կատարուած դրեթէ մինչեւ հիմա։*

*Գէորգ Արքեպիսկոպոս Այլանեան Քեախթէ այցելած է 1905–ին եւ իր այցելութի տպաւորութիւնները ներկայացուցած է յօդուածներով։ Ան կը գրէ թէ Քեախթէի «Արեւելեան կողմը, լերան ստորոտը, ահագին բաղնիքի մը աւերը կայ, որուն ամբողջութեան չորրորդ մի մասը դեռ կանգուն է. մինչեւ ջուրն հոսելու տեղերն ու աւազանները որոշ կ'երեւին։ Որմերուն մէջ երկու ջուրի ճամբաներու խողովակներն անվնաս կեցած են մի քանի դարերէ ի վեր։ Այս հնութենէն կտոր մը փրցնել անկարելի է. ժայռի պէս ամրացած է։ Այնպիսի վարպետութեամբ շինուած է որ նորերուն մէջ դժուար կը գտնուին ատանկ գիմացկունութիւն, յղկութիւն եւ անայլելիութիւն. մէկ չորրորդ մասըն հինգ սրահներէ կը բաղկանայ, մնացեալ երեք մասերու ամէն մէկը 5 կանգուն երկայնութիւն, 5 կանգուն լայնութիւն եւ մէկ կանգուն բարձրութիւն ունին, եւ այսպէս 15 կտորներ կը համրուին ձորին մէջ ինկած. հին օրերու մէջ ահագին հեղեղ մը եկած քշած է ամէնը։*

*Բաղնիքին առաջ ընդարձակ տափարակ մը՝ ձիավարժութեան տեղ է եղեր եւ այժմ խոշոր ձորի մը վերածուած է. սոսկավլիթխար քար մըն ալ եկած հողէ բլուրի մը վրայ պզպզած է։*

*Ճամբուն վրայ աղբիւր մը կայ. աս եւս հին ճարտարապետութեան մէկ հիանալի գործն է, որ դարերու միջոցին հողին մէջ թաղուած՝ իր պաշտօնը կը կատարէ։*

*Լերան տակ փապուղեակ մը, որուն մէջ առատորակ վճիտ ջուրը կը քալէ, առանց վնասելու եւ առանց փողրանքի։ Մարդ կրնայ քիչ մը ծռած երթալ ու երթալ մինչեւ մէկ ժամ եւ հոն տեսնել թոնիրներու տեղեր, կամարակապ շէնքերու բեկորներ։*

*Ամենէն աչքի զարնող շէնքն է բերդը։ Կառավարութեան շէնքին եռեւի կողմէն կը բարձրանանք բերդը, որ կրանիթ տիտան ժայռ քարին վրայ կե–*

ցած է։ Քարը կնգուղի մը ձեւն ունի։ Ժայռին լայն կողէն բերդը բարձրացած է հսկայ, հիանալի եւ վեհ երեւոյթով։ Բերդին աւագ դրան արեւելեան կողմը բացուած է, կամարակապ, խոյակաւոր քանդակներով, նռնաձեւ գնդակներով ու նուրբ ծաղիկներով։ Դրան ճակտին վեց կարգ երկար շարքի մը վրայ գրուած է յիշատակութիւնը, որուն Սուլթան Սալահետտին եւ Մելիք Սէյֆետտին բառերը շատ որոշ կը կարդացուին։

Հետաքրքրութեամբ վառուած ու լարուած ենք։ Առաջին աստիճանները քայքայած են բոլորովին եւ արեւմուտքէն երկարած ահագին որմերուն հիմնաքարերը շատ դժուարութեամբ քակելով տարած են եւ որմը դեռ անգիտակ կը կենայ խիզախօրէն։ Արտաքին պատնէշ որմերուն համար հազարաւոր քաշ կշռող քարեր գործածեր են, իսկ ազուցման համար միլիոնաւոր հաւկիթ, կիր ու աւազ։ Որմերն այնչափ ողորկ ու այնչափ փայլուն են որ կը հիանաս ու կ՚ապշիս։

Դռնէն ներս երկար կամարի մը տակէն կ՚անցնինք. քարերու կտրուանքը ճամբան քիչ մը դժուարացուցած է։ Երկրորդ դռնէ ներս պիտի մտնենք. անցքը բոլորովին գոցուած է։ Սողոսկելով կ՚անցնինք։ Երկրորդէն ներս ապատ շունչ մը կ՚առնենք. երկայն դաւիթ մը, որուն երկու եզրերն հսկայ շէնքերու շարքեր կան, 1–2–3 կարգ եւ գուցէ աւելի ալ ու համակ քար, համակ կամարաշէն։

Աջ կողմերնիս շարունակ կամար, մէջէ մէջ հիւսուած, պղուցուած կուռ ընդ կուռ սենեակներ են, եւ այս ամենուն մէջ նեղ ու երկար շերտեր կան դիտանոցի, ձախերնուս քառակուսի եւ զմրեթաւոր շինուածք մը կայ մանր քանդակներով։ Ծիշդ այս շէնքին դէմը կ՚իյնար աւելի նուրբ շէնք մը, որ աղօթարանն է[1]։ Երկար գրութիւններ շէնքին ներսի մասին որմերուն վրայ, գրուած են ամբողջ սիւլիւս գիրերով, եւ մեծ բոլորշի պատուհան մը, որ քովնտի դէպի արեւմուտք կը դիտէ անծայր ու անծիր հորիզոնը։ Շէնքին տակը ներքին յարկ մը եւս։ Քառակուսի զմրեթաւոր շէնքին քովն է դէպի վեր տանող ճամբուն մեծ դուռը՝ մեթրներով երկար ու բարձր։ Այս դռնէն երկրորդ դաւիթը կը մտնենք, ընդարձակ տարածութեան մը վրայ փռուած (ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, Թ. 2593)։

Ուրիշ յօդուածի մը մէջ (տես Թէոդիկ, ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1922, էջ186–8 կամ ԲԱԶՄԱՎԷՊ, 1936, էջ 37–9) Ասլանեան Արքեպիսկոպոս կրկին խօսելով Քեախտէի վրայ դարձեալ կ՚անդրադառնայ անոր հնութեանց վրայ։

Ան կը նկարագրէ Բել (Պէլ) լեռը բարձրանալու համար իր եւ ընկերոջը՝ Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեանի կրած դժուարութիւնները.—

«Ճամբան այնքան քարքարուտ է որ, կ՚ըսէ, առեն–առեն կը ստի–

---

(1) Քեախթէաքենակ Հայոց մեծ գերդաստանը, որ երկու դարէ ի վեր Քեճիշեան կը կոչուի, ունէր սուլթանական «ֆերման» մը, որ բերդին մէջ կարգ մը առանձնաշնորհումներ տուած էր անոր, երբ սովորութիւն է եղեր ատենօք հոն բնակիլ (Թէոդիկ, ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1923, էջ 237,՚ծանօթ.)։

*պուլինք ձիերէն իջնել։ Կ՚անցնինք Բեախտէի ձորէն, հսկայ Բելը հոս ոտք դրած է եւ իր յաղթ սեպութիւնը տարածած ժեռուտ կողերով։ Խոսրով գիւղի առաջքէն կ՚անցնինք... երեք ու կէս ժամ այսպէս կը շարունակենք մեր վերելքը, միշտ աջ ու ձախ ունենալով վիմեղէն կարկառներ եւ օձերու բոյն խոռոչներ... Արեւելքի դէմ պատնիշուած վիթխարի արձաններու առջեւն ենք, ահա, շարուած թէ ո՛րը պիտի դիտենք եւ որո՛ւն քով պիտի երազենք ամենէն առաջ։*

*Մեր առաջ պարզուած է հնութեանց պատկառելի չէնք մը անդուռ եւ անորմ։ Հոս առիւծ մըն է կեցած՝ ցից բաշերով, հոն փաթթոցաւոր հսկայ գլուխ մը անմօրուս, անդին բազէ մը, շահէն աչքերով, խառնիխուռն հաստ սրունքներ, քամակներ, ջլապինդ բազուկներ՝ մականակիր եւ աղեղնաւոր, ափսոս, վանդակի թաթերով ջախջախուած։*

*Մեծ չէնքի մը դաւիթին չուրջը շարուած արձաններու թափթփուքներ են ասոնք, պատուանդան ունենալով խոշոր աւազաններ։*

*Արձանի մը մէն մի բեկոր թոնոներ կը կշռէ, բոլորն ալ կրանիթ քարէ։ Դէպ արեւելք, կարծեօք մեհեանին լայնդիր սանդխամատները կ՚երեւին, մինչեւ 7 աստիճան՝ անեղծ մնացած, իսկ չէնքին քարերը՝ փուլ ու ջիլ։ Բանի մը տասնեակ դարերու գործ...։ Դեռ եւս կանգուն վեց արձան հիացում կ՚առթեն դիտողին, դարերը իրենց ոտքին տակ առած, իրենց յոխորտ կեցուածքով... Ատոնց պատուանդանները քարետախտակներու պէս ողորկ են չերտ չերտ յեցած իրարու վրայ, «քեախտէական» (քաղդէական) ոճով գըծուած ու նշանագրուած։ Այս որմաշարը մարդու հասակէ շատ բարձր է, իսկ արձանները՝ քանի մը պատիկ աւելի բարձր, մեծղի իրաններով, ծաղկազարդ գլուխներով, մերկատիտ ու մերկասրուն։ Իրենց նայուածքը դէպի հիւսիս ու հարաւ, կնոջն ալ ուղղուած՝ Կարկառի ժայռաբերդին ծոցը քանդակեալ այր արձանին...։*

*Արեւելքէն դէպի արեւմուտք՝ միւս վեց արձաններուն այցելելու համար, պէտք է անցնիլ լերան հիւսիսի կողէն, որուն մէկ ծայրէն, այսինքն արձաններուն (°) ու դաւիթին քովէն մինչեւ միւսներուն առընթեր, կայ յեսանաձեւ քարացցուանքներու շարք մը, մօտաւորապէս տասական սանթիմ լայնքով, ներկայացնելով այլազան նկարներ՝ կենդանիներու, ծաղկանց ու գրուածոց քանդակներ, մանաւանդ երկսեռ մարդապատկերներ։ Արդարեւ, արուեստն ու արհեստը մրցեր են իրարու հետ, ինչպէս դուրն ու ուռը՝ վրձինին ու դրիչին հետ. գլուխ–գործոց մըն էր կնոջ մը անդրին՝ դեղանի, նրբայօն աղեղ, թուշը կլոր, շուրթերը ներդաշնակ, մազերը քիչ մը նման այժմու ոլորուածքին, վարդի տրցակներ եւ դառնագլուխ զարդեր այտերուն, ինչպէս եւ վայելուչ ապարանջաններ դաստակներուն։ Ագին ամփոփած առիւծ մը՝ կնոջ մատներուն հպումէն հիպնոսացած՝ կ՚անշարժանայ, ձախ ուսին բազէ մը՝ որսախոյզ ակնարկով. վրան առած է լոդիկ մը այնքան նուրբ ու փափուկ, որ տակէն լեցուն իրանը կը նշմարուի։*

*Երկրորդ մը այր մարդուն պատկերն է. գիրքէն դատելով՝ իշխանաւոր մը ապահովարար գեղադէմ, ածիլուած այտերով, փաթթոցաւոր, նըրբահասակ. ոտնապաններ կան ոտքերուն վրան՝ կապայ մը, թեւերուն տեղն իսկ յայտնի. աջին ունի աղեղ մը, ձախին ալ հրովարտակ մը, զոր կարծես կը կարդայ, նայուածքը թէեւ սուր, բայց միտքը մռայլ: Կ'անցնինք արեւմըտեան կողմի արձաններուն, որոնցմէ երկուքը միայն անեղծ մնացած են, երկուքը կիսովին, իսկ միւս երկուքը աւելի վնասուած. արեւելքի եւ արեւմուտքի միջոցին մէջ 960 ոտքէն աւելի շրջանակով 1000-ի մօտ բարձրութեամբ վիթխարի քարակոյտ մը կայ՝ արձաններուն շինութենէն գոյացող կտորուանքովը ձեւացած: Ոչ մէկ բուսականութիւն այդ լերկ լեռնակին վըրայ, ուր բարձրացանք տաժանագին, դիտելով չորս աւուր ճանապարհով հեռի Տիարպեքիրի մինարէներուն մունիկը»:*

*Դարձեալ Ասլանեան Արքեպիսկոպոս երրորդ յօղուածի մը մէջ* (*Թէոդիկ*, 1923, *էջ* 239-9) *մասամբ վերաքաղ մը կ'ընէ իր առաջին յօղուածին* (ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, *թ.* 2593)՝ *անոր կցելով մի քանի նորութիւններ:*

*Հոն կը խօսի Քեախտէի արեւմտակողմը գտնուող* Խարազնաղ *լերան վրայ կանգնուած վիթխարի կոթողին մասին.—*

*«Ասոր արտեւանը թեւատարած նստած է սեւ թռչունը. մարդկային աչքը պատրանք կ'ունենայ թէ երկինքէն կախուած է ան... Արեւելքէն՝ Պելլի լերան սեպ կատարը երկնամուղ, հիւսիսէն ու հարաւէն խրոխտ Կինտէնեբու հսկայ քարակոյտերը, նաեւ շարք մը վիմեղէն ահագին շղթաներու տարտարոսեան վիհեր, թաւուտներ, ղանթարայի գետակը մեղմահոս ու իր կամուրջը հոյակերտ:*

*Քեախտէի ձորէն դուրս պոռթկացող գետակի ափին կ'երեւի Ս. Թորոսի մատուռը, որ առենօք մենաստան է եղեր, իսկ հիմա աւերակոյտը միայն կայ:*

*...Այնուհետեւ կը մտնենք* Խապէր, Շէյխ-Մուս, Եաղի-Տէրէ, Ապու-խեֆաճ, Քիլիսէ *եւ* Սերգիւզ *դաշտակներուն մէջ: Ատոնց դիմացն են* Չէրճէօզ, Քեֆիրմէ, Քէրճիւրէկ *եւն., որոնց հունին՝ Քեախտէի եւ Կենտէրէի գետակները տելթա մը կազմած կը համբուրուին: Թաշղանի-Թեփէէն կը դիտենք ժայռերու կուրծքին թաղուած յաղթ կոթողները: Կամուրջին քովն ենք. հրաշալիք մը, մեծ յղացումի կնիքն իր վրայ, նախնեաց ճարտարապետութեան մէկ գլուխ-գործոցը, որ դարեր ապրեր է ու պիտի ապրի յաւիտեան: Երկայնութիւնն է* 500 *ոտք, լայնութիւնը* 30 *ոտք, ջուրին երեսէն մինչեւ կամարին աղեղին կեդրոնը* 60 *կանգուն, իսկ* 2 *հիմերուն իրարմէ հեռաւորութիւնը* 300 *ոտք: Եզերքը գետեղուած են* 2 *մեթր երկայն,* 1 *մեթր բարձր ու նոյնքան լայն քարեր՝ իրարու մէջ ագուցիկ, արտակարկառ մասերուն վրայ նոնաձեւ զարդերով:*

*Քեախտէ Մեղիրէի Թաշղանի կողմը կոթող մը կայ* 8 *բոլորակ քարերով, իւրաքանչիւրը* 2 *դրկաչափ լայն եւ մէկ ու կէս կանգուն երկայն.* 4 *քա-*

ռակուսի աՀագին քարեր Հիմը կը ձեւացնեն. զոյգ մը խոյակաւորներ ալ ծայրին զետեղուած։ Կոթողին բարձրութիւնն է 20 կանգունէն աւելի, կէսն անընթեռնլի արձանագրութիւններով լեցուած. 40 քայլ անդին դէմ դէմի քառակուսի լայն քարերուն վրայ դրուածքներ ամբողջ։ Գարպաղուչ եայլասի կողմն ալ լի է նմանօրինակ քարերով եւ 2 կոթողներով։ Այնպէս կ'երեւի թէ ատոնք 4 են եղած, սակայն մին փճացած է։ Այս Հսկայ կամուրջը մէկ կամարի վրայ կեցած է միայն, կոփածոյ Հսկայ քարերով, եզերքներն ալ ամբողջ ժայռ։ Դէպ արեւելք 2 մեծ պատուանդաններ կան Հարթյատակ, որոնց վրայ 30–40 Հոգի Հանգիստ կրնայ կենալ։ Կամուրջին Հսկայ որմերէն միոյն վրայ բեւեկնի մը եւ ուրիշ ծառ մը բուսած են ինքնին եւ կանաչ ջաՀերու նման առկախուած։ Այս կամուրջը վիթխարի բերդ մըն է։ Պատմութիւնը Կանդարա անունով ուրիշ մըն ալ կը յիշէ, որ բոլորովին տարբեր է ասկէ. Մինչա ՆաՀր էլ–Ազրագ գետակին վրայ կառուցուած է այս Պէհիսնին եւ Հիւսնի–Մանսուրի (Ատիաման) մէջէն վազող «Կէօք–Սու»ին» (Թէոդիկ, ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1923, էջ 238–9)։

***

Աւլանեան եպիսկոպոս կը յիշէ Քեախտէի Հնութեանց վրայ խօսած ատեն նաեւ Հետեւեալ Հնութիւնները.—

«Ա. Գուշ–Թեփէ.— Քաղաքէն դէպի Սամոսատ տանող ճամբուն վրայ թառած քար ոտներով, նոյնպէս քար փետուր թեւերով ամբողջովին Հսկայ քար թռչուն մը ամենանուրբ մանրամասնութեամբ, որ իբրեւ արծուի կը Հսկէ, կը տիրէ ու կ'իշխանապետէ բոլոր շրջակայից վերեւ։

Բ. Սամոսատ.— Սամոսատ այժմ դաշտ, եւ այս Հողերուն մէջ ճամբու մը եզրին մեծարժէք, նշանաւոր, սեւ կրանիթեայ արձանի մը միակտուր, միապաղաղ, քանդակեալ կոթողը կայ, որ այդպէս տապալած գետնի Հողին վրայ պառկած է. Հետաքրքրուող իսկ չկայ, մինչդեռ ան Հնութեանց թանգարանի մը թանկարժէք Հնութիւնը պիտի կազմէր։

Գ. Արդայի Հնութիւն.— Սա Մելիտինէէն դէպի Գերմանիկէ (Մարաշ) եւ մասամբ ալ Սեւ Հողեր (Սվազ) երկարող Մելիտինէի Միւթեսարրֆութեան ենթարկեալ գաւառամասն է, բաւական ընդարձակ... իր Հնութիւններն են... Գերեզմանատեղիկը, 9 կարգ, ուղիղ շարքերով եւ Համաչափ կերտուածքով եւ ամէնը քար՝ բլրակի մը վրայ տողուած... ամէն մէկ դամբարան ունի փոքրիկ դռնակ մը, ու դեռ կը մնան անաւեր... իշխանական պալատը, որուն աւերակները կան եւ ատով դուրս կու գայ թէ Հոյակապ վեՀափառութեան մը նշխարքն ու նշմարքն են, երբ... յարգը երբեք չգիտցող ձեռներ քարեր ու սիւներ, մարմար ու կրանիթ քանդեր են ու տարեր ձիերու ախոռ շինելու... Պեղումներ կը կատարուին գերեզմաններուն առջեւ, ընդարձակ գետնի մը վրայ... եւ աՀա երեւան կ'ելլեն մարմար քարեր ու սիւներ եւ ի–

րենց առջեւ կը բացուի հոյակապ տաճարի մը սիւնազարդ գաւիթը, ուր կան մարմարեայ դամբարաններ: Գաւիթը բոլորշի ձեւ մը ցոյց կու տայ, ուսկից անկիւնաւոր մաս մը կիսովին մէջտեղ է ելած: Գաւիթը մէկ մասամբ դուրս բերուած է դեռ: Որմերու վերի մասերը ծաղկազարդ քանդակեալ են եւ մարմարները ամբողջ եղերաքանդակ. ամբողջ գաւիթը սիւնազարդ եղած է... սիւնազարդ, խոյակազարդ գլուխներ... սպիտակ, վարդագոյն, բաց դեղնագոյն մարմարէ են. փշրուած սիւներու մասերն ու ամբողջութիւնը դուրս կը բերեն հոյակապ տաճարի մը մեծարժէք շինութիւնն ու հնութիւնը...:

Յատակը եղերքներով կրանիթ քարերու յատակումովը, եւ բուն կեդրոնովն ալ ամբողջ մոզայիկ ծաղկազարդ ու կենդանազարդ են. դարերու մէջ կրցած են պահել գեղակերտ կենդանութիւննին... Անկիւնադարձ մը, որ դարձեալ մաս կը կազմէ գաւիթին, դեռ անաղարտ կան հսկայ եօթը սիւներ, խոյակաբարձ մեծակշիռ թանկարժէք գլուխներով կիսովին թաղուած:

Կայ փառաւոր դամբարան մը եւս, որուն կափարիչին վրայ կը տեսնուի Թէոդորոս յոյն եպիսկոպոսի մը յիշատակարանը. իսկ այս անկիւնադարձին ամենասքանչելի մասը կը կազմէ բուն յատակը, որ մասամբ մէջտեղ պարզուած ամբողջ մոզայիկով որպէս թէ մեծ գորգ մը փռուած է գունագեղ հիւսուածքով, ճոխ բուսականութեամբ, ծաղիկներու փնջակներովը, թռչուններու երամներովը եւ դեռ ծաղկուն ու գեղգեղուն ոսկեջրերով ալ հարբուն: Ոսկեծեփ թրծուն որմերուն վրայ, ամէնը ամէնով բոլորովին հրաշալիք մը, որոնք թէեւ կիսովին են դուրս բերուած, եւ սակայն աստնք անգիտակ ձեռքով եւ քանդիչ բրչով փճացուած ու փճանալու վրայ են:

Անգլիացի հնագէտ մը, տարիներ առաջ, մոզայիկ կենդանչագրերը մանրակրկիտ քննելով՝ կը յայտարարէ թէ այս շէնքը նախ քան զՔրիստոս տաճար մը եղած է, յետոյ վերածուած է քրիստոնէական տաճարի մը...

Մէջտեղ ելած գաւթին մէկ մասը հարիւր կանգունի մօտ շրջագիծ մը ունի. որով ինքնին դուրս կու գայ հոյաշէն ու մեծաշէն տաճարին մեծութիւնը:

Արկադեան – Աղճատաղն ալ եղած է հնութեանց թանգարան մը իր մեծաշէն շէնքերովը, եւ ձեռք անցուած հնութիւն բուրող ու արժող բեկորներովն ու առարկաներով, արձաններովն ու արձանիկներովը, գլանաձեւ աղնիւ քարերու վրայ նշանագրերու, թռչուններու եւ այլ կենդանիներու քանդակուն գլուխ–գործոցներովը եւ աւելի հիթիթական դիմագիծովն ու հագուստներովը. քարի ու երկաթի վրայ փորուած կնիքներովը, ինչպէս զանազան արժէքաւոր քարերու վրայ, որպէս զմրուխտի եւն.:

Մեծ աւազան մը համակ եւ միակտուր կրանիթ մարմարէ եւ քանդակուն առիւծներով բոլորուած: Այս գեղակերտը փոխադրուած է կայսերական ագարակի ապաստանը:

Արկադեան – Արղայէն վեց ժամուան ճամբով հնութիւնները Անսուր Մուշովկայինը՝ հարուստ բնակչութեան մը բակտեղիքը, քար բակերը, գե–

րեզմանոցը հազար գերեզմանաքարերով՝ իւրաքանչիւրը արուեստանշաններով քանդակուած, մանաւանդ մեծ քարաժայռի մը կողքին համաչափ փորուած տնակ թէ կրպակ եւ շարք մը այնչափ թուով… բայց թուական մը չգտանք ճակատնուն, բացի պատմուածքներէ. եւ որ զարմանալին է՝ քարաժայռ կտուրին անմիջապէս փորուածք մը, ուր զետեղուած է հսկայ խաչքար մը փորուածքի բերնին, եւ կտուրին վրայէն քառակուսի սիւն մը երկարցուած դէմը ցցուած լերկ լերան մը. իրապէս մազէ կամուրջ մը. ասոր համար ալ աւանդութիւն:

Դէպի Սեբաստիա ճամբուն Հասան պատրիկով Հէքիմ խանն է… Հէքիմ խանէն 2 ժամուան հեռաւորութեամբ Կիւզինկիա–Զմրուխտ լեռնադաշտակին վրայ հսկայ բերդի — ըստ պատմուածքի՝ պալատ — կուշտն ու կողերը մնացած են. դարերուն հետ մաքառելով՝ պահապան հրեշտակն է եղած՝ գոնէ դաշտի յուռթի բուսականութեանը եւ դից թէ քրմուհեաց մատուցանելի ծաղկանց ու մրգաց առատութիւններուն անթուելի» (ԲԱԶՄԱՎԷՊ, 1936, էջ 39–40 եւ 1937, էջ 65–6):

## ՀԻՆ ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԻՆ ՀՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Ասլանեան վրդ. կը գրէ. «Հին Մելիտինէն (Նորը Ասպուզա անուամբ կը յորջորջուի) շատ հնութիւններով, աւելի հնութեանց բեկորներով ու ցրուած կոյտերով եւ կիսակործան եւ նոր անուն ու հանդերձանք զգեցածներով բոլորուած է: Յայտնի բոլորուածներն են. Ալի–Պապան, Ահմետ–Պուրանը, Գարա–Պապան, Սարխըլըն, Սէյտի–Գալէն, հետաքրքրութիւն ու ուշադրութիւն գրաւող: Մելիտինէն 3500 տարուան հնութիւն մը ունի եւ հոս է որ տիրած ու տիրապետած են Ուրարտուք, Վանեանք եւն.: Քաղաքը հսկայ պատնէշներով պարսպապատ եղած է, որոնց բեկորները հոս ու հոն ժեռած ու թաղուած են եւ կապուտ–կողոպուտ եղած. բոլոր պարիսպներուն առջեւ 20–30 կանգուն լայն խրամատներ կան: Պարիսպները 4 հսկայ դռներով են եղած. 1.– Ալաճա Գարու, 2.– Ս. Թորոս, 3.– Մուշար, 4.– Պազար, եւ 4 գլխաւոր թաղեր. 1.– Ալաճա Գարու, 2.– Թոփ Տաշ, 3.– Խարախան, 4.– Մէյտան Պաշը: Իսկ աչքդ կորելու չափ փռուած գերեզմանաքարեր՝ քվացած, քարաքոս կապած, զանազան ու զարմանազան ձեւերով, ամէն ազգի ու տիրապետողի նշանագիրներով ու պատկերախաղերով այլաձեւ. կոշտը, նուրբը, խառնուրդ մը շատ հինէն, միջինէն ու վերջինէն: Ուլու–Ճամին հնութիւն մը չալկեր է բոլորովին եւ նոր յաւելուածներուն ու կերտումներուն դէմ իր բողոքը ունի և ատամներ ցոյց կու տայ ոչ–պարտուողի: Աւա՜ղ որ ճիգ ու ջանք ըրած են արժեքաւոր այս հնութեան թանգարա–

նը եղծանելու, եւ նորովը ամբողջովին աղճատած ու ճղատած են։

Պէշ Գարտաշլար, Ուլու–Ճամիին քովը դէպի հարաւ հնութիւն մըն է. ասոր կիսաւեր կոտորտուն դուռը տակաւին իր քանդակներովը հնամենի հիացում կ'ազդէ եւ հին արուեստին փառքը կը ցուցադրէ։

Հին Մելիտինէի մէջ դեռ շատ հնութիւններ, աղօթատեղիքով՝ բաւական լեցուն էջեր կը գրաւեն... Ս. Ստեփանոսի վանքին եկեղեցին նոյնքան հնութեամբ, ինչպէս բոլոր հնութիւնները պատմական... ընդարձակ բակի – գաւթին – ճակատի կողմին բերդաւոր պատին կրթնած է մատուռը, գեղեցիկ, ալ, գեղնաւոր ու թխորակ քարերով ագուցուած ճակտին խաչքարեր. հոս ու հոն պատերուն վրայ, եւ նաեւ կամարի եզերքներուն անմիջապէս տակերովը ասորերէն, յունարէն ու հայերէն հին գրերով խաչքարեր նուրբ ու կոշտ եւ արդէն ասոնց փորուածքն ու ձեւը ցոյց կու տան խաչերու հայկականութիւնը։

Մատրան դուռը կ'իջեցուի 8–10 սանդղամատերով՝ միշտ հաստ չերտ քարերով։ Դուռը փոքր հաստկող երկաթագամերով աւելի պնդացած։ Տաճարը կու տայ քեզի շատ ու հնաբոյր խորհրդապաշտիկ աղօթարանի մը բոլոր մասերովն ու մթնոլորտովը դեռ սրտերու խօսող եւ հոգիներու ազդող տուն։ Իր մէջը դեռ կիսականգուն մնացած է եւ ամենէն արժեքաւոր սեւ կրանիթէ նրբատաշ խաչքարին մէկ մեծ մասը՝ հիանալիօրէն քանդակուած, ինչպէս եւ միակտուր վէմքարը։

**Տաճարին ներքին կողմի պատերուն վրայ քերթուածներ, փորուածքներ, խաչքարերու նշմարք ու նշխարք բաւական. շատ քիչ եւ աղօտ, գրեթէ աննշմարելի պատկերագծերու հետքեր ու փորներ կան։**

Դար մը առաջ դեռ այս նշխարներէն կանգուն են եղեր անաղարտ ու արժէք ներկայացնող արուեստի գլուխ–գործոցներ, ինչպէս նաեւ արեղաթաղ, միաբանից խցիկներ իրենց սարօքը, եւ գետնափոր բնակներ բնակութեան յատկացուած ու թաղեր ուխտաւորաց։

Այս սուրբ չարաթացեալին մօտերը ապրող 130 տարեկան Թուրք ծերունի մը պատմեց, որչափ ալ ակնածանօք, Ս. Ստեփանոսի անուանի հռչակն ու համբաւը հրաշագործութիւններուն եւ ուխտաւորներու գունդագունդ այցելութիւնը ամէն ազգէ ու սեռէ՝ հայ, թուրք, քիւրտ, սիւննի թէ ալեւի, ասորի եւ Յոյներ եւս, որ այն ատենները բաւական կան եղեր։ Փայլուն, չէն ու շող վիճակէն ու վիճակաւորէն այնչափ խօսեցաւ յուզուած ու ցաւած ներկայ աւերքէն» (ԲԱԶՄԱՎԷՊ, 1937, էջ 66 եւ 1938, էջ 297–8)։

## ԱՍԼԱՆ ԹԵՓԷ

Մալաթիոյ արեւելեան կողմը Օրտուզ անունով թրքաբնակ գիւղ մը կայ։ Հակառակ մեծ գիւղ մը ըլլալուն, 1907–ին հազիւ 7–8 տուն բնակիչ ունէր։ Գիւղը նախապէս ունեցած է սակայն մեծ թիւով բնակչութիւն մը,

*որուն մեծագոյն մասը հաւանօրէն հայ եղած է։ Աստ ապացոյց է այն, որ գիւղին վերեւը կը գտնուի Հայոց Ս. Փրկիչ վանքը, որուն հնութիւնը, ժողովրդական աւանդութեամբ, մինչեւ Առաքեալներու ժամանակը կը հասնի։*

*Արդ, Օրտուզ գիւղին տակն է Ասլան-Թեփէ ըսուած բլուրը, որուն ստորոտը կը տարածուի ընդարձակ գետին մը։ Բլուրին կողերը փորուած էին դարուս սկիզբները։ Գագաթին վրայ հայ գերեզմանաքարերու շարք մը կար, մամռացած՝ գրեթէ անընթեռնլի դարձած։ Բլուրը իր ծոցին մէջ կը պահէր հնութիւններու գանձարան մը, որմէ հրապուրուած՝ անգլիացի մը այցելած եւ իր յուշերը գրած է (Թէոդիկ,* ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1913, *էջ* 151)։

*Գէորգ վրդ. Ասլանեանի կարծիքով* (ԲԱԶՄԱՎԷՊ, 1937, *էջ* 67) *«Ասլան-Թեփէ արուեստական բլուր մըն է, կրնանք ըսել թէ հսկայ շէնք մը կամ քանի մը շէնքեր, որ ժամանակի ընթացքին, մանաւանդ յաճախակի երկրաշարժներու հետեւանքով կործանած վրայէ վրայ՝ այսօր բլուր մըն է լեռնանման»։*

*Ասլանեան, որ յաճախակի այցելած է Ասլան-Թեփէի վայրը, կու տայ քանի մը հետաքրքրական տեղեկութիւններ։ Նա կը գրէ. «...Շատ անգամներ հողէ ամաններ, սլաքաձեւ երկաթներ, ու ստորոտէն բխող պուլպուլ ջրէն ալ «մոզայիկ» կը գտնուին (մենք եւս քանիցս ժողված ենք), որոնք կու գան անգամ մըն ալ հաստատ համոզումը գոյացնելու մեզի, թէ այս բլուրը ճոխ հնութիւններ կը պարունակէ իր ծոցին։ Ոչ շատ տարիներ առաջ գտնուած թանկարժէք քար մը (փոխադրուած կայսերական թանգարանը)* 1 *մեթր լայնքով եւ երեք-չորրորդ բարձրութիւնով, վրան գրուած քանդակուած է եղեր ձիու լծուած կառք մը, կառքին վրայ աղեղնաւոր մը կանգնած. ձիուն առաջակողմը կեցող առիւծի մը կուրծքին նետ մը արձակած եւ վէս պարանոցը ետ դարձնելու ատեն նետահար ընելէ զատ, դարձեալ աղեղը լարելով՝ պատրաստ նետաձգութեան. ձիուն որովայնին տակ (անշուշտ առիւծի երկիւղէն) շուն մը կը պահուըտի. արձանագրութիւն՝ բաւական։ Մեր Մելիտինէ եղած ժամանակ,* 1906*-ին, դարձեալ հողքերներ կը գտնեն քարէ եզ մը բնական մեծութեամբ. ապուշները կը կոտրեն այդ պատուական հնութիւնը» (Թէոդիկ,* ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1913, *էջ* 151-2)։

*Այս քարերը ըստ Ասլանեան եպիսկոպոսի* 1907*-ին գտնուած են եւ անխնամ թողուած էին կառավարչական պաշտօնատան բակին մէջ։ Ասոնք ունէին մէկ մեթր երկարութիւն եւ մէկ կանգուն լայնք։*

*Քանդակները շատ որոշ ու նուրբ էին. քարի գոյնը մութ կարմիր կամ աւելի ճիշդը՝ կարմիր հողի երանգով էր։*

*Ասլանեան Արքեպիսկոպոս կը կարծէ թէ այս քարերու գիրերը Հաթեան են, ինչ որ անհաւանական չէ, քանի որ Մալաթիոյ շրջանը ատեն մը հաթեան տիրապետութեան տակ գտնուած է, բայց կրնան նաեւ ուրարտական ալ ըլլալ, վասնզի Մալաթիոյ շրջանակին մէջ գտնուած են ուրարտական կա-*



ԱՍԼԱՆ ԹԵՓԷԻ ՊԵՂՈՒՄՆԵՐՈՒ ՄԻՋՈՑԻՆ ԳՏՆՈՒԱԾ ՉՈՐՍ ՔԱՐԵՐԸ

րեւոր հնութիւններ, նոյն լեզուով արձանագրութիւններով։

Այսպէս, ուրարտական կարեւոր հնութիւն մըն է Եփրատի վերին ընթացքին վրայ, գետին արեւելեան կողմը Իզօղլու գիւղի եւ Քէօմիւր խանի միջեւ գտնուող սեպագիր արձանագրութիւնը, զոր տեղացիք Եազըլը թաշ կը կոչեն։

Արձանագրութիւնը 40 տողի չափ է եւ կը վերաբերի ուրարտեան Արգիստիս Ա. Թագաւորին (778–750 Ք. Ա.), որդի Սարտուր Գ.ի (750–733 Ք. Ա.) (տես Inscriptions ourartiennes et Annales des rois d'Assyrie: Recueillies et commentées par N. E. Vrouyr, էջ 15)։

Այս արձանագրութիւնը գտած են առաջին անգամ Մոլտքէ եւ Ֆոն Միւլթախ եւ օրինակած են 1839–ին։ Առաջին անգամ զայն տեսնող եւ ծանօթացնող հայը եղած է Սահակ վրդ. Հաճեան[1], որ նկարագրած է (տես ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ, Իզմիր, 1886, ԺԶ. տարի, էջ 20–1)։ Սահակ վրդ. Հաճեան կ'ըսէ թէ՝

(1) Սահակ վրդ. Հաճեան, յետոյ արքեպիսկոպոս, արդիւնաւոր Հայ-կաթոլիկ եկեղեցական մըն էր։ Ծնած է 1837ին Բրդնիք։ Աշակերտ Թօդատի Անարատ Յղութեան Ընծայարանին, 1852ին քահանայ ձեռնադրուած է եւ 1872էն 1877 ժողովրդապետ եղած է իր ծննդավայրին։

1877–1886 առաջնորդական փոխանորդ Սեբաստիոյ։

1886–1892 Կ. Պոլսոյ Հայ-կաթոլիկ պատրիարքարանի դիւանապետ եւ 1892էն 1905 արքեպիսկոպոս Սեբաստիոյ եւ եպիսկոպոս Եւդոկիոյ։ 1905ին առանձնացաւ Պոլիս, ուր վախճանեցաւ 23 Սեպտեմբեր 1908։

Արդիւնաշատ, գործունեայ եւ անխոնջ աշխատող եկեղեցական մը եղած է։

*«Մելիտինոյ արեւելեան հիւսիսային կողմը վեց ժամ բացակայ ի Քըրդէայ Իզոլու գիւղը Եփրատի երկու կողմը շինուած, որոյ բնակիչք աղէկ վառօղ կը շինեն: Թողման՝ որ է հին Մելասը, Իզողլուէն երեք ժամ վեր Եփրատին կը խառնուի: Իզողլուէն երկու ժամ բացակայ դէպ յարեւելս է Քէօմիւր խանը, աւերակ արքունական ճամբու վրայ շինուած, բարբարոս ձեռքեր շինութեանց շոշորդ (հետք) չեն թողուցած բնաւ, Քէօմիւր խանէն կէս ժամ, եւ Իզոլուէն ժամու կէս երկուքին մէջեւր ճամբուն ձախակողմը կ՚երեւի պզտիկ ապառաժուտ բլուր մը* Եազըլը Թաշը՝ *երեսը դէպի ճամբան, երկու մեթրի չափ երկայնութիւն ունի, եւ մէկ մեթրօ լայնութիւն, բոլորը խորանաձեւ շրջանակ մը փորած է, եւ քառասուն տող գրուած է մէջը բեւեռագիր պալարաձեւ (գապարթմա): Տեղը անմատոյց է. վարէն քիչ մը հեռաւորութենէ կը կարդացուի:*

*Բլուրին գագաթը քարի մը մէջ կտանով փորած ջրհորի նման լայն բերնով գուբ մը կ՚երեւայ, շատ խորունկ կը թուի, մէջը պարապ է. եթէ քար մը ձգեն, երկայն ատեն ձայնը կ՚ելլէ աստիճանէն աստիճան զարնուելուն. Գետնափոր ուղի է, կ՚ըսեն, Եփրատէն ջուր առնելու, բայց ոչ ոք կը համարձակի մէջը մտնելու: Բեւեռագիրին աջի տողը մեծ դժուարութեամբ հազիւ կրցայ օրինակել ճշդութեամբ»* (ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ, 1886, *ԺԶ. տարի, էջ* 20–1):



ԻԶՈՂԼՈՒԻ ՍԵՊԱԳԻՐ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ Ա. ՄԱՍԸ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 62, ԷՋ 4)



ԻՋՈՂԼՈՒԻ ՍԵՊԱԳԻՐ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԵԱՆ Բ. ՄԱՍԸ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 62, ԷՋ 5)

*Այս արձանագրութիւնը կրող քարին լուսանկարը, զոր արտադրած է Վիեննայի Համալսարանի Ուսուցչապետներէն Բրոֆ. Տոքթ. Ֆ. Վ. Քէօնիկ*[1], *հրատարակած է Հ. Եփրեմ Վրդ. Պօղոսեան (տես* ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Թ.* 62, *էջ* 4), *եւ ապա տուած է երկու մասով միայն արձանագրութիւնը.—*

*Ըստ Տոքթ. Ֆ. Վ. Քէօնիկի ընթերցման՝ արձանագրութեան թարգմանութիւնն է.—*

*«Խալդի (աստուծոյն) սեպհական կառքը խոյացաւ յառաջ, յարձակեցաւ Ծախուխեան Խիլարուադայի Մելիտէա քաղաքի երկիրին վրայ, խորտակեց զայն, Արգիշտեան Սարտուրի առջեւ:*

*«Խալդիի արհաւիրքով, Խալդիի ահարկու կառքով խոյացաւ Սարտուր Արգիշտեան:*

*«Սարտուր կ՚ըսէ. հպատակ... (ծառայ)... էր, ոչ թէ արքայ մըն էր հոն բնակած: Աղօթեցի Խալդի տիրոջ, օդի դից (Տիէշէբա) արեւ դից (Շէվինի) եւ Բիայի երկիրներու աստուածներուն, որ տիրոջ (Խալդիի) շնորհիւ յաղթանակեմ: Աստուածները լսեցին ինծ, ճամբայ բացին իմ առջեւ:*

*«Հետեւորդներուս հետ բանակեցայ Տումէշկի (քաղաքին) առջեւ:*

*«Միեւնոյն ատեն (նոյն օրը) յարձակեցայ երկիրին դէմ, ստիպեցի Կալա երկիրը որ պարէն տայ, շուտ վերջացուցի Կանիշի լերան սահմանին վրայ դէպի Մելիտէա տանող ուղղութեան վրայ՝ Մուշայի երկիրին ծայրը*

---

(1) *Մասնագէտ մըն է արեւելեան հնութեանց եւ ունի մեծ հաւաքածոյ մը բեւեռագիր արձանագրութիւններու, որոնց մէջ են նաեւ Վանի, Մուշի, Բալուի եւ Մալաթիոյ բեւեռագիր արձանագրութիւնները:*

վերջացուցի չուս· Զարչա քաղաքին մէջ [էր] [յաղթանակի] աւարը: 14 բերդեր (ու) քաղաքներ աւարեցի մէկ օրուան մէջ, բերդերը կործանեցի, քաղաքներն այրեցի, 150 կառապօր դերի առի [եւ] զանոնք իմ բանակիս չարքերն անցուցի:

«Սասի (քաղաքը), Խիլարուաղայի արքայական քաղաքը, որ ամրացած էր, պատերազմով գրաւեցի, հօտերը, այրերն ու կիները անկէ քշել տուի:

«Սարտուր կ՚ըսէ· ճամբուս ընթացքին մօտեցայ Մելիտէա (քաղաքին): Խիլարուադա առջեւս ելաւ, ·գետին ինկաւ, երկու ոտքերս բռնեց· գթացի իրեն, ոսկի ու արծաթ աւարեցի, լուծքի նախիրներ քշեցի Բիայի երկիրները, իր վրան ալ հարկ դրի, ինն բերդեր··· կորդեցի, իմ երկրիս կցեցի, [քաղաքներ] Խազանի, Ուսուրախի (կամ Ուզարախի), Տումեշկի, Ազինի, Մանիուսի, Արուշի, Կուլբիտառի[նի], Տաշէ, Կուէրայառաշէ, Մելուխա[նի]:

«Խալդիի մեծութեան շնորհիւ [իմ] Արգիշտիեան Սարտուր, հզօր արքայ, Բիայի-երկիրներու արքան, տէրը Տուշպա քաղաքին:

«Սարտուր կ՚ըսէ· ով որ այս արձանագրութիւնը կը քանդէ, ով որ [զայն] կ՚աւրէ (կ՚ոչնչացնէ), ով որ [զայն կը ծածկէ], ով որ այսպիսի բան մը [այսպիսի] չարագործութիւն կը տեսնէ [կամ] կ՚ըսէ «Գնա ոչնչացուր», այնպիսին ոչնչանայ Խալդի [աստուածէն], օդի Աստուածէն, արեւ աստուածէն եւ [միւս] աստուածներէն, ինքը եւ իր ցեղը արեւու լոյսէն զրկուին, իր հողին, իր··· եւ իր կեանքը ամբողջապէս մարին[1]»: (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ· 62, էջ 4–5):

Ինչպէս կը տեսնուի այս մասնակի եւ առանց գիտական ուղղութեամբ ներկայացուած հնութիւններու առատութենէն, կարելի է հետեւցնել թէ Մալաթիա հնութիւններով հարուստ աշխարհամաս մըն էր, որ տակաւին շատ քիչ ուսումնասիրուած եւ գրեթէ պեղումներով պրպտումներու առարկայ չէր եղած, եւ հիմա նոր է որ ուշադրութեան առնել սկսած են եւ շատ հաւանական է որ աշխարհի քաղաքակրթական պատմութիւնը լուսաբանող մեծ յայտնութիւններ կատարուին հոն ուր երկար ատեն՝ դարերով արեւելք եւ արեւմուտք, ինչպէս նաեւ Քրիստոնէութիւն եւ Իսլամութիւն դէմ դէմի եկած եւ մաքառած են:

*
**

Հոգելոյս Տ· Կարապետ քահանայ Պէննէեան, Տոքթ· Մ· Քեչիշեան, Գէորգ Արք· Ասլանեան եւ այլք իրենց ներկայացուցած հնութիւնները, ինչպէս տեսնուեցաւ, կանոնաւոր մեթոտաւոր աշխատանքներով չէին կրցած

(1) Գերմաներէնէ թարգմանած է Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան:

քննել, վասնզի անոնցմէ ոչ մէկը այդ տեսակ գիտական լուրջ քննութիւն մը կատարելու ձեռնհասութեամբ օժտուած անձ էր։

Մինչեւ շատ մօտ թուականներ՝

«Հնագէտներ դուն ուրեք պտըտած են այս պատմական վայրերը։ Պոլսոյ Կայսերական Թանգարանի երբեմնի տնօրէն Համտի պէյ՝ գերման հնագէտի մը հետ՝ անգամ մը այցելած է հոս, վեց ամսուան չափ թէեւ մնացած է եւ անդրիներէն ոմանց կաղապարները մեծ դժուարութեամբ գաճով առնելէ վերջ սնտուկներով Գերմանիա ուղարկած։ Հին ազգաց պատմութեան, քաղաքակրթութեան ու գեղարուեստին վրայ նոր նոր լոյսեր սփռող ի՞նչ գանձեր կան այսպէս Թուրքիոյ ներքին գաւառներուն մէջ, անոնց արժէքին անգիտակներու եւ ժամանակին անգութ աւերման թողուած» (Թէոդիկ, անդ, 1922, էջ 186–8)։

Վերջերս Գերմաններ նորէն զբաղիլ սկսան Մալաթիոյ շրջանակով եւ հոն կատարեցին պեղումներ եւ գտան հնութիւններ, որոնք նոր յայտնութիւններ եղան։

Այսպէս ասկէ մի քանի տարիներ առաջ Ֆրանսական պեղումներու վարչութիւնը կը տեղեկացնէր թէ անծանօթ քաղաքակրթութեան մը բեկորները երեւան հանուած են արեւելեան Անատոլուի մէջ, Ֆրանսացի հնագէտներու կողմէ։

Ֆրանսացի գիտնականներու արշաւախումբ մը, Թեքնիք առաջնորդութեամբ Պ. Ֆորերի, Արսլան Թեփէի մէջ, վերին Եփրատի մօտերը, 14 մեթր խորութեան վրայ, լոյս աշխարհ բերած է հետքերը քաղաքակրթութեան մը, որ մեր դարաշրջանէն առաջ 3000 տարուան հնութիւն մը ունի։

1955-ին ՆԻՒ-ԵՈՐՔ ՄԱԿԱԶԷՆԻ մէջ հրատարակուած է «Նոր լոյս Վաղընջական ժամանակաշրջանի մը վրայ» խորագրով յօդուած մը, որ այս պեղումներուն հետ կապակցութիւն ունի։ Կը ներկայացնեմ այդ յօդուածին թարգմանութիւնը ընդհանուր գաղափար մը տալու համար։

«Հիթիթ ժողովուրդը, որ մէկն է առաջին անգամ երկաթ պատրաստող եւ գործածողներէն, կը վարէր կայսրութիւն մը՝ Թուրքիոյ եւ Սուրիոյ հողամասերուն վրայ եւ մրցակից էր վաղեմի Եգիպտոսին ու Բաբելոնին։ Ծննդոց գրքին մէջ արձանագրուած է, թէ Աբրահամ իր կնոջ Սառային գերեզմանը բերաւ Հիթիթներէն։ Անոնց կայսրութիւնը կործանեցաւ Ն. Ք. ԺԲ. դարուն։ Հնագէտները կը հաւատային, թէ անոնց մշակոյթը անհետացաւ Ն. Ք. 800-ին, բայց Օր. Թերեզա Կոլլի եւ Տոքթ. Ֆրիտրիխ Քարլ Տորնիղի (Արեւմտեան Գերմանիոյ Մունսթըր համալսարանէն) Նեմրութ լերան 7400 ոտք բարձունքին վրայ կատարած պեղումները ցոյց կու տան, թէ յարդանմշմար մնացած հիթիթ ազդեցութիւնը տեւեց Կոմագէնէի հելլենիստական թագաւորութեան մէջ մինչեւ Քրիստոսի ժամանակները, որ վերածաղկեցաւ հոն։ Վարը Կոմմագենէի թագաւոր Անտիոքոս Ա.ի գերեզմանին մօտ գտնուած արձաններըատոր ապացոյցներն են։

Ա. Մեծազանգուածները.— *Վերը մէկէ աւելի անգլուխ արձանները, Թագաւորի գերեզմանին մօտ տաճարի գաւիթին մէջ, պարսկերէն եւ յունարէն կրկնակ անուններով աստուածներ են, որովհետեւ Թագաւորին կրօնքը կը միացնէր Պարսիկներունը եւ Յոյներունը: Ձախէն աջ չորրորդը Թագաւորն է, որուն ներկայութիւնը աստուածներուն հետ կը նշանակէ իր աստուածացումը:*

Բ. Արքայական առիւծը.— *Այս ձախ կողմի արձանը, որ իր ինկած ձախ տեղէն բարձրացած է, կը թուի կապը ըլլալ 2000 տարի առաջ Կոմմագինէի եւ վաղեմի Հիթիթներուն միջեւ: Յատկանշական հիթիթ դրոշմներ գտնուեցան իր աչքերուն չուրջը եւ արմուկներուն մէջ:*

Գ. Աստուածութիւններ.— *Տաճարի արեւմտեան գաւիթին մէջ քանդուած արձաններուն վարը նոր-դասական գլուխներ կը ցուցնեն Կոմմագինէի մէջ խառն մշակոյթի եւ կրօնի ազդեցութիւնը: Ձախէն աջ գլուխներն են Հերքիւլէս-Արտաքնէսի, Ապողոն-Միթրայի եւ Զեւս-Արամազդի: Խորքի արծուագլուխը կը նշանակէ Թագաւորութիւնը:»*

*Իսկ շատ աւելի կարեւոր է ՆԻՒ-ԵՈՐՔ ԹԱՅՄԶ-ի 2 Յունուար 1955-ի թիւին մէջ թերթին մասնաւոր թղթակից* Welles Hangen*-ի 22 Դեկտեմբեր 1954 Թուականով Անգարայէն գրած հետեւեալ թղթակցութիւնը, զոր կը ներկայացնեմ հոս թարգմանաբար.*

*«Հիթիթական կորսուած մշակոյթի մասին պեղումներով յայտնագործուած հաւաստի փաստեր Թուրքիոյ մէջ մնացորդ նշխարներ կը թելադրեն թէ հին ոճը տեւեց մինչեւ Քրիստոսի ժամանակ:*

*Այս տարի Թուրքիոյ հարաւ-արեւելեան կողմը կատարուած պեղումներով յայտնուեցաւ ապացոյցը թէ հիթիթական քաղաքակրթութիւնը վերապրեցաւ մինչեւ Քրիստոսի ժամանակ:*

*Ն. Ք. Ը. դարուն վերջերը Ասորեստանի նուաճած հիթիթ քաղաքպետութիւններու ճարտարապետութեան, արձանագրութեան եւ կրօնքին երեւութական անհետացումը երկար ատենէ ի վեր շփոթութեան մատնած էր հնագէտները:*

*Մալաթիոյ հարաւ-արեւելքը Անդի-տաւրոսեան խորտուբորտ լեռներու մէջ գործող ամերիկօ-գերման արշաւախումբը պեղումներով գտած է հիթիթական անվրիպելի ազդեցութիւնը Կոմմագինէի հելլենիստական թագաւորութեան մէջ երկու արքայական շիրիմ-դամբարաններու վրայ:*

*Հիմնուած Ն. Ք. Ա. կամ Բ. դարուն իբր անկախ պետութիւն Կոմմագինէն պաշտօնապէս միացած էր Յ. Տ. 72-ին Հռոմի կայսրութեան Վեսպասիանոսի օրով:*

*Այս քառուղիներու թագաւորութեան միջով, արեւելքէն գլխաւոր կարաւանային ճամբաներով էր որ կ'ենթադրուի թէ Միթրասի պաշտամունքը թափանցած է հռոմէական կայսրութեան մէջ: Կոմմագինէի պահակազօրքի հռոմէական զինուորները միջոց դարձան որ Միթրապաշտութիւնը անցնի*

կայսրութեան բոլոր մասերուն մէջ, մէջը ըլլալով Լոնտինիումը (վաղեմի Լոնտոնը), ուր վերջերս գտնուեցաւ միթրասական տաճար մը»:

## ՄՐՑՈՐԴ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ

Միթրասական կրօնքը, որ միաստուածեան էր, կը խոստանար յաւիտենական կեանք եւ մինչեւ Ք.Ե. ետք չորրորդ դարը մրցակից դարձաւ քրիստոնէութեան:

Կոմմագէնէի չիրիմ-դարիրներու (սրբարան) պեղումներուն գործը կը ղեկավարեն նիւ-եորքցի Օր. Թերեզա Կոըլ եւ վերածնող արեւմտեան Գերմանիոյ Մունստըրի Համալսարանի պատմագէտ Տօքթ. Ֆրիտրիխ Քարլ Տորնըր: Արշաւախումբը կը վայելէ արեւելքի խուզարկութեան գպրոցներուն հովանաւորութիւնը: Նիւթականը կը հոգացուի Պոլինկըն Հիմնարկէն եւ Ամերիկեան Փիլիսոփայական Ընկերութենէն:

Երրորդ անգամ ըլլալով Օր. Կոըլ եւ Տօքթ. Տօրնըր պիտի դառնան յաջորդ տարին: Անոնք կերպը կը փնտռեն բանալու Կոմմագէնէի թագաւոր Անտիոքոս Ա.ի գերեզմանին հողաբլուրը Նեմրութ լերան 7400 ոտք բարձրութեան վրայ, նոյնպէս անոր հօրը Միհրդատ Ա.ի գերեզմանը, որ կ'ենթադրուի թէ թաղուած է մերձաւոր Քեախտէ լերան մէջ:

Թէեւ երկու գերեզմանախուցերէն եւ ոչ մէկը բացուած է եւ սակայն հետազօտողները պեղումներով յայտնաբերած են հելլենիստական արժէքաւոր արձանագրութիւն երկու կողմերուն վրայ՝ յունարէն արձանագրութեամբ:

Կ'ակնկալուի որ չիրիմները պիտի յայտնաբերեն երկար ատենէ ի վեր փնտռուած Ասիական Թուրքիոյ Հելլենիստական քաղաքակրթութեան վրայ ծանօթութիւններ, որ կը վերաբերին քրիստոնէութեան նախնական շրջաններուն, ինչպէս նաեւ պարսկական եւ հիթիթական տարրերու հետ անոր միացումի մասին ծանօթութիւններ:

Անտիոքոսի գերեզմանին մուտքը ծածկուած է կրաքարով մը, որ կը կազմէ լերան բնական սուր կատարը, դաստակաչափ թոյլ կրաքարի խճային ծածկոյթով մը, որ երեւոյթէն կը նմանի մարմարեայ բուրգի մը: Օր. Կոըլ եւ Տօրնըր կը յուսան յաջորդ ամառ արդիական երկրաբնագիտական գործիքներով բնորոշել գերեզմանին ճիշդ դիրքը:

Դամբանաբլուրը երեք կողմերէն պաշտպանուած է վիմանման խարշաձեւ դարատափ գաւիթներով՝ տաշուած լերան գագաթին վրայ: Թափորի հոյակապ ճամբայ մը կ'առաջնորդէ դէպի արեւելեան գաւիթը, ուր վիթխարի արձաններու շարք մը կը ներկայացնէ Անտիոքոսը եւ չորս պաշտպան աստուածները, որ դեռ կը կենան:

Ասոնք կը միաձին պարսիկ-մակեդոնական աստուածութիւններուն մէջ՝ ցոլացնելու համար վեհապետին յաւակնութիւնը թէ ինք սերած է Պարսիկ–

ներէն եւ Մակեդոնացիներէն։ Այդ արձաններն են Ապողոն–Միթրաս, Կոմմագինէի բախտը (արդասաբերութեան աստուածուհին), հսկայ Զեւս–Արամազդը, Հերքիւլէս–Արտագնէսը։

Ասիւծները, որ կը ցուցնեն զօրաւոր հետքերը հիթիթ ազդեցութեան, կը զարդարեն բարձրաքանդակները երկու գաւիթներուն։ Նեմրութ լերան բազմաթիւ դէմքերը կը կրեն հիթիթ տիպարի գլուխի յարդարանքը, թէեւ իրենց տարազին մնացած մասերը յունական կամ պարսկական ներշնչում ունին։

Այս վերապրած նշխարները մասնաւորաբար հետաքրքրական են այն իրողութեամբ, որ հիթիթական վերջին կայսրութիւնը կործանած էր Ն. Ք. ԺԲ. դարուն, թէեւ ծանօթ է թէ հիթիթական մշակոյթը նորէն ծաղկեցաւ Թ.—Է. դարերուն մասնաւորաբար Կոմմագինէի շրջանին մէջ։

Այս ամառ գտնուեցաւ ութ ոտք սալաքար մը գերեզմանին քով, որուն վրայ յունարէն արձանագրութիւն մը կայ, որ կ՚ազդարարէ «Անոնք որ հոս կու գան անխտակցարար սրբապղծելու այս տեղը, պէտք է խոյս տան անկէ, իսկ անոնք որ կու գան կողոպտելու համար, պիտի տառապին ահաւոր հետեւանքներով»։ Նման նզովք մը գտնուեցաւ Միհրդատի գերեզմանի մուտքին, ուղղուած ամբարիշտ բռնաբարիչներու։

ՄԵԾ ՊԱՏԿԵՐԻՆ ՏԱԿԸ.— Հերքիւլէս–Արտագնէսի այս զանգուածեղ գլուխը դեռ կանգուն է Նեմրութ լերան բարձունքին վրայ, Կոմմագինէի Անտիոքոս Ա.ի գերեզմանին մօտ։ Հոն կատարուած պեղումները ապացոյցը կու տան թէ Փոքր Ասիոյ մէջ Հիթիթներու կորսուած քաղաքակրթութիւնը վերապրեցաւ նուազագոյն մինչեւ Քրիստոսի ժամանակ։

Հետաքրքրական է գիտնալ թէ այս պեղումները կատարուած են Վեսթֆալիոյ Մինսթէյի համալսարանին հին ազգաց պատմութեան դասախօս Ֆրիտրիխ Քարլ Տօըրների[1] կողմէ, որ 20 տարի առաջ ալ Թուրքիա գտնուած էր, եւ իրենց նպատակ ունէին երեւան հանելու Պոնտոսի Միհրդատ Եւպատոր եւ Հայոց Մեծն Տիգրան թագաւորներու գանձերը, որոնք չգտնուեցան, սակայն երեւան եկան պատմական յայտնութիւններ, որոնք ոչ նուազ թանկագին էին քան այդ գանձերը։

1954–ին յաջողեցան գտնել 85 մեթր երկայնութեամբ եւ 45 աստիճանի վրայ հակած մեծ փապուղի մը, ուր հին թագաւորութեան մը վերաբերեալ բազմաթիւ փաստեր կարելի պիտի ըլլայ գտնել, ինչպէս յայտարարած էր եւ ինչպէս իրապէս ճիշդ ելաւ իր ենթադրութիւնը։

Իր պեղումներուն առաջին արդիւնքները, որոնք 1954–ին ձեռք բերուած են եւ յայտարարուած են այն ատեն (տես ՅՈՒՍԱԲԵՐ, 15 Սեպտեմբեր, 1954), հետեւեալներն են.—

1. Քեախտէ գետին մէջտեղերը՝ Արսամեա (հաւանօրէն Արշամաշատ

(1) Փրոֆ. Տօըրնըր շատ լաւ թրքերէն գիտէ։

*ըսել կ'ուզուի· Ա. Ա.) քաղաքը, որուն պատերը պեղումներու շնորհիւ մէջ-տեղ հանուած են:*

2. *Ձեռք բերուած է նաեւ արձան մը, ուր կը տեսնուին Միհրդատ Թագաւորը եւ Հերակլէս:*

*Հին յունարէն արձանագրութիւն մը կայ արձանին վրայ, ուր Միհրդատին տղան կը խօսի հօրը եւ նախահայրերուն մասին: Կը մատնանշէ նաեւ դէպի հօրը եւ մօրը գերեզմանները տանող ճամբան: Կը խօսի հարուստ գանձերու մասին եւ կը յայտնէ թէ խիստ վտանգաւոր է մօտենալ գերեզմաններու բաժնին:*

1954-*ին գիտունը դարձեալ գնաց Քեախտէ, պեղումները շարունակելու համար: Իրեն կ'ընկերանան գերման ճարտարապետ Պիրկեր եւ ամերիկացի կին ճարտարապետ մը (հաւանօրէն վերոյիշեալ Օր. Կոյլ. Ա. Ա.):*

*Տոքթ. Ֆրիտրիխ Քարլ Տօրնըր լրագրողի մը ըսած է այս առթիւ.*

*«Միհրդատ Թագաւորին դամբը շատ ճոխ է: Եթէ չէ գողցուած, անպայման պիտի գտնենք, ինչպէս նաեւ պատմական շարք մը ապացոյցներ»:*

*Սակայն, ինչպէս ըսի, Միհրդատի վերաբերեալ ոչինչ գտնուած է, բայց գտնուած հնութիւնները նուազ արժէքաւոր չեն*[1]*:*

*Կարեւոր եւ անժխտելի պատմական իրողութիւններու անհերքելի փաստերը կան եւ կը մնան տակաւին այդ հողամասին վրայ, հակառակ քաղաքակրթութեան թշնամի Սելճուկին, Թաթարին եւ Թուրքին մօտաւորապէս հազար տարիէ ի վեր շարունակ քանդելուն եւ կորելուն մարդկային քաղաքակրթութեան բոլոր յիշատակարանները:*

*Տակաւին հոն կը մնան մարդկային քաղաքակրթութեան անխօս, սակայն շատ պերճախօս յիշատակարաններուն մնացորդները, զորս Գորշ Արջը դարերով քանդելով եւ կորելով չէ կրցած անհետացնել:*

*Անոնք դարերու հեռաւորութենէն կը կանչեն՝ արհամարհելով վայրենութիւնը, ի փառս սանձապարծ միտքին, անոր արդիւնք մշակոյթին եւ քաղաքակրթութեան:*

---

(1) *Այս պեղումներու առթիւ թուրք թերթեր մանաւանդ «Պիւթիւն Տիւնեա» ամսագիրը եւ «Ենի Սաբահ» օրաթերթը կարգ մը անյարիր հրատարակութիւններ ըրած են (տես Յուսաբեր 15 Սեպտեմբեր 1954-ի թիւ):*





## Բ. ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ

●

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀՆԱԽՕՍԱԿԱՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ ՔԱՐԱՅԻՆ ՇՐՋԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՍԼԱՄԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

---

*Գրեց՝ ԵՂԻԱ Ս. ՔԱՍՈՒՆԻ* (*)

## Ա.

## ՓՈՔՐ ԱՍԻՈՅ ՆԱԽԱՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

*Փոքր Ասիոյ մէջ մարդկային բնակութեան ամենահին հետքերը գտնելու համար դեռ կարեւոր ուսումնասիրութեանց ձեռնարկուած չէ: Այսօր հազիւ թէ կարելի է քանի մը վայրեր մատնանշել, ուր* հնաքարային *մարդոց* (paleoithic) *ձեռակերտած գործիքներ գտնուած են: Եփրատի բարձրահովիտին մէջի սակաւաւոր գիւտերը կը ցուցնեն որ* Չորրորդակ (Quaternery) *շրջանին արդէն մարդիկ կը բնակէին հայկական լեռնաշխարհին արեւմտեան եզերքները* (*Կոմմագինէ*, Մելիտինէ, *Խարբերդի եւ Ամիտայի* [*Տիարպեքիր*] *շրջանակները եւայլն*), *որ այն ժամանակ արեւմտեան Բարձր Ասիոյ սառոյցէ ազատ միակ երկիրն էր* (*Հ. Յակ. Տաշեան, ՀԱՆԴ. ԱՄՍ.*, 1894, *էջ* 106):

*Հետեւեալ տեղեկութիւնները մեծաւ մասամբ կը քաղենք* Delapore-*ի* *LES HITTITES* *գիրքին* 35–8 *էջերէն*.—

---

(*) *Յաջորդ ութը հատուածները գրուած են Մալաթիոյ Կրթասիրաց Միութեան խնդրանքով Վեր. Եղիա Քասունիի կողմէ: Բազմաշնորհ հեղինակին այս շահեկան աշխատութիւնը կը հրատարակուի նոյնութեամբ:*

*Լիւկիոյ մէջ Կուրմա անուն տեղը Վիթթորիօ Վիալէ երեւան բերաւ* Մուստիրեան *խաւի գոյութիւնը քարայրի մը մէջ։*

*Ներկայիս ճանչցուած ամենակարեւոր գիւտն է ժընեւցի* Pittard*-ինը* 1928*-ին, Եփրատի Զագգալ անուն մէկ օժանդակի ձորին մէջ, Փիրունի կամուրջին մօտ, Ատըեամանէ (Հուսնըմանսուր) իրր* 5 *քիլոմեդր հեռու, ժայռերու տակ ապաստանարանի մը մէջ, որոնց ներսի կողմը դրուագուած են հին սիկահողերէ կազմուած խճաքարային* (conglomerate) *ժայռի պարեխներով, ինք պատահած է տաշուած կայծքարերու։ Այս ապաստանարաններու եզերքը եւ դրացի գառիվայրերու վրայ* M. Pittard *ժողված է ցռկաւոր քերոցներ, գչիրներ* (burin)*, չեղբեր՝ կռնակը վայրահակ, որոնք* Աւրինյակեան (Aurignacian) *շրջանին յատկանշական են։ Ցոն տէր Օսթէն ալ* 1931*-ին այցելած է նոյն վայրը եւ քարէ գործիքներ ժողված, բայց դեռ բան մը չէ հրատարակած անոնց մասին։*

*Հետեւեալ տեղեկութիւնը կը քաղեմ* Marc R. Sauter*-էն.—*

1928*-ին* Prof. Eugène Pittard *Մալաթիոյ վիլայէթին մէջ Ատըեամանի մօտ Փիրուն բռուած տեղը, գետնի երեսը գտաւ տաշուած կայծքարէ գործիքներու առատութիւն մը՝ զանազան տիպերէ։ Ասիկա մինչեւ հիմա Թուրքիոյ մէջ գտնուած նախապատմական հնաքարային կեդրոններու ամենակարեւորն է։* Abbé Breul *-ի դասաւորմանց համեմատ՝ ասոնք* Aurignacian *միջին շրջանին կը պատկանին. հոն կան հաստ քերոցներ, որոնց շատերը ցռուկ ունին, գչիրներ, քանի մը հազուագիւտ տեսակէ չեղբեր՝ կռնակը՝ համեստաձեւ* (P. 159 fig. 41 *ասոնցմէ նմոյշներ կը պատկերացնէ*)*։ Կը յիշուին դեռ քանի մը հատուածակողմի ձեւով կորիզներ, զորս գրեթէ անկարելի է զանազանել նորքարային գործիքներէ, նաեւ վանակատէ* (obsidian) *տաշկաններ, զորս դժուար է դասաւորել։*

*Ատըեամանի այս Աւրինեակեան կայանն առաջին կարեւորութիւն ունի Մերձաւոր Արեւելքի նախապատմութիւնն ուսումնասիրողին համար։ Ան կ'օգնէ մէկ կողմէն Սուրիա-պաղեստինեան մարզի արտադրութիւնները, միւս կողմէն Քիւրտիստանի, նաեւ Անդրկովկասի եւ հարաւային Ռուսիոյ մարզերուն նմանօրինակ հնաքարային արտադրութեանց հետ յարաբերութեան բերելու։ Արդարեւ այս երեք մարզերուն մէջտեղ կայ հայկական հաստամեստը, եւ Քսենոփոնի վկայութիւնը բաւական է ցուցնելու թէ ի՛նչ սոսկալի դժուարութիւն կար այս լեռներէն անցնելու. բայց հարկաւ նախապատմական մարդոց թափառումները եւ այդ շրջանի մշակութային ազդեցութեանց թափանցումները չենք կրնար չափել զինեալ բանակի մը արշաւանքին ատեն կրած օրական փարասախներուն հետ։ Եփրատի երկու վերին բազուկները կը բանան երկու խրամներ, ուր զարմանալի չէ պատահիլ հնաքարային մարդոց հետքերուն։*

*Այսպէս, Ատըեաման, որմէ հեռու չէ Մալաթիա, կը ներկայացնէ մեզի Սուրիայէն հիւսիս-արեւելք եւ հիւսիս-արեւմուտք տարածուող հնաքարային*

ազդեցութեան ամենէն յառաջացեալ կեդրոնը։ Պարզ խօսելով, Վերին Եփրատի ձորն է, ուր հարաւէ հիւսիս եւ հիւսիսէ հարաւ գաղթած են հնաքարային շրջանի մարդիկը՝ տանելով իրենց քարային գործիքներու պատրաստութեան արհեստը (*Préhistoire de Méditerranée Paléolithique et Mésolithique*, Payot. Paris. 1948. pp. 156. 158. 162)։

Պեսիդիոյ մէջ Գըզըլօվա անուն դաշտին վրայ Էօմէր Էֆէնտի Չիֆթլիկի ըսուած տեղը, Ակմանճըգ գիւղէն դէպի հարաւ, R. Paribani և P. Romanelli 1913–ին գտան ցած բլուրի մը վրայ որոշ մնացորդներ նախապատմական կայանի մը։ Անոնք ուրիշ այսպիսի դիրք մը ճանչցած են Մերսին չայի մօտ Եումագ Թէփէ։ Հաւանօրէն երկու տեղերն ալ Միջնաքարային (Mesolithic) կամ Նորքարային (Neolithic) են։

Անգարա, կաշի գործարանին արեւմտեան կողմը, 1931–ին, Kurt Bittel, քարահանքի մը մէջ ի լոյս բերաւ Հնաքարեան տաշուած գործիքներ կապուտկեկ կայծքարի երիկամաձեւ գունտերուն մէջէն, ուղղանկիւնաձեւ՝ կլորակ փշածայրերով. անոնք կը ներկայացնէին հաստ վերահըպումներ երկու ծայրերուն վրայ եւ երկայն կողմերէն մէկուն առջեւի երեսին վրայ. իսկ ետեւի երեսին վրայ տափակցուած են։ Ասիկա հաւանօրէն Հնաքարէն դէպի Նորաքարը անցում մը կը նշանակէ։

Երկրաբանական Չորրորդակ ժամանակի դէպի վերջերը պատահող Սառնահալքին յաջորդեց Արեւմտեան Ասիոյ մէջ Անտառապատութեան շրջան մը, որ Հնաքարէն դէպի Նորքարային շրջան անցման հետ կը զուգադիպի։ Այս շրջանին՝ Փոքր Ասիոյ բոլոր մեծ ու պզտիկ լեռնաշղթաները խիտ անտառներով ծածկուած էին, հարկաւ ստորոտները բարեբեր բացատաններով։ Բայց Թերակղզիին կեդրոնական հարթավայրին խորութեան մէջ շատ մեծ ներքին ծով մը կար՝ հալած ձիւներէն ու սառնամանիքէն եւ տիրող անձրեւաշրջանէն գոյացած։ Այս ներքին ծովը հետզհետէ քաշուելով անձրեւաշրջանին յաջորդող չորութեան շրջանին, հիմա Թուզկէօլ անուն աղի լիճ մը միայն մնացած է անկէ։

Ի սկզբան ամենէն աւելի Թերակղզիին ծովեզերքներուն վրայ բնակելի տեղեր կային, եւ այս տեղերը շատ կանուխէն ստացած են Միջերկրականեան ցեղէ բնակչութիւն, հաւանօրէն Կասպեան մշակոյթով։ Բայց Փոքր Ասիա, ինչպէս Հայաստան եւ Անդրկովկաս, կը գտնուի երկու կլիմայական գօտիներու սահմանագլուխին վրայ. որով անիկա թէ՛ հարաւէն եւ թէ հիւսիսէն ընդունած է ինչպէս բուսական եւ կենդանական, նոյնպէս ալ մարդկային ու մշակութային տարրեր։

Այսպէս, Արեւմտեան Ասիոյ մէջ զօրաւոր կերպով ծաղկող Նորքարային քաղաքակրթութենէն նախ ծովեզերքներուն մօտ կը գտնենք ուժեղ հաստատութիւններ, որոնք սակայն հետզհետէ Թերակղզիին ներսն ալ կը թափանցեն այլեւայլ ուղիներով ու միջոցներով։

Դաշտային Կիլիկիոյ եզերքը՝ Մերսինի մօտ պեղումներու ամենաստորին խաւը կը բովանդակէ հասարակ միագոյն (monochrome) կաւեղէն, որուն հետ գտնուած յղկեալ քարէ գործիքները վանակատէ (obsidian) շինուած են։ Հողագործութիւն կայ հոս, որ տիպար ոռոգման մշակոյթ (irrigation culture) է։ Ն. Ք. 6·000–ի մօտերը սկսած այս զուտ Նորքարային մշակոյթը շատ երկար տեւած ըլլալու է, որովհետեւ մնացորդներու 20 ոտք խորութեամբ խաւ մը թողած է։ Յաջորդ խաւին մէջ թրծումի արուեստը կատարելագործուած է, եւ նախշուն կաւեղէն (painted pottery) կը սկսի։ Քիչ յետոյ մարդիկ պղինձի ալ ծանօթացած են, բայց առանց ձգելու քարէ գործիքներու եւ զէնքերու գործածութիւնը, որով Պղնձաքարի (Chalcolithic) շրջանի մէջ կը մտնեն։

Նորքարային շրջանի վախճանը նշանակող հազարամեակին՝ Տաւրոսեան–գիւղական մշակոյթ մը կը ծաղկէր, որ տարածուած է Տաւրոսեան լեռնագօտիին հարաւային զառիթափին վրայ՝ արեւելքը մինչեւ Պարսկաստանի խորերը, եւ արեւմուտքը՝ դէպի Կիլիկիա. բայց նաեւ ճոխ խաւերով կամ գոնէ հետքերով կը գտնուի Փոքր Ասիոյ ներսերը եւ մինչեւ Հայաստանի խորերը։ Իսկ արեւմտեան Փոքր Ասիոյ մէջ՝ Լիւդիոյ Գիւգեան լիճը մեզի կը ներկայացնէ Զուիցերիականներուն համանման լճաբնակ տուներ, որոնց բնակիչները հաւանօրէն Եւրոպայէն Ասիա գաղթեր են։ Միւս կողմէն, Մալաթիոյ մօտ M. Przyleuski 1933–ին ճանչցած է մեծաքարեան (Megalithic) յիշատակարաններ։

Ոռոգման մշակոյթը հարկաւ անասնաբուծութեան կ՚ընկերանար՝ ինչպէս արդի ագարակներուն մէջ։ Այդ անասնաբոյծ մշակները ստիպուած են, իրենց ընտանի անասուններու սիրոյն, ամառները թողուլ ջերմագին դաշտագետինները եւ գաղթել դէպի լեռներու հովիտները, ուր թէ՛ թարմ արօտներ կան եւ թէ զով օդ ու մաքուր ջուր։ Այս տեսակ փոխադրութիւնն էր հաւանօրէն գլխաւոր միջոցը, որով մարդիկ հարաւէն մանաւանդ, մասամբ ալ հիւսիսէն, հետզհետէ թափանցելով տեղաւորուեցան Փոքր Ասիոյ աստիճանաբար մշակութեան ու բնակութեան յարմար դարձող մարզերուն մէջ։ Եւ անգամ մը հոն տեղաւորուելէ ետք, այնտեղ ապահովութիւն գտնելով աճեցան ու բազմացան։ Ասկէ զատ, այդ նախնական մշակները քանի որ հողը պարարտացնելու արուեստական կերպերը դեռ չէին գիտեր, երբ իրենց առաջին հաստատուած տեղի արտերը հինգ կամ տասը տարի միեւնոյն հունձքերը տալով կը կորսնցնէին իրենց արգաւանդութիւնը, ժողովուրդը աւելի անդին կը գաղթէր՝ անմշակ, բայց բարեբեր նոր հողեր փնտռելով. եւ այսպէս ամբողջ Թերակղզիին ներսի մասերը դարերու ընթացքին կը ստանային հողամշակ եւ անասնաբոյծ բնակչութիւն։

Զուտ Նորքարեան մշակոյթ կ՚երեւի թէ գտնուած չէ Փոքր Ասիոյ ներսերը։ Ամէն տեղ, ուր որ քննութիւն կարելի եղած է, մետաղ ալ գտնուած է Նորքարեան խաւերուն մէջ։

Կապադովկիոյ մէջ իր առաքելութեան ընթացքին՝ գիտնական Շանթր հաւաքած է քարէ կացիններ եւ ուրիշ Նորքարային գործիքներ Պեչգարտաշի եւ Ազղըկէօզէլի մէջտեղ Զամանթի սուի աջ ափին վրայ, Բիւլթեփէ, Էվերեկ, Ֆարաշեատին, Թոմարզա, Շար, Հաճըն, Փունարպաշը, Զէյթուն, Սիս եւ Անաւարզա։ Նման գործիքներ կը գտնուին նաեւ Թերակղզին արեւմտեան մասին մէջ եւ մասնաւորապէս Հիսարլըգի (Տրովադա) Բ. եւ Ե. խաւերուն մէջ, ուր ասոնք հին արուեստագիտութեան մը ուշ մնացած ներկայացուցիչներն են։

Գալով կաւեղէնի, ամենէն սկիզբը միեւնոյն դեղնորակ տեսակէն կաւանօթներ գործածական կը գտնուին ամբողջ Թերակղզին մէջ, ինչպէս նաեւ Կրետէ եւ Կիւկլադեան կղզիները։

Փոքր ասիական շրջանակներէն շատերը, որոնցմով մասնաւորապէս շահագրգռուած ենք, նորագոյն ժամանակի բոլոր հնագիտական խուզարկութեանց հակառակ՝ տակաւին խիստ անկատար կերպով հետազօտուած են։ Ասիկա առանձնապէս ճշմարիտ է Փոքր Ասիոյ արեւելեան մասին համար, Մելիտինէի, շրջանակ մը՝ որուն հնագիտական եւ պատմական կարեւորութիւնը կատարելապէս կը զգան ուսումնականները, բայց որուն խուզարկութիւնը, բազմաթիւ գործնական եւ քաղաքական դժուարութեանց պատճառաւ յետաձգուած է եւ դեռ նոր սկսելու վրայ է։

Ինչպէս տեսանք, Փոքր Ասիոյ մէջ Հնաքարային շրջանէն գրեթէ ոչինչ գիտցուած է՝ ի բաց առեալ սա պարզ իրողութիւնը թէ գոյութիւն ունեցած է ան։ Անգարայի հարաւ–արեւելեան կողմը՝ Էլմատաղի վրայ Ուզալ կամ Ուզաղըլ ըսուած տեղը, 1909–ին՝ R. Campbelle Tompson երկու գործիք գտած է andesite քարէ եւ քարեղէն մուրճի մը կէսը, զոր ինքը հին Հնաքարեան կը կարծէ, բայց բոլոր շրջակայքը՝ մօտակայ տեղեր կաւեղէնի կտորուանք կան, որոնց թուականը ինք չէ կրցած որոշել եւ որոնք սակայն կ՚ապացուցանեն թէ այս վայրը հին Հնաքարեան չէ, այլ Նորքարեան։ Հետեւաբար այս է ամէնը, զոր ներկայիս գիտենք Փոքր Ասիոյ Հնաքարային շրջանին վրայով։ Դժբախտաբար Նորքարային շրջանին Փոքր Ասիոյ պատմութեան վրայով ալ մեր ծանօթութիւնն աւելի գոհացուցիչ չէ։ Հոն կատարուած սակաւաթիւ պեղումները (Տրովադայի մէջ՝ Շլիմանի եւ անոր գործակիցներուն ու յաջորդներուն ձեռքով եղածը, Պողազքէօյի մէջ Վինքլէրի եւ Կարքեմիշի [Ճարապլուս] մէջ Բրիտ. Թանգարանի պաշտօնեաներուն ձեռքով եղածները) չի թուիր թէ իջեցուած են մինչեւ զուտ Նորքարային խաւը։

Հիւսիսային Սուրիոյ մէջ Սաքչէկէօզիւ, ուր Կարսթանկ պեղումներ կատարեց, երկու ամենավարին խաւերը Նորքարային են, բայց գուցէ Նորքարային շրջանի ամենականուխ փուլերուն չեն պատկանիր։ Երեւան հանուած են վանակատէ (obsidian) եւ ոսկորէ ձեռակերտներ (implements) եւ կտորուանք սեւ կաւեղէնի՝ փորագրուած գծային զարդարանքով։ Աւելի ետքի Նորքարային խաւը տուաւ գունաւոր կաւեղէն ուղղագիծ կամ ոլորուն

գիծերով եւ կէտկիտուն տարազներով զարդարուած, որ շագանակագոյն գետնի վրայ սեւով նկարուած են։ Բայց մինչեւ որ շատ աւելի թիւով վայրեր չխուզարկուին, անկարելի պիտի ըլլայ ըսել թէ պատմական ուրուագծի մը մէջ ո՛ր վայրկեանին կը յարմարին անոնք։ Վանակատի ներկայութիւնը կանխագոյն խաւին մէջ կարեւոր է անով որ կը թելադրէ թէ արդէն առեւտրական յարաբերութիւն հաստատուած է Մելոս կղզիին հետ, որ Եգէական ծովու աւազանին մէջ գլխաւոր աղբիւրն էր վանակատի, բայց թերեւս նաեւ Հայաստանի հետ, որ վանակատով այնքան հարուստ է։

Քարի շրջանի ու Մետաղային շրջանի սահմանագծին վրայ կիրամիկայի (ceramics) նոր մշակոյթ մը հետզհետէ կը ծաւալի Մերձաւոր Արեւելքի մէջ։ Այս փոփոխութեան յատկանիշն է նախկին սեւ կաւանօթի դադարումը եւ անոր տեղ կարմիր գոյնով կաւանօթի անցնիլը։ Այս փոփոխութիւնը կը վերագրուի ամէն բանէ առաջ կաւեղէնի թրծման մէջ տեղի ունեցած բարեփոխութեան, որ այս ալ արդիւնքն էր հաւանօրէն բրուտի հնոցներուն կրած բարեփոխութեանց։ Նախկին կաւեղէնը կը թրծուէր բաց ու մխացող կրակի վրայ։ Այս կերպով թրծուած անօթներու մակերեսը ծուխէն սեւ պիսակներ կը ստանար· բրուտները սեւ պիսակները անխուսափելի համարելով, մնացած մասերն ալ ձեռքի աշխատանքով կը սեւցնէին միօրինակութեան համար։ Նոր հնոցներուն մէջ, կաւին պարունակած երկաթի թթուատը կրակի ազդեցութեամբ կարմիր գոյն մը կու տար բրտեղէնին։ Զայս ալ նմանապէս միօրինակ կ՚ընէին՝ լուալով կամ ուրիշ կերպերով· նաեւ յղկելով կը փայլեցնէին։

Յարեւմուտս Դանուբի աւազանին մէջ, յարեւելս Թուրքաստանի մէջ եւ հարաւը Սուրիոյ մէջ, այս կարմրերանգ բրտեղէնը ժամանակով կը համապատասխանէ մետաղէ պղինձէ գործիքներու առաջին երեւման։ Ոչ մէկ արձանագրութիւն, որչափ երկար եւ որքան ալ պատմական մանրամասնութիւններով լեցուն, պիտի չկարենար այնչափ պերճախօս ըլլալ ժողովուրդներու շարժումներուն եւ առեւտրական հաղորդակցութեանց ընդարձակութեան մասին, որքան այս կարմիր կաւեղէնի չերտերը, որ հաւաքուած են իրարմէ այդքան հեռաւոր վայրերէ։ Կը խորհուի թէ անոնց թուականն է մօտաւորապէս Ն· Ք· 5·000 — 4·000։

Մետաղի առաջին շրջանին գաղթականներ եկան Եւրոպայէն եւ տեղաւորուեցան Եգէական ծովու Ասիական եզերաց վրայ· յետոյ տարածուեցան դէպի ցամաքին ներսերը առանց բոլորովին անդին անցնելու գաղափարային գիծէ մը՝ նշանակուած Սանգարիոսի եւ Պէյշեհիր լիճին արեւելքէն, Պէյպազար, Գորդիոն, Սիզմա եւ Գոնիա տեղերով· կիրամիկան ասոր ապացոյց կը բերէ։ Այս երեւակայական գիծի արեւելեան կողմը ուրիշ մշակոյթ մը կը ծաղկէր։ Այս է նկարազարդ կաւագործութիւնը, որ Թէլ-Հալաֆեան կը կոչուի։ Ուրեմն Փոքր Ասիոյ մէջ, որ Հաթեանց եւ անոնցմէ առաջ Նախահաթեանց հայրենիքն է եղած, երկու կողմէն կերամիկայի երկու տարբեր հո-

սանքներ մտած են։ Նկատուած կաւեղէնի ուշագրաւ տիպ մը կայ, որուն բաշխման կեդրոնը կրնայ Եղամի Սուսիանա երկիրն ըլլալ, բայց որ ամբողջ Փոքր Ասիոյ մէջ ալ կը գտնուի, նաեւ դէպի հարաւ մինչեւ Սուրիա եւ Պաղեստին։ Փոքր Ասիոյ մէջ ան կը պատկանի պրոնզի շրջանի վերջին մասին։ Անոր զարդարուեստին վրայ ազդած են թերեւս յետնագոյն Մինոյեան շըրջաններու գեղարուեստական մոտիւները. բայց մինչեւ անգամ այսպիսի նորմուծումներ ընդունելով հանդերձ, կը մնայ մնացորդ մը մեզի, զոր նաեւ կրետական արուեստը չի կրնար բացատրել, եւ ուրեմն անկախ փոքրասիական զարգացում մըն է։ Կը նշանակէ որ կեդրոնական Փոքր Ասիոյ յատուկ բրտեղէն այս նշանաւոր արուեստը, Պալքաններու մէջ երեւան ելած ու ծաղկած կերամիկային հետ հանգիտութիւններ ունենալով իսկ, Հնդեւրոպայի գաղթականներու ժամանումէն ու Խաթթիի պետութեան կազմակերպուելէն շատ առաջ, արդէն գոյութիւն ունէր թերակղզիին մէջ։ Թերեւս Նախահաթեանք զայն կատարելագործեցին՝ դուրսէն սորվուած արուեստին վրայ իրենցմէ հնարուած նոր տարրեր աւելցնելով։ Ընդհակառակն Մելիտինէի եւ յարակից մարզերուն մէջ միշտ արեւելեան միջագետային ազդեցութիւն մը տիրապետող եղած է նկարեալ բրտեղէններուն վրայ (R. A. S. Macalister, «Survey of Early Mediteranean Cultures», chapter 19, of Hammerton's «Universal History of the World», vol. II pp. 590-4. Delaporte, «Les Hittites», pp. 35 38. Արտաւազդ Արքեպս. Սիւմէեան, ՍՈՒՐԻԱ, էջ 578)։

Եգիպտոսի Դինաստիական քաղաքակրթութեան հիմնադիրները, որոնք Միջագետքի Սումերեաններուն պէս սպիտակ լայնագլուխներ էին, կ'երեւի թէ Ն. Ք. 3.000 թուականէն քիչ մը առաջ հասած են Նեղոսի հովիտը։ Այնպէս կը թուի թէ Կովկասեան լեռնաշղթայէն հարաւ հոսող բացդոյն լայնագլուխները անկէ երկճիւղեցան։ Մէկ գաղթային հոսանքը Իրանի վրայով Միջագետք հասաւ եւ կազմեց Սումերեան ժողովուրդը. միւս հոսանքը հարաւ-արեւմուտք շեղելով Պոնտոսի եզերքով եւ Իրիս ու Ալիս գետերու ընթացքն ի վար, նախ լեցուց Փոքր Ասիոյ պարապ տեղերը, եւ ապա Տաւրոսէն հարաւ յորդելով՝ Սուրիոյ վրայէն երկնցաւ հարաւ, մինչեւ որ զօրաւոր ճիւղ մը Ստորին Եգիպտոս հասաւ։ Այս վերջիններուն աւանդաբար «Հերոս աստուծոյ ժողովուրդ» կ'ըսուէր։ Ասոնք արդէն անագապղինձէ զէնքեր ունէին եւ յայտնի արեւապաշտներ էին։ Փեթրի, Զայլտ եւ ուրիշ գիտուններ նշմարած են նախապատմական զօրաւոր ազդեցութիւններ Կովկասէն մինչեւ Եգիպտոս թափանցած. անոնք կ'ըսեն թէ «Մեռելոց Գիրք» (Book of dead) անուն վաղեմի եգիպտական կրօնական գրուածներու մէջ կովկասեան եւ հայկական տեղանուններու որոշ արձագանգները կը լսուին։ Հարկաւ ծայրը մինչեւ Եգիպտոս հասնող այսպիսի ընդարձակ գաղթային հոսանքներէն՝ ետեւը Փոքր Ասիոյ մէջ մնացած պիտի ըլլան ժողովրդային հոծ զանգուածներ, եւ Մելիտինէի նախնագոյն բնակչութիւնը կրնայ ասոնցմէ ըլլալ։

*Բայց ինչպէս վերեւ տեսանք, Փոքր Ասիա լոկ հիւսիս–արեւելքէն չէ որ նոր ժողովուրդ ստացաւ, հապա նաեւ հիւսիս–արեւմուտքէն՝ Պալքանեան Թերակղզիին կողմէն։ Ասոր պատմական փաստերը բազմաթիւ են, որոնց մէջ ամենէն զօրաւորն է նորէն բրուտեղէնի ապացոյցը։ Արդ, Փոքր Ասիոյ կիրամիկան, ըստ մասնագիտաց, դէպի նախաքրիստ. Գ. հազարամեակին վերջերը եղանակաւորուած է նմանապէս արեւմուտքէն եկած գաղթականութեամբ մը, եւ փոփոխութիւնը առանձնապէս կը յայտնաբերուի կիրամիկայի բոլորովին նոր տիպի մը երեւումով։ Այս նորեկները, որ կ'երեւի թէ համեմատաբար սակաւաթիւ էին, հնդեւրոպականներ են, որ հին ազգաբնակչութեան մէջը տեղ կը գտնէին, եւ Ն. Ք. 20–րդ դարուն Խաթթիի մէջ զօրութիւնն իրենց ձեռքը կ'առնեն* (1)։

## Բ.

# ՄԱԼԱԹԻԱ ՀԻՆ ՀԱԹԵԱՆՑ ՕՐՈՎ

*Փոքր Ասիոյ արեւելեան մասին վրայով ամենահին ստոյգ տեղեկութիւնները կը քաղենք երկու աղբիւրներէ.— ա — Կեսարիոյ մօտ* Կանէշ, *այժմ Քիւլթեփէ, առեւտրական գաղութի թողած բեւեռագիր պնակիտներէն. բ — Ագատէի Մեծն Սարգոն թագաւորին Ք. Ա. շուրջ 2800 Փոքր Ասիոյ վրայ կատարած արշաւանքէն։ Մալաթիոյ պատմութեան համար առաջինը կարեւոր է անով որ* Կանէշի *վաճառականաց գաղութը դէպի Եփրատ տանող առեւտրական մեծ պողոտայ մը ունէր, որուն ուղեգիծին եւ կարեւոր կայաններուն արձանագրութեան մէկ մասը մեզի հասած է.—* Կանէշ, *Խախում, Խարանա, Սամուխա, Տիմելկիա, Լուխուզատիա, Տեգարամա* (Delaporte. Les Hittites, p. 49)։ *Այս ուղեգծին համեմատ՝* Սամուխայի *դիրքը մօտաւորապէս կը համապատասխանէ վաղեմի* Ծամնդաւ *եւ արդի* Ազիզիէ *աւանի դիրքին։ Իսկ ՏԻԳԱՐԱՄԱ՝ պատմագէտներու ընդհանուր համոզմամբ՝ արդի* Կիւրին *քաղաքն է (հինն* Gauraina)։ *Բայց անշուշտ ճամբան, որ պէտք է դէպի Ասորեստան եւ Բաբելաստան շարունակէր, չէր կրնար* Կիւրինով *վերջացած ըլլալ, հապա Եփրատի վրայ գետանցք մը պիտի ունենար, որ չէր կրնար տարբեր ըլլալ Մալաթիոյ դիրքին մօտ Իզոլիէն։*

*Արդ, ամենահին Մալաթիան ներկայացնող* Մալդիյայի *(այժմ Արսլան Թեփէ) պեղումները ցոյց տուած են որ հոն, գետակի մը ծայրը, փոքր դաշտի մը մէջ, Նորքարային շրջանին սկիզբը՝ կազմուած է մարդկային կարեւոր բնակավայր մը եւ այդ ապիւսաչէն բնակութեանց աւերակները տեղւոյն վրայ*

(1) *Տես մեր* ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ *երկին մէջ, էջ 26։*

*մնացած ըլլալով եւ հետզհետէ նոր շինուող ու ապա կործանուող շէնքերու հողը իրարու վրայ դիզուելով, արուեստական բլուր մը ձեւացած է այդ տեղ: Այս* հիւյիւկին *վրայ է որ հիմնուած է Ն· Ք·* 3·000 *եւ* 2·500 *թուականներուն մէջտեղ՝ ամենահին քաղաքը: Միւս կողմէն, Աքքադեան Սարգոնի համար կը կարդանք որ Փոքր Ասիոյ վրայ իր յաջող արշաւանքէն ետք՝ այդ ընդարձակ երկրամասին մէջ բազմաթիւ պահականոցներ շինեց՝ առեւտրական պողոտաներու վրայ հսկելու պաշտօնով: Ուրեմն, ամէն հաւանականութիւն կայ որ ամենահին Մալաթիոյ Արսլան Թեփէի բերդաքաղաքը շինողն էր Աքքադեան Մեծն Սարգոն, որովհետեւ շինութեան թուականն ամենայարմար կը հանդիպի իր ժամանակին:*

*Աքքադի մեծ աշխարհակալ Սարգոնի թոռնորդւոյն՝ Նարամսինի բիւրեղեայ մէկ բաժակը գտնուած է Ամիդա (Տիարպեքիր): Իսկ անկէ դէպի արեւելք Ֆարգինի (հին Տիգրանակերտի) մօտ ապառաժի մը վրայ իր պատկերը կայ քանդակուած. Նոյնպէս Ֆարգինի մօտերը գտնուած եւ այժմ Իսթամպուլի թանգարանին մէջ պահուող կոթողի մը վրայ ալ Նարամսինի ցածաքանդակ մէկ պատկերը կայ, եւ անոր ընկերացող սեպագիր արձանագրութենէն կ'իմացուի թէ Աքքադի այս թագաւորը հոն պալատ մը կառուցանել տուած է հաւանօրէն իբր ամառանոց:*

*Դէպի Փոքր Ասիոյ կեդրոնը Նարամսինի արշաւանաց մէկ պատմութիւնն ալ գտնուած է Պողազ-Քէօյի հաթերէն պնակիտներէն: Հոն կը յիշուի թէ Բաբելացի թագաւորին դէմ արեւմտեան Ասիոյ ազգերէն տասնեօթը արքաներու զինակցութիւն մը կազմուած էր. որով Նարամսինի համար երեք արշաւանք ընել պէտք եղած է, մինչեւ որ զինակցութիւնը խորտակուեցաւ եւ դաշնակիցները ստիպուեցան հաշտութիւն կնքել Աքքադի յաղթական թագաւորին հետ եւ անոր հարկեր ղրկել:*

*Փոքր Ասիոյ վրայ Նարամսինի այդ արշաւանքները սա տեսակէտէն նշանակալից են մեր պատմութեան համար. Նարամսինի նախորդը Սարգոն իր դէպի Անատոլու արշաւանքները կատարած էր սկզբնապէս Ամանոսի կիրճերուն եւ Կիլիկիոյ ճամբով. Նարամսին ալ իր առաջին երկու արշաւանքները միեւնոյն ճամբով կատարեց, բայց երբ տեսաւ թէ այս ուղիով իրեն կարելի պիտի չըլլայ վճռական յաղթանակ մը շահիլ, նոր ճամբայ մը ընտրեց հիւսիսային գաւառներու վրայէն, այսինքն, ինչպէս իր արձանագրութեան մէջ կը կարդանք, Սուբարտուէն (Միջագետք) արշաւեց մինչեւ Ամիդա, եւ անկէ Խարբերդ-Մալաթիա ճամբով անցաւ Եփրատը եւ քալեց ուղղակի Փոքր Ասիոյ սրտին վրայ:*

*Հաւանօրէն նա իր այս քաջագործութեան կ'ակնարկէ Քաղդէացւոց Ուր քաղաքը գտնուած մէկ արձանագրութեան հետեւեալ տողերովը. «... այս արշաւանքը՝ որուն թագաւորներու մէջ ոչ մէկ թագաւոր ձեռնարկած էր, Նարամսին, Ագատէի արքան, կատարեց: Եւ Ինինի (Իշտար) դիցուհին անոր*

մրցորդ մը չունի։ Սուրարտուի տանուտէրերը (patesi) եւ Բարձրաւանդակի (կամ Լեռնաշխարհի) իշխանները իրենց հարկերը բերին անոր առջեւ»։ Հոս Լեռնաշխարհի կամ բարձրաւանդակ բառով անշուշտ Հայաստանը կը հասկցուի, եւ Տիգրանակերտի շրջանակին մէջ Նարամսինի գոնէ երեք յիշատակարան թողած ըլլալէն եւ պալատ մը շինել տալէն յայտնի է թէ նա ո՛րքան կարեւորութիւն կու տար Խարբերդ–Մալաթիա գծով Փոքր Ասիա տանող այս ճանապարհին, որուն Միջագետային բանալին էր Տիգրիսի վրայ Ամիդա քաղաքը, իսկ Անատոլեան բանալին՝ Եփրատի վրայ Մալկիյա բերդը։

Նարամսինի դէմ պատերազմող 17 զինակից թագաւորներու ցանկին մէջ (զոր տես Prof. Nicol Adontz, Histoire d'Arménie, p. 209) հինգերորդն է Խատտիներու արքայ Պամբա, վեցերորդը՝ Կանէշի արքայ Զիպանի։ Անկարելի չէ որ ցանկին մէջ յիշուած արքաներէն մէկն ալ Մալաթիոյ կողմին ըլլայ։ Հոս յիշուող «ԽԱՏՏԻԻ» արքայ Պամբա, ըստ պատմագիտաց Նախահաթերու թագաւորն է։ Անոր ժամանակէն ետք եկան բուն հնդեւրոպական Խետացիք կամ Հաթեանք, որ հետզհետէ զօրանալով Փոքր Ասիոյ ամբողջ կեդրոնական ու հարաւային մասերը գրաւեցին, եւ ապա իրենց Մուրսիլիս Ա. թագաւորը Ն. Ք. 1780-ի տարիները հիւսիսային Սուրիոյ վրայ յարձակելով Հալէպը նուաճեց, վերջն ալ մինչեւ Բաբելոն մեծ արշաւանք մը ըրաւ։ Բայց այս հին շրջանին՝ Խետացւոց Մալաթիոյ կողմերուն հետ ոեւէ չփման մէջ գտնուիլը յիշուած չէ։

Այդ ժամանակ Քերքուքի եւ Մուսուլի կողմերէն մինչեւ Միջերկրական ծով բոլոր հիւսիսային Միջագետքն ու Սուրիան բռնած էր Հուրրի անուանեալ մեծ ժողովուրդը, որուն հետ նախ սաստիկ ընդհարումներ ունեցաւ Հաթեանց վերոյիշեալ Մուրսիլիս Ա. մեծ արքան, եւ յետոյ զինակցեցաւ Բաբելոնի վրայ իր կատարած արշաւանքին համար։ Հալէպ ալ այն ատեն Հուրրիներու ձեռքն էր։ Հուրրիներու պետութիւնը Խանիա կամ Խանիգալբատ կը կոչուէր, որ կը տարածուէր նաեւ վերին Տիգրիսի աւազանէն բաղկացեալ հարաւային կամ ստորին Հայաստանի վրայ։ Քիչ վերջը կը տեսնենք որ Հուրրիները մինչեւ իսկ արեւելեան Կապադովկիան գրաւած եւ դէպի Պոնտոս երկընցած են, Հաթեանց դէպի Սուրիա եւ Միջագետք ճամբան փակելով։ Այս կը նշանակէ որ ոչ միայն Կոմմագինէի, այլ նաեւ Մելիտինէի եւ Տիգարամայի (Կիւրինի) շրջանակները Հուրրիներուն ձեռքն անցեր էին։ Այսպէս տեւեց իրաց վիճակը մի քանի դար մինչեւ որ Ն. Ք. 1460-ի տարիները Հաթեանց կամ Խետացւոց պետութիւնը վերազարթում մը ունեցաւ։ Այս վերջին ժամանակը Մելիտինէի արեւմտեան կողմէն սկսեալ մինչեւ Ապառաժոտ Կիլիկիա տարածուող կարեւոր թագաւորութիւն մը ձեւացած էր արդէն, որ Կիզզուատնա կամ Կատաւատանա կը կոչուէր, եւ որուն բնակչութիւնը Հաթեանց եւ Հուրրիներու խառնուրդ մըն էր։ Պատմագէտները կը կարծեն թէ Կատաւանա կամ Կիզզուատնա անունէն ածանցած պիտի ըլլան այդ երկրամասի դասական Կատաւոնիա եւ արդի Գոզան անունները։ Ն. Ք. 1500 թուականէն յետոյ՝

Միտաննեցիք անուն հնդեւրոպական ժողովուրդ մը Հուրրիները յաղթահարելով եւ ապա անոնց հետ միանալով՝ Խանիգալբատի պետութեան նոր ձեւ մը տուին։ Ուստի այդ պետութեան յաճախ «Հուրրի–Միտանի պետութիւն» անունն ալ կը տրուի։

Արդարեւ Խեթացիք մինչեւ անգամ Փոքր Ասիոյ մէջ քիչ մը առեն դարձեալ եա մղուեցան Հուրրի–Միտանի պետութեան ծաւալումին երեսէն։ Հաթեան պետութեան գլխաւոր հակառակորդը դարձող այս նոր տէրութիւնը իր զօրութեան գագաթնակէտին վրայ կը գտնուէր Ք. Ա. ԺԵ. դարու դէպի վերջերը, երբ Խանիգալբատի երկիրները Արտատամա Ա. Թագաւորին մականին տակ միացած էին։ Միտանիի Թագաւորը իր իշխանութիւնը Եփրատէն արեւմուտք ալ տարածելով, նուաճեց հիւսիսային Սուրիան, Կոմմագինէն եւ ապա Տեգարամայի երկիրը — որ կը բովանդակէր Մելիտինէն ալ — եւ իրեն հարկատու դաշնակից ըրաւ Կիզզուատնայի Թագաւորը։

Այս ժամանակ Խեթացւոց մեծ Թագաւորն էր Արնուանդաս Ա.ի որդին Խատտուսիլ Բ. (իրր 1425—1410 Ն. Ք.)։ Իրենց հարաւ–արեւելեան սահմանին վրայ Միտաննեցւոց պէս զօրաւոր ու ռազմասէր տէրութեան մը հաստատուիլն անշուշտ բնաւ չէր կրնար հաճելի ըլլալ Խեթացւոց, ոչ ալ Եգիպտոսի հետ անոր բարեկամ–զինակից ըլլալը։ Բայց արդէն արեւմտեան Հայաստանի մէջ ալ կազմուած էր Խայասա կամ Հայասա անուն կարեւոր պետութիւն մը, որ Փոքր Հայքէն գոնէ մինչեւ Վանայ ծովը կը տարածուէր։ Այնուհետեւ սոսկալի պայքար մը սկսաւ երեք մեծ պետութեանց միջեւ, որոնց ընդհարումներուն գլխաւոր ասպարէզն էր Տեգարամա–Մելիտինէի գաւառները, ինչպէս նաեւ անոնց դիմացը՝ Եփրատի արեւելեան կողմը տարածուող Իշուվա կամ Իսուա երկիրը (Խարբերդ–Արղնի շրջանակը)։

Խատտուսիլ Բ.ի որդւոյն ու յաջորդին՝ Դուտխալիյաս Գ.ի օրով (1410–1393 Ն. Ք.), երբ առեն մը ներքին երկպառակութիւն կը տիրէր Հուրրի–Միտաննի պետութեան մէջ, Հաթեանք նուաճեցին մինչեւ Եփրատի աջ եզերքը տարածուող բոլոր փոքր–ասիական գաւառները եւ ընդհարման եկան Հայասայի պետութեան հետ, որուն զինակից էին Պոնտոսի երկրին Քասքաներ անուն հզօր բարբարոս ցեղերը։

Դուտխալիաս Գ. իր համանուն մէկ որդին իրեն գահակից ըրաւ (Ն. Ք. 1405–ի առեններր)․ բայց Սուբբիլուլիումա անուն ուրիշ մէկ որդին, ինքն ուզելով հօրը գահակիցն ըլլալ, դաւադրութիւն մը սարքեց իր եղբօրը դէմ, զայն սպաննել տուաւ եւ հասաւ իր փափաքին։

Սակայն ամբողջ կայսրութիւնը տակնուվրայ եղաւ ներքին յեղափոխութեամբ, եւ բոլոր կողմերը ապստամբութիւններ ծագեցան։ Փոքր Ասիոյ հիւսիս–արեւելեան մասերն ալ ապստամբեցան։ Այս երկրամասին մէջ Խաթի պետութենէն ապստամբած տեղերու ցանկը, մէկ հնագրի մէջ երկու անգամ կրկնուած, հետեւեալն է.— «Իշուվայի երկիրը թշնամացաւ։ Խաթիի հպատակ մարդիկ ալ Իշուվայի կողմը բռնեցին. այսինքն՝ Գուրտալխայի մար–

դիկը, Արաւաննայի մարդիկը, Զագչայի (կամ Զագիչայի) գաւառը, Կալամաշմայի (երկրորդ ցանկին մէջ անճշդօրէն Տիգարամայի) մարդիկը, Տիմինայի գաւառը, Հալիւայի լեռնագաւառը, Կարնայի լեռնագաւառը, Տուրմիտայի մարդիկը, Ալխայի գաւառը, Խուրմայի գաւառը, Խարանայի լեռնագաւառը, Տիգարամայի երկրին կէսը, Տիպուրզիայի մարդիկը, Խասքայի մարդիկը, Արմատանայի մարդիկը» (Delaporte, «Les H[illegible]es», p. 78. N· Adontz, «Histoire d'Arménie, p· 41-2):

Հոս «մարդիկ» ըսելով թերեւս դեռ կատարելապէս հաստատաբնակ վիճակ չառած ցեղեր պիտի հասկնանք, եւ ուրիշ արձանագրութիւններէ կ'իմանանք որ այս ցեղերը Գասգայի ծագում ունէին, բայց Խեթացւոց պետութեան յարած էին եւ անոնց կը ծառայէին իրենց զինուորներով իբրեւ վարձկան: Իսկ հոս իբրեւ «երկիր» կամ «գաւառ» յիշուածներն ալ կ'երեւի թէ նախապէս ոչ թէ Հաթեան, այլ Հուրրիական էին: Այս ցեղերու եւ գաւառներու տեղերը մանրամասնօրէն ճշդել մեր նպատակէն դուրս է, այլ միայն կը բաւականանք ըսելով թէ անոնք կը գտնուէին Իսիս (Գայլ գետ) եւ Ալիս գետերու վերին աւազաններէն սկսեալ մինչեւ Մալաթիա եւ Ալպիսթան՝ Եփրատի արեւմտեան կողմը տարածուող լեռնադաշտերու վրայ: Բայց ցանկիս մէջ ամենակարեւոր անունը Տիգարաման է, որ կը նշանակէ միանգամայն թէ՛ ընդարձակ նահանգ մը, որ անշուշտ Մելիտինէն ալ կը բովանդակէր, եւ թէ անոր կեդրոնական քաղաքը, զոր պատմագէտք իրաւամբ կը նոյնացնեն դասական Gauraina եւ արդի Կիւրին քաղաքին հետ: Թէ Մելիտինէ ալ կը բովանդակուէր Տիգարամա նահանգին մէջ, կը հետեւի անկէ որ Տիգարամա աշխարհն անմիջական դրացին էր Իշուվայի, որ կը նոյնացուի Խարբերդի կողմերուն հետ, որովհետեւ Խաթեան արձանագրութիւն մը կ'ըսէ· «Բայց եկաւ Իշուվացի թշնամին աւերեց Տեգարամա քաղաքի աշխարհը»: Թէեւ այս ժամանակի արձանագրութեանց մէջ Մելիդ քաղաքի անունը չի յիշուիր, բայց ասկէ չի հետեւիր թէ Մելիդ այդ ատենը գոյութիւն չունէր, այլ միայն թէ տակաւին նահանգի կեդրոն եղած չէր:

Տեղը չէ հոս Հաթեան կայսրութեան եւ Հայասայի պետութեան միջեւ մղուած դարաւոր պատերազմներու մանրամասնութեանց մէջ մտնելու, զորս արդէն ընդարձակօրէն պատմած ենք մեր «ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» գիրքին մէջ (Է· եւ Ը· գլուխներ): Միայն կը բաւէ յիշել թէ Սուպպիլուլիումա, որ ներքին բոլոր ապստամբութիւնները մարելէ ետքը՝ սոսկալի արշաւանքով մը խորտակեց Հուրրի-Միտանի պետութիւնը, եւ անոր որդին՝ Մուրսիլիս Բ· Հաթեան մեծ արքան, որ վերջնական մահացու հարուածը տուաւ Հայասայի կամ Ազզիի պետութեան, երկուքն ալ երբ պատերազմի համար Եփրատէ արեւելք կ'արշաւէին՝ Իշուվա երկիրն իբրեւ ճանապարհ գործածելով, ամէն անգամին ալ Մալաթիոյ մօտ անցած պիտի ըլլան գետը:

Հաթեան մեծ կայսրութեան վերջին դարուն Մալաթիոյ եւ Կիւրինի շրջանակները հետզհետէ աւելի կարեւորութիւն կը ստանան քաղաքական տե-

սակէտով: Հաթեանք նորանոր քաղաքներ կը հիմնեն այս կողմերը եւ անոնց մէջ խեթայի գաղթականներ կը հաստատեն: Երբ Մուրսիլիս Բ.ին յաջորդեց իր որդին Մուվատալիս (Ք. Ա. 1320—1290), ասիկա իր Խաթթուսիլիս եղբայրը սպայակոյտին պետ եւ գլխաւոր մատռուակապետ կը կարգէ: Այս միջոցին Հաթեան պժգոհ արքայազունի մը սադրանօք՝ Գասգաները յանկարծ մեծ ապստամբութիւն մը կը հանեն եւ պետութեան արեւելեան մեծ մասը կ'ասպատակեն մինչեւ Կանէշ քաղաքը: Խաթթուսիլ եօթնամեայ պատերազմով մը վերջապէս կը կոտրէ Գասգաներու ոյժը եւ զանոնք Հաթեան տէրութեան կը հնազանդեցնէ: Ինքը կը ստանայ «Հակմիսայի (կամ Հակբիսայի) փոխարքայ» տիտղոսը եւ իր վարչութեան շրջանակը կը բովանդակէ ամբողջ Պոնտոսի երկրէն զատ, Փոքր Հայքի եւ արեւելեան Կապադովկիոյ ընդարձակ գաւառները, որոնք այն ատեն «Վերին Աշխարհ» կամ «Վերին Ասուա» անունով ծանօթ էին:

Յետոյ պիտի տեսնենք որ աւելի վերջերը Մելիտինէ ալ աւելցուած է Խաթթուսիլի փոխարքայութեան վրայ:

## Գ.

# ԱՆՑՈՒՄՆ ՀԱԹԵԱՆ ՇՐՋԱՆԷՆ ԴԷՊԻ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՆԸ

«ՄԵԼԻՏԻԱ, Հանիի մայրաքաղաքը» (Melitia capital of Hani) գրաւուած է՝ կ'ըսուի, Ասուրուբալլիտէն, հարկաւ Ն. Ք. 1337-էն առաջ, որովհետեւ Ասորեստանի յիշեալ թագաւորը այդ տարին մեռած է. ուրեմն՝ Մուրսիլիս Բ.ի օրով եւ ասոր ձեռքով Հայասայի նուաճումէն անմիջապէս յետոյ (Hastings, «One Volume Bible Dictionary», p. 64. հմմտ. ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏ., էջ 130): Ասուրուբալլիտ Մելիտիան նուաճեր է Միտաննիոյ կամ Խանիգալբատի կողմէն, զոր նախապէս իր հպատակութեան տակ բերած էր, եւ Ալզիի Աղձնեաց գաւառներուն տիրելէ յետոյ՝ Վերին Եփրատն անցնելով: Ապա մինչեւ Մուզրի երկիրը Կատաւոնիա՞ ալ յառաջացած է նա: Չենք գիտեր թէ ո՞ւր էր այդ միջոցին Հաթեան մեծ արքան Մուրսիլիս: Այս է պատմութեան մէջ Մելիտիա անուան առաջին ծանօթ յիշատակութիւնը:

Ասորեստանեայց Մելիտիա գրած անունը Հաթեանք Մալդիյա կը գը-

րէն[1]: Մուրսիլիս Բ. Ասուրբալլիտի մահուան յաջորդ տարին կը յառաջանայ մինչեւ Մալաս գետը, այսինքն՝ արեւմտեան Տիգրիսի աղբերանձաւը, Ջուբերու տօնը կատարելու համար (ՆԱԽ. ՀԱՅ., էջ 130): Նա իր երթին ու վերադարձին ատեն անպատճառ Մելիտիոյ կամ Մալդիոյ այցելած է. հետեւաբար այս տեղս Հաթեանք վերստին ձեռք բերած ըլլալու են: Սակայն Մուրսիլիս Բ.ի մահէն յետոյ շուրջ 1320 Ն. Ք., Մալդիյա Հայասացւոց կողմը բռնելով ապստամբած է. բայց Մուվատալիս մեծ արքան զայն վերստին կը նուաճէ եւ ապա ներման կ'արժանացնէ: (Կողեան, ՄԵԼԻԴ, էջ 20): Կնքուած հաշտութեան դաշնագրին մէջ Մալդիյա՝ Հայասայի, Իզմիրիկկայի, Սուխմիի եւ այլոց նման իբր «Ծերեր»ով, այսինքն՝ նահապետներով, ցեղապետներով կառավարուող կը ներկայացուի (Delaporte, «Les Hittites», p. 188): Այնուհետեւ Մալդիյա իբր յաւելուածական մաս (appendage) կը կցուի Մուվատալիսի եղբօր՝ Խատտուշիլիսի փոխարքայութեան (Կողեան, յիշ. տեղ, էջ 20):

Աւելի ետքը Մալդիյա կամ Մելիտիա ստորակարգ թագաւորութեան մը վերածուած է (ՆԱԽ. ՀԱՅ., էջ 134): Կ'երեւի թէ Ն. Ք. 1285-ին երբ Խատտուշիլ Գ. գահակալեց որպէս Հաթեանց Մեծ Արքայ, այն ատեն Հակմիսայի փոխարքայութիւնը ջնջեց եւ անոր նահանգները բուն Խաթի պետութեան կցեց, բայց թերեւս իր մէկ որդին կամ ազգականը Մալդիոյ հարկատու թագաւոր դրաւ: Այնուհետեւ Խատտուշիլ Գ. մի քանի անգամ Միտաննին Ասորեստանի ճիրաններէն ազատելու համար, Մելիտիան իբր խարիսխ գործածելով արշաւանքներ ըրաւ Միջագետքի վրայ:

Փոխադարձաբար, Ասորեստանի Սալմանասար Ա. թագաւորն ալ շուրջ 1260-ին Ն. Ք., Միջագետքի տիրելէ եւ Ամիդան (Տիարպեքիր) գրաւելէ ետք, յաղթելով նաեւ Աղձնիքի մէջ Շուպրիայի թագաւորին, զայն գերի ղըրկեց Ասուր եւ երկիրը նուաճեց: Ապա Եփրատն անցնելով՝ գրաւեց Մելիդը (Մալաթիա)՝ Խանիգալբատի երկրին մէջ: Վերջապէս խաղաց դէպի Տաւրոս լերանց խորաձորերը, ուր կռուեցաւ Մուզրի անուանեալ ժողովուրդին հետ, որ Խեթացւոց կայսրութեան հպատակ զօրաւոր ցեղերէն մէկն էր: Բայց կ'երեւի թէ ալեւորած Խատտուշիլ Գ. արտակարգ ճիգերով հուսկ յետոյ կարողացաւ արգիլել Ասորեստանեայց այս խուժումը դէպի Փոքր Ասիա եւ Մելիդը փրկել (Hastings, «One Volume Bible Dict.», p. 64 հմմտ. ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ 142):

Ապա Ն. Ք. 1252-ի ատենները՝ Խատտուշիլ Գ., որ ա՛լ չափազանց ծերացեր էր, Միտաննին փրկելու համար նորէն արշաւեց Միջագետքի վրայ: Բայց ինքը եւ իր Արամէացի զինակիցները չարաչար պարտութիւն կրեցին Սալմանասարէն Կաշեարի լեռնադաւառի անջրդի կիրճերուն մէջ եւ Միտան-

(1) Սիւրմէեան, ՍՈՒՐԻԱ, էջ 537, 539, 577, Մալտիեա գրուած անունը պէտք է Մալդիյա հնչել, որովհետեւ գերմանական գրութեամբ Maldija Մալդիյա կը հնչուի:

նի վերջնականապէս կործանեցաւ Ասորեստանի հարուածներուն տակ։ Այն ատեն Հաթեանց Մեծ Արքան ստիպուեցաւ իբրեւ վերջին փորձ մը Եփրատէն արեւելք մաս մը հող իր ձեռքին մէջ պահել եւ նոր կարգադրութիւն մը ընել Արեւմտեան Տիգրիսի նահանգներուն համար. Իշուվա երկրի Խարբերդի շրջանակին Ուգաշտա անուն արեւմտեան նահանգը կցեց Մելիտինէի թագաւորութեան, իսկ արեւելեան կէսը վերականգնուած Ծուպրիոյ թագաւորութեան պիտի պատկանէր։ Ասոր վրայ Միտանիի կամ Հուրրիի վերապրող ազնուականներէն մեծ մասը Մելիտինէի թագաւորութեան սահմաններուն մէջ քաշուեցաւ, որով Խանիգալբադ անունն ալ, որ սկզբնապէս Հուրրի–Միտաննի պետութեան կը պատկանէր, այսուհետեւ Մելիտինէի թագաւորութեան փոխանցուեցաւ (ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ 134)։ Խատտուսիլ Գ. մեռած է շուրջ 1250–ին Ն. Ք., իսկ Սալմանասար Ա. մեռաւ 1243–ին։

Եդ. Մայէր («Gesch. Des Altertumes», II 1. 477) կը գրէ. «Սալմանասար Ա.ի արշաւանքով Միտաննի պետութիւնը վերջացաւ Միջագետքի մէջ։ Խանիգալբատ անունը հետագայ ժամանակներուն սահմանափակուեցաւ Եփրատէ արեւմուտք Մելիտինէի երկրամասին, ուր հին Միտաննիի հարստութեան ժառանգները հաստատմնացին» (Հմմտ. Խաչատրեան, ՀԱՅԱՍՏ. ՍԵՊԱԳՐ. ՇՐՋ. ՊԱՏՄ., էջ 10)։ — Ինչո՞ւ Հուրրի–Միտաննիներու մնացորդը Մելիտինէ քաշուեցաւ, որովհետեւ հաւանօրէն Մելիտինէ ի սկզբանէ իսկ Հուրրեան կալուածք էր։ Ուրեմն Մալդիյա անունն ալ թերեւս արեւելքէն արեւմուտք փոխադրուած է, ինչու որ ներկայիս դեռ Մալթայիա անուն տեղ մը կայ Նինուէէն դէպի հիւսիս, որ կրնար Հուրրեաններու ամենանախնական բնակած մէկ տեղն ըլլալ։ Եւ դիտելի է որ անմիջապէս Սալմանասար Ա.ի օրէն Ն. Ք. 1250 թուականէն սկսած է Մալդիյայի մէջ «Նոր–Հաթեան» (Neo Hiitites) ըսուած մշակոյթը, որ թերեւս խառնուրդ մըն է բուն հաթեան–խեթական եւ հուրրի–միտաննեան մշակոյթներուն։

Թէ Հուրրիները իսկապէս լաւ արհեստագործներ էին, սա օրինակով կ՚ապացուցուի. Ագաբտահա անուն խաղախորդ մը Խանիգալբատէն փախուստ կու տայ եւ կ՚ապաստանի Բաբելոնի Կասեան հարստութենէն Կաշտիլիաշ Գ. թագաւորին քով եւ անոր համար կը կերտէ կաշիէ հրաշալի զրահ մը։ Բաբելոնի թագաւորը Ագաբտահայի ճարտարութիւնը գնահատելով, իր երկրին արեւելեան սահմանագլուխին վրայ իշխանական կալուածք մը կը շնորհէ անոր։ Բայց կալուածքը Եղամական հող համարելով, այս վերջին երկրի թագաւորը Ունտաշ–Հուբան Ն. Ք. 1249–ին պատերազմ կը բանայ Բաբելոնի թագաւորին դէմ (Georges G. Cameron, «Histoire de l'Iran Antique», Paris, 1937, p. 123)։

Կ՚երեւի թէ Մալաթիոյ թագաւորութիւնն իր կորովի գահակալին ներքեւ, որ հաւանօրէն Սուլումիլի անունը կը կրէր, կրցած է յաջողապէս ճակատ ցուցնել Ն. Ք. 1243—1221–ին իշխող Թուկլաթնինիպ Ա.ի պէս հզօր աշ–

*խարհակալի մը դէմ, եւ Իշուվա երկիրը Խարբերդի շրջանակն իր ձեռքը պահել։ Իսկ այնուհետեւ Թագլաթնինիպի որդւոյն ու յաջորդին օրով Բաբելոն ապստամբեցաւ Ասորեստանի դէմ, եւ ծագող պատերազմը այնքան տկարութիւն պատճառեց երկու կողմերուն ալ, որ յաջորդող* 16 *տարիներու միջոցին Ասորեստան ոչ միայն ներքին յեղափոխութիւններով պառակտեցաւ, այլ եւ այդ կարճ շրջանին եօթն անգամ գահակալի փոփոխութիւն տեղի ունեցաւ։ Վերջապէս Նինիպ-Փալասար* 1205—1193 *յաջողեցաւ Ասուրի պետութիւնը վերստին կազմակերպել եւ անոր բանակներուն ոյժը մասամբ վերականգնել։* (*Հմմտ. ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ* 147)։

*Մալդիյայի մէջ պեղուած ամենահին պալատը կը վերաբերի Ն. Ք.* 1250—1200 *տեւող ժամանակին, եւ պեղիչները անոր արձանագրութեանց մէջ կը կարդան «Սուլումիլի» թագաւորին անունը։ Առ այժմ ճշդիւ չենք գիտեր այս թագաւորի իշխանութեան սկսելուն եւ վերջանալուն թուականները, բայց յայտնի է թէ հզօր եւ յաջող թագաւոր մըն էր։ Ասիկա անշուշտ մեծ բարերախտութիւն մըն էր Խաթթուսասի մայրաքաղաքով շիջելափառ հաթեան կայսրութեան համար, եւ նոյնպէս նպաստաւոր եղաւ հաթեան քաղաքակըրթութեան տեւականացման տեսակէտէն։*

*Հաթեան մեծ արքայ Առնուանդաս Գ.ի օրով* 1235—1215 *Ն. Ք. սոսկալի ու երկարատեւ սով մը տիրեց Փոքր Ասիոյ կեդրոնական եւ արեւմտեան մասերուն մէջ, որուն կ'ընկերանար սարսափելի համաճարակ մըն ալ։ Բայց կ'երեւի թէ սովը եւ համաճարակը չտիրեցին, կամ շատ թեթեւ էին հիւսիսային Սուրիոյ, Կոմմագինէի, Կիլիկիոյ եւ Մելիտինէի երկիրներուն մէջ։ Այդ ժամանակ հաթեան ժողովուրդը հարուածեալ շրջանակներէն հարիւր հազարներով արտագաղթեց եւ հաստատուեցաւ սովէն ու համաճարակէն բաղդատաբար զերծ վերոյիշեալ երկիրներուն մէջ։ Հարկաւ Մելիտինէ այս առթիւ ստացած է ահագին քանակութեամբ խետացի ժողովուրդ, որոնք իրենց հետ կը բերէին նաեւ հաթեան քաղաքակրթութեան զանազան եւ լաւագոյն տարրերը դէպի այդ խաղաղ ու բարգաւաճ երկիրը։*

*Խետացւոց մեզի ծանօթ վերջին մեծ արքան է Դուտխալիյաս Ե.* (1215—1200 *Ն. Ք.*), *որմէ մնացած վաւերագրով մը յանկարծ վերջ կը գտնեն Պողազքէօյի հաթեան բեւեռագիր գիւտները։ Ասոր մեկնութիւնը շատ պարզ է։* Պեղասգեան ցեղեր *կամ Եգիպտացւոց բառով* «Ծովու ազգեր», *որոնց շատերը նախապէս հաթեան հզօր թագաւորներու դրօշին ներքեւ որպէս վարձկան զինուորներ կամ հարկատու դաշնակիցներ պատերազմեր եւ այսպէս Փոքր Ասիոյ եւ Սուրիոյ բոլոր ճամբաները սորվեր էին, հիմա արեւմտեան ծովեզերքէն Աքայեանց ճնշումին ներքեւ զինակցութիւն մը կազմեցին եւ հարաւային Փոքր Ասիոյ մէջէն ահագին արշաւանքի մը ձեռնարկեցին։ Մինչ հիւսիս-արեւմուտքէն ալ* Փռիւգիացիք *եւ ուրիշ Թրակեան ցեղեր Վոսփորն ու Տարտանէլը անցած, կը քալէին ուղղակի հաթեան տէրութեան կեդրոնին վրայ։ Սանկարիոս գետի ափանց վրայ Խետացիք ստատիկ դիմադրու-*

թիւն մը փորձեցին վերջիններուն. բայց իրենց զօրութիւնը խորտակուեցաւ բարբարոսաց թուական առաւելութեան առջեւ։ Արշաւողք յառաջ խաղացին արագօրէն, անցան նաեւ Ալիս գետը։ Հաթեան մայրաքաղաքը՝ Խատտուսաս առնուեցաւ, անոր զօրաւոր պարիսպները քանդուեցան, պալատներն ու մեհեանները հրոյ ճարակ եղան եւ Խատտիներու մեծ կայսրութիւնը կործանեցաւ ի սպառ։

Իսկ հարաւային Փոքր Ասիոյ մէջէն արշաւող բարբարոսները կ՚երեւի թէ նախ կործանեցին Արզաւայի թագաւորութիւնը, եւ ապա Խետացւոց մէկ մասն ալ հետերնին քշելով, Կիլիկիոյ ու Սուրիոյ մէջէն անդիմադրելի թափով մը յառաջացան մինչեւ Պաղեստին, իրենց ընտանիքներն ալ սայլակներով միասին առած. մասամբ ալ նաւերով յարձակեցան Եգիպտոսի ծովեզերքին վրայ։ Սակայն Ռամսէս Գ. փարաւոնը իր իշխանութեան 8-րդ տարին Ն. Ք. 1192, առաջ ծովու եւ յետոյ ցամաքի վրայ կրկնակ յաղթութիւններով փրկեց Եգիպտոսը։

Ռամսէս Գ. իր յաղթանակի արձանագրութեան մէջ ամփոփ կերպով կը նկարագրէ այս արհաւիրքը. «Կղզիներն անհանգիստ էին, իրենց մէջ վրդովուած՝ բոլորը միեւնոյն ժամանակ։ Ո՛չ մէկ երկիր կրցաւ կենալ անոնց առջեւ, Խետայէն (Փոքր Ասիա) սկսած, Կոդի (Կիլիկիա), Կարքեմիշ, Արուադ, Ալաշիա (Կիպրոս)։ Իրենք կործանեցին զանոնք եւ հաւաքուեցան իրենց բանակատեղիին մէջ՝ Ամուրրացւոց երկրին մէջտեղը։ Անոնք բնաջինջ ըրին անոր ժողովուրդն ու երկիրը իբր թէ եղած չըլլային։ Անոնք իրենց առջեւը պատրաստուած կրակով եկան, յառաջ դէպի Եգիպտոս։ Անոնց գլխաւոր ոյժը կը բաղկանար Պուլասաթի (Փղշտացիք), Ծակարայ (Տիւկրեանք), Շակալաշա (Սագալացիք կամ Սիկիլեանք), Դանաունա (Դանայեան Յոյներ), Ուաշաշա (Կրետացիք կամ Կարեացիք) ըսուած ցեղերէն։ Այս ժողովուրդները միացած էին. անոնք իրենց ձեռքերը դրին երկրի վրայ մինչեւ աշխարհի շրջանակը։ Անոնց սիրտերը վստահ էին՝ եւ իրենք ծրագիրներով լեցուն»։ Մեծ պատմագէտ H. R. Hall կը խորհի թէ «Աշխարհի Շրջանակը» ըսելով՝ գրողը կը հասկնար Սուրիոյ հիւսիսային սահմանը, որ Տաւրոսի աղեղով կը կազմուի, երկնցած մինչեւ Տիգրիսի եւ Եփրատի վերին ընթացքները։

Այսպէս, երբ Ն. Ք. 1200-ի առեններն Հատտուսաս մայրաքաղաքով հաթեան մեծ կայսրութիւնը փշրուեցաւ, հիւսիս-արեւմուտքէն արշաւող Թրակա-փռիւգեան ցեղերու թափին տակ, տարակոյս չկայ թէ Մալաթիոյ թագաւորութիւնը վերապրեցաւ այս աղէտէն։ Այդ առթիւ, բուն Խատտիներէն եւ անոնց արենակից ցեղերէն նոր բազմութիւն մըն ալ, իրենց տեղերէն խախտած, դիմեցին դէպի արեւելք, Մելիտինէ եւ անոր յարակից Կատաւոնիա եւ Կոմմագինէ երկիրները, որով այս տեղերը խեթական տարրը ալ աւելի խտացաւ (ՆԱԽ. ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 141)։ Եգիպտոսի Ռամսէս Գ. փարաւոնի վերեւ մեր մէջբերած տեղեկագրէն կը տեսնենք որ հարաւային Անատոլուի մէջէն արշաւող բարբարոսաց արշաւանքին հեղեղն ալ չէ դպած Մելիտինէի շըր-

ջանակին ։

Հաթեան մեծ կայսրութեան ջարդ ու փշուր կտորուանքները վերապրեցան աստ եւ անդ, մասնաւորապէս Տաւրոսի եւ Անդիտաւրոսի ու Ամանոսի շղթաներուն ճառագայթած կեդրոնական հանգոյցին բոլորտիքը ։ Ապա, Պեղասգեան արշաւանաց հեղեղին թափն անցնելէ ետք, դարձեալ ժամանակի մը համար միացան հարաւային խետական կայսրութեան ձեւով, որ մէկ դարէ աւելի տեւեց (մինչեւ գրեթէ 1080 Ն. Ք.) ։ Ոմանք—Հոն [illegible] նակցային կայսրութեան բիւրեղացուցիչ տարրը Կասկաներ էին, եւ ուրիշներ՝ թէ Մուշկիներ էին ։ Երկուքն ալ ենթադրութիւններ են լոկ. միայն գիտենք թէ հին հաթեան մշակոյթը իր հիմնական գիծերով կը շարունակէր նորակազմ պետականութեան մէջ, եւ եթէ Կասկա, Մուշկի, Տուբալ, Հուրրի եւ այլ տարրեր եկան այս խտացած խետական զանգուածին մէջ բնակելու կամ իշխելու, իրենք այդ մշակոյթին ենթարկուեցան եւ հատեանացան ։

Այս հարաւային խետական կայսրութիւնն է թերեւս այն «Կիլիկեան Կայսրութիւնը», որ Սոլինոսի (Polyhistor) «Աշխարհագրութեան» համեմատ՝ կը պարփակէր մէկ կողմէն Լիւդիան ու Պամփիւլիան եւ միւս կողմէն կը տարածուէր մինչեւ Ասորիք ու հարաւային Հայաստան ։ Միայն թէ հին հաթեան կայսրութեան կեդրոնական եւ հիւսիս-արեւմտեան մասերը բռնած էին ո՛չ Փռիւգիացիք, իրենց համացեղ ուրիշ ժողովուրդներով միասին ։

«Ծովու ազգաց շարժման հետեւանօք», կ'ըսէ Տըլափորթ, «ԺԲ. դարու սկիզբէն քիչ մը վերջը Փոքր Ասիա գրաւուած կը տեսնուի Եւրոպայէն նոր եկած՝ յունական ու թրակիական ծագումէ այլազան ժողովուրդներով ։ Առաջին ժողովուրդը, որ կարեւոր պետութիւն մը կը կազմէ, Փռիւգիացիք են. անոնք հաստատուած են բարձրավանդակի արեւմտեան մասին մէջ մինչեւ Ալիւս գետ, ա՛յն երկրամասին մէջ, որ իրենց անունով Փռիւգիա կ'ըսուի դասական հեղինակներուն քով ։ Որոշ շրջան մը անոնք իրենց ազդեցութիւնը կը տարածեն աւելի արեւելք ալ, Կապադովկիոյ մէկ մասին վրայ... ։ Փռիւգիական խեցեղէններուն կը հանդիպինք մինչեւ Թուրխալ եւ Զիլէ՝ դէպի հիւսիս-արեւելք, մինչեւ Մալաթիա դէպի արեւելք եւ Ճարապլուս՝ դէպի հարաւ-արեւելք[1] ։ Այս վերջին երկու վայրերը բաժնուած են այն շրջանակէն, որ Խաթի կ'անուանուի Ասորեստանեայց կողմէն՝ ԺԲ. դարէ սկսեալ մինչեւ անոնց կցումը Ասորեստանի՝ Ը. դարու վախճանին ։ Այս ժամանակամիջոցին՝ Փռիւգիացիք Ասորեստանցւոց կողմէն կը յիշատակուին, Մուշկի անուան ներքեւ, որ Տիւանայի շրջանակին մէջ հաստատուած էր իբրեւ Հատեանց միաբանութեան պատկանող ժողովուրդ մը ։

«Խաթիներու աշխարհն է սոյն շրջանին՝ ամբողջութիւնն այն իշխա-

(1) Այս կերամիկան բուն փռիւգիակա՞ն է թէ Մուշկիներունը։ Պէտք է զայն որոշել։ Ե. Ս. Ք.։

նութեանց, որոնց գաւառները ատենօք հպատակած էին Մեծ Արքային, նոր կայսրութեան օրով: Ան կը տարածուի հիւսիսային կողմը գոնէ Թոխմա-Սուէն սկսեալ՝ ի հարաւ մինչեւ Որոնդէսի ակունքը եւ յարեւելս Եփրատէն սկսեալ՝ մինչեւ Տիւանա եւ Իվրիզ յարեւմուտս» (Delaporte, «Les Hittites», p. 315-6): Ուրեմն «Խատտի Աշխարհը» բոլորովին զատ եւ որոշ է Փռիւգիայէն: Հեղինակս սակայն չ'ըսեր թէ որո՞նք հաստատուած են Ալիւսէն արեւելք եւ Թոխմա-Սուէն ու Մելիտինէէն հիւսիս: Այս խիստ կարեւոր խնդիրը յետոյ առանձինն նկատի պիտի առնենք:

«Կարքեմիշի թագաւորութիւնն է որ ամենէն աւելի եւ առանձնապէս կը յիշուի Խատտի անուան ներքեւ: Միւս կողմէն «Մեծ Խատտի» աշխարհն աւելի ըլլալով կը բովանդակէ հետեւեալ երկիրները.— Մելիտ (Մալաթիա), Դուքալ՝ Կոմանա քաղաքով, Խիլակկու՝ որ Արգէոսի գաւառն է, Տիւանայի չուրջ Մուշկիներու երկիրը, զոր պէտք չէ շփոթել նոյնանուն երկրին հետ, որ կը գտնուէր Տիգրիսի աղբերականց վրայ. Գուրգում, որուն գլխաւոր քաղաքն է Մարգասի (Մարաշ), Կուէ (դաշտային Կիլիկիա), Շամալ (այժմ Զէնճիրլի կեդրոնով), Խատտինա (Հալէպ, Համա)» (Delaporte. «Les Hittites», p. 316):

«Ազգաբնակչութեան կողմանէ Քետացիք (Hittites) կոչումը այսուհետեւ ցեղաբանական արժէք չունի, հապա միմիայն աշխարհագրական արժէք մը: Մեր պատմական տեսութեան մէջ զայն կը պահպանենք, ինչու որ Ասորեստանեայց եւ Ուրարտացւոց արձանագրութիւնները զայն կը գործածեն, ինչպէս որ Սուրբ Գիրքն ալ այդպէս կ'ընէ: Ուրիշ ամէն տեղ այս «հատեանացած» ցեղերը Նոր-Հատեանք (Neo-Hittites) անունով պիտի կոչենք, զանոնք տարորոշելու համար փոքր-ասիական (Asiatique) նախահաթեաններէն եւ հնդեւրոպական հաթեաններէն, որոնց մասին խօսուեցաւ մեր գիրքի նախընթաց մասերուն մէջ» (Նոյն, անդ):

Հեղինակին այս վերջին պարբերութեան մէջ «աշխարհագրական» բառին տեղ նախընտրելի էր «մշակութային» (cultural) բառը գործածել, որովհետեւ պատմութեան այս «Նոր-Հատեան» ըսուած շրջանը յատկանշական եւ ընդհանուր մշակոյթ մը ունի, որուն գլխաւոր յայտարարներն են «Հատեան» (Hittites) ըսուած մեհենագիրներով (Hieroglyphics) ընկերացած կամ երբեմն առանց անոնց ալ քանդակեալ պատկերներու մասնաւոր ոճ մը եւ այս տեսակ յիշատակարաններ, ուր որ գտնուին. այդ տարածութիւնն է նաեւ աշխարհագրական մարզը, որ երբ «Խատտի» կը յատկանշուի, գոնէ մինչեւ Ն. Ք. 707 թուականը: (Այս «Հատեան» յիշատակարաններու գտնուած վայրերու քարտէսին համար տես՝ Սիւրմէեան, ՍՈՒՐԻԱ, էջ 570, որ Տըլափորթի գրքին մէկ քարտէսին պզտիկցուած արտատպութիւնն է):

«Յիշեալ շրջանակի սուրիական մասին մէջ, ինչպէս եւ Մելիտինէ եւ ուրիշ տեղեր կը մնան Հուրրիներ, որոնք սակայն արդէն «հատեանացած»

էին, նաեւ երկար ժամանակէ ի վեր այս երկիրներուն մէջ հաստատուած Խեթացիներուն վրայ եկած աւելցած են վերոյիշեալ արշաւանաց առջեւէն փախուստ տուած Խեթացիներ եւ Փոքր Ասիոյ բարձրաւանդակի ուրիշ ժողովուրդներ» (Delaporte, նոյն էջ 416)։

Ինչպէս հեղինակը կը յայտնէ, Նոր Հաթեանց շրջանէն մեզի հասած չէ հաթեան լեզուով գրուած ոեւէ բեւեռագիր պատճէն (document)։ Թերեւս ապագայ պեղումներ դեռ ի յայտ կը բերեն անոնցմէ. բայց շատ հաւանական ալ չէ, որովհետեւ Կարքեմիշի աւերակներէն բնաւ այդպիսիներ չեն պեղուած։ Ընդհակառակն մեհենագիրներու գործածութիւնը ոչ միայն չէ թողուած, այլ զարմանալի կերպով աճած եւ ընդհանրացած է, եւ այդ ոճով բազմաթիւ արձանագրութեանց կը հանդիպինք Նոր Հաթեանց աշխարհին բոլոր մասերուն մէջ (նոյն, անդ)։

««Նոր Հաթեանց պատմութեան շրջանին (1200—700 Ն. Ք.) անդադարէն եկող Արամէացիք հետզհետէ կը լեցնեն հիւսիսային Սուրիան (Կոմմագինէն ալ միասին առած) եւ վերջ ի վերջոյ հոն տեղերը տիրապետող տարրը սեմականը կ'ըլլայ։ Բայց Տաւրոսը, մասամբ նաեւ Ամանոսը, զօրաւոր պատուարներ են եւ արգելք՝ սեմական տարրի տարածման առջեւ. եւ այս պատուարներու ետին խեթացի տարրը գրեթէ անաղարտ կը մնայ, յատկապէս Մելիտինէի ու Կատաւոնիոյ մէջ, մեծաւ մասամբ նաեւ դաշտային եւ ապառաժուտ Կիլիկիա։

Այսպէս, «Ծովու Ազգերու» արշաւանքէն քիչ յետոյ, Փոքր Ասիոյ հարաւ-արեւելեան լեռնային մասերուն մէջ Խաթթիներ վերազարթում մը կ'ունենան, եւ Փռիւգիա կը ստիպուի ինքզինք ամփոփել Ալիւս գետի արեւմտեան բուն անդին, յատկապէս Սանգարիոս գետի աւազանին մէջ։ Արշաւող ժողովուրդներէն՝ Մուշկիներ, Կասկաներ, Թուբալցիներ եւ ուրիշ ոմանք կ'իյնան նոր-խաթթիական քաղաքակրթութեան ազդեցութեան տակ եւ կ'ընդունուին նորակազմ «Մեծ Խաթթի» դաշնակցային պետութեան մէջ իբր ինքնավար անդամներ։

Փրոֆ. Սէյս կը կարծէր թէ նոր-հաթեան կամ կասկեան պետութեան կեդրոնն էր Իկոնիոնի արեւելեան կողմն այժմ Էմիր-Ղազի կոչուած աւանին տեղը։ Բայց մեր կարծիքով՝ այս վայրը չափազանց հեռու է դէպի արեւմուտք։ Այդ կեդրոնն էր հաւանօրէն, գոնէ իբր կրօնական ընդհանուր հաւաքավայր, Կատաւոնիոյ Կոմանան (արդի Շար աւանին տեղը՝ Հաճընէն դէպի արեւելք)։ Այսպէս խորհելու կը մղեն մեզ՝ պատմական այլեւայլ մանր յիշատակութիւններէն եւ աշխարհագրական նկատումներէ զատ, «Հաթեան» կոչուած յուշարձաններու տեղագրական բաշխումը, որուն ամենախիտ մասը կը գտնուի Կոմանայի մերձակայ բոլորտիքը։ Նաեւ Կատաւոնիա անունն իսկ կրնայ սոր ապացոյց ըլլալ, որովհետեւ ինչպէս Ենսէն եւ ուրիշներ շատոնց մատնանշած են՝ այդ անունը հաւանօրէն Խաթթի կամ Խաթա անունէն ածանցուած է։

*Դժբախտաբար այս հարստութեան թագաւորաց անունները մեծաւ մասամբ անծանօթ կը մնան տակաւին: Միայն երկու թագաւորներուն անունները կրնանք գիտնալ՝ իրենցմէ մնացած կնիքներու վրայ սեպագիր վերտառութենէն, որոնց կ՚ընկերանան հաթեան մեհենագիրներ ալ. ասոնք են* Տարգոնթիմոս *կամ* Թարգումավա *եւ* Ինդիլիմմա: *Այս երկու կնիքներն իրենց երկլեզուեան ոճով, ձեւով ու բովանդակութեամբ կը յիշեցնեն Սուբբիլուլիումայէ մինչեւ Դուտխալիյաս Ե. նախկին հաթեան մեծ արքաներու կնիքները: Առաջին կնիքին տիրոջը կը պատկանի հաւանօրէն նաեւ Կեսարիոյ մօտ ժայռի մը երեսը քանդակուած պատկերն ու սեպագիր արձանագրութիւնը, յորում* Տարգոնդիմոս *անուն թագաւորի մը յաղթանակը կը նկարագրուի* Արտէս *անուն փռիւգիացի կամ մոսոգցի իշխանի մը վրայ* (Conder, «Hittites», p. 41-2)։

Տարգուդիմմէ *ինքզինք* «Մեդան *քաղաքի երկրին թագաւոր» կ՚անուանէ. եւ այս* Մեդան *անշուշտ Կեսարիոյ մօտ* Matiane *գաւառն է: Ուրեմն իր մայրաքաղաքը Կեսարիայէն հեռու չէր:* Ինդիլիմմա *ինքզինք* «Շիրդանուի *որդի եւ* Իշխարայի *սպասաւոր» կ՚անուանէ. եւ* Իշխարա *նոյն է* Իշտար *դիցուհիին հետ, թերեւս Հաթեանց Արեւու դիցուհին եւ Փոքր Ասիոյ մայր-աստուածուհիին՝* Մայի *կամ* Կիւբիլէի *հետ նոյնացուած է: Ինդիլիմմայի կնիքը Կիլիկիոյ մէջ գտնուած է* (F. Hommel, «Grandriss», p. 49-50), *ուր իր մայրաքաղաքը հաւանօրէն Կատաւոնիոյ Կոմանան էր*[1]:

*Այս հարստութեան թագաւորները տակաւին կը պահէին «Խեթացւոց մեծ թագաւոր» տիտղոսը, եւ կը վայելէին տեսակ մը գերիշխանութիւն միւս խեթացի կամ դաշնակից թագաւորներուն վրայ: Ք. Ա. ԺԲ. դարուն, սոյն նոր հաթեան թագաւորութիւնն այնչափ զօրաւոր էր որ Խեթացիք վերջին արշաւանք մըն ալ ըրին Բաբելոնի վրայ, ուր այն ատեն կ՚իշխէր Իսինեան հարստութենէն Նաբուքոդոնոսոր Ա.* (1132—1101 *Ն. Ք.*)*: Իսկապէս Խեթացիք գրաւեցին ալ Բաբելոն մայրաքաղաքը եւ* 13 *օր պահեցին իրենց ձեռքը: Բայց ապա Նաբուքոդոնոսոր յաղթեց անոնց եւ հալածեց մինչեւ հիւսիսային Սուրիա: Ասորեստանի Թագլադբալասար Ա. թագաւորն ալ Ն. Ք.* 1110*-ի ատենները սաստիկ շփումներ ունեցաւ այս նոր հաթեան կայսրութեան հետ եւ վերջնապէս զայն ստիպեց զիջումներ ընելու, ինչպէս յետոյ պիտի տեսնենք: Կը թուի թէ այդ ժամանակէն ոչ շատ ետքը՝* Լիւկիական *արշաւանքի ատեն՝ փշրուեցաւ այս նոր խեթական կայսրութիւնն ալ:*

*Այնուհետեւ անջատ-անջատ խեթական թագաւորութիւններ միայն կային*, Մալաթիա, Կումմուխ, Մարաշ, Կարքեմիշ, Խատտինա *կամ* Պատինա,

(1) *Փրոֆ. Սէյս՝ Պոքի, Պուլղարմատէնի եւ մանաւանդ Իվրիզի հռչակաւոր «Հաթեան» յիշատակարաններուն վրայ նկարուած թագաւորի մը մեհենագիրներով նշանակուած անունը* Այմգալաս *կամ* Այմինփաս *կը կարդար, եւ այս նախկին ժամանակին իշխած կը համարէր: Բայց նորագոյն հաթագէտները Ուրբալաա կը կարդան այդ անունը եւ Թագլաթփալասար Գ.ի օրով իշխած Տուհանայի թագաւոր* Ուրպալիային *հետ կը նոյնացնեն:*

Համաթ եւ այլ կեդրոններով, որոնք թէեւ երբեմն արտաքին թշնամիին դէմ միանալով զինակցութիւններ կը կազմէին, սակայն ընդհանրապէս զատ-զատ կը գործէին: Խատտինա թէ՛ իր երկրանունովը եւ թէ՛ թագաւորներէն ոմանց անուններով կենդանի կը պահէր հին խաթի պետութեան փառաւոր յիշատակները. բայց Կարքեմիշ իր հինէն ի վեր զարգացած քաղաքակրթութեամբ ու հարստութեամբ սովորաբար առաջինը եւ բո՛ւն «խաթի» թագաւորութիւնը կը նկատուէր հիւսիսային Սուրիոյ խեթական իշխանութեանց մէջ: Սակայն ան ալ հետզհետէ կորսնցնելով իր մարտական ոյժը, աւելի առեւտըրական ժողովուրդի մը ոգին ստացաւ: Այս թագաւորութիւնները շարունակեցին իրենց խեթական կենցաղն ու աւանդութիւնները, եւ զարգացուցին խիստ բնորոշ մշակոյթ մը տակաւին երկու դարէ աւելի, որ ատեն որ Ասորեստան տկար եւ անկեալ վիճակ մը ունէր: Բայց Ք. Ա. Թ. դարուն Ասորեստանի վերազարթումէն ետք, անոնք մէկ կողմէ աստիճանաբար արամէացան, իսկ միւս կողմէ որոնք որ կը յամառէին իրենց տոհմային յատկանիշները պահպանելու վրայ, Ասորեստանի հետ շարունակ կատաղաբար մարտնչելու ստիպուած էին. որով հուսկ ուրեմն ընկճեցան անոր ահեղ ու անգութ զէնքերուն առջեւ: Արեւելեան Տաւրոսի մարզին մէջ ամենավերջին խետական իշխանութիւններն էին Գորգում կամ Մարքասի (Մարաշ), Կումմուխ (Սամոսատ), Կարքեմիշ եւ Մալաթիա, զորս բոլորն ալ Սարգոն Բ. կործանեց Ն. Ք. 712-ի եւ 707-ի մէջտեղ:

***

Մալաթիայի աշխարհագրական դիրքն այնպէս է որ անկարելի է արեւմուտքէն արեւելք կամ հիւսիսէն հարաւ շարժող մեծ արշաւախումբի մը զայն մէկդի ձգելով անցնիլը: Ուստի Մուշկիները, որ Ք. Ա. 1170-ի ատենները Կեսարիոյ մօտերէն մեկնելով արշաւած են արեւմտեան Տիգրիսի աւազանը, նոյնպէս Կասկաներ՝ որ գրեթէ միեւնոյն ժամանակ վերին Ալիսի աւազանէն մեկնելով Եփրատացւոց երկիրն արշաւած են, անպատճառ անցած պիտի ըլլան Մալաթիոյ վրայէն, որ այս խուժանային արշաւանաց երեսէն սաստկապէս վնասուած, կ'երեւի թէ իր ոյժը բաւական կորսնցուց եւ չկրցաւ վերակազմուող խաթիական պետութեան գլուխը կանգնիլ:

Ուստի երբ Ն. Ք. 1114-ին՝ Մալաթիոյ յիշատակութիւնը կ'ըլլայ, զայն կը գտնենք իբր մաս Խանիգալբատի պետութեան. որովհետեւ Ասորեստանի Թագլաթփալասար Ա. թագաւորը իր այդ տարուան վերաբերեալ արձանագրութեան մէջ «Խանիգալբատի երկրին Մելիդիա քաղաքը» կը գրէ (Annal,s V. 34):

Թագլաթփալասար Ա. իր աւելի վերջը գրած արձանագրութեանց մէջ սակայն կը յիշէ թէ «դարձաւ դէպի հիւսիս, նուաճեց Խաթի երկիրը, հաւանօրէն Կարքեմիշ, անոր թագաւոր Իլի-Տեշուբի վրայ տուրք դրաւ եղեւի-

*նէ գերաններ, ու Տաւրոսի վրայէն անցաւ Մեծ Խատտի Միլիտիա քաղաքի դէմ եւ ընդունեցաւ Ալուի (կամ Լալլուի) ··· տուրքը» (Խաչատրեան, ՀԱՅԱՍՏ. ՍԵՊ. ՇՐՋ. ՊԱՏՄ., էջ 9, ծան. 1, մէջբերում Ֆորրերէն,* Reallexi Conder, Assyriologie, I. 28 )*: Կը նշանակէ որ այս ատեն տակաւին կար Փոքր Ասիոյ մէջ «Մեծ Խատտի» բսուած պետութիւն մը եւ Միլիտիա ալ անոր աւատական մասերէն մէկը կը կազմէր: Արդեօք սոյն միջոցին քաղաքական մեծ փոփոխութի՞ւն մը տեղի ունեցեր էր: Շատ հաւանական է:*

*Բայց Ասորեստանեայց արձանագրութիւններուն մէջ բացորոշ յիշուած այդ երկու բարբարոսական արշաւանքները (Մուշկիներու եւ Կասկաներու) մինակը չէին որ անցած պիտի ըլլան Մելիտինէի վրայէն: Ժողովուրդներու ուրիշ տեղափոխութիւններ ալ կան, որոնք անոր վրայէն անցած են եւ անոր ճակատագրին վրայ ազդած: Այսպէս, նախ կը գտնենք շարք մը ցեղեր, որոնք ոչ թէ Տեշուբը, հապա* Տարխու (*հայկ.* Տորք) *կամ* Տարխունտա, *որ պատերազմի կամ յաղթութեան աստուած էր, թերեւս նաեւ գիտութեան եւ արուեստից, կը պաշտէին իբրեւ իրենց պաշտպան աստուածը եւ անոր անունով կը կազմէին իրենց անձի յատուկ անունները* (Տարխունտարաբի, Տարկուտիմմէ, Տարխուլարա, Տարխունազի, *եւն.*[1])*: Կան նաեւ* Տարխունա, Տարխանաբէ, Տարխիգամա, Տարգումա *եւ նման տեղւոյ անուններ, որոնց կը հանդիպինք արեւմտեան Տիգրիսի գաւառներուն, այսինքն՝ նախկին Խանիգալբատի երկրին մէջ: «Տարխունեան» բսուած այս ցեղերու շարքը, որ Լիւկիայէն եւ Կարիայէն սկսեալ Լիկայոնիա, Կիլիկիա, Գուրգում (Մարաշ) եւ Մալաթիա եւ անկէ անդին ալ կը տարածուէր, Նիւգօ Վինկլէրի եւ այլ պատմագիտաց կարծիքով՝ ամբողջ Փոքր Ասիան բռնող* Լիւկիական *արշաւանքին մնացորդն է: Ըստ Լէյման-Հաուպտի՝ Լիւկիական այս արշաւանքին ուրիշ հետքերն ալ կը գտնենք մինչեւ Մելիտինէ եւ անկէ անդի երկիրներուն մէջ իբրեւ տեղանուններ, որոնք* Պատարա *քաղաքանուան այլեւայլ ձեւաւորումներն են:*

*Ապա, եթէ ուղիղ է Լէյման-Հաուպտի, Վայդնէրի, Խաչատրեանի եւ այլոց պնդումը թէ* Ուրուարտիները (*բուն* Ուրարտացւոց *նախահայրերը*) *արեւմուտքէն գաղթած եկած են արեւմտեան Տիգրիսի աւազանը, անոնք ալ Ն. Ք.* 1050 *թուականի ատենները անցած պիտի ըլլան Մալաթիոյ եւ Խարբերդի վրայէն: Ըստ իմ կարծեացս՝* Զամուա *կամ* Զամբի *ժողովուրդն ալ, որոնց հետ Ասուրնազիրպալ Բ.* 833—860 *Ն. Ք. կը պատերազմի Զագրոս լերանց ձո-*

(1) *Ասկէ զատ,* Գիբպա *կամ* Գալբա *անուն նոր աստուած մըն ալ կ՚երեւի յիշեալ տեղերէս ոմանց թագաւորներուն անուանց կազմութեան մէջ. ինչպէս՝* Գիբպարունդա *անունը, զոր կը կրեն Սալմանասար Գ.ի ժամանակակից թագաւորները Խատտինայի եւ Գուրգումի. իսկ վերջին անունը Հատեան մեհենագիրներուն մէջ* Գալբարունդա *կը կարդացուի: Ըստ ոմանց՝ Վանեան արձանագրութեանց մէջ Մալաթիոյ թագաւորներուն տրուած* Խիտերուադա *կամ* Խիլարուադա *անունն ալ մէկ տարբերակն է* Գիբպարունդա *կամ* Գալբարունդա *անուան:*

բերուն մէջ, արեւմտեան ծագում ունին եւ Թագլաթփալասար Ա.ի մահէն քիչ ետք եւ Ուրուարտիներունաոջեւէն գաղթած պիտի ըլլան, եւ անցած՝ Մալաթիոյ վրայէն: Այսպէս, Մելիտինէի թագաւորութիւնը Ք. Ա. Ժ. դարուն, թէեւ զերծ էր Ասորեստանեայց հարստահարութիւններէն, սակայն «խախտած ազգերուն ուրականին» պատճառաւ, համեմատաբար տկար եւ ամուլ շրջան մը կը բոլորէր:

Բայց վերջապէս Ք. Ա. Թ. դարու առաջին կէսին նորէն կու գայ Մելիտիայի հզօր թագաւոր մը, որ ոչ միայն կատարելապէս անկախ իշխող մըն էր, այլ նաեւ բաւական հարստութիւն եւ խելք ունէր Մալդիյայի հին պալատմեհեանը փառաւորապէս վերաշինելու: Ան անոր մէջ կանգնեց իր կենդանագիր արձանը՝ բնականէն աւելի խոշոր, դրուած հսկայ պատուանդանի մը վրայ: Դժբախտաբար իր անունը դեռ չենք գիտեր. բայց իր արդուզարդէն եւ կրած տարազէն, նաեւ քանդակագործութեանը վրայ յայտնապէս տեսնուող ասորեստանեայ արուեստի ու ոճի խոր ազդեցութենէն, մասնագէտք սա համոզման եկած են որ այդ քանդակը Ք. Ա. Թ. դարուն կը պատկանի եւ թերեւս անոր առաջին կէսին:

Այսպէս կը հասնինք Մալաթիոյ պատմութեան բուն Ասորեստանեայց շրջանին, յորում անընդմիջաբար զիրար յաջորդող Մալաթիոյ տասը թագաւորներու անունները մեզի յայտնի են Նինուէի եւ Վանի ինքնակալներուն արձանագրութիւններէն: Բայց անոնց պատմութիւնը յարմար է տալ առանձին գլխու մը մէջ:

## Դ.

# ՄԱԼԱԹԻԱ ԲՆԻԿ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՆԵՐՔԵՒ

Թագլաթփալասար Ա.ի օրով Մալաթիայէ դէպի Անտիտաւրոս դեռ Տաբալուներ չէին բնակեր, այլ ուրիշ անուններով ժողովուրդներ: Ասորեստանի այս թագաւորը երեք մեծ արշաւանքներով Նայիրին հնազանդութեան բերելէ ետք, իրեն համար դէպի արեւմուտք ճամբան բացուած գտաւ, դէպի Փոքր Ասիոյ կեդրոնը, Խեթացւոց վաղեմի երկիրը, ուր տակաւին կար եթէ ոչ միաձոյլ զօրաւոր կայսրութիւն մը, գէթ առաւել կամ նուազ զգալի միութեամբ կեդրոնական կառավարութիւն մը, որուն մէջ դաշնակցային կապակցութեան կու գային ինքնավար ցեղեր եւ տեղական մեծ կամ փոքր թագաւորութիւններ: Թագլաթփալասար նախ քալեց (1114–ին Ն. Ք.) Խանիգալբատ ըսուած երկրին վրայ, որուն մայրաքաղաքն էր Մելիդիա: Բայց Մելիդիացիք չհա–

մարձակելով իրեն դիմադրել՝ անմիջապէս հպատակեցան․ որով Ասորեստանի թագաւորը չգրաւ իրենց քաղաքին, այլ պատանդներ միայն առաւ եւ երկրին վրայ թեթեւ հարկ մը դնելով մեկնեցաւ։

Հետաքրքրական է այս մասին Թագլաթփալասարի իր Տարեգրութեանց մէջ արձանագրած հետեւեալ տողերը կարդալ․— «Միեւնոյն ռազմարշաւի միջոցին խաղացի կառաղի եւ անհնազանդ Խանիգալբատի երկրին մէջ Մելիդիա քաղաքին դէմ։ Պատերազմիս հզօր յարձակումէն վախցան եւ ոտքերուս փարեցան։ Անոնց գթացի։ Նոյնիսկ քաղաքը չնուաճեցի․ անոնցմէ պատանդներ առի։ Հոմեր մը կապար իբր տուրք պարտադրեցի անոնց տարուէ տարի անընդհատ վճարելու» (Annals, Vol. V. lines 33-41)։ Այստեղ «կապար» ըսուածը հաւանօրէն կապարախառն արծաթ է, զոր կ'երեւի թէ Մելիտինէի թագաւորները կը ստանային Լուսաթառիճի (արդի Քեպան Մատէնի) արծաթահանքերէն։ Ասկէ կը հետեւի թէ Մելիտինէի թագաւորը Եփրատէ արեւելեան հողի վրայ ալ կ'իշխէր։ Դժբախտաբար Թագլաթփալասար Մելիդիայի թագաւորին անունը չի տար, եւ իր պատմածը մինչեւ այն տպաւորութիւնը կը թողու թէ Մելիդիա այս միջոցին թագաւոր չունէր եւ քաղաքացիք իբր հանրապետութիւն կամ ազնուապետութիւն ինքզինքնին կը կառավարէին։

Թագլաթփալասար Ա․ իր յաջորդ արշաւանքին կ'աւերէ Եփրատէ արեւելք, Միջագետքի մէջ, Արամէացի Ախլամիներու երկիրը մինչեւ «հանդէպ Կարքեմիշ քաղաքի, որ է յերկրին Խատտի»։ Ան չյարձակեցաւ այս չափազանց զօրաւոր քաղաքին վրայ՝ մինչեւ անգամ հետեւեալ տարին երբ յառաջացաւ մինչեւ Միջերկրական ծով։ Անկէ ետքն է որ — հաւանօրէն 1112–ին Ն․ Ք․ — ան յարձակեցաւ Մելիտինէէն անդին Մուզրի երկրին վրայ, որուն հետ մէկուկէս դար առաջ Սալմանասար Ա․ կռուած էր։

Թագլաթփալասար Մալաթիայէ ճամբայ ելլելով, արշաւեց Էլամունի, Տալա եւ Խարուսա լեռներուն մէջտեղէն․ ասոնց առաջինն այժմու Էլմենճիք գիւղին ետեւը Պալթանտաղն է հաւանօրէն, երկրորդը՝ Տալանտա կամ Տարենտէ աւանէն անդին Հեղանլը տաղ, իսկ երրորդը՝ Պինպողան լեռնաշղթան։ Ուրեմն Ասորեստանցին արշաւած է Արկայի, Տարենտէի եւ Փալանկայի ճամբով, ուր վերջինին մօտ՝ Արսլան-Թաշ անուն «հատեան» կոթողը կայ․ եւ նպատակն էր ուղղակի Ալպուսթանի դաշտը իջնել, Մուզրիներու կեդրոնին վրայ։ Ասոնք հաւանօրէն արդի Եափալաք գիւղերուն մօտ ճակատեցան իրեն հետ, բայց յաղթուեցան։ Այս միջոցին Մուզրիներու օգնութեան փութացած էին դրացի Քումանիները, զորս ետ մղեց Թագլաթփալասար, եւ ապա Մուզրիներու Արինի բերդաքաղաքը պաշարեց Այսա լերան ստորոտը․ բայց որովհետեւ քաղաքացիք անձնատուր եղան, Ասորեստանի թագաւորը պատանդներ եւ ընծաներ առաւ անոնցմէ եւ տարեկան տուրք մը պարտադրելով մեկնեցաւ։ Այսա լեռը թերեւս Աթլաս տաղ է, Պինպողայի մէկ ոստը, իսկ Արինի՝ արդի Եարբուզը (Հինն Արարիսոս), որուն մօտ Իզկին անուն տեղն ալ արձանագր-

ըեալ հատեան հսկայ կոթող մը կայ։

Կ՚երեւի թէ Ասորեստանի թագաւորը այսչափով գոհացած պիտի վերադառնար Մալաթիոյ ճամբով. բայց Քումանիները, որոնց կեդրոնն ըլլալ կը թուի Կոմանա Կապադովկիոյ (այժմու Շար Հաճնոյ մօտ), դէպի հիւսիսարեւելք Պինպողայի բանուկ մէկ կիրճէն եկած էին 20·000 զօրքով, Թագլաթփալասարի նահանջի գիծը կտրելու համար եւ հասած՝ մինչեւ Տալա լեռը Տերենտէի մօտ։ Թագլաթփալասար ստիպուեցաւ անոնց հետ շատ արիւնահեղ ճակատամարտ մը մղել հոն։ Պարտուած Քումանիներէն մէկ մասը վերստին կը կազմակերպուի Խառուսա լերան վրայ, բայց անոնք ալ ընաջինջ կ՚ըլլան։ Մէկ մասն ալ աւելի հեռուն ամրացած էին Խունուսա (թերեւս արդի Կէօքսուն) բերդաքաղաքին մէջ. բայց Ասորեստանցին հասնելով՝ կ՚առնէ բերդը եւ կը քանդէ, մէջիններն ալ առանց գթութեան կը ջարդէ։

Անկէ ետք, հաւանօրէն Ն. Ք. 1111-ին, Ասորեստանի թագաւորը նոր արշաւանքով մը, որովհետեւ այս անգամ իր զինուորներուն հետ մարտակառքերն առնելը կը յիշէ, բայց ոչ թէ Մալաթիոյ վրայէն, այլ Կոմմագինէէն ուղղակի Ալպուսթան հասնող «Գանկլըեոյու» ճամբայով քալեց Մուզրիներու երկրին վրայ եւ ապա Եարբուզի եւ Կէօքսունի վրայէն դէպի Սիս տանող մեծ պողոտան ի վար խաղաց Քումանիներու Կիպշունա մայրաքաղաքին վրայ, որ Մասփերոյի, Հոլի, Սէյսի եւ այլ պատմագիտաց կարծիքով՝ դասական ժամանակներու Կապեսոսն է, Կիլիկիոյ քաղաք մը, Սիսի եւ Ֆեքէի (Վահկայի) մէջտեղ։ Ասոր վրայ ամբողջ Քումանիք ստիպուեցան հպատակութիւն առաջարկել յաղթականին։ Տարակոյս չկայ թէ Կատաւոնիոյ եւ Պոնտոսի Կոմանա անուն երկու հռչակաւոր սրբավայր քաղաքներն այս Քումանի ժողովուրդին յիշատակը յաւերժացուցած են։ Տես Maspero, Struggle of the Nations, p. 656· Hall, Ancient History of the Near East, p. 388)։

Թագլաթփալասար Ա. իր իշխանութեան շարունակութեան մէջ շատ անգամներ կը պատերազմի Խատտի (հատեան) թագաւորութեանց դէմ. բայց իր այդ տարիներուն արձանագրութիւններն այնքան դէշ կերպով պահպանուած են որ դէպքերու յաջորդականութիւնը որոշել անկարելի է։ Այսուամենայնիւ, ինչպէս առաջ յիշեցինք, Ամուրրուի (Փիւնիկէի) վրայ մէկ արշաւանքէ վերադարձին՝ «Մեծ Խատտիի թագաւոր» Իլի-Տեշուբի վրայ հարկեր դրաւ, որուն մէկ մասը ատաղձի ծառերէ կը բաղկանար։ Բայց խնդիր է թէ ո՞վ էր «Մեծ Խատտիի» այս թագաւորը. արդեօ՞ք Մելիտինէի, Կարքեմիշի թէ Խատտինայի։ Մելիտինէինը չէր կրնար ըլլալ, որովհետեւ Ասորեստանի թագաւորը Մալաթիոյ թագաւորն առանձնապէս կը յիշէ Ալու կամ Լալլու անունով։ Խատտինան անկարելի չէ, նկատի ունենալով որ պահանջուած տուրքի մաս կազմող փայտեղէն ատաղձը շատ հաւանօրէն Ամանոս լեռներէն պիտի կտրուէր. բայց Ասորեստանցին Խատտինայի թագաւորն ալ առանձինն կը յիշէ Լուբառնա անունով։ Հետեւաբար, պատմագէտներ ամէն բան հաշուի առնելով, ամենէն հաւանականը կը համարին Կարքեմիշի թագաւորն ըլլալը։

*Ուրեմն Կարքեմիշի թագաւորը գոնէ բարոյապէս կը ճանչցուէր իբր Խաթթի թագաւորներուն գերագահը:*

*Ստուգիւ Թագլաթփալասար Ա.ի վերջին տարիներուն Խաթթիները վերստին զօրանալու վրայ էին. որով Մալաթիա քաղաքն ալ այնուհետեւ Խանիգալբատի միւս իշխանութիւններուն հետ Մեծ Խաթթիի դաշնակցութեան մաս մը կը կազմէ: Թագլաթփալասարի մահէն յետոյ, Նոր–Հաթեաններն իրենց դաշնակցային միութիւնը դարձեալ ամրապնդած ըլլալով, Ասորեստանցիները պատերազմի մէջ կը ջախջախուին Կարքեմիշէն ոչ շատ հեռու տեղ մը — Ն. Ք. 1100 թուականի առենները —: Ապա մօտաւորապէս 150 տարի, Ասորեստան համեմատաբար տկար վիճակի մէջ էր, որու միջոցին իր արձանագրութիւնները գրեթէ լուռ են: Հարկատուներն իրենց վրայէն կը թօթափեն անոր լուծը, քանի որ կը տեսնեն թէ կրնան զայս ընել առանց վախնալու որ պատիժ պիտի կրեն: Այսպէս, Խաթթի տէրութիւններ, ընդ որս նաեւ Մելիդիա, վերստին իրենց կատարեալ անկախութեան տէր եղած՝ հանդիստ կը վայելեն եւ պատեհութիւն ունին իրենց առանձնայատուկ ցեղային մշակոյթը զարգացնելու, հոյակապ շէնքեր շինելու եւ մեհենագիր արձանագրութիւններով քանդակազարդ յիշատակարաններ կանգնելու՝ Մալաթիա, Կիւրին եւ շրջակայքը, Ալպիսթան, Մարաշ եւ այլ բազում տեղեր:*

*Տեսանք թէ «Մեծ Խաթթի» աշխարհը Թագլաթփալասար Ա.ի օրով կը բովանդակէր բազմաթիւ երկիրներ, եւ թէ Մելիդ ալ Խանիգալբատի միւս երկիրներուն հետ «Մեծ Խաթթի» դաշնակցային միութեան յարեցաւ: Սակայն հետագայ երկու դարերու լռութեան միջոցին՝ ասոնք հետզհետէ կը զատուին իրարմէ իբր առանձին թագաւորութիւններ, ինչպէս որոշ կը տեսնենք Ասուրպանիպալ Բ.ի եւ Սալմանասար Գ.ի արձանագրութիւններէն: Բայց միւս կողմէն, վանեան արձանագրութիւններէն կը տեսնենք որ Տաւրոսէն հիւսիս «Խաթթիի մեծ թագաւոր» ըլլալու պատիւը վերջապէս Մալաթիոյ թագաւորին կը մնայ:*

*Ասուրնազիրպալ Բ. 882–ին Ն. Ք. Վերին Տիգրիսի աւազանին մէջ Նայիրիի իշխանութիւնները հնազանդութեան բերելէ ետք, դէպի արեւմուտք կ՚ուղղուի: Անցնելով* Բուլեանի *(արդի* Բեյլխան*) քաղաքին կիրճերէն, որ Հանձիթի ծովակին մօտերն էր, եւ* Լուֆիա *գետէն (որ հաւանօրէն Խարբերդի դաշտին* Խարին *գետակն է), յառաջացաւ մինչեւ* Արտուպա *քաղաքը, որուն տեղը թերեւս կը նշանակուի արդի* Արտուֆ *գիւղով Եփրատի վրայ: Հոս նա ստացաւ տուրքերը* Զալլայի *երկրին (այժմ Բար–զալօ՝ Կարկառի մօտերն), որուն Արամէացի իշխանն էր Եախիրիի որդի Ախիրամու, Խետացւոց երկրի իշխաններէն «Բախեանիի որդւոյն» եւ* Խանիգալբատի *երկրի թագաւորներուն, որոնց մէջ այս առեն ամենագլխաւորն էր Մելիտինէինը: Տուրքերը կը բաղկանային արծաթէ, ոսկիէ, կապարէ, պղինձի թիթեղներէ, արջառէ, խաշինքէ ու ձիերէ: Այսպէս Ասորեստանի թագաւորը կրցաւ իր անունը դնել Մելիդի վրայ. բայց խարուսիկ էր երեւոյթը: Ասիկա առաջին եւ վերջին անգա–*

մըն էր որ Ասուրնազիրպալ Մալաթիոյ մօտեցաւ. դժբախտաբար անոր թագաւորին անունը չի տար։

Վրայէն քառորդ դար կ'անցնի. Ասուրնազիրպալի որդին ու յաջորդը Սալմանասար Գ. 857-ին Ն. Ք. արեւմտեան Միջագետքի եւ Խուսա (Մեծ Ծոփք) ու Ենզիտէ (Հանձիթ) երկիրներուն նուաճումէն ետք, բայց Արածանի գետէն հիւսիս անցնելէն առաջ, դէպի արեւմուտք խոտորում մը ընելով, կարճ այցելութիւն մը տուաւ Մելիդ քաղաքին (Winckler, History of Babylonia and Assyria, p· 224)։ Այս արշաւանքը հաւանօրէն պարզ ասպատակութիւն մըն էր եւ ոչ թէ կանոնաւոր նուաճում։

Անկէ ճիշդ 20 տարի ետքը — թող ընթերցողը լաւ ուշադրութիւն ընէ ժամանակի այս անջրպետներուն, — Ն. Ք. 837-ին Սալմանասար Գ. արշաւանք մը կ'ընէ Տաբալի երկրին վրայ, որու 24 արքայիկները չհամարձակեցան անոր դիմադրել եւ իրենց երկրին արծաթի բովերն ու աղուճակի ու մարմարիոնի հանքերն անոր թողլով՝ իրենց հնազանդութիւնը շատ աժան գնուած սեպեցին։ Սալմանասար կը պարծի թէ ինք այս առիթով մինչեւ Տուճ-ճիի լեռները արշաւեց, զոր կը նկարագրէ իբրեւ «արծաթի լեռ մը», ուրեմն մինչեւ Պուլղարմատէն։ Արձանագրական այս եւ ուրիշ տուեալներէ յայտնի է որ Տաբալցի ժողովուրդը շատ ընդարձակ սահմանի մը վրայ տարածուած էր։ Բայց Տաբալի երկրին կեդրոնական մասին համար ամէնէն հաւանական դիրքն է Ալպիսթանի բարձրադիր ընդարձակ դաշտավայրը, ուր են Պիւրամոս (Ջահան) գետի ակնաղբիւրները, շրջակայ Տաւրոսեան եւ Անտիտաւրոսեան լեռնաշղթաներով, այսինքն՝ ետքէն Կատաւոնիա կոչուած նահանգը։ Թագլաթփալասար Ա.ի ժամանակ հոս կը բնակէին Մուշքի եւ Քումանի անուն ժողովուրդները։ Կ'երեւի թէ Տաբալուները արեւմուտքէն եկեր էին Թագլաթփալասար Ա.ի օրերէն ետք եւ այդ երկրէն վռնտած էին Քումանիներն ու Մուշքիները. եւ այսպէս կը գտնենք որ Ադադնիրարի Բ.ի օրով (911-890 Ն. Ք.) Քումանիները Կորդուաց լեռնաշխարհի հարաւային մասին մէջ կը բնակին (տես ՆԱԽ. ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 203-4. 210-295)։ Իսկ Մուշքիներն ալ Եփրատն անցնելով՝ Արեւմտեան Հայաստան հաստատուած կ'երեւին. որով հաւանօրէն հայկական Մնձուր գաւառն իր անունը Մուշքիներէն առած է։

Սակայն հոս մեզի համար նկատի առնելիք բուն կէտը սա է. Սալմանասար Գ. Տաբալի երկրին վրայ այս արշաւանքն ընելու համար Եփրատ գետը անցնիլը կը յիշէ, բայց Մելիդ հանդիպիլը չի յիշեր։ Քանի մը պատմագէտներ ասկէ հետեւցնել ուզած են որ Մելիդիա այն ատեն Տաբալուներուն կը պատկանէր եւ անոր թագաւորը մէկն էր այդ 24 հարկ վճարողներէն։ Բայց աւելի հաւանական է որ Տաբալուները պէտք է զանազանել Մելիտինէէն եւ թէ Ասորեստանի վեհապետը մոռցած է Մելիտիոյ թագաւորը յիշել առանձինն եւ կամ համառօտութեան սիրոյն զանց ըրած. որովհետեւ Սալմանասարի «Սեւ Կոթողի» (Black Obelisk) այս արձանագրութեան մէջ նըման զանցառութիւններ շատ կան։ Ինչեւիցէ, այս ատենէն սկսեալ ասորես-

տանեան ազդեցութիւնը երթալով կ'աճի Խատտի երկրին մէջ եւ Սալմանասար Գ.ի փայլուն յաղթանակները կը պատկերացուին նուաճուած ուրիշ ոստաններու հետ Մալաթիոյ ալ խորաքանդակներուն ու արձաններուն վրայ, ուր կ'երեւայ Ասորեստանի այս թագաւորին նկարն ու ըրած քաջագործութեանց արձանագրութիւնը (Սիւրմէեան, ՍՈՒՐԻԱ, էջ 573)։

Ըստ Սեւ Կոթողին՝ Ն. Ք. 836-ին Սալմանասար դարձեալ այցելեց Եփրատէն արեւմուտքը եւ այս անգամ որոշ կերպով կը յիշէ Մելիդի թագաւորը, զոր Տաբալուներէն կը դասէ, ըսելով. «Իմ իշխանութեանս 23-րդ տարին նորէն անցայ Եփրատը։ Մելիդցի Լալլույի բերդաքաղաք Ուխտասը նուաճեցի։ Տաբալի թագաւորները եկած էին. անոնց տուրքերն ընդունեցայ» (**History of Babylonia and Assyria**, p. 225)։ Ուխտաս ամրոցը հաւանօրէն ներկայիս Օրտաաու ըսուած տեղն է։ Ասկէ յետոյ Սալմանասար Գ. ա'լ ոչ երբեք այցելեց Մելիտինէն, եւ արդէն Վինքլէր՝ Մալաթիոյ Լալլույին Ն. Ք. 836-ին եղած ապստամբութեան մէջ նոյն ինքն Ուրարտուի Սարդուրիս Ա. թագաւորին մատը կը տեսնէ։

Յաջորդ մէկ դարու միջոցին Մելիդիա ոչ մէկ անգամ կը յիշուի Ասորեստանեայց արձանագրութիւններուն մէջ։ Բայց անոր փոխարէն Մելիտինէ կը ճնշուի ուրիշ նախայարձակ պետութենէ մը, որ գոյացած էր Եփրատի անմիջապէս արեւելեան կողմը — Ուրարդու կամ Խալդիա։ Եւ նշանակելի է որ Ուրարտուի արձանագրութիւնները շատ աւելի կը յիշեն Մելիդիան եւ միանգամայն շատ աւելի մանրամասն տեղեկութիւն կը հաղորդեն այս թագաւորութեան վրայով։

Լէյման-Հաուպտ կը խորհի թէ տակաւին Ուրարտուի Մենուաս եւ Արգիստիս Ա. թագաւորութիւններուն օրով (Ն. Ք. 800—760 թուականներուն) Փոքր Ասիոյ արեւելեան մասին մէջ կար Խեթացւոց դաշնակցային պետութիւն մը, գլխաւոր ղեկավար ունենալով Մալաթիոյ թագաւորը, որ բաց աստի իր ազդեցութիւնը Եփրատէն արեւելք ալ կը տարածէր մինչեւ Ծոփք Շահունոց, Հանձիթ եւ Մեծ Ծոփք (**Armenien II,** էջ 854)։ Ֆորրէր ալ այս կարծիքէն է։

Մենուաս, շուրջ 800-ին Ն. Ք., Ալզիի (Աղձնեաց) երկրէն յառաջացաւ Հանձիթի վրայ, ուր Խեթացւոց իշխաններէն «Սադահատասի (Sadyattes) որդին» յաղթահարեց, նուաճեց անոր Սուրխուլիս ոստանը (այժմ Սուրսուրի՝ Խարբերդէն 5 մղոն դէպի հարաւ-արեւմուտք, ուր նշանաւոր վանք մըն ալ կայ), Տարխիգամաս քաղաքը եւ ուրիշ քաղաք մը, իր յաղթութեանց յուշարձանը կանգնելով Սուրխուլիսի պարիսպին վրայ։ Ուշադրաւ է որ Մենուասի այս դէպքը պատմող արձանագրութեան (Sayce, No. 32) եօթներորդ տողին մէջ կայ Khatinastan բառը, որ այնչափ կը նմանի Հայաստան անուան։ Մենուասի արեւմտեան արշաւանքներուն առթիւ յիշուած տեղւոյ եւ անձի անուններէն կ'իմանանք որ այս ժամանակ իսկապէս Խեթացիք բռներ էին՝ ի մէջ այլոց՝ Բալահովիտ եւ Խոզնայ գաւառները, ինչպէս նաեւ Պաղնատուն եւ ուրիշ գաւառներ մինչեւ արդի Հայնիի մօտերը։

Ասոր դրական փաստ մըն է նաեւ Խարբերդի մէջ գտնուած խեթական քանդակագործութեան բեկորը մոխրագոյն բազալտ քարէ (Lehmann--Haupt, **Armenien, I**, p. 475-6) պատկերը՝ էջ 476)։

Մենուաս ուրիշ արշաւանք մըն ալ ըրած է Եփրատէ արեւելեան եւ Արածանիէ հիւսիս խեթական գաւառներուն վրայ, որոնք կ'երեւի թէ անմիջապէս Կինճ գաւառէն անդին կը սկսէին։ Մենուասի այս անգամուան արշաւանքի ճամբուն վրայ առաջին կարեւոր քաղաքն էր Շեպիտերիաս (արդի Բալու), զոր ան նուաճեց, ինչպէս նաեւ իրարու ետեւէ Խուզանաս (հայկական Խոզնայ, արդի Խոզաթ) գաւառը եւ Ծուպանի երկիրը (Ծոփք Շահունոց, արդի Չմշկածագ)։ Մելիտինէի թագաւոր Սուլիէհաւալի (այսինքն՝ Սուլուվվալ կամ Սուլումալ) ասոր վրայ ընծաներով ընդառաջ փութաց եւ հպատակութիւն առաջարկեց։ Մենուաս իր այս յաղթութեանց արձանագրութիւնը (Sayce No. 33) քանդակել տուաւ նուաճուած Բալու քաղաքին մօտ՝ Արածանիի հիւսիսային ափի մէկ ապառաժին երեսը։ Ասկէ զատ, աւելի փոքր տեղական արձանագրութիւն մըն ալ ունի Մենուաս՝ Խարբերդէ եւ Արածանիէ դէպի հիւսիս Մազկերտի կամ Մեծկերտի հին բերդին վրայ, ուր կը յիշէ որ այդ նահանգին վրայ Տիտիանի անուն խալդիացի կառավարիչ մը կարգած է, եւ ասկէ յայտնի է որ Ասորեստանցւոց ըրածին պէս անցողակի նուաճման կամ ասպատակութեան արշաւանք մը չէր Մենուասի ըրածը, հապա մնայուն կերպով այդ գաւառները կցած է Ուրարտուի պետութեան (ՆԱԽ. ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 296—297)։ Թէեւ Ղափանցեան կը կարծէ որ Մենուաս այս առթիւ Եփրատէ արեւմուտք բուն Մելիտինէի վրայ ալ յարձակած ըլլայ (ՈՒՐԱՐՏՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 150—1 եւ վերջին էջի ծան. 1), սակայն՝ արձանագրութիւնները զայս չեն հաստատեր։ Այսու ամենայնիւ, անկարելի չէ որ գոնէ բարեկամական այցելութիւն մը տուած ըլլայ Մալաթիոյ թագաւորին։

Մենուասի որդին ու յաջորդը՝ Արգիշտիս Ա. (785—760 Ն. Ք.) նախ կրկնեց իր հօրը առաջին արշաւանքը Աղձնիքէն դէպի Եփրատ։ Նա 782–ին Ն. Ք. արշաւեց Խեթացւոց Եփրատէն արեւելք տարածուող երկիրներուն վրայ. «Արգիշտիս Մենուասեան կ'ըսէ. «Հրամանովը տիրոջս Խալդիսի, Տէյշպասի, Արդինիսի (Բիայնայի, Վանի) երկրին աստուծոց... յարշաւանս իմ դէպի երկիրն Խեթացւոց (Khatina-idi) տիրեցի Նիրիբայի երկրին (Հայնիի կողմերը), ... Ուրմանի երկրին (Արղնիի կողմերը), ասոր իշխանին յաղթեցի, անոր բոլոր աւարը կողոպտեցի։ Սուրիսիլիս (Սուրսուրի) քաղաքը, արքունի ոստանը գրաւեցի Խալդիսի մեծազօր որդւոց համար» (**Annals of Argistis I**, col. II, lines 5--14)։ Արգիշտիս ըսել կ'ուզէ որ Խարբերդի մօտ այդ քաղաքը խալդիացի կուսակալի մը նիստն ըրաւ։

Ան այնուհետեւ կ'արշաւէ Եփրատէն անդին, Մելիտինէի թագաւորութեան կեդրոնին վրայ. «Մօտենալով Խեթացւոց երկրին ներսերը (Khatina-idi) Տուալասի որդւոյն երկրին, Մալիթա (Մալաթիա) քաղաքին սահմանները վերցուցի։ Պիլաս քաղաքէն մեկնելու ատեն, զայն աւերակաց կոյտի

վերածեցի։ Մելիաս գետն անցնելով, Մարմուանի եւ Քամանանի գաւառներուն այրերն ու կիները գերի տարի։ Ամրոցները քանդեցի, քաղաքները հրդեհեցի։ 2529 մանուկ, 8898 այր եւ 10847 կին, ընդամէնը 22,274 հոգի, նաեւ ձիեր, խաշինք եւ 17942 արջառ տարի ի բաց։ Արգիստիս Մենուասեան կ'ըսէ. Այս է աւարն այն քաղաքներուն զորս գրաւեցի խալդեան ժողովուրդին համար մէկ տարուան մէջ»։ (Ibid, lines 15--24)

Արգիստիս իր արձանագրութեան այս սիւնակի 6-րդ տողին մէջ Խիլարուատա կամ Խիտերուատա անունը կու տայ Մալիթայի թագաւորին համար, բայց շարունակութեան մէջ տող 16 Տուալախի անունը կու տայ։ Յայտնի է որ վերջինս, որ «Տուալասի որդի» կը նշանակէ, պարզապէս հայրանունն է Խիլարուատայի։ Փրոֆ. Սէյս այս Խիլարուատա Տուալախին իրաւամբ կը զանազանէ Արգիստիսի որդւոյն Սարդուրիս Բ.ի յիշած Խիլարուատայէն որ Շախուխի հայրանունը կը կրէ (Sayce, No. 50, line 2)։ Ուրեմն Արգիստիսի ժամանակակիցը Խիլարուատա Ա. է իսկ Սարդուրիս Բ.ի ժամանակակիցը՝ Խիլարուատա Բ. եւ բաց աստի, երկուքին յիշատակութեան թուականներուն մէջտեղ առնուազն 24 տարուայ հեռաւորութիւն կայ, որ ուրիշ բաւարար պատճառ մը կը կազմէ երկու Խիլարուատաները զանազանելու (Sayce, **Cuneiform Inscriptions of Van,** pp. 403—4,558, 647)։

Մելաս էր Թոխմա-Սուի հին անունը, եւ քանի որ Արգիստիս Պիլաս քաղաքը կը յիշէ Մելիա գետն անցնելէ առաջ, այս քաղաքը Մալաթիոյ շատ մօտ տեղ մը ըլլալու է։ Արաբկիր-Չայի կը միանան Սարը-Չիչէք Սու եւ Միրամ Չայ անուն երկու օժանդակներ. վերջին անունը շատ կը նմանի արձանագրական Մարմուանի անուան։ Ուրեմն, Մարմուանի երկիրը հաւանօրէն կը բաղկանար Արաբկիրի, Ակնայ եւ Տիվրիկի շրջանակներէն։ Արձանագրութեան մէջ մասամբ եղծուած անունը Քամանանի կը լրացնեն Սանտալճեան եւ ուրիշներ ալ։ Քամանանի երկիրը Մարմուանի երկրէն անդին եւ հաւանօրէն անոր արեւելեան կողմն էր, կեդրոն ունենալով Կիւրին քաղաքը։ Ֆորրէր սոյն Melias, անուան տեղ Kirimelias կը կարդայ, բայց նորէն Թոխմա-Սուի հետ կը նոյնացնէ։ Մինչդեռ Kirimelias բնական էր համեմատել Karamalas անուան հետ, որ կը տրուէր արդի Զամանթի-Սու ըսուածին, այսինքն Սիհուն գետի բունին, որ կը բխի ներկայիս Գայճար ըսուած տեղուան մօտէն։ Բայց շատ տարբերութիւն չ'ըներ։ Մարմուանի եւ Քամանանի երկիրներն իրենց անուններով — թէեւ ոչ ետքի դիրքերով — կը համապատասխանեն դասական ժամանակի Morimene եւ Chammanene նահանգներուն, որոնք Կապադովկիոյ թագաւորութեան երկու կառավարչութիւնները կը ձեւացնէին։ Պատմագէտները կը խորհին թէ Մորիմէնէ եւ Քամմանենէ նահանգներուն անուն տուող ժողովուրդները նախապէս Մալաթիոյ, Արաբկիրի եւ Կիւրինի մօտ տեղեր կը բնակէին, բայց յետոյ ցեղային տեղափոխումով աւելի արեւմուտք քշուած են։

Երկու բան կը հետեւի ասկէ. ա — Արգիստիս սոյն արշաւանքին՝ Կիւրինի, Ազիզիէի ու Կեմերեկի ճամբով թերեւս հասաւ մինչեւ Ալիւս (Գըզըլ

*Ըրմադ) գետի միջին ընթացքը, որ սահմանը կը կազմէր այն ատենի Փռիւգիոյ թագաւորութեան: բ — Մելիտինէի թագաւորութեան կամ Խետացւոց երկրին սահմանն ալ այն ատեն դէպի արեւմուտք թերեւս մինչեւ հոն կը հասնէր. որով Մարմուանի եւ Քամանանի ցեղերը եթէ Մելիտինէի թագաւորին իշխանութիւնը չէին ճանչնար, գոնէ անոր զինակիցներն էին: Այսպէս Մելիտինէի դահակալն ամենայն իրաւամբ կը նկատուէր Խետացւոց մեծ թագաւորը: Եւ նշանակելի է որ «Նոր Հատեան» ըսուած քանդակապատկերներով եւ մեհենագիր արձանագրութիւններով խումբ մը յիշատակարաններ կը գտնենք ոչ միայն Մալաթիա, այլ նաեւ Քէօթիւ գալէ, Տարենտէ, Փալանիա, Իսփեքչիր, Կիւրին, Գարագույու եւ Հավուզքէօյ:*

*Արգիշտիս Ա. ուրիշ մեծ արշաւանք մը կ՚ընէ իր մայրաքաղաքէն դէպի արեւմուտք, Արածանիի հիւսիսային կողմէն եւ վերստին կը նուաճէ նախապէս իր հօրը Մենուասի կողմէ նուաճուած, բայց ապստամբած Խետացւոց երկիրները (Ծուպանի, եւայլն) եւ զանոնք դարձեալ ուրարտական նահանգի կը վերածէ. իսկ անկէ վերցուած* 6000 *գերի զինուորներով մարդաբնակ կ՚ընէ Արմաւիրի շրջակայքը* (*ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ* 339—340) : *Այնպէս կը թուի թէ մինչեւ Արգիշտիս Ա.ի մահը Ն. Ք.* 760 *Մալաթիոյ թագաւորութիւնը Ուրարտուի վեհապետին հարկատու հպատակ մնաց:*

*Արգիշտիս Ա.ի որդւոյն ու յաջորդին՝ Սարդուրիս Բ.ի արշաւանաց գլխաւոր մէկ թիրախն էր Մելիտինէի թագաւորութիւնը: Սարդուրիս Բ.ի Մելիտինէի վրայ այս նշանաւոր արշաւանքը եղած է Ն. Ք.* 759 *թուականին: Այս ժամանակուան Մելիտինէի թագաւորն էր Խիլարուատա Բ. որդի Ծախուի եւ թերեւս թոռը Խիլարուատա Ա.ի: Վերջինս եւ ասոր որդին Ծախու հաւատարիմ հարկատուներն էին եղած Արգիշտիսի:*

*Սակայն հազիւ թէ այդ երկաթէ բազուկը վերցաւ, Խիլարուատա Բ., դուցէ Սարդուրիսը անոր հօրմէն տկար կարծելով, ապստամբեցաւ Ուրարտուի դէմ, եւ ըստ փրոֆ. Սէյսի* (**Cun. Inscr. of Van,** p. 647) *իրեն զինակից ընելով* Կուէի *թագաւորը, խորհեցաւ Ուրարտուի լուծն ի սպառ թօթափել իր վրայէն: Սէյսի գաղափարը զուրկ չէ հաւանականութենէ. Կուէ դաշտային Կիլիկիան է, բայց թերեւս այս միջոցին դէպի հիւսիս կ՚երկարէր մինչեւ Կատաւոնիա (Կոմանա կամ Շար եւ Ալպիսթան), իսկ Մելիտինէի թագաւորութեան կը պատկանէին Տարենտէ եւ Աչոտիի կողմերը. որով երկու թագաւորութիւնները սահմանակից կ՚ըլլային: Ըստ Սէյսի՝ Կուեցիք արենակից ալ էին Մելիտինէի խետացի ժողովուրդին: Բայց արձանագրութեան տուածը* Կա՚ուրի *երկիր է, զոր Սանտալճեան կը նշանակէ Արաբկիրի եւ Կիւրինի մէջտեղ, ու թերեւս աւելի մօտ է իրականութեան: Արձանագրութեան մէջ կը յիշուի երրորդ կարեւոր ժողովուրդ մըն ալ,* Մուշաճի, *զոր Սանտալճեան կը նոյնացնէ Մուշկի ժողովուրդին հետ, բայց տեղը կը նշանակէ Տիվրիկէն մինչեւ Սատաղա: Արդ, ճիշդ այս դիրքին մէջ Քսենոփոն կ՚աւանդէ Մոսինեկք անուն ժողովուրդ մը, որուն անունն ալ աւելի կը համապատաս-*

խանէ արձանագրութեան Մուշանի անուան: Իսկ Կա՛ուրի անունը լաւագոյնս կը յարմարի Կիւրինի գաւառական Gauraina անուան: Եւ կարելի է խորհիլ թէ այս երկուքը Կասկա ծագումով զօրաւոր ժողովուրդներ էին:

Ինչեւիցէ, Մելիտինէի թագաւորը բազմաթիւ զօրք առնելով աստնցմէ եւ Կաուրիի թագաւորին հետ միասին՝ դէմ ելաւ Սարդուրիսի, եւ դուցէ չըսպասելով անոր յարձակման՝ իրենք նախայարձակ եղան ու Եփրատի ձախ կողմն անցնելու փութացին, բայց Իզոլուի քով յաղթուեցան չարաչար եւ փախչելով Մելիտինէի երկրին ամրութեանց ապաւինեցան: Սարդուրիս անոնց բանակատեղին կողոպտելէ ետք, անցաւ Եփրատը եւ մտաւ Մելիգու բընագաւառը: Աւերեց ամբողջ երկիրը, կործանեց քաղաքները եւ քանդեց դըղեակ-պալատներն ու մեհեանները: Կ'երեւի թէ Կա'ուրիի թագաւորն այս անյաջողութեանց վրայ թողուց զինակցութիւնը եւ իր երկիրը քաշուեցաւ (հմմտ. Գր. Ղափանցեան, ՈՒՐԱՐՏՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 188—9): Սարդուրիս հետապնդեց այնուհետեւ Խիլարուատան մինչեւ անոր Մելիգու մայրաքաղաքը: Վերջապէս Մելիտինէի թագաւորը տեսնելով որ Ուրարտուի թագաւորին ձեռքէն ազատում չկայ իրեն՝ ոսկեղէն, արծաթեղէն, պղնձեայ եւ երկաթեայ անօթներ ընծայ բերելով անձնատուր եղաւ:

Լաւ է սոյն արձանագրութեան կարեւորագոյն տողերը հոս թարգմանաբար տալ. «Խալդխիներուն աղօթեցի, հզօր զօրութեանց, որոնք տուին Խիլարուատա Շախուեանի, Մելիթացւոց ժողովուրդի թագաւորին, երկիրներն իբրեւ ընծայ Սարդուրիս Արգիշտիսեանի առջեւ: ... Սարդուրիս կ'ըսէ.— Ինծի հպատակ ժողովուրդն ապստամբեցաւ՝ վստահելով Կա'ուրի երկրի թագաւորին... Չորս օրուան միջոցին հասաւ Դումեսկա քաղաքին առջեւ. կըռուեցայ անոնց այրուձիոյն հետ: Միեւնոյն օրն անցայ յայնկոյս գետոյն երկիրը: Հասայ հեռաւոր Կարնիշի քաղաքը, որ Մելիթայի թագաւորութեան սահմանն է. գրաւեցի Մուշանի գաւառը, Զապշա Քաղաքը: Հոն մէկ օրուան մէջ 14 ամրոց եւ 100 գիւղ կործանեցի. ամրոցները քանդեցի, գիւղերը հրոյ ճարակ ըրի: Մեծամեծներէն 50 ազնուականներ պատանդ առի եւ անոնցմէ հաւատարմութեան երդում պահանջեցի: Յարձակումով նուաճեցի Նիշինի, Խիլարուատայի արքունի քաղաքը, եւ գերի տարի այրերն ու կիները: Սարդուրիս կ'ըսէ.— Արշաւանքիս ընթացքին անկէ գացի Մելիթա քաղաքը, ուր Խիլարուատան առջեւս կանչեցի եւ ան խոնարհելով գետին՝ ոտքերուս փարեցաւ: Անոնց պարտադրեցի պատանդներ եւ տուրք տալ: Իբր ընծայ ընդունեցայ ոսկի, արծաթ, պղնձէ ամաններ, եւ Բիայնայ (Վան) ղրկեցի: Ան հըպատակեցաւ ինծի հարկատու ըլլալու: Անոր ինը կայազոր բերդաքաղաքները նուաճեցի եւ իմ երկրիս կցեցի. որոնք են Հազանի, Վուրախի, Տումեսկիս, Մանինու, Արուսի, Քուլբիտառնի, Տաշէ, Քուերա սատուծոյն Տաշէն, Միլուխաս»:

Կարճիշի ըսուած սահմանագլուխ քաղաքը հաւանօրէն այսօրուան Արաբկիրն է կամ անոր մօտ աւան մը: Ջապշա քաղաքը կրնանք նոյնացնել գա-

սական ժամանակներու Sabus բերդաքաղաքին հետ, Արաբկիրէ դէպի հիւսիս-արեւելք արդի Շեփիֆ գիւղանով ներկայացուած։ Նիշինի արքունի քաղաքը թերեւս արդի Արկային տեղը կամ մօտն էր։ Ինը կայազօր բերդաքաղաքները, զորս Սարդուրիս նուաճեց եւ Ուրարտուի պետութեան կցեց, Մելիտինէի հաւատարիմ մնացած գաւառներուն կեդրոններն էին Եփրատի արեւելք եւ ստորին Արածանիի երկու կողմերը, այսինքն՝ այդ երկրամասին մէջ, որ հայկական պատմութեան մէջ «Ծոփք Շահունեաց» անունը կը կրէր։ Ըստ Բելքի հաւանական կարծեաց՝ այդ Շահունեաց կոչումն ալ Շախուի նախահայ դերդաստանէն ժառանգուած է։ Գրաւուած այս ինը բերդաքաղաքներուն մէջ մասնաւորապէս ակնառու է Դումեսկիս, զոր Սէյս, Սանտալճեան եւ այլք կը նոյնացնեն հայկական Չմշկածագ աւանին հետ, բայց զոր Լէյման Հաուպտ, Հայր Տաշեան եւ ուրիշներ աւելի հաւանական կը սեպէին նոյնացնել դասական Դոմիսա ամրոցին հետ (արդի Քէօմիւրխան), որ Մալաթիայէ Խարբերդ տանող ճամբուն վրայ Եփրատի նշանաւոր կամուրջին արեւելեան ծայրն ըլլալով, Սարդուրիսի արձանագրութիւնն ալ անոր մօտ փորագրուած է։ Հազանի թերեւս հայկական Լուսաթառիճի եւ արդի Քեպանմատէնի կը համապատասխանէ։ Վուրախի թերեւս հայկական Գաւրէք գաւառի բերդն էր։ Ըստ Ղափանցեանի (ՈՒՐԱՐՏ. ՊԱՏՄ. էջ 127)՝ Քուլպիտառնի պէտք է համեմատել Թագլաթփալասար Ա.ի յիշած նայիրեան Կուլիպարզինի հետ, որ հայկական Կողոբերդ եւ արդի Քղի աւանն է նոյնանուն գետի վրայ։ Իսկ զոյգ Տաշէ ամրոցները պէտք է փնտռել Հեշտենից կողմերը՝ ըստ Թագլաթփալասար Գ.ի արձանագրութեանց։

Սարդուրիս Բ. փառասիրութիւնն ունէր իր ձեռքն անցընելու արեւմտեան Ասիոյ կարեւոր առեւտրական պողոտաները եւ այսպէս զարգացընելու իր տէրութեան արտաքին վաճառականութիւնը (հմմտ. Ղափանցեան, ՈՒՐԱՐՏ. ՊԱՏՄ., էջ 178)։ Սէյսի, Լինչի եւ անոնց պէս խորհող պատմագէտներու կարծիքով, Մելիտինէի թագաւորութեան վրայ Սարդուրիսի յաղթութիւնը թանկագին առիթ մը կ՚ընծայէր իրեն Միջերկրականի ափերն իջնելու։ Ասոնք կը խորհին թէ Սարդուրիս Բ. Մելիտինէի նուաճումն աւարտելէ ետք յարձակեցաւ Կուէի թագաւորութեան վրայ ալ՝ թերեւս Թագլաթփալասար Ա.ի փորձած ճամբով, եւ արշաւեց Ալուսիա (Ալուշա) գաւառը, որ է Կիլիկիոյ «Ալիսեան դաշտը», այժմ Չուգուր Օվա կոչուած։ Ալուսիա երկիրը Սարդուրիս Բ. յիշած է 8-րդ տողին մէջ իր մէկ բեկորային արձանագրութեան, զոր Լինչի ուղեկիցը՝ աշխարհագրագէտ ու երկրաբան Օսվալդ գտած է Հայաստանի Պինկէօլ լերան վրայ եւ փրօֆ. Սէյս վերծանած ու բացատրած Felix Osvald (**The Geology of Armenia**, London, 1906, pp. 214—5), Բելք եւ Լէյման-Հաուպտ ալ այս ընթերցումը կ՚ընդունին։

Բայց Սարդուրիս այսչափով չգոհացաւ եւ յաջորդ արշաւանքն ուղղեց Ասորիքի վրայ։ Հարկաւ Մալաթիոյ ճամբով պիտի քալէր։ Ուրարտուի թագաւորն իր նախկին արշաւանքին մէջ Մալաթիայէ անդին գործածեր էր ա-

արեւելեան Կատաւոնիոյ ճամբան, որ Ալպիսթանի եւ Կոկիսոնի վրայէն անցնելով՝ Սոսոյ մօտ կ'իջնէր Կիլիկիոյ դաշտը: Այս անգամ ընտրեց երկրորդ ճամբան, որ արեւելեան Տաւրոսի կիրճերէն կ'իջնէր Կոմմագինէ: Սարգուրիս Ն. Ք. 751-ին արշաւեց Պուլուա կամ Բուլուա երկրին դէմ, որուն Լուպլիունի անուն ամրացեալ եւ թագաւորական քաղաքին մէջ ան արձանագրութիւն մը կը կանգնէ. նաեւ բերդ մը շինելով՝ մէջը ուրարտացի կայազօր կը դնէ: Բուլուա երկիրը Մելիտինէի եւ Կոմմագինէի մէջտեղ արեւելեան Տաւրոսի գլխաւոր լեռնանցքները բովանդակող գաւառն է, ուր Բուլա բերդը՝ արդի Պօլամ-Սու գետակին վրայ, կը յիշուի իբրեւ Խաչակրաց ամենահիւսիսային կալուածը (Barhebraeus, **Chronography,** անգլ. թարգմ., էջ 350): Իսկ Լուպլիունի քաղաքը հաւանօրէն արդի Մամուրակա ըսուած տեղն է:

Հետեւեալ տարին Ն. Ք. 750 Սարգուրիս կ'արշաւէ Կումախա երկրին դէմ եւ իրեն կը հնազանդեցնէ Կումախացիներու Կուստասպիլի թագաւորը: Կը գրաւէ երկրին Վիտանի քաղաքը, որ թագաւորական ու ամրացուած էր: Նաեւ Խալպա քաղաքը, որ նոյնպէս թագաւորական ու ամրացուած ըլլալէ զատ, ջուրի (Եփրատի) մօտ էր. ու վերջապէս Պարալա մայրաքաղաքը, ուր «նա (=Կուստասպիլի) եկաւ ինծի մօտ», կ'ըսէ Սարգուրիս, «ծնրադրեց, եւ ես հարկադրեցի որ նա ինծի տայ 40 մանա մնաս ձոյլ ոսկի, 800 մանա արծաթ, 3000 զգեստ, 2000 աման պղինձ, 1530 աման պրոնզէ»: Կումախա Ասորեստանցւոց Կումմուխ ըսած երկիրն է, դասականաց Կոմմագինէն. եւ նշանակելի է որ քիչ ետք Ասորեստանի Թագլաթփալասար Գ. թագաւորը Կումմուխի Կուշտաշպի (Վշտաշպ) թագաւորը կը յիշէ Ուրարտուի Սարգուրիս թագաւորի զինակիցներուն շարքին, որ այսպէս կը նոյնանայ Սարգուրիսի Կուստասպիլի ըսածին հետ: Վիտանի ամրացուած քաղաքը կրնանք նոյնացնել արդի Քեախթա բերդաքաղաքին հետ, Խալպա — ըստ Ասորեստանեայց՝ Խալպի — Սամոսատի հետ, որովհետեւ տեղւոյն բնիկ եւ իրազեկ անձի մը վկայութեամբ Սամսաթի մէկ արուարձանը մինչեւ հիմա Խալպա անունը կը կրէ. իսկ բուն մայրաքաղաք Պարալան է, թերեւս Հռոմայեցւոց օրով նշանաւոր Perrhe քաղաքը, որուն աւերակներուն մօտ շինուած է ետքի Հուսնըմանսուրը, արդի Ատըեամանն աւանը: Սարգուրիսի առած տուրքի ճոխութենէն կրնանք հասկնալ թէ Կումմուխը Մալաթիայի չափ, գուցէ անկէ աւելի, հարուստ ու զարգացած երկիր էր այն ատեն:

Սարգուրիս երկու տարի յետոյ (Ն. Ք. 748), նորէ՛ն Մալաթիայի ճամբով, Ասորիք վերադարձաւ իր նուաճումները լրացնելու համար: Ուրարտուի թագաւորը կը նուաճէ Խուրա եւ Նուշինի քաղաքները՝ Ռիխիշա երկրին մէջ, ապա Բիէ քաղաքին գաւառը, որ Բաշատանի անուն թագաւորի մը կը պատկանէր, եւ 12,600 մանուկ, 1800 այր մարդ, 7700 կին, ընդամէնը 22,600 հոգի գերի կը տանի՝ պատերազմի մէջ սպաննուած թշնամի զինուորներէն զատ, նաեւ կողոպուտ կ'առնէ 352 ձի, 4547 արջառ եւ 13,060 ոչխար: Յետոյ կը նուաճէ Իրսինի կամ Սուրսինի եւ Մելինէ կամ Մելիտա քաղաքները, ո–

րոնց թագաւորն իր առջեւ կու գայ հպատակութիւն յայտնելու (N. Adontz, **Histoire de l'Arménie**, p. 170)։ Ուխխիշա երկիրը հաւանօրէն կ'երեւի թէ Մելիտինէի արեւմտեան կողմն էր, անոր Նուշիճի քաղաքը հաւանօրէն նոյնն է Բէօմիւրխանի արձանագրութեան յիշած Նիշիճի քաղաքին հետ, զոր վերեւ նոյնացուցինք արդի Ակրայի հետ։ Խուրա քաղաքն անկէ անդին էր, թերեւս Տարենտէ եւ Աշտիի կողմը։ Ուրեմն Ուխխիշայի (թերեւս նոյն ընդ Լուխզուի) գաւառը մասամբ կը գտնուէր Թոխմա-Սուի հովտին մէջ։ Բաշատաճի հաւանօրէն Տարալցի թագաւորներէն մէկն էր, եւ անոր երկիրը թերեւս պէտք է Մալաթիայէ դէպի Մարաշ եւ Այնթապ տանող կարաւանի ճամբուն վրայ փնտռել։ Բաշտանի թագաւորին անուան հետ համեմատելի է «Բասաճաս-տաճ, որ է Բիշան» տեղանունը, զոր մեր Ղեւոնդ պատմագիրը կը յիշէ (էջ 188—9) Կիլիկիոյ հետ միասնաբար (Տես Տաշեան, ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՍԱՀՄԱՆԸ, էջ 97)։ Արդի Կէօզենէ եւ Սիւրկիւ հանգրուաններով այդ պողոտային կատարելապէս տիրանալ Ուրարտուի աշխարհակալ թագաւորին համար անհրաժեշտ էր։ Ուստի Բաշտանի թագաւորին պատկանող Բիէ քաղաքը կրնանք նոյնացնել արդի Վերանշեհիրի եւ հին Զուպարտայի հետ։ Սարդուրիս Բ. կ'երեւի թէ հարկ զգաց վերադարձի ատեն Մելիտինէի երկրէն երկու ոստանիկ քաղաքներու վրայ ալ իր ոյժը ցուցնել, որպէսզի այդ կարեւոր երկրի թագաւորն իր հպատակութեան մէջ հաստատէ. մանաւանդ հաւանական է որ այս միջոցին հոն գահակալի փոփոխութիւն տեղի ունեցած էր, այսինքն Շախուի որդի Խիլարուատա մեռած եւ տեղը Սուլումալ անուն մէկը անցած էր։

Սարդուրիս Բ. այս կամ յաջորդ մէկ արշաւանքին իրեն հպատակեցուցած է նաեւ Կատուկի արամէացի իշխանը Բար-գա'եա, որու երկիրը կը գտնուէր արդի Մարաշէ դէպի արեւելք Կէօլպաշը բռնած շրջանակը, զոր միջնադարեան արաբ աշխարհագիրներ Քայքուկ կ'անուանեն, որ էր նշանաւոր Հատաք (Adapha) քաղաքը, որ Տաւրոսէ վար իջնող երկու կարեւոր լեռնանցքներու բանալին էր։ Ասոր վրայ Ուրարտուի թագաւորին հպատակեցան Գուրգում (Մարաշ), Շամալ (Զէնճիրլի) Կարքեմիշ (Ճարաբլուս), Խատտինա (Համայ), վերջապէս Եփրատի ու Միջերկրականի միջեւ տարածուող բոլոր խեթական ու արամէական ծագումէ իշխանութիւնները։ Սարդուրիս Բ. ստիպեց Հալէպի մօտ Արփատի (այժմ Թիլ-էրֆատ) իշխանը՝ Մատիիլուն ընդունիլ իր գերիշխանութիւնը եւ Կատուկի իշխանին հետ կնքել դաշնագիր մը, որուն արամերէն բնագիրը գտնուած է Ճապուլ աղի լճին մօտ Աֆիրէ-Սունճին գիւղը. եւ այդ արձանագրութենէն կ'իմանանք որ մինչեւ Եգիպտոսի սահմանագլուխը ամբողջ Սուրիա եւ Պաղեստին ենթարկուած էին Ուրարտուի թագաւորին ազդեցութեան (ՆԱԽ. ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 417—8)։

Ասորեստանի նոր գահակալող թագաւորը՝ Թագլաթփալասար Գ. չուզեց ասոր հանդուրժել. ուստի իր իշխանութեան երրորդ տարին (743 Ն. Ք.)

անցաւ Եփրատը եւ եկաւ պաշարել Արփատը, որուն թագաւորը Մատիիլու Սարդուրիս Բ.ի ամենագլխաւոր դաշնակից–հարկատուն էր Ասորիքի մէջ։ Սարդուրիս ասոր վրայ մեծ բանակ մը առած՝ Մալաթիոյ ճամբով փութաց Սիւրիա իջնել՝ իր բոլոր դաշնակից–հարկատուներն ալ ի զէն կոչելով։ Իր դաշնակիցներուն մէջ յանուանէ կը յիշուին Արփատի թագաւոր Մատիիլուէն զատ, Մելիտինէի արքայ Սուլումալ, Գուրգումի (Մարաշ) արքայ Տարխուլարա, Տուբալի (Ալպիսթան) արքայ Վասուրմի, Կումմուխի արքայ Կուշտասպի. տակաւին ուրիշներ ալ կային, որոնց անունները եղծուած են արձանագրութեանց մէջ։ Դաշնակից միացեալ զօրքը բանակեցաւ Կումմուխի Խալպի եւ Կիշտան գաւառներուն մէջտեղը, Սինզի գետին քով, դաշտի մը մէջ։ Այս գետը Եփրատին արեւմուտքէն միացող Կէօքսու բազուկն է, որ դասական հեղինակաց քով Singa անունը կը կրէ եւ Ասորիներուն ու Հայոց քով՝ Շնջէ։ Ուրեմն Խաչակրաց պատերազմներուն մէջ ալ հռչակուած Քեսունի ստորին դաշտավայրն էր ռազմադաշտը (Տես ՄԱՏԹ. ՈՒՌՀԱՅԵՑԻ, տպ. Երուսաղէմ, էջ 443, 576. Barhebraeus, p. 251, ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 354)։

Թագլաթփալասար փութաց Սարդուրիսն ու զինակիցները դիմադրաւել հոս։ Ամբողջ օր մը տեւեց սոսկալի ճակատամարտը եւ կ'երեւի թէ Շամալի Պանամմու եւ Կարքեմիշի Պիսիրիս թագաւորներուն դաւաճանութեամբ էր որ վերջապէս յաղթութիւնը շահեցաւ Ասորեստանի թագաւորը, որ կ'ըսէ թէ 72,900 գերի առած է Սարդուրիսի եւ անոր զինակիցներուն բանակէն։ Ասիկա սա՛ միայն կրնայ նշանակել որ Սարդուրիսի հարկատու զինակիցներէն կարեւոր գունդ մը ճակատամարտի վճռական րոպէին Ասորեստանի թագաւորին կողմը անցեր էր։

Սարդուրիս Բ. ամբողջ օրը ճակատամարտին ընթացքը ղեկավարելէ ետք, երբ դաւաճանութեան արդիւնքը տեսաւ, գիշերուան մութը կոխելուն պէս, ձիով փախաւ դէպի հիւսիս, Սիրակ (այժմ Պեկտաղ, հիներուն քով Mons Pieria), դժուարանցանելի լեռներէն անդին Մալաթիոյ դաշտը։ Թագլաթփալասար կ'ըսէ թէ երբ ինք իմացաւ Ուրարտուի թագաւորին փախուստը, զայն հալածեց «մինչեւ Եփրատի կամուրջը, որ իր երկրին սահմանագլուխն է»։ Այս կամուրջը առանց տարակոյսի նոյն է դասական հեղինակներու քով յիշուած Դոմիսայի հռչակաւոր կամուրջին հետ՝ ի Քէօմիւրխան, Մալաթիայէն Խարբերդ տանող պողոտային վրայ։

Աւելի յառաջ չգացած, հոս յարմար է պզտիկ շեղում մը ընել։ Ուրարտուի թագաւորը Եփրատէ արեւելք խետական գաւառները Մելիտինէի թագաւորին ձեռքէն առած է եւ իր պետութեան կցած էր. որով Սարդուրիս Բ. իր արձանագրութիւնն իսկ կը քանդակէ Իզօլուի եւ Քէօմիւրխանի մէջտեղ ժայռի մը երեսը. եւ հոս Թագլաթփալասար Եփրատի կամուրջը Սարդուրիսի տէրութեան սահմանագլուխը կ'անուանէ։ Գրեթէ հարիւր տարիէ ի վեր Ուրարտուի թագաւորները Մելիտինէի թագաւորութեան վրայ երբեմն արշա-

ւանքներ ընելով եւ անկէ գաւառներ յափշտակելով հանդերձ, անոր անկախութիւնը յարգած, Եփրատէ արեւմուտքի երկիրները անոր թողած եւ միայն տարեկան թեթեւ հարկ մը պահանջած էին։ Բայց պիտի տեսնենք որ Թագլաթփալասարի յաղթութեան վրայէն 40 տարի չանցած, Ասորեստան պիտի ջնջէ Մալաթիոյ անջատ թագաւորութիւնը։ Արդ, եթէ Մալաթիոյ Սուլումալ թագաւորն ալ Սարդուրիս Բ.ի դէմ դաւաճանողներէն մէկն էր, մեծ անմտութիւն ըրաւ, իր իսկ երկրին շահուն դէմ գործած եղաւ եւ ինչպէս առածը կ'ըսէ՝ տապակէն կրակին մէջ ցատքեց։

Թագլաթփալասար Գ. Ուրարտուի Սարդուրիս Բ. թագաւորին վրայ իր մեծ յաղթութենէն անմիջապէս ետք դարձաւ Արփատը վերստին պաշարելու։ Երբ երեք տարուան պաշարումէն ետք Արփատ ինկաւ, հոն փութացին Եփրատէ արեւմտեան բոլոր երկիրներու թագաւորները իրենց հպատակութիւնը մատուցանելու Ասորեստանի վեհապետին։ Թագլաթփալասարի Տարեգրութեանց արձանագրութիւնը ճիշդ հոս սաստիկ վնասուած ըլլալով, տուրք մատուցանողներու ցանկէն հազիւ վեց թագաւորներու անուններն ընթեռնելի են։ Սակայն գրեթէ տարակոյս չի վերցներ թէ Մալաթիոյ թագաւորը Սուլումալ արդէն Ասորեստանի հպատակողներէն մէկն էր։ Հարկատուաց երկրորդ ցանկը, որ Ք. Ա. 738 թուականին կը վերաբերի, ամբողջական է. հոս կը յիշուին իրարու ետեւէ «Գուրգումի (Մարաշ) Տարխուլարա, Մելիդդուի Սուլումալ, Կասկայի Դատիլու, Տաբալի (Կապադովկիա) Վասուրմի, եւն. (Annales 150—7 տողեր)։

Հոս նոր անուն մը կ'երեւնայ՝ Կասկայի Դատիլու, որ մասնաւոր ուշադրութեան արժանի է։ Կասկայի երկիրը Թագլաթփալասարի երկրորդ յաջորդին՝ Սարգոն Բ.ի արձանագրութեանց մէջ շատ յաճախ կ'երեւի եւ այդ յիշատակութիւններէն հաւանական կերպով կ'եզրակացուի թէ այս ժամանակ յիշուած Կասկա երկիրը, Մալաթիայէն հիւսիս կը գտնուէր, Կիւրինի, Արաբկիրի եւ Ակնայ շրջանակները բովանդակելով։

Թագլաթփալասար Գ.ի իշխանութեան վերջին տարիներուն Ասորեստանի դէմ ապստամբութիւններ ելան Մելիտինէի, Տաբալի եւ Կուէի երկիրներուն մէջ, բայց անյաջող կերպով եւ ըմբոստացողներուն համար կործանարար հետեւանքով։ Ամենէն աժան պրծողն եղաւ Տաբալ, որ Հուլլի անուն Ասորեստանի հլու հպատակ ուրիշ թագաւոր մը ստացաւ. Կուէի երկիրը (դաշտային Կիլիկիա), վերածուեցաւ Ասորեստանեան նահանգի մը. իսկ Մելիտինէի թագաւորութիւնը կիսուելով, մէկ մասը շնորհուեցաւ Կամմանուի կամ Խամմանուի թագաւոր Գունզինանուին, եւ միւս մասը ուղղակի նահանգի վերածուեցաւ։

Մելիտինէի շրջանակին նուաճման վերաբերեալ հետաքրքրական տեղեկութիւն մըն ալ կայ Թագլաթփալասար Գ.ի Տարեգրութեանց բեկորներուն մէջ. «Քուլթիի երկրէն եւ Բիտ–Սանգիբուտիի երկրէն 457 կանայք բնակեցուցի Տուհիմմի քաղաքին մէջ։ Քուլթիի երկրէն եւ Սանգիբուտիի քաղաքէն 555

կանայք ալ բնակեցուցի Տիլ–Գարմի քաղաքին մէջ։ Զանոնք Ասորեստանցւոց պէս սեպեցի։ Ասորեստանեայցը նման ծառայութեան կատարումը պարտադրեցի անոնց»։ Այս կը նշանակէ որ Թագլաթփալասար արեւմտեան սահմանագլուխի այս քաղաքներուն մէջ ասորեստանցի կայազօր դրած է, եւ Մեգացւոց սահմանագլուխ քաղաքներէն ալ երկու խումբ գերի կիներ կը բերէ անոնց ծառայելու համար։ Պատմագիտաց ընդունածին համեմատ՝ Տիլ–Գարմէ կամ աւելի սովորական գրութեամբ՝ Տիլ–Գարիմմի անունը վաղեմի մեծ խաթի կայսրութեան ժամանակի Տիգարամա անունէն աղաւաղում մըն է, եւ արդի Կիւրին (հին Gauraina) քաղաքը կը ցուցնէ, եւ թէ հայկական Թորգոմ ազգանունն ալ անկէ ծագում առած է։ Իսկ Տուհիմմի քաղաքն է Կիւրինէն քիչ մը արեւելք Թոխմա աւանը, որմէ կ՚առնէ Եփրատի Մելաս կամ Կաւկաւա անուն բազուկը իր արդի Թոխմա–Սու կոչումը։

Տարակոյս չկայ թէ Ասորեստանցւոց Կամմանու կամ Խամմանու կոչած երկիրը նոյն է Ուրարտուի Արգիշտիս Ա․ թագաւորի նուաճած Քամանիանի երկրին հետ։ Մարմուանի եւ Քամանանի երկիրներուն բնակչութիւնը հաւանօրէն Կասկեան ծագում ունէր․ բայց շատ կանուխէն չափով մը հայեանացած էր։ Կամմանուի այս Կասկաները կ՚երեւի թէ Սարդուրիս Բ․ի հետ պայքարի միջոցին Ասորեստանի քաջալերութիւնը վայելելով, զօրացան իրենց Դատիլու թագաւորին ներքեւ, որ այնուհետեւ միշտ Ասորեստանի հաւատարիմ վասալ մնացած կ՚երեւի։ Դատիլուի յաջորդն եղած ըլլալու է ուրեմն անոր քաղաքական ուղղութեան հետեւող Գունզինան թագաւորը Խամմանուի։ Ասի Ասորեստանի հնազանդ հարկատու մնաց Թագլաթփալասար Գ․ի օրերէն մինչեւ Սալմանասար Ե․ի վերջին տարին (722 Ն․ Ք․)։

Բայց այդ տարին, մինչ Ասորեստանի բանակները սաստիկ զբաղած էին Պաղեստինի մէջ ու եգիպտական սահմանագլուխին վրայ, մէկ կողմէն Մուշկիի Միտա (Փռիւգիոյ Միդաս Գ․) եւ միւս կողմէն Ուրարտուի Ռուսաս Ա․ թագաւորներուն դրդմամբ, նոր խմորումներ եւ խլրտումներ յառաջ եկան Տաւրոսի եւ Անդիտաւրոսի լեռնաշխարհներուն մէջ։ Կամմանուի թագաւորը Գունզինան, որուն յանձնուած էր նաեւ Մելիտինէի կառավարութիւնը, թեւ րացաւ իր հպատակութեան պարտեաց մէջ։ Այն ատեն, Սարգոն կ՚երեւի թէ Սալմանասար Ե․ի սպարապետի եւ Կուէի սահմանապահ կուսակալի հանդամանքով, ղրկուեցաւ Գունզինանի վրայ, որ յաղթուելով երկրէն վտարուեցաւ եւ հաւանօրէն Փռիւգիա ապաստանեցաւ՝ Ալիւս գետէն անդին։ Այսպէս, ոչ միայն Մելիտինէի երկիրը, այլ նաեւ բուն իսկ Կամմանուի թագաւորութիւնն իր ձեռքէն առնուելով, տրուեցաւ Տարխունազի անուն յայտնապէս հին խեթական ցեղէն իշխանի մը։ Բայց առանձին չէր այս դէպքը, հապա մաս կը կազմէր աւելի լայնատարած շարժումի մը։

Խիստ ուշագրաւ դէմք մըն է «Մուշկիի թագաւոր Միտա»,— ինչպէս Սարգոն զայն կ՚անուանէ,— որ ճիշդ այս միջոցին արեւմտեան հորիզոնին վրայ կ՚երեւնայ իբրեւ փոթորկալից ամպ մը։ Սա այնչափ հզօր իշխան մըն

էր որ Հեռաւոր Կարքեմիշի Թագաւոր Պիսիրիս Ն. Ք. 717-ին անոր դեսպաններ ղրկեց եւ հպատակութիւն կամ գոնէ զինակցութիւն առաջարկեց, եւ Ուրարտուի ահեղ ինքնակալը Ռուսաս Ա. ալ զայն ամենակարեւոր անդամը կը սեպէր Ասորեստանի դէմ իր կազմած զինակցութեան: Արդէն Վինքլըր եւ անոր հետեւելով Մասփերօ, Կարսթանկ, Օլմսթէր, Ն. Ադոնց եւ ուրիշներ կ'ընդունին թէ Մուշկիի Միտան նոյն ինքն Փռիւգիոյ Միդաս Գ. թագաւորըն էր: Ոմանք առկէ հետեւցնելով կ'ըսեն թէ Մուշկիները եւ Փռիւգացիք միեւնոյն ազգն ու ժողովուրդն են: Մենք զայս բոլորովին ուղիղ չենք գտներ:

Թագլաթփալասար Գ.ի եւ Սարգոն Բ.ի արձանագրութիւններէն կը տեսնենք որ այս ժամանակ Մալաթիայէ անմիջապէս արեւմուտք կը բնակէին Տաբալուները, որոնք բռնած էին ետքէն Կապադովկիա կոչուած ամբողջ երկրամասը: Ասոնցմէ արեւմուտք, գլխաւորապէս լեռնապատանները բռնած էին Խիլակկուներ, այսինքն՝ ապագայ Կիլիկեցւոց նախահայրերը. այս գաւառներն էին Մուհաճիրէ սկսեալ մինչեւ Ջամանթի-Սուի եւ բուն Սիհունի (Սարոս) միացած տեղը եւ Արգէոս լերան հարաւէն մինչեւ արդի Պոզանդի, երկըրին կեդրոնն ըլլալով արդի Ֆարաքցին աւանը, որուն տեղն էր հին Դաստարկոն, եւ ուր նշանաւոր «Հատեան» յիշատակարաններ կան: Խիլակկուէն աւելի անդին էր Մուշկիներուն երկիրը, որ Կեսարիա-Մաժաքի դիրքէն դէպի Իկոնիոն կը տարածուէր, կեդրոն ունենալով արդի Քիլիսէ Հիսարը, որ է հինն Տիւանա (Tyana) եւ որու գաւառը «Փոքր Ասիոյ Դամասկոսը» կոչուած է՝ իր արտակարգ բարեբեր ովասիսի մը հանգամանքովը: Արդ, կ'երեւի թէ Միտա (Փռիւգիոյ Միդաս Գ.ը) աշխարհակալութեամբ կամ ժառանգաբար տիրացած էր Մուշկիներու (Մոսոքեանց) աշխարհին. եւ քանի որ Մուշկիները Ասորեստանցւոց հնուց ի վեր ծանօթ էին իբրեւ կեդրոնական Փոքր Ասիոյ հզօր ժողովուրդ մը եւ քանի որ Մուշկիներու երկիրը Ասորեստանցւոց ամենամօտ մասն էր ժամանակակից Փռիւգիոյ, հետեւաբար Ասորեստանցւոց կողմէն ամբողջ Փռիւգիոյ քաջածանօթ անունով մը «Մուշկիներու երկիր» յորջորջուիլը շատ բնական էր:

Նոյնինքն Միդասի անունը պարունակող փռիւգերէն արձանագրութեան մը Տիւանա (Քիլիսէ Հիսար) գտնուիլը ապահով ապացոյց մըն է, որ Տիւանիտիսի երկիրը ստուգիւ Փռիւգիոյ թագաւորութեան կը պատկանէր այս ատենները. որով սեպագիրներու «Միտան» Փռիւգիոյ Միդաս թագաւորին հետ նոյնացնելուն դէմ որեւէ առարկութիւն չի կրնար ըլլալ: Բայց Միդաս Գ. լոկ Մոսոքեանց աշխարհն իր Փռիւգիոյ թագաւորութեան կցելով չէր գոհացած, եւ այս աշխարհակալ թագաւորին ներքեւ Փռիւգիա ահագին ծաւալում ունենալով, իսկապէս կայսրութեան մը ձեւ առած էր: Արդէն իր անմիջական նախորդները Ալիս գետի աղեղին ներսի գաւառները գրաւած էին մինչեւ ապագայ Փոքր Հայքի սահմանները: Միտաս Գ., ինչպէս կրնանք Սարգոն Բ.ի արձանագրութիւններէն մակաբերել, կրցած էր նաեւ նուաճել Խիլակկուներու եւ Տաբալուներու երկիրները մինչեւ Ջահանի ակնաղբիւրները եւ վերջին

«Ապառաժուտ Կիլիկիա» ըսուած գաւառներն ալ նուաճելով՝ հասած իջած էր մինչեւ Կուէի երկիրը կամ դաշտային Կիլիկիա։

Միտայի այս արշաւանքները եղած էին Ն. Ք. 723—722 թուականներուն եւ Սարգոնին առնուազն եօթը տարիներ պէտք եղան մինչեւ որ կարողացաւ Միտան ետ մղել այս գրաւուած երկիրներէն։ Միեւնոյն ատեն՝ Ն. Ք. 717-ին ջնջած էր Կարքեմիշի թագաւորութիւնը, հին հզօր Խեթացւոց այդ վերջին շառաւիղը՝ Պիսիրիսը շղթայակապ գերի տանելով ի Նինուէ, Ն. Ք. 713-ին ալ ջնջեց Տաբալի թագաւորութիւնը, նոյն վարմունքը ցուցնելով անոր Ամբարիսի թագաւորին, որոնք երկուքն ալ Միտայի կողմը բռնելով՝ ապստամբեր էին Ասորեստանի գերիշխանութեան դէմ։

Յաջորդ տարին (Ն. Ք. 712) աւելի մեծ ապստամբութիւն մը պայթեցաւ։ Մելիտինէի թագաւորը Տարխունազի, որուն յանձնուած էր նաեւ Խամմանու կամ Կամմանու լայնատարած երկրին կառավարութիւնը՝ նախորդ Գունզինան թագաւորին վտարումէն ետք, հետեւեցաւ Տաբալի Ամբարիսի թագաւորի քայլերուն, միեւնոյն ողբերգական հետեւանքներով։ Կ'երեւի թէ Տարխունազի ալ դիմեր էր Միտային եւ Ուրարտուի մէջ նոր գահակալող Արգիշտիս Բ.ին։ Բայց անոնցմէ ոեւէ օգնութիւն հասնելուն չմնացած՝ Սարգոն յարձակեցաւ Մելիտինէի երկրին վրայ եւ պաշարմամբ առաւ ու կործանեց Մելիդու մայրաքաղաքը։ Տարխունազի ինքն ապաստանած էր Տիւլ Գարիմմու (արդի Կիւրին) բերդաքաղաքին մէջ, զոր նաեւ խստիւ պաշարեց Սարգոն եւ անօթութեամբ ստիպեց անձնատուր ըլլալու։ Տարխունազի թագաւորն իր ազնուականներուն հետ երկաթի շղթաներու զարնուելով գերի տարուեցաւ Ասուր քաղաքը, նոյնպէս իր կինն ու որդիները ու աղջիկները։ Իր 5,000 զինուորներն ալ առնուեցան Ասորեստանի բանակին մէջ։ Այսպէս վերջացաւ Մալաթիոյ բնիկ հատեան թագաւորութիւնը։

Յարմար է մէկ ամփոփ ցանկը տալ այս գլխուս մէջ յիշուած Մալաթիոյ թագաւորներուն։ Առանց հոս նկատի առնելու Մալդիյայի վրայ Ն. Ք. 1250—1200 թուականներուն իշխած գեղարուեստասէր թագաւորը, որու «հատեան» մեհենագիրներով գրուած անունը Սուլումիլէ կը կարդան, եւ Թագլաթփալասար Ա.ի շուրջ 1110 Ն. Ք. յիշած Ալու կամ Ալլու թագաւորը, Սալմանասար Գ.ի օրէն մինչեւ Սարգոն Բ.ի օրը՝ Ասորեստանեայց եւ Վանի արձանագրութիւններուն մէջ յիշուած տասը իրերայաջորդ թագաւորներն ունինք Մալաթիոյ.—

1.— Լալլի, Սալմանասար Գ.ի կողմէն յիշուած՝ Ն. Ք. 854—836-ին։

2.— Սուլումալ Ա. (Suliekhavali) Ուրարտուի Մենուասին կողմէն շուրջ Ն. Ք. 800-ին յիշուած Բալուի արձանագրութեան մէջ։ Բայց կարելի եւ մինչեւ իսկ հաւանական է որ Լալլիի եւ Սուլումալ Ա.ի մէջտեղ Մալաթիոյ ուրիշ թագաւոր մը իշխած է։

3.— **Տուալաս**։

4.— Խիլարուատա Ա., որդի Տուալասի, Ուրարտուի Արգիշտիս Ա.ի

Տարեգրութեանց մէջ յիշուած, Ն. Ք. 782–ին:

5.— Շալխու. Տուալասի եւ Շախուի համար առանձին յիշատակութիւն չունինք թէ թագաւոր եղած են, բայց ժամանակագրութիւնը դժուարութիւն չի յարուցաներ անոնց ալ թագաւորած ըլլալուն:

6.— Խիլարուատա Բ. որդի Շախուի, Սարդուրիս Բ. Արգիստեանի կողմէն յիշուած Ն. Ք. 758–ին, Իզոլուի արձանագրութեանց մէջ:

7.— Սուլումալի Բ., Թագլաթփալասար Գ.ի կողմէն յիշուած Ն. Ք. 743 եւ 738 թուականներուն:

8.— Դադիլու՝ թագաւոր Կասկայի, Թագլաթփալասար Գ.ի կողմէ յիշուած իբրեւ Սուլումալ Բ.ի ժամանակակիցը, որու կառավարած աշխարհը սակայն Մելիտինէի նախկին ընդարձակ կալուածներէն կտրուած կազմուած է:

9.— Գունզինան՝ Խամմանուի թագաւոր, թերեւս Դադիլուի որդին, որ ըստ Սարգոն Բ.ի արձանագրութեանց՝ Մալաթիոյ վրայ ալ իշխած է Ն. Ք. 730—722 թուականներուն:

10.— Տարխունազի, նոյն Սարգոնի կողմէն յիշուած, թերեւս որդի Սուլումալ Բ.ի. Ն. Ք. 722—712 թուականներուն իշխած Մալաթիոյ հետ Խամմանուի երկրին վրայ ալ:

Սուլումիլի կամ Սուլումալ — Սուլիէհաւալի, ինչպէս նաեւ Լալլու կամ Լալլի անունները, Խատտինայի Սապալուլու թագաւորին անուան պէս, հաւանօրէն համառօտուած ձեւերն են վաղեմի Հաթեանց մեծ աշխարհակալ Սուբբիլուլիումա թագաւորին անուան, զոր ժամանակակից Եգիպտացիք Սապլէլ կը հնչէին:

## Է.

# ՄԵԼԻՏԻՆԷ ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՑ ՆԱՀԱՆԳ

Տարխունազիի դերեվարութենէն ետք, բուն Մելիտինէի թագաւորութիւնը կործանեցաւ, եւ երկրին մէկ մասը Մելիդու քաղաքին հետ շնորհուեցաւ Կումմուխի Մուտալլու թագաւորին, որ Կարքեմիշի նուաճումէն ի վեր ամենագլխաւորը կը համարուէր «խատտի» իշխաններուն մէջ: Մնացած մասն ալ Խամմանու երկրին կցուելով եւ Տիլգարիմմու (Կիւրին) բերդաքաղաքը կեդրոն ունենալով, մասնաւոր կառավարչութեան մը վերածուեցաւ:

Կ՚երեւի Սարգոնի մէկ սպարապետը այս միջոցին կեդրոնական Փոքր Ասիան նուաճեր էր մինչեւ Կեսարիայէն շատ անդին: Այսպէս Փոքր Ասիոյ

մէջ ստեղծուեցաւ Մարզպանութեան շրջանակ մը ահագին տարածութեամբ, որուն ալ տրուեցաւ Կամմանու կամ Խամմանու անունը, որովհետեւ նախկին Խամմանու երկիրն ալ անոնց կցուած էր։

«Այդ երկրին — Խամմանուի մարզպանութեան — մէջ 10 ամրոցներ հիմնեցի», կ'ըսէ Սարգոն։ «Բնակիչներուն ապահով բնակարաններ հայթայթեցի։ Լուխզու, Բուրդիր, Անմաուրու, Կիակի, Անդուարսալիա քաղաքներն Ուրարտուի դէմ իբրեւ պահականոց ամրացուցի։ Ուսի, Ուսիանէ, Վարգին քաղաքները հիմնեցի Մուշկիներու սահմանագլուխին վրայ. անոնց ելքի դռները փակեցի։ Ելլիբիր եւ Շինդարարա քաղաքները .............. ժողովուրդին դէմ ամրացուցի»։ (Սարգոնի Տարեգրութիւնք, տողեր 190—194)։ Արձանագրութիւններէն այնպէս կը մակաբերուի թէ Սարգոն շատ ընդարձակ Ասորեստանցի ու Միջագետացի գաղթականութիւն մըն ալ բերաւ հաստատեց Խամմանուի մարզպանութեան մէջ։

Դժբախտաբար դիւրին չէ Սարգոնի ամրացուցած այս տասը քաղաքներուն տեղերը որոշել։ Ֆորրեր առաջարկած է որոշ նոյնացումներ (**Die Provinzial—Einteitung des Assyrischen Reiches**, pp. 75—6) եւ Պրոֆ. Ն. Ադոնց (**Histoire d'Arménie**, pp. 118 et n. 2, 314—5) քանի մը քննադատութիւններով կ'ընդունի զանոնք։ Արդ, Տիւլգարիմմէի նահանգին եւ Կամմանուի մարզպանութեան մէջ ամրացուած տասը քաղաքներուն հինգը Ուրարտուի դէմ էր, ինչ որ կը ցուցնէ թէ կա՛մ Ուրարտուի համեմատական ոյժը գերակշիռ էր եւ կա՛մ այս կողմի սահմանագլուխը աւելի ընդարձակ ու բաց էր։ Ֆորրեր կը դիտէ որ Սարգոնի ամրացուցած քաղաքները գետային կամ լեռնային անցքերու վրայ՝ գլխաւոր ճամբաներուն հսկող տեղեր էին։ Սանտալճեան արդէն այս հինգ քաղաքներէն երեքը — Անմուրու, Անդուարսալիա եւ Բուրդիր — նշանակած է իր քարտէսին վրայ՝ Արեւմտեան Եփրատի աջ ափունքը, Թեպանմատէնէն դէպի Թեմախի դիմացը։ Ֆորրէր կ'առաջարկէ Բուրդիրը նոյնացնել Զիմարայէն 7 քիլոմեթր հարաւ–արեւմուտք Փութէյրլու գիւղին հետ։ Ն. Ադոնց այս նոյնացման կ'առարկէ, բայց ըստ մեզ՝ անտեղի է առարկութիւնը։ Անմաուրու Թեպանմատէնի դիմացը Նամերլի կամ Էնմերլի գիւղին հետ կը նոյնացուի, եւ Կիակի շատ իրաւամբ կրնայ համեմատուիլ Թեպանմատէնի քիչ մը վարօք՝ Եփրատի աջ ափին վրայ հին Կիակա բերդաքաղաքին (այժմու Ջերմուկ գիւղը) հետ, որ հռովմէական ժամանակներուն լեգէոնի մը կայանն էր։ Ֆորրէր կ'ըսէ թէ Լուխզու կրնայ Տիվրիկէն դէպի Զարա ճամբուն վրայ ըլլալ. սակայն առարկելի է, որովհետեւ ինքը այդ ճամբուն վրայ կը դնէ արդէն Ելլիբիր եւ Շինդարարա տեղերը. իմ կարծիքովս՝ Լուխզու նոյն է Կանեչեան առեւտուրի, պողոտային վրայ Լուխուզատիա կայանին հետ (Delaporte, **Hittites**, p. 49) որ Կիւրինի եւ Մալաթիոյ միջեւ տեղ մը պիտի ըլլայ։ Ֆորրէր կը կարծէ թէ Ան–

դուարսալիա արդի Իզոլլի դիմացն էր. աս ալ առարկելի է, որովհետեւ այդտեղը Մալաթիոյ շրջանակին մէջ կ'իյնայ: Ըստ իս՝ Անդուարսալիա պէտք է համեմատել հռովմէական զինուորական ուղեգրութեանց յիշած Teukila կամ Theucira կայանին հետ, որուն դիրքը մօտաւորապէս Ակնայ (արդի Էկինի) դիրքին կը համապատասխանէ (Ramsay, **Hist. Geog.** of As. **Minor**, p. 275 and Mapopp. p. 266).

Ըստ Ֆորրէրի՝ Մուշկիներու դէմ ամրացուած քաղաքներէն Ուսի հաւասար է Chusa-յի՝ Գարսաւիրայի եւ Տիանայի մէջտեղ, այժմ Պարհիւյիւկ՝ Գըզըլըրմագ թափուող Թաթլար-Սու գետակի ականց վրայ. Ուսխանու=Ossana, այժմ Թուզքէօյ՝ Թաթլար-Սուի գետախառնուքին վրայ: Ֆորրէր եւ Ադոնց Վարգինի դիրքն անորոշ կը ձգեն, բայց ըստ մեզ՝ դասական Եւագինա եւ արդի Կէօնէ աւանին հետ պէտք է նոյնացնել, որ Եօզղատէն դէպի արեւելք տանող մեծ պողոտային երկճիւղած տեղն է: Այս կը ցուցնէ որ Խամմանու ընդարձակ Մարզպանութիւնը Ալիսի մեծ աղեղին ներսի կողմէն ալ խոշոր մաս մը կը բովանդակէր: Այս երեք բերդաքաղաքներու դիրքը փաստ մըն է որ Սարգոն Մուշկիներու եւ Սպիտակ Ասորւոց երկիրներէն մէյմէկ մասը կտրեր է Փռիւգիայէն. որով Կիլիկեան դռներէն մինչեւ Սինոպ երկարող առեւտրական պողոտային տէր ըլլալ կ'ուզէ Ասորեստան: Ուրեմն Խամմանու բռնած մարզպանութիւնը ահագին տարածութիւն ստացած է: Այսպէս, Սարգոնի զօրութիւնը հասած է մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը. սակայն քիչ յետոյ պիտի տեսնենք թէ նորահաս Կիմմերեան ոյժերը սահման կը դնեն անոր առջեւ ու Ասորեստանը յետս ընկրկման կը ստիպեն:

Ֆորրէր Կասկա բառով կ'ուզէ լրացնել Սարգոնի Տարեգրութեանց տող 194 պակսող անունը. ես խորհած եմ որ թերեւս Գիմիրրա (Կիմմերեանք) բառն աւելի հաւանական է. բայց կարելի է որ մեզի համար երկուքէն ալ աւելի շահեկան անուն մըն է հոս եղծուածը: Ըստ Ֆորրէրի Շինդարարա արդի Սինջարճ է Տիվրիկէն քիչ մը դէպի արեւմուտք, Զարայի ճամբուն վրայ. իսկ Ելլիբիր արդի Խալպուր անուն աւերակն է՝ Մալաթիայէ Սեբաստիա ճամբուն վրայ: Այս երկու նոյնացումներն ալ հաւանական են:

Այսպէս, Կամմանու կամ Խամմանու մարզպանութեան մեզի համար կարեւոր մասը, Տիւլգարիմմէի (Կիւրինի) նահանգը, հարաւէն կը սահմանուէր մօտաւորապէս Տարենտէէ սկսեալ Թոխմա-Սուով, արեւելքէն՝ Եփրատ գետով, հիւսիսէն՝ Ջալթա Ըրմագ գետով եւ արեւմուտքէն՝ Գըզըլ Ըրմագի վերին ընթացքով Շահրգըշլայէն մինչեւ Կէմէրէք: Ֆորրէր ինքն ալ կ'ընդունի թէ Տիվրիկ, Ակն եւ Արաբկիր մէջն էին Տիւլգարիմմու նահանգին: Այս երկիրը յաջորդող յիսուն վաթսուն տարիներուն մէջ մեր ուշադրութիւնը շատ պիտի գրաւէ Հայոց ազգի ծագման խնդիրի վերաբերմամբ:

Ն. Ք. 709-ին Սարգոնի զօրապետներէն Կուէի (Դաշտային Կիլիկիա) կուսակալը Կալիկադնոսի հովիտն ի վար արշաւանք մը ըրաւ եւ դժուարին

գաւառներ կտրել անցնելէն ետք հասաւ մինչեւ Պիսիդիոյ լճաշատ երկիրը, որ Փռիւգիոյ Թագաւորութեան հարաւային մասը կը կազմէր: Ասորեստանի Թագաւորն իր զօրավարին այս յաղթութեան կը վերագրէ միեւնոյն տարուան մէջ Մուշկեցի Միտայի (Փռիւգիոյ Միդաս Գ. Թագաւորին) իրեն հպատակութիւն առաջարկելը: Բայց գուցէ ուրիշ շարժառիթ մըն ալ կար անոր մէջ:

Երբ այսպէս, Կամմանու կամ Խամմանու մարզպանութեան կազմութենէն երկու երեք տարի վերջը «Մուշկիի Միտան» հարկ կը զգայ Ասորեստանի հետ հաշտուելու եւ անոր թեւարկող զինակցութիւնը խնդրելու, որո՞ւ դէմ էր այս: Հարկաւ ճիշդ այդ միջոցին (Ն. Ք. 710) Թրակիայէն մեկնող եւ Փոքր Ասիոյ վրայ խուժող նորահաս աղէտին, Կիմմեր–Տրերներու արշաւանքին դէմ պաշտպանուելու համար: Սարգոն կը բարեհաճի այս առաջարկը նըկատել իբրեւ հպատակութիւն, ինչ որ Ասորեստանեայց սովորական յոխորտանքն է միշտ: Բայց եւ այնպէս, կ'երեւի թէ Մուշկեցի Միտա, որ է Փռիւգիոյ Միդաս Գ. Թագաւորը, այս հաշտութեամբ իսկապէս կը ստանայ Խամմանու ընդարձակ երկրին ալ իշխանութիւնը փոխանորդաբար:

Տաբալուները Մուշկեցի Միտային հին զինակիցներն էին. սակայն Փռիւգիոյ Թագաւորին այսպէս Ասորեստանի թեւարկութեան տակ մտնելով Խամմանուի մարզպանութեան ալ տիրանալուն բարկացան եւ մեզի անծանօթ միջոցով մը զօրացած, գուցէ Ուրարտուի Արգիստիս Բ. Թագաւորին ալ դըրդումովը, յանկարծ ոտքի ելան, ապստամբեցան եւ հիւսիս արշաւելով՝ Տիլ-Գարիմմուի նահանգին ալ տիրացան: Այս միջոցին Ուրարտուի Թագաւորն ալ տակաւին իր երկրին հիւսիս–արեւմտեան կողմերը դեգերող Կիմմերեան հորդաները կը ստիպէ Եփրատէն արեւմուտք անցնելով Փոքր Ասիա դիմելու: Ասիկա նոր բարդութիւն մը եւ արտաքոյ կարգի ճգնաժամ մը կը ստեղծէ: Սարգոն, որ Ն. Ք. 707–ին Արգիստիս Բ.ի Նինուէի վրայ արշաւանքին սպառնալիքովը ետ կանչուած էր Պարսից ծոցի եզերքէն եւ Բաբելոնի գործերը կիսատ թողլով մայրաքաղաք աճապարելու ստիպուած էր, նոյն տարւոյ աշնան Կապադովկիա կը փութայ, եւ առժամն փրկեց Տիլ–Գարիմմէի (Կիւրինի) նահանգը բարբարոսաց գրաւումէն եւ Տաբալուներն ալ ետ դէպի հարաւ հրեց:

Սարգոն յաջորդ տարին Նինուէ անցաւ՝ թէ' Տիւր– Սարգինի (արդի Խորսապատի) իր նոր ապարանքի շինութեանը հսկելու, զոր աւարտեց ալ վերջապէս, եւ թէ անհրաժեշտ հանդիսով մը կազդուրուելու: Բայց ահա, Ն. Ք. 705–ին ստիպուեցաւ դարձեալ արշաւել «Կուլլումացի էշպայ» անուն հզօր ցեղապետի մը դէմ եւ ճակատամարտին մէջ սպաննուեցաւ: Օլմըսթէտ (Assyria, 267) կը կարծէ թէ «Կուլլումացի էշպայ» Կիմմերացի հրոսապետ մըն էր եւ թէ ճակատամարտը Մարաց երկրի Էլլիպ գաւառին մէջ (արդի Քիրմանշահի մօտերը) տեղի ունեցաւ: Սակայն Ն. Ադոնց (Histoire d'Arménie, p. 122, notice No. 1) Բաբելոնեան ժամա–

նակայրութեան մէկ տուեալին համաձայն կը մատնանշէ որ ճակատամարտը Տաբալի երկրին մէջ պատահեցաւ, եւ մենք ալ հիմա զայս աւելի հաւանական կը գտնենք: Փռիւգիա, Միդաս Դ.ի կամ անոր յաջորդին՝ Գորդիոս Դ.ի ներքեւ, մեծապէս օգտուած պիտի ըլլայ Սարգոնի սպանման յառաջ բերած խառնակ կացութենէն: Եւ արդէն Ֆորրէր, Լէյման-Հաուպտ, Ն. Ադոնց եւ ուրիշներ կ'ընդունին թէ Ք. Ա. Ը. դարու դէպի վերջերը Փռիւգիա յանկարծ մեծ ծաւալում մը ունեցաւ դէպի Եփրատի հովիտը:

*
**

Հոս հարկ է անդրադառնալ Հայոց ազգի ծագման խնդիրին, որուն վերեւ ակնարկեցինք: Մեր ազգը կրկնակ անուններ ունի՝ Հայ եւ Արմէն, առաջինը բնիկ անուն մը՝ սովորաբար ազգին անհատներուն կողմէն գործածուած. երկրորդը սովորաբար օտարներուն կողմէն կը գործածուի մեր ազգին եւ անոր անհատներուն համար: Շատ ջանքեր եղած են այս կրկնակ անուններու երեւոյթը բացատրելու համար, մանաւանդ ստուգաբանական ճամբով, բայց մինչեւ հիմա ոեւէ գոհացուցիչ արդիւնք չեն տուած այդ փորձերը:

Նորագոյն բեւեռագրական գիւտերը գեղեցիկ կերպով լուսաբանել կը թուին այս մութ խնդիրը՝ ցուցնելով թէ մեր ազգը կազմուած է երկու հիմնական տարրերէ կամ խաւերէ, ինչպէս արդէն կարգ մը օտար եւ ազգային գիտնականներ ենթադրած էին.

ա — տարրէ մը, որ արդէն Ք. Ա. ԺԵ. դարուն վերջերը մեծ պետութիւն մըն էր՝ գոնէ ամբողջ արեւմտեան Հայաստանը բռնող, Խայասա կամ Հայասա անուն, որ Խեթացւոց կամ Հաթեանց մեծ կայսրութեան հետ չափուելու աստիճան կարողութիւն ունէր: Հիմա ընդհանրապէս կը խորհուի թէ ազգին բնիկ եւ հարազատ Հայ անունը ժառանգ մնացած է սոյն Հայասայի ժողովուրդէն: Վերջերս ակադեմիկոս Գր. Ղափանցեան ռուսերէն լեզուով 287 էջնոց գիրք մը հրատարակած է (Երեւան, 1947), որ շատ օգտակար եւ թելադրիչ տեղեկութիւններ բովանդակել կը թուի, բայց դժբախտաբար ինծի անմատչելի է. անունն է «ՀԱՅԱՍԱ — ՀԱՅԵՐԻ ՕՐՐԱՆ», ինչպէս կը սորվինք Պրոֆ. Ա. Աբրահամեանի գրած քննադատական-գրախօսականէն՝ Սովետական Հայաստան թերթին մէջ (1949, թիւ 2, էջ 41—43): Հայասացիք Հայկական Բարձրավանդակին տիրած են Ուրարտացիներէն դարեր առաջ:

բ — Արմէն տարրէն, որ Ք. Ա. Է. դարուն նախ մտած կ'երեւի Ուրարտուի սահմաններուն մէջ, եւ Եփրատի արեւմտեան կողմէն գալով: Ու զարմանալի է որ մինչ հայ տարրին — Հայասացւոց — մասին մեր տեղեկութիւնը կը ստանանք Հայաստանէ շատ հեռու տեղէ մը, Փոքր-Ասիոյ կեդրոնական արեւմտեան մարզին մէջ Եոզղատի մօտ Պողազքէօյէն, ուրկէ պեղուած են հին Հաթեանց պետութեան արխիւները, միւս կողմէն Արմէն տարրին բնադաւառին մասին, որ բուն Հայաստանի սահմաններէն դուրս կը գտնուէր,

մեր տեղեկութիւնը կը ստանանք բնիկ հայ հողին վրայ, Տարօն գաւառին մէջ, Մշոյ մօտ, Թրմերտ գիւղը գտնուած բեւեռագիր արձանագրութենէ մը: Բայց ասիկա շատ բնական է՝ հին ժամանակաց պարագաները նկատի առնելով:

Թրմերտ գիւղի գերեզմանոցին մէջ գտնուած այս շահեկան արձանագրութիւնը Ուրարտուի հին թագաւորներէն Մենուասին կը պատկանի (Ք. Ա. շուրջ 810—785): Կոթողին յետսակողմը, որ ամբողջ ու անեղծ է, լոկ նըզովքի բանաձեւէ կը բաղկանայ: Յառաջակողմը, որ դժբախտաբար կտոր-կտոր եղած է, երկու կարեւոր բեկորներէն առաջինին մէջ կը գրուի թէ Մենուաս այդ իր արշաւած երկրին մէջ 400 աւաններ կողոպտելէ ետք, հրոյ ճարակ ըրած է, որոնց շարքին Կուլմէ եւ Էկարսու բերդաքաղաքները: Միւս կըտորին մէջ կ'ըսուի թէ ան ապա Ալաու երկրին վրայ, դէպի Ուրմենիուխի ժողովուրդը արշաւած է. Ալաու երկիրը կործանած, Ուրսայինի քաղաքի բնակչութիւնը կոտորած եւ Արմենիուխի երկիրը նուաճելէ ետք, զայն հողին հաւասարեցուցած է (Lehmann-Haupt, **Corpus Inscriptionum Chaldicorum**, No. 32, N. Adontz, **Histoire d'Arménie**, p. 153—4):

Լէյման-Հաուպտ անմիջապէս վճռեց թէ Ուրմենիուխի բառը հոս հայ ժողովուրդի Արմենեան անուան կը համապատասխանէ. եւ քանի որ արձանագրական Ուրարտու ձեւը Հին Կտակարանի Արարատ երկրին եւ Հերոդոտոսի Alarodii ժողովուրդին կը համապատասխանէ, յեղուական արգելք մը չկայ Urmeni եւ Armeni անունները նոյնացնելու:

Բայց ո՞ւր է Ուրմենիուխի ժողովուրդին բնակած Ալաու երկիրը: Լէյման-Հաուպտ խնդրոյն Փոքր Հայք (Armenia Minor) երկիրը մատնանշեց իբր այն: Իր մեծ աշխատութեան մէջ կ'ըսէ. «Ուրմենի (ուխի) տեղանունը կը յիշէ Մենուաս իր դէպի արեւմուտք արշաւանքին առթիւ...: Այս անունը քաջապէս կը համաձայնի Orminion անուան հետ եւ կրնայ՝ վերոյիշեալ մարտարշաւներու հասողութեան համեմատ բուն Հայաստանի անմիջական մօտաւորութեան մէջ գտնուող հանգրուաններէն մէկը նշանակել, այսինքն Ալիսի աղբերականց վրայ գտնուող Armenion լեռը: Ուրեմն Արմէններ Ք. Ա. Ը. դարուն սկիզբը հոս կը բնակէին» (**Armenien einst und jetzt, II**, p. 682):

Ուրմենիուխի ժողովուրդի բնավայրը Փոքր Հայքի մէջ փնտռելու կարծիքին ես ալ դարձած եմ գլխաւորապէս նկատի առնելով Թրմերտի արձանագրութեան մէջ Ուրմենիուխի անուան յարակցաբար յիշուած «Ուրսայինի քաղաք» եւ «Ալաու երկիր» անունները: Արդ, Ուրսայինի բոլորովին նոյն է Orsene անուան հետ, զոր Պտղոմէոս աշխարհագիրը կու տայ իբր մէկը Փոքր Հայքի հինգ բաժանումներուն, որու տեղը կ'որոշուի արդի Տիվրիկ աւանէն դէպի հիւսիս, եւ որու կեդրոնն եղող Orsa կամ Orsana քաղաքն ալ պիտի ըլլայ արդի Կուրճենիս գիւղաքաղաքին տեղը: Իսկ Ալաու երկրի անունը՝ հաթեան արձանագրութեանց «Հալիւս լեռներկիր» անուան պէս՝ կրնար Ալիւս (Գըզըլ Ըրմագ) գետի անուան հետ հաղորդակցութեան բերուիլ: Թրմերտի արձանագրութեան մէջ յիշուած Էկարսու բերդաքաղա-

քին անունը համեմատելի է Փոքր Հայքի նշանաւոր Carsagis կեդրոնին հետ, որ է արդի Մելիքշերիֆ գիւղաւանը․ իսկ արձանագրութեան Կուլմէ բերդաքաղաքին տեղն ալ կարելի է նոյնացնել Կուրճենիսէ աւելի հիւսիս՝ արդի Bardatchor =Բերդաճոր բնուածին հետ։ Ուստի Մենուաի յիշած Ուրմենիուխի ժողովուրդին բնակավայրը կը բաղկանար Պոնտական Գայլ գետի (Քելքիթ, Lycus) վերին ընդարձակ աւազանէն՝ բովանդակելով թերեւս մաս մըն ալ Ալիսի աղբերականց գաւառէն։ Ամբողջը խիստ բարեբեր երկիր մըն է այսօր ալ, եւ խիստ բազմամարդ էր հին ժամանակ։

Բայց ես հաւանական չեմ գտներ որ Ուրարտուի Թագաւորն «Ուրմենիուխի» ըսուած ժողովուրդին, այսինքն Արմէն տոհմերու բնակած երկրամասին ամբողջութիւնը նուաճեց, այլ թէ անոր մինչեւ հիւսիսային Փոքր Հայք՝ դէպի Երզնկա յառաջացեալ հատուածը միայն չօչափեց։ Ես կը խորհիմ թէ Արմէն տոհմերու մեծ զանգուածը տակաւին անկէ անդին՝ իր տարածուն բնակութիւնն ունէր Զելայի, հիւսիսային Կոմանայի, Նէո-Կեսարիոյ եւ Սեբաստիոյ մէջտեղի բարձր հովիտներուն մէջ ու լեռնադաշտերուն վրայ, քոչուորութեան վիճակի մէջ։ Ասոր փաստացոյցներն ուրիշ տեղ մանրամասնօրէն տուած եմ։ (Տես Պէյրութի ԱԶԴԱՐԱՐ շաբաթաթերթը, 1953, Յունուար 16 թիւը, էջ 10—1)։ Արմէն տոհմերը հոն խաղաղ կը բնակէին բարեկամ Կասկա ցեղերով շրջապատեալ, եւ ժամանակաւ անոնց Աբեշլի մեծ ժողովուրդին դէպի հարաւ՝ Կոմմագինէ գաղթելով պարապ ձգած երկրամասը գրաւած են։

Արդ, Ն․ Ք․ 750 թուականի առեններ Կիմմերացիք անուն հիւսիսային ժողովուրդը՝ հիւսիս-արեւելքէն յարձակող Սկիւթացի բարբարոսներէն յաղթուած, եւ հարաւային Ռուսիոյ մէջ իրենց բնակավայրերէն արտաքսուած, գաղթեցին հիւսիսային Փոքր Ասիա։ Մէկ մասը ուղղակի Խրիմի թերակղզիէն մեկնելով՝ նաւերով Սեւ ծովու վրայէն իջաւ ու գրաւեց Սինոպը․ երկրորդ մէկ մասը Կովկաս լեռներու վրայէն անցաւ մինչեւ Ուրարտուի հիւսիսային սահմանները եւ ապա ասոնց կարեւոր մէկ բազուկը Սեւ Ծովու եզերօք յառաջացաւ մինչեւ Թերմոտոնի բերանը (այժմու Չարշամպա Օվասը)․ երրորդ մէկ զանգուածը Դանուբի վրայէն յառաջացաւ մինչեւ Թրակիա, եւ այդտեղէն Տրերներու հզօր ցեղն ալ միասին առած, անցաւ Վոսփորը եւ մտաւ Փոքր Ասիա։ Այս վերջին զանգուածները Պոնտոս հասան Ն․ Ք․ 720 եւ 710 թուականներուն, եւ առաջին զանգուածին հետ միացած՝ սկսան յարձակիլ Փռիւգիոյ, Սպիտակ Ասորւոց եւ այլ երկիրներու վրայ։

Տարակոյս չկայ թէ Պոնտոս բնակող ընդարձակ Կասկա ցեղերը եւ անոնց մէջտեղ բնակող Արմէն տոհմերն ալ, արդէն Ն․ Ք․ 750—740 թուականներէն սկսեալ, իրենց կռնակէն, Սեւ ծովու եզերեայ մասերէն Կիմմերեան նորեկ բարբարոսներու յարձակումները կրելով, խախտեցան իրենց տեղերէն եւ մաս առ մաս անցնելով վերին Ալիսի ձորը, դիմեցին դէպի արեւմտեան

Եփրատի հովիտը: Հոս Մելիտինէէ հիւսիս՝ արդէն Կասկա երկիր էր, որով այս նոր գաղթողները բարի ընդունելութիւն գտան, եւ նորեկներով զօրացած ըլլալու արդիւնքն էր թերեւս որ Կամմանու կամ Խամմանու երկրին Կասկեան ծագումով թագաւորները, Դադիլու եւ Գունզինան, համարձակեցան Ասորեստանի թագաւորներուն դէմ պայքարիլ: Արդէն Ենսէն գերմանացին Գունզինանը նախապատմական հայ թագաւոր մը կը համարէր եւ անունն ալ Կունծիկ հայ անուան հետ կը համեմատէր (տես ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ 455 եւ ծան. 562—4): Եւ նշանակելի է որ Մարաշցիք հայերէն Թաթուլ անունը Թաթիլօ կ'արտասանեն, որ այնչափ մօտ կը հնչէ Դադիլու արձանագրական անուան: Ասկէ զատ, հաւանական է որ Խամմանու կամ Տիլ-Գարիմմու նահանգը պաշտպանելու համար Սարգոնի ամրացուցած Ուրարտական սահմանի հին քաղաքներէն Անմաւրուն այսպէս յառաջապահ եղած Արմէններուն հաստատուած կեդրոններէն մէկն էր նոյն իսկ արեւմտեան Եփրատի վրայ. այսինքն՝ Անմաւրու թերեւս Ամմաւրու կամ Արմաւրու հնչուած անուան մը ըստ լսողութեան վերարտադրութիւնն է, եւ այսպէս կրնայ Արմաւիր հայկական անուան նախաձեւն ըլլալ (անդ, էջ 563):

Վերոյիշեալ էջպայ հրոսապետը, որուն դէմ ճակատամարտին մէջ ըսպաննուեցաւ Սարգոն, կրնայ Կեմմերեան ըլլալ, բայց նոյնչափ եւ աւելի հաւանական է որ Կասկեան ու մինչեւ իսկ Արմէն ըլլայ: Արդ, Կուլլումացի կ'ըսուի Սարգոնի այս ախոյեանը, եւ Կուլլումա հաւանօրէն նոյն է Կուլմէ բերդաքաղաքին հետ, զոր վերեւ տեսանք իբրեւ Ուրմենիուխի երկրին պատկանող կամ անոր մօտակայ տեղ մը: Ասիկա ի՞նչ կը նշանակէ: Ամէն նշաններ կը ցուցնեն թէ երբ Զելա—Սեբաստիա շրջանակի լեռնագաւառներուն մէջ վաղուց ի վեր բնակող Արմէններու մեծ զանգուածը վերջապէս ստիպուեցաւ իր տեղէն շարժիլ, մի միակ ուղղութեամբ չգաղթեցին, հապա գոնէ երեք ուղղութեամբ: Մէկ կարեւոր բազմութիւն հարաւ-արեւելեան ուղղութեամբ գաղթեց դէպի Կիւրին եւ Մելիտինէ. երկրորդ մաս մը գուցէ Կեսարիոյ վրայէն դէպի Հաճնոյ կողմերը գաղթեց. բայց անշուշտ երրորդ եւ ամենակարեւոր մարմինը ուղղակի արեւելք գաղթեց Երզնկայի եւ Սատաղայի ուղղութեամբ: Բայց հոս երկու դժուարութեան բախեցան: Նախ Ուրարտուի պետութիւնը դեռ չափազանց զօրաւոր էր եւ զիրենք կ'արգիլէր Վերին Եփրատէն անդին անցնելու. երկրորդ, հոն արդէն Հայասացիներու մէկ հոծ մնացորդը կեդրոնացած կար, եւ աւելի նոր գաղթականներուն գալը երկրին սննդական կարողութիւնը կը սպառէր: Հետեւաբար, կ'երեւի թէ Կասկա-Արմէն գաղթականները որոշեցին սահմանագլուխէն հարաւ անցնելով, արշաւել Ասորեստանեայց հպատակ նահանգներուն վրայ:

Այսպէս կամ այնպէս, վերջապէս Արմէններու մեծ զանգուած մը հաստատուած պիտի ըլլայ ներկայիս Ուզունեայլա ըսուող ճարակաշատ լեռնադաշտին վրայ, որուն արեւելեան ստորոտը կը գտնուի արդի Կիւրին աւանը: Ասիկա կեդրոնն էր Տիլ-Գարիմմէի նահանգին, եւ արդի պատմագէտներ միա—

քան են սա կէտին վրայ թէ այս անունը Ասորեստանցւոց կողմէն ստուգաբանական աղաւաղում մըն է հին Հաթեանց ժամանակի Տիգարամա անուան (ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ 79, 89, N. Adontz, **Hist. d'Arménie**, p. 35 եւ 42), իսկ այս վերջինը աւելի եւս կը կչռի «Թորգոմայ Թոգարմայի Տուն» անուան հետ (ԵԶԵԿ. ԻԷ. 14), որ թէ՛ Բիւզանդ Փաւստոսի եւ ուրիշ հին հեղինակներու եւ թէ՛ Տէլիչի, Բակազինի եւ ուրիշ նոր պատմագէտներու կողմէն նոյնացուած է Արմէններու կամ Հայոց հետ:

Հոս ուրիշ երեւոյթ մը մեր ուշադրութիւնը կը գրաւէ: Պոնտոսի երկրին մէջ բնակող Կասկա ցեղերը եւ անոնց մէջտեղ տեղաւորուած Արմէն տոհմերը հաւանօրէն վարժուած էին վայելել Փռիւգիոյ թագաւորին հեռաւոր հովանաւորութիւնը. եւ հիմա երբ Փռիւգիա՝ Սարգոնի սպանումէն եւ անոր Փոքր Ասիոյ մէջ կազմած լայնատարած Խամմանուի մարզպանութեան փլուզումէն օգտուած, դէպի արեւելք կը տարածէր իր ոյժը, մինչեւ Եփրատ հասնելու որոշմամբ, կ'երեւի թէ Կասկաները, բայց մասնաւորապէս Արմէնները սիրով եւ ուրախութեամբ ողջունեցին Փռիւգացւոց գալուստը: Իմ կարծիքովս՝ Արմէններու «փռիւգիական» ծագման մասին Հերոդոտոսի քով պահուած աւանդութիւնը պէտք է այս իմաստով ըմբռնել:

Ուրեմն, Փոքր Ասիոյ մէջ Սարգոնի կազմած ընդարձակ մարզպանութիւնը տասը տարի անգամ չէ տեւած: Այլեւայլ արձանագրութիւններէ մակաբերելով կը գտնենք որ Ասորեստանցիք Մելիդդու քաղաքը իր անմիջական շրջակայքով տակաւին կը պահէին իրենց ձեռքը, բայց քանի որ Ուրարտու, Արգիստիս Բ.ի ներքեւ, վերստին տիրացած էր Խարբերդի նահանգին (ՆԱԽԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ, էջ 506, 510, N. Adontz, **Hist. d'Arménie**, p. 120), Ասորեստանցիք՝ Մալաթիա հասնելու համար ստիպուած էին Կոմմագինէի ճամբով եւ Արեւելեան Տաւրոսի կիրճերուն մէջէն արշաւել: Այսպէս, կը տեսնենք որ Արմէններ իրենց այս նոր բնակավայրին, այսինքն՝ Խամմանու երկրին մէջ՝ Տիլ-Գարիմմու (Կիւրին) կեդրոնով, կրնային ապահով ապրիլ փռիւգական իշխանութեան ներքեւ, եւ կ'երեւի թէ իրաց այս վիճակը տեւեր է մինչեւ Փռիւգիոյ թագաւորութեան անկումը (Ն. Ք. 676 կամ 674-ին):

Սարգոնի որդին ու յաջորդը Սանհերիբ կամ Սեննեքերիմ (705—681 Ն. Ք.) պատերազմներ ունեցաւ Դաշտային Կիլիկիոյ մէջ Սանդուարրի անուն իշխանի մը հետ, որ տէրն էր Կունդրու եւ Սիզու անուն երկու ամրոցներու, որոնցմէ առաջինը կը գտնուէր արդի Մերսինի հիւսիս-արեւմտեան կողմը, իսկ երկրորդը Կիլիկիոյ հանրածանօթ Սիս քաղաքն է: Սեննեքերիմ նուաճեց Տարսոն մայրաքաղաքն ալ եւ ձերբակալեց ու դերի տարաւ Սանդուարրին: Ապա Ն. Ք. 696-ին ճզմեց ապստամբութիւնն ալ Իլուբրու (Լամբրոն) բերդի իշխան Կիռուայի. եւ ասոր վրայ ինքզինք բաւական զօրաւոր զգաց Տաւրոս լեռներէն հիւսիս ալ արշաւելու: Սանհերիբ կը գրէ. «Խիլակկիի մարդիկը որ անտառապատ լեռներու վրայ կը բնակին, զէնքերուս ուժովը հնազանդեցու-

*ցի. անոնց քաղաքները քանդեցի, կործանեցի եւ հրոյ ճարակ ըրի:* Տիլ-Գարիմմու *քաղաքը՝ Տաբալի երկրին մէջ՝ նուաճեցի եւ անոր տեղն արօրադրուած գետնի վերածեցի»* (Nébi Junus Inscr. 17—19 *տողեր*)*: Վերջին նախադասութիւնը սուտ է, ինչպէս քիչ յետոյ պիտի տեսնենք, այսինքն՝ Ասորեստանի թագաւորը զուգէ Տիլ-Գարիմմուի առջեւ պարտուած՝ ամօթով վերադարձաւ:*

*Ինչպէս Սանհերիբի մէկ աղօթքն առ Արեգ աստուած, իր պաշտօնական արձանագրութեան ճիշդ հակառակը կը խօսի. եւ Ֆորրէր անկէ մակաբերելով, կը խորհի թէ Ն. Ք.* 705 *թուականին Սարգոնի դէպի արեւելեան Կապադովկիա փութալուն առիթ տուող դէպքն էր* Արմէն-Փռիւգներու *ներարշաւն իրենց հրամանատար* Գուրդիի *ներքեւ, որ Խիլակկու նահանգը (լեռնային Կիլիկիան) կտրած անցած ըլլալով, տեղաւորուեցան Տիլ-Գարիմմէի կամ Կամմանուի նահանգին մէջ՝ Անտիտաւրոսի ու Եփրատի մէջտեղ: Այս երկրէն անոնք վռնտեցին բնիկները, որոնք դէպի արեւմուտք քաշուելով Միջին Ալիւսի վրայ՝ իրենց անունով կոչուած Քամմանենէ երկրին մէջ նոր հայրենիք մը գտան: Իսկ Կամմանու երկիրն այնուհետեւ Արմենափռիւգներու պատճառաւ* ***Փոքր Հայք*** (Armenian Minor) *անունը ստացաւ: Այսպէս Ն. Ք.* 706 *թուականով մենք ճիշդ դարագլուխ մը կը գտնենք Արմէններու Փոքր Հայք ներգաղթին եւ հոն հաստատման* (**Die Provinzial-Einteilung des Assyrischen Reiches**, p. 81):

*Ֆորրէրը այսպէս խորհելու դրդող եղելութիւնը սա է.— Նոր գտնուած բեւեռագիր արձանագրութեան մը համեմատ, որ, ինչպէս ըսինք, առ Արեգ աստուած աղօթք մըն է, Սեննեքերիմ Ն. Ք.* 695 *թուականին, այսինքն՝ իբր թէ Տիլ-Գարիմմուն հիմնայատակ կործանելէն մէկ տարի ետքը, իր զօրավարներէն մէկը կը ղրկէ այդ միեւնոյն քաղաքին դէմ, ուր* Գուրդի *անուն իշխան մը ինքնիրեն համար թագաւորութիւն մը հիմներ էր, որը՝ Ֆորրէրի կարծիքով՝ արդէն բաւական տարիներէ ի վեր ալ հոն գոյութիւն ունէր: «Արդ, քանի որ Գուրդի միեւնոյն է Գորդիոս փռիւգական անուան հետ», կ՚ըսէ Ֆորրէր, «մենք հոս ունինք ամենահին նշմարն Արմէններու ներարշաւին, որ հին ու նոր հեղինակներու միաձայն վկայութեան համեմատ՝ ծագումով Փռիւգացւոց մէկ շառաւիղն էին»* (**Ibid, p. 80**) : *Ըստ Լէյման-Հաուպտի՝ արձանագրութեանս «Գուրդի»ն, Փռիւգիոյ ժամանակակից Գորդիոս թագաւորը չըլլալով հանդերձ, Փռիւգիոյ արքայական գերդաստանին պատկանող իշխան մըն էր: Պատմագէտս թէեւ պատրաստ չէ Ֆորրէրի հետ ընդունելու թէ Գուրդիի առաջնորդութեան տակ Կամմանուն նուաճող մարտիկներն անպատճառ Արմէններ էին, բայց եւ այնպէս ինքն ալ արձանագրական այս տուեալը նշանակելի կը գտնէ Արմէններու ներարշաւին վերաբերմամբ* (**Armenien**, II, 2. «Nachtrage 4. Birichtigungen, pp. 47—8) : *Ն. Ադոնց ալ միեւնոյն կարծիքէն է* (**Hist. d'Arm.**, p. 125 et notes 2 et 3; pp. 316, 320):

*Ֆորրէրի կարծիքը կարեւոր թելադրութիւններ եւ հաւանական իրա-*

կանութիւններ պարունակելով հանդերձ, քանի մը ճշգրտութեանց կը կարօտի.—

1. Մենք Լէյման–Հաուպտի սկզբնական կարծիքին հետ կ'ընդունինք թէ Արմէններ, գոնէ մասամբ, իբրեւ Ուրմենիուխի, արդէն Ն. Ք. շուրջ 800 թուականէն ի վեր բուն կամ Հիւսիսային Փոքր Հայքի, այսինքն Գայլ գետի վերին աւազանին մէջ էին: Ասոր կրնանք աւելցնել թէ այդ Արմէնները որ Ալասու երկրէն աւելի արեւմուտք կը բնակէին, անոնք ալ արդէն Սարգոնի գահակալելէն առաջ իսկ սկսած էին Վերին Ալիւսն անցնիլ եւ տեղաւորուիլ Փոքր Հայքի այն մասերուն մէջ որ Մելիտինէի աւելի մօտ կը գտնուէին: Բայց նախ 705–ին Ն. Ք. հիւսիսէն, բուն Փոքր Հայքի կողմէն էր հաւանօրէն որ Արմէնք, Կասկաներուն հետ, դէպի Տաբալու երկիրն արշաւեցին, եւ «Կուլլումայի էշպայ» ըսուած հրամանատարին ներքեւ, ու ոչ թէ Գուրդիի: Այս վերջինը, մեր կարծիքով, Ն. Ք. 700 թուականէն յետոյ կը յառաջանայ դէպի արեւելեան Կապադովկիա, ուր արդէն Արմէնները տեղւոյն վրայ էին, բայց զանոնք Գուրդի կրնար իր բանակին միացնել եւ անոնցմով տիրել Կիւրինի: Սա իրականութիւն է որ Սարգոնի մահէն յետոյ Կասկաներ բոլորովին կ'անհետանան Փոքր Ասիոյ հորիզոնէն եւ այնուհետեւ անոնց տեղը կը բռնեն Տաբալուները: Որո՞նք էին որ Կասկաները դէպի Կովկասիա քշեցին, չենք գիտեր. սակայն ինչ ալ ըլլայ ազդակը, ասիկա անպատճառ չի նշանակեր թէ Արմէններն ալ քաշուեցան այդ կողմերէն, այլ թէ անոնք այսուհետեւ կը զատուին Կասկաներէն: Բայց գուցէ չեն յարիր ալ Տաբալուներուն, հապա երբ արեւմուտքէն Փռիւգիացիք կը յառաջանան Գուրդիի առաջնորդութեան ներքեւ, Արմէններն անոնց կը յարին՝ վաղեմի յարաբերութեանց բերմամբ:

2. Քամմանենէ եւ Մորիմենէ տեղանուններուն դէպի արեւմուտք տեղափոխութիւնն ի՞նչ կը նշանակէ: Եթէ Ֆորրէրի ըսածին պէս՝ Արմէններն էին Քամանանի եւ Մարմուանի գաւառներու ժողովուրդները Մալաթիոյ մօտերէն դէպի հեռաւոր արեւմուտք քշողները, կրնայի՞ն միթէ Արմէններն ուղղակի արեւմուտքէն, Խիլակկուի վրայէն եկած ըլլալ. աւելի հաւանական չէ՞ որ Արմէնները հիւսիսէն հարաւ յարձակելով նախ Եփրատի եզերքները գրաւեցին, որով կրցան Մարմուանիներն ու Քամանանիները քշել դէպի Արեւմուտք: Ուրեմն, Ֆորրէրի այս ցուցումն իսկ աւելի կը յարմարի մեր մինչեւ այս տեղ մտանանչածին, թէ Արմէններու բնադաւառը Պոնտոսի մէջ էր՝ Փոքր Հայքի անմիջապէս կռնակը:

Վերոյիշեալ իրադարձութիւնները մեզի սա գաղափարը կը թելադրեն, թէ այդ դէպքերուն բերմամբ Փռիւգիացի երակէն ուժեղ պատուաստ մըն ալ եկած պիտի ըլլայ Արմէններու ցայսվայր խաղաղ ժողովուրդի արիւնին վրայ, որով ասոնք — «Թորգոմայ Տունը» — նոր կեանք մը սկսած են նուաճումի եւ ծաւալումի: Անոնք նաեւ իւրացուցած են երկրին բնիկ մէկ զբաղումը — արտածութեան համար ձիեր եւ ջորիներ բուծանել, նաեւ ձիավարութիւն: Ուէէ անպատեհութիւն չկայ ընդունելու թէ բարբարոսաց հինա–

հարուԹիւններէն փախչող ժողովուրդ մը նոր եւ քաջ առաջնորդներ ստանալով, յանկարծ ինքը սկսի յարձակողական ընԹացք մը. բոլոր հանդիտուԹիւններ աւոր ի դէպ են քան Թէ հակառակը: Եւ հարկաւ Արմենափռիւգները Կիւրինի տիրանալէն յետոյ՝ անմիջապէս աչք պիտի տնկէին անկէ ոչ հեռու Մելիդու հարուստ շահաստանին վրայ. եւ դայս ալ կ'ուսանինք Սանհերիբի ուրիշ մէկ աղօԹքէն առ Արեգ աստուած:

Բայց Մելիտիոյ պէս ոստանի մը, որ հատեան քաղաքակրԹուԹեան ամենամեծ կեդրոնը եղած էր, կորուստը հարկաւ շատ ցաւալի պիտի ըլլար Ասորեստանցւոց համար, որովհետեւ ան կ'իշխէր այդ միակ յարմար պողոտային վրայ որ Մաժաքէն դէպի արեւելք մինչեւ Եփրատ կ'երկարէր, եւ գետն ալ անցնելով Խարբերդի շրջանակին մէջէն մինչեւ Ամիդա եւ վերջապէս Նինուէ կը հասնէր: Հետեւաբար, կ'երեւի Թէ Ասորեստանցիք Կոմմագինէի վրայէն մեծ ճիգ մը ընելով Մելիտիան փրկեցին՝ զայն գրաւել ուզող Փռիւգ-Արմէններէն: Այս եղած ըլլալու է Սենեքերիմի իշխանուԹեան վախճանէն առաջ, որովհետեւ Սենեքերիմի սպանումէն յետոյ՝ Ասարհադոնի եւ իր հայրասպան եղբայրներուն միջեւ պատերազմը Ն. Ք. 681-ին եղած է Խանիգալբատի երկրին մէջ, որ Մելիտինէի նահանգն իսկ է:

Ոմանք կարծեր են Թէ Ասարհադոնի եղբայրները Կիմմերեաններէն օժանդակուԹիւն գտնելու յոյսով Խանիգալբատ — Մելիտինէ — դիմեցին. սակայն նորագոյն գիւտերու լոյսով պէտք չէ՞ ըսել որ անոնք աւելի հաւանօրէն Տիլ-ԳարիմմուԽԱրմենափռիւգներէն օգնուԹիւն կը սպասէին, որոնք շատ աւելի մօտ էին տեղւոյն. բայց կ'երեւի Թէ իրենց այս յոյսն ալ ի դերեւ ելաւ: Ասարհադոն Մելիդուի քով ճակատամարտին մէջ յաղԹական ելլելէ վերջը՝ իր պարտուած եղբայրները հալածեր է Եփրատն ի վեր մինչեւ Բիզանա կամ Բագանիս, որ ըստ Ռամսէյի ,Անի-Կամախի դիմացը կը գտնուէր: Այս դէպքը հարկաւ մեծ աղդարարուԹիւն մը պիտի ըլլար Արմէններուն, որոնք փորձով կը տեսնէին Թէ մեծ քաղաքներ մտնել եւ մանաւանդ Ասորեստանցւոց չափազանց մօտենալ վտանգաւոր է իրենց գոյուԹեան համար: Ուստի իմ կարծիքս այն է Թէ Արմէններն Ասարհադոնի արշաւանքի լուրն ստանալնուն պէս, Թողուցին Մելիդուի մօտ տեղերը եւ լեռնային տեղեր քաշուեցան:

Եւ աղէկ որ այսպէս ըրին. որովհետեւ երբ Ասարհադոն երեք տարի ետքը Ն. Ք. 678-ին Կիմմերիացի Տիուշպայի ճամբայ տուաւ որ Շուպրիայի վրայէն Փոքր Ասիա անցնի իր հորդայով, անշուշտ իր ծրագիրն էր այս բարբարոսներուն ձեռքով ճզմել Փռիւգիացիները, որոնք յամառօրէն դէպի Եփրատ կը յառաջանային: Եւ ապա երբ տեսաւ որ արեւելեան Կապադովկիոյ Փռիւգիացիք յաջողապէս կը դիմադրեն արշաւող Տիուշպային եւ անոր զինակիցներուն, հետեւեալ տարին Ն. Ք. 677 ինք անձամբ Խիլակկուի ճամբով արշաւեց Փոքր Ասիա՝ իբր Թէ բարբարոսները հալածելու կամ անոնց անցած տեղերու ժողովուրդներուն խլրտումները մարելու պատրուակով, բայց իրապէս Կիմմերիացիները մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը աղահով առաջնորդելու եւ

*այսպէս Փռիւգիոյ զօրութեան մահացու հարուածը տալու նպատակով (Հմմտ. Կոզեան, ՄԵԼԻԴ, էջ 25), եւ յաջորդող դէպքերը կը ցուցնեն թէ լաւ ալ յաջողեցաւ իր այս ծրագիրը:*

*Խիլակկուի վրայէն Ասարհադոնի բրած այս աւերիչ արշաւանքին եօթ-ւէն, երբ յաջորդ տարին Ն. Ք. 676 Տրերներ, Կիմմերիացիք եւ Սապարդացիք միանգամայն արեւմուտքէն, հիւսիսէն ու արեւելքէն խուժեցին Փռիւգիոյ վրայ, վերջապէս խորտակուեցաւ ասոր դիմադրական ոյժը: Յունական աւանդութիւնը կ'ըսէ թէ երբ Փռիւգիոյ թագաւորը Միդաս Դ. տեսաւ որ ազատում չկար վայրագ բարբարոսներու ձեռքէն, ցուլի արիւն խմելով ինքզինք թունաւորեց ու մեռաւ: Կիմմերիացիք Փռիւգիոյ թագաւորութիւնը կործանելէ յետոյ, ջարդեցին ու վռնտեցին ազնուական դասակարգը եւ ստրկութեան դատապարտեցին հասարակ ժողովուրդը:*

*Ասորեստանցիք Մելիտինէն փրկելու համար Փռիւգիան կործանել տուին, բայց չի կարծուիր թէ մեծ բան մը շահեցան: Կ'երեւի թէ Փռիւգիոյ վերապրած ազատանիէն ու գինուորականներէն նշանակելի մաս մը դէպի արեւելք փախչելով՝ Տիլ-Գարիմմուի շրջանակն ապաստանեցաւ: Ըստ Լէյման-Հաուպտի եւ Ն. Ադոնցի՝ Ուրարտուի Ռուսաս Բ. թագաւորին երկու արձանագրութիւնները դրական լոյս կու տան այս մասին: Արծկէի արձանագրութիւնը կը յիշէ այս թագաւորին մէկ ընդհարումը* Մուշկի, Խատէ, Խալիտու, *եւ այլ երկիրներէն եկած ժողովուրդներու հետ: Ասիկա պատահած ըլլալու է Ն. Ք. 674-էն ետքը եւ 670-էն առաջ: Լէյման-Հաուպտ այս յիշուած ժողովուրդները կործանուած Փռիւգիոյ թագաւորութենէն փախստականներ կը համարի. իսկ ըստ Ն. Ադոնցի, անոնք պարտուած Միդաս Դ.ի բանակին փըշրանքն են: Ըստ Լէյման-Հաուպտի՝ Ռուսաս ասոնց հանդիպեցաւ Եփրատի եզերքին վրայ. բայց թերեւս աւելի հաւանական է Ն. Ադոնցի գաղափարը թէ այդ ընդհարումը եղաւ Եփրատի ու Արծկէի մէջտեղ վայր մը, զոր օրինակ՝ Մաղկերտի բերդին մօտերը, ինչպէս այս բերդի մէջ Ռուսաս Բ.էն մնացած սեպագիր արձանագրութիւն մը ենթադրել կու տայ: Բայց ո'րն ալ ըլլայ, մեծ տարբերութիւն չ'ըներ: Երկու պատմագէտներս ալ կ'ընդունին թէ «Մուշկի» բառը հոս* Փռիւգիա *կը նշանակէ, եւ քիչ մըն ալ այս վերջին անուան ներքեւ* Արմէննեբը *միասին կը հասկնան: Ն. Ադոնց որոշ կը համարի թէ այս արշաւանքը Տիլ-Գարիմմուի (Կիւրինի) կողմէ կու գար եւ թէ արշաւողք արդէն ուրարտական հող թափանցած էին, իսկ ըստ Լէյման-Հաուպտի՝ թափանցելու կը ջանային: Բայց յամենայն դէպս Ռուսաս Բ. յաջողած է կասեցնել արշաւողներու այս թափանցումը եւ զանոնք ետ քշել Եփրատէն արեւմուտք: Կրնանք ընդունիլ թէ Միդաս Դ.ի այդ պարտուած բանակի մնացորդին մէջ Արմէններն ալ ներկայացուած էին. այնպէս որ Ռուսասի հետ ընդհարման այս դէպքը կրնանք նկատել իբրեւ Արմէններու առաջին յուրջ փորձը Եփրատէն արեւելք անցնելու, որ սակայն այս անգամ ձախողեցաւ:*

*Ի՞նչ եղաւ այս ընդհարման հետեւանքը: Գուցէ Փռիւգիացիք մեծ մա-*

սամբ նահանջեցին Ալիսի աղեղին ներսի կողմը։ Խալտիներ (Հալիզոնք) կ'երեւի թէ դէպի Կովկասիա մեկնեցան. բուն Մուշկիները (Մոսոք) թերեւս առժամապէս միացան իրենց ցեղակից Տաբալուներու հետ. իսկ Խատէները՝ այն ժողովուրդին հետ որ ապագային Կատաւոնացիք անունով ծանօթ պիտի ըլլար։ Գալով Արմէններուն, կ'երեւի թէ կրկնուած դառն փորձառութիւններ անոնց սորվեցուցին թէ ապահովագոյն կերպն էր իրենք իրենց մէջ ամփոփուիլ եւ բուն Փոքր Հայքի մէջ կեդրոնանալ՝ Երզնկայի ետեւը, Սատաղա եւ այլ վայրեր։ Գրեթէ քառորդ դար վերջը, արդէն Հայասացւոց մնացորդին հետ ալ միացած, ուրեմն Հայ-Արմէն ժողովուրդը, աւելի դիւրին գտան Եկեղեաց գաւառէն մտնել Ուրարտուի հողերը. քանի որ Երզնկայի դաշտաձեւ հովիտը բնական դուռ մը կը ներկայացնէ հայկական բարձրավանդակը մըտնելու եւ քանի որ մինչեւ Ն. Ք. 650 թուականը Խալդ-Ուրարտեան պետութիւնն այնչափ տկարացած էր որ չկրցաւ դիմադրել։

*
**

Ի՞նչ եղաւ Գուրդիի հիմնած Տիլ-Գարիմմուի թագաւորութիւնը։ Ն. Ադոնց կ'ըսէ թէ Գուրդիի հիմնած այս թագաւորութիւնը վաղանցուկ բան մը չէր, մնայուն էր (**Histoire d'Arménie**, p. 316—7)։ Մենք կ'ըսենք թէ անիկա, գոնէ իբրեւ փռիւգական հիմնարկութիւն, մինչեւ Փռիւգիոյ պետութեան անկումը միայն, կամ առ առաւելն մինչեւ Ն. Ք. 670 թուականը կըրնար շարունակել, որովհետեւ Ասորեստանցւոց արձանագրութեանց մէջ, այդ թուականէն յետոյ այլեւս Տաբալուներու թագաւորներ կը յիշուին Կիւրինի եւ Մալաթիոյ կողմերը։

Այսպէս, Ասարհադոնի վերջին տարիներուն — շուրջ 670—668 — յանկարծ Մուգալլու անուն մէկը իր բանակով կ'երեւնայ Մելիդիոյ առջեւ, եւ Ասորեստանի ինքնակալը այս պատահարը իր աստուծոյն տեղեկացնել փութալով, անձկանօք կը հարցնէ թէ Նինուէէն ճամբայ հանուած բանակը պիտի կրնա՞յ արդեօք Մուգալլուն ստիպել որ Մելիդիոյ պաշարումը վերցնէ։ Սակայն կ'երեւի թէ Ասորեստանցիք չյաջողեցան քաղաքը փրկել, որովհետեւ յաջորդ պատգամախօսութեան մէջ «Մելիտինեցի» տիտղոսը կը տրուի Մուգալլուին։ (Olmstead, **Assyria,** p. 419, Winckler, **Babylonia and Assyria,** p. 267)։ Ահա քիչ յետոյ կը գտնենք որ Մելիտինեցի Մուգալլուն զինակցեր է Տաբալի թագաւոր Իշգալլուին հետ՝ Իշտի'արու քաղաքին դէմ, որ հաւանօրէն Սեբաստիայէն հարաւ արդի Շահր-Գըշլա տեղով կը ներկայացուի։ Սակայն Իշգալլու, որ հաւանօրէն յունական աւանդութեան մէջ յիշուած Սկղոպիտոս արկածախնդիր Սկիւթացին է, շատ չանցած կ'անհետանայ եւ Մուգալլու ինքը «Տաբալի թագաւոր» կ'անուանուի՝ երեւութապէս առանց Մելիտինէէն կորսնցնելու։ Այս Տաբալ բառով հոս անշուշտ Տիլ-Գարիմմուի — Կիւրինի — նահանգը կ'իմացուի՝ ինչպէս արդէն

Սենեքերիմի արձանագրութեան մէջ։ Մեր տեսութեամբ, այս Մուգալլուի թագաւորութիւնը նշանակելի կերպով ընդարձակ էր, թերեւս Ալիսի աղբերականց հետ բուն Իրիսի աղբերականց գաւառն ալ բովանդակելու չափ։ Յիշենք որ Ենսէն շատոնց սա կարծիքը յայտնած էր թէ մենք նորէն վաղեմի հայ թագաւոր մը տեսնելու ենք Մուգալլուին մէջ, եւ անոր անունն ալ հայերէնով մեկնելու կը ջանար։ Մեր կարծիքով Իշգալլուի Սկիւթացի եւ Մուգալլուի Տաբալցի ըլլալը արգելք մը չէ որ անոնք իրապէս ժամանակ մը Արմէններու վրայ իշխած ըլլան։

Բայց մի քանի տարի վերջը, անկէ յետոյ է որ Լիւդիոյ Գիւգէս թագաւորը Ասորեստանի նոր գահակալին՝ Ասուրբանիպալի դեսպանութիւն մը ղրկած է, այսպէս Ն. Ք. 664–էն յետոյ կամ 660–ի ատենները, կը տեսնենք որ Տաբալի եւ Մելիտինէի թագաւորը Մուգալլու յանկարծ որոշած է հաշտուիլ Նինուէի վեհապետին հետ, եւ իր ղրկած ընծային կամ տուրքին մէջ կարեւոր տեղ կը բռնեն Կապադովկիոյ կամ «Թոգարմայի Տան» նշանաւոր ձիերը (Olmstead, **Assyria**, p. 419—420)։ Ահա այս մասին Ասուրբանիպալի գրածը. «Մուգալլու, Տուբալի թագաւորը, որ անմատչելի լերանց վրայ կը բնակէր եւ իմ թագաւոր հայրերուս դէմ պատերազմներ մղած էր, իր երանքէն սերած իր մէկ դուստրը Նինուէ բերաւ ինծի երկրորդական կին ըլլալու, մեծահարուստ հարսանեկան օժիտով մը, եւ իմ ոտքերս պագաւ։ Ես Մուգալլուին պարտադրեցի իբրեւ տարեկան հարկ խոշոր ձիեր ղրկել» (Rassam Cylinder, տողեր 68–74. հմմտ. Taylor Cylinder, Rev. 22 ff.)։

Ի՞նչ եղաւ Մուգալլու թագաւորին վախճանը. չենք գիտեր։ Կ'երեւի թէ անոր մահէն ետք, եթէ ոչ առաջ իսկ, Մալաթիա նորէն Ասորեստանեայց նահանգ դարձաւ, եւ այսպէս շարունակեց մինչեւ Ք. Ա. 620 թուականները։ Այս միջոցին Կիմմերեանները Լիւդիայէն արտաքսուած, դէպի արեւելք դարձած էին։ Ն. Ք. 650–ին ատեններն էր որ Տրերներ զատուեցան բուն Կիմմերներէն, որովհետեւ կ'ուզէին ուղղակի դէպի արեւելք զարնել մինչեւ Եփրատի վերին ջուրերը. բայց Կիմմերներուն թագաւորը Լիւգդամիս (Ասուր. Tugdammi) կ'ուզէր Տաւրոսեան դռներէն դաշտային Կիլիկիա իջնել եւ անկէ արշաւել Սիւրիա, ուր կը յուսար ճոխ աւար գտնել իր հորդաներուն համար։

Բայց դեռ Կիլիկիա չիջած՝ Տաւրոսի կիրճերուն մէջ իր դէմն ելաւ իր զօրքէն խիստ գերազանց Ասորեստանցւոց բանակ մը, որուն հետ պատերազմի մէջ սպանուեցաւ Լիւգդամիս (Ք. Ա. 645)։ Անոր որդին Սանդախշատրա այս պատահարէն վերապրող Կիմմերները Տաւրոսի կիրճերէն ետ հանեց դէպի Փոքր Ասիոյ կեդրոնը։ Վերջապէս Կիմմերեանք կամ Գամիրք կ'երեւի թէ ամենէն աւելի կեդրոնացան Ալիս գետի մեծ աղեղին ներսը՝ այժմու Եոզղատի կողմերը։ Հաւանօրէն Սանդախշատրայի յաջորդն էր Տրերեան ծագումով Կոբոս, որու մասին Ստրաբոնի ըրած յիշատակութիւններէն յայտնի է որ անիկա իր անգութ հարստահարութիւններովը մեծ սարսափ ձգած է Փոքր Ա-

ափոյ բոլոր կողմերը. որով իր անունը Լենկթիմուրի մը սոսկալի նմանութիւնը կը կրէ հին յունական աւանդութեան մէջ։ Բայց վերջապէս Կոբոս իր հաբըստահարութեանց արժանի պատիժը գտաւ։

Տեսանք թէ արդէն Ք. Ա. 670 թուականներուն Սկիւթացի կամ Սակեան բախտախնդիրներ թափանցեր էին մինչեւ Փոքր Ասիա եւ հասած մինչեւ Թերմոդոնի հովիտը, որով կ'երեւի թէ հիներ Իռիս կամ Գայլ գետը կը հասկընային։ Հոս Կիմմերիացիք եւ Սկիւթացիք պայքարիլ սկսան եւ այնպէս կը թուի թէ ի սկզբան, առաջին ընդհարմանց մէջ, Սկիւթացիք պարտուեցան, մանաւանդ Կիմմեր–Տրերներու թագաւոր Կոբոսէն։ Սկիւթացիք Ք. Ա. 620–ի ատենները ստիպուեցան ետ քաշուիլ ետքէն Փոքր Հայք ըսուած երկիրը եւ լուր ղրկեցին Իրանի Սկիւթացւոց մեծ թագաւորին Մադիէսի։ Այդ հզօր յաղթականը փութաց իր Փոքր Ասիոյ ցեղակիցներուն օգնութեան. այս անգամ Կիմմերիացիք յաղթուեցան Ջելայի քով, եւ Կոբոս ալ գերի ինկաւ Մադիէսի ձեռքը, որ քիչ յետոյ զանի մեռցուց։

Կ'երեւի թէ այս բախումներուն միջոցին Սկիւթացւոց կեդրոնացած վայրն էր Մելիտինէ, եւ գուցէ այս վերիվայրումներուն առիթով էր որ ամենահին Մալաթիան կործանեցաւ։ Գոնէ պեղումներու փաստը դէպի այս թուականը կը մատնանշէ այդ կործանումը։ Ինչ որ է, Կոբոսի սպանումէն ետք՝ կերպով մը համաձայնութիւն գոյացաւ մարտնչող երկու բարբարոս ժողովուրդներուն մէջ, ու Կիմմերեանք իբրեւ ճորտեր Սկիւթացւոց՝ միացան անոնց հրոսակային արշաւանքներուն։ Մադիէս արեւմուտքի մէջ իրեն փոխանորդ թողլով Իդանթիւրսոս անուն սկիւթացի պետ մը՝ վերադարձաւ արեւելք։ Հերոդոտոսի քով պահուած աւանդութեան համեմատ՝ միացեալ բարբարոս հորդաներն ապա Իդանթիւրսոսի առաջնորդութեամբ՝ Մելիտինէէ սկսեալ ասպատակեցին Ասորեստանեայց նահանգները մինչեւ Եգիպտոսի սահմանագլուխը, ուր հասած կ'երեւին Ն. Ք. 615–ի ատենները։ Իսկ անկէ մի քանի տարի վերջը Ն. Ք. 612–ին Նինուէ ինկաւ Բաբելացւոց ու Մեդացւոց (Մարաց) միացեալ յարձակման առջեւ, որուն հետեւեցաւ Ասորեստանեայց պետութեան կործանումը (Ն. Ք. 607 կամ 606–ին)։ Իսկ մինչեւ այն ատեն Հայ–Արմէնք արդէն իրենց գրաւման անցուցած էին Ուրարտուի երկիրներուն մեծագոյն մասը։

Այսպէս վերջացած կրնանք համարել Հատեան Մալաթիոյ պատմութիւնը։

## Զ.

# ՀԱՏԵԱՆ ՄԱԼԱԹԻՈՅ ՄՇԱԿՈՅԹԸ

ՄԱԼԱԹԻՈՅ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ.— *Հոս կը վերարտադրենք հաղորդակցութիւն մը Հալէպի* Revue Archéologique Syrienne *պարբերականէն* Tome II, fascicules 9—10: Novembre—Décembre, 1932, Alep, p. 101) *Մ. Լուի Տըլափորթէ՝ պեղումներուն մասին, զոր ինքը ստանձնած էր կատարել Փոքր Ասիոյ մէջ Մալաթիոյ մօտ* Արսլանթեփէի *աւերակներուն մէջ: — Արսլանթեփէ Մալաթիոյ բուն դիրքն է՝ ամենէն ուշը շուրջ Ք. Ա.* 2500-*ին հիմնուած եւ Ասորեստանեայց պետութեան կործանումէն եաք իր բնակիչներուն կողմէն թողլքուած, որոնք քիչ մը դէպի հիւսիս տեղափոխուեցան եւ ստեղծեցին այն ատենուան Մալաթիան (հմմտ. վերեւ՝ էջ* 11—12)*: Պեղումներու սկսելէն աւելի քան* 50 *տարի առաջ հոն Արսլանթեփէ պատահաբար գտնուած են խորաքանդակներ, որոնց ամենահին ծանօթները վաճառականի մը կողմէն Ֆրանսա տարուած ըլլալով, հիմա Լուվրի մէջ են:* [Garstong *մինչեւ իր ժամանակը յայտնուած բոլոր հաթեան հնութիւնները նկարագրած է իր* **Land of the Hittites** *պատկերազարդ գիրքին մէջ*]:

*Մ. Տըլափորթի պեղումները տեղի ունեցած են աւերակի բարձրագոյն մասին մէջ: Ինքը հոն, դէպի հարաւը գտած է Ասորեստանեայց շրջանին պատկանող քաղաքին մնացորդները, եւ դէպի հիւսիսը՝ վարի կառուցուածքները քրիստ. ԺԴ. դարէն մնացած Թրքական պալատի մը: Սոյն Թրքական կառուցուածքին անմիջապէս տակը կան խեթական պալատի մը մնացորդները, որոնց հիւսիսային մասը միայն պեղուած է դեռ: Քարաշէն պատերը եւ զաւիթներուն սալայատակները լաւ վիճակի մէջ են եւ յուշարձանին մուտքի դուռը, աշտարակներով ամրարտակուած* (flanquée)*. որոնց գլուխները բոլորակաձեւ քանդակուած՝ դէպի առաջ կը զատուին, զարդարուած է* Սուլումիլի *անուն Թագաւորի մը մեհենագիրը կրող հարթաքանդակ պատկերներով: Այս իշխանը չորս անգամ ներկայացուած է եւ ամէն անգամին նա գինեձօնք* (libation) *կը մատուցանէ տարբեր աստուածութեան մը, — Լուսնի դից, Մելիտինէի Տեչուբ դից, եւայլն: Մէկ անգամին Թագուհին ալ կ'ընկերանայ կրօնական արարողութեան եւ գինեձօնքը կը մատուցանէ Արեւու դիցուհւոյն. ասիկա պատկերով հաստատութիւն կու տայ կրօնական բնագիրներուն ըսածին, որոնք մեր ձեռքը հասած են:*

*Այս պալատի նախադաւիթին մէջ, մօտ այն պատուանդանին, որուն վրայ անիկա հին ատեն կանգնուած էր, նախաքրիստ. Թ. դարու Թագաւորի մը վիթխարի արձանը գտնուած է գերեզմանի մը մէջ, ուր ան բարեպաշտօրէն*

թաղուած պահուած էր։ Այս իշխանը որդեգրած էր Ասորեստանցւոց ոլորահիւս երկայն խոպոպիկը, որ այդ շրջանին կը պարտադրուէր այն երկրին վրայ դերիշխող վեհապետին կողմէն։

ՆՈՐ-ՀԱՏԵԱՆ ՄՇԱԿՈՅԹԸ.— Հոս հարկ կը սեպենք ընդհանուր ակնարկ մը նետելու «Հատեան» (Hittite) կամ «Նոր-Հատեան» (Néo-Hittite) ըսուած քաղաքակրթութեան վրայ։ «Նոր-Հատեան» ըսուած գեղարուեստական ոճը Ն. Ք. 1250-ի առեններէն կը սկսի Մալդիյայի (Մալաթիոյ) մէջ, բայց անոր ծագման պատճառներն ու ազդակները մեզի անծանօթ կը մնան առ այժմ։ «Հաթեանց երկրին մէջ պեղումներու գլխաւոր շահեկանութիւնը յայնմ կը կայանայ», կ'ըսէ Մարսէլ Պրիոն, «որ իւրաքանչիւր գիրք տարբեր խնդիր մը կը ներկայացնէ, առանց ամէն անգամ փափաքուած լուծումը բերելու։ Ասիկա կը ծագի անկէ որ մենք Հաթեանները կը ճանչնանք լոկ իրենց պատմական գոյութեան մէկ մասին մէջ... եւ այս ալ այն մասն է, երբ Հաթեան քաղաքակրթութիւնն արդէն ամբողջապէս կազմուած է իր հիմնական յատկանիշներով, առանց որ մենք կարող ըլլանք իմանալու այդ երկար ուղեւորութիւնը որ զայն մինչեւ այդ տեղ հասուցած է» (Marcel Brion, La **Résurrection des villes mortes**, p. 264)։

«Նոր-Հատեան» գեղարուեստը կը բաղկանայ կարգ մը իւրայատուկ ճարտարութեամբ շէնքերէ,— գլխաւորապէս պալատներ, անոնց կցեալ մեհեաններով, եւայլն։ Ասոնց պատերուն վրայ, մասնաւորապէս գետնի մօտի շարքերուն երեսը ագուցուած սալաքարերուն վրայ, ինչպէս նաեւ բնական ապառաժներու երեսը, հարթաքանդակ պատկերներ փորուած են, որոնք գըլխաւորապէս կրօնական ծէսերու տեսարաններ կ'ընծայեն, բայց նաեւ որսորդութեան, ընտանեկան կեանքի, խնճոյքներու եւ նման եղելութեանց պատկերները։

Հարթաքանդակները սովորաբար ընկերացուած են արձանագրութիւններով ալ, եգիպտականէն բոլորովին տարբեր մեհենագրական (hieroglyphic) դրութիւնով մը գրուած, որ վերջին 80 կամ աւելի տարիներու միջոցին՝ ամենասուր եւ փորձառու հնագէտ-լեզուագէտներու կողմէն եղած յամառ ու անխոնջ ջանքերուն հակառակ, դեռ գոհացուցիչ կերպով վերծանուած չեն։ Բայց քննողներուն մեծամասնութեան համոզումը սա է թէ արձանագրութիւններն ալ առ հասարակ կրօնական բովանդակութիւն ունին, եւ ոչ թէ որոշ կերպով յաղթանակի յիշատակարաններ են։

ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ.— Ինչպէս ըսինք, Արսլանթեփէի մէջ, Մելիդիայի դիրքին վրայ, Մ. Տըլափորթի ձեռքով յառաջ տարուած պեղումները ցոյց տուած են նախաքրիստոնէական Գ. հազարամեակի դէպի մէջտեղերը հիմնուած եւ ապա տակաւին բոլորովին չլուսաբանուած պատճառով մը իր բնակչաց կողմէ լքուած քաղաք մը։ Մ. Տըլափորթ այս աւերակներու մէջ ճանչցած է Սուլումիլի թագաւորին պալատը, որուն դրանդիները զարդա-

*րուած էին առիւծներով եւ Թագաւորն ու Թագուհին Տեչուբ աստուծոյն զոհ մատուցանելու վրայ պատկերացնող հարթաքանդակներով, որոնք լաւ վիճակի մէջ պահպանուած են: Ի՞նչ է այս գեղարուեստին ծագումը: Իմ կարծիքովս՝ իր սկիզբով Սումեր–Աքքատեան ազդեցութիւն մըն է անիկա, որ մէկ կողմէն ուղղակի փոխանցուած է Ասորեստանցւոց, իսկ միւս կողմէն՝* Հուրրեան *միջնորդութեամբ՝ Մալդիյայի ու մինչեւ հեռաւոր Խօյիւք իսկ: Նոյնը ճշմարիտ է նաեւ Կարքեմիշի եւ նման տեղերու գեղարուեստին համար: Մալդիյայի մէջ՝ Սուլումիլի ապարանքին վրայ՝ Ասորեստանեայց ազդեցութիւն ալ տեսնուած կը կարծուի, մանաւանդ տեսարաններուն բաղադրութեան մէջ, բայց եւ այնպէս կ՚ընդունուի թէ արուեստին գործադրութիւնը տարբեր կը մնայ:*

*Ըստ Պրիոնի, պատկերներուն կաղապարումը մթագգած է եւ կորովի կերպով արտայայտիչ ուժականութիւն մը ունի: Հարթաքանդակներուն վրայ պատկերացուած տեսարանները իրական կեանքի եղելութիւններ են ամենամեծ մասամբ եւ այսպէս օգտակար լուսաբանութիւններ կը հայթայթեն արարողութեանց, բարքերուն եւ տարազներուն վրայ՝ Հաթեան կայսրութեան այս մարզին մէջ, որ Անատոլեան ազդեցութեան ենթարկուած կ՚երեւի:*

*Ամենէն հետաքրքրականը, եւ թէ՛ գեղարուեստական արժէքով, թէ՛ գրաւոր բնագիրը լուսաբանելու մասին մեզի ներկայացուած չահեկանութեամբը, ա՛յն է որ մեծ աստուածը կը տեսնենք* Իլլույանկա *վիշապը սպաննելու վրայ, փոթորիկի մը մէջ, որ սարսափելի աստուածութեան էութիւնը կը բացատրէ մեզի, իբր Ամպրոպի ոգին կամ տարերային ուժերու որ մարդուն մէջ չղթայազերծուած են* (Marcel Brion, **La Résurrection des villes mortes,** p. 264):

*Ըստ նոյնինքն Տըլափորթի, Նոր Հաթեանք որոնց ամենագլխաւոր կեդրոնն էր Մալաթիա, շարունակած են Հաթեան մեծ կայսրութեան օրով Փոքր Ասիոյ կեդրոնին մէջ սկսած գեղարուեստական շարժումը եւ նշանակելի յուշարձաններ արտադրած՝ ճարտարապետութեան եւ քանդակագործութեան մարզերուն մէջ: Նոր Հաթեանց երկիրներուն մէջ շինարուեստը նախապէս մեզի ծանօթացուցած էին Կարքեմիշի, Զէնճիրլիի եւ Սաքչէկէօզիւի պեղուած պարիսպներն ու պալատները: Հիմա կարելի է անոնց վրայ աւելցնել Մալդիյայի (Մալաթիոյ) վաղեմի պալատին վրայ նախաքրիստոնէական Ը. դարուն կատարուած վերձեռնումները: Քարէ հիմերու վրայ կը բարձրանան պատեր, ուր անթուրծ, տափակ ու լայն աղիւսներու շարքեր եւ փայտէ հեծաններու շարքեր հերթովի հիւսուած են: Ինչպէս մինչեւ ներկայ օրս Արեւելքի բազմաթիւ վայրերուն մէջ, նոյնպէս ԺԳ. դարուն (Ն. Ք.) Մալդիոյ մէջ կը գտնենք միեւնոյն կառուցուածքին մէջ փոխնիփոխ գործածութիւնը քարի, աղիւսի ու փայտի: Պատերը դրսուանց հաւասարեցուած, հարթուած եւ մէկ մակարդակի վերածուած են: Ներսուանց սենեակներու յատակը երբեմն ցեխաշաղախով ծեփուած են, երբեմն ալ թրծեալ քառակուսի կղմինտրներով սալայատակուած: Ընդարձակ սրահներու եւ դահլիճներու, ինչպէս նաեւ*

դրանդիներու ամբողջ առաստաղը վեր բռնելու համար դրուած են տաշեալ փայտէ սիւներ կամ գերաններ, որոնք սովորաբար քարէ խարիսխներ կամ պատուանդաններ ունին՝ առաւել կամ նուազ քանդակազարդ։

Ճարտարապետութեան մէջ աղիւսի գործածութիւնը շատ հաւանական է որ Հաթեանք Միջագետքէն սորվեցան։ Բայց ընդհանուր առմամբ՝ շինութեան ոճը նման է Եգէական ոճին։ Պարիսպներուն յատակը հորիզոնական դիրքով դրուած հեծաններու գործածութեան եղանակին դեռ մինչեւ այսօր կը հանդիպինք եւրոպական ցամաքին վրայ։ Ք. Ա. ԺԼ. դարուն կառուցուած Հաթեան պալատներու մէջ արդէն որմանկարներ (fresques) դրուած են սրահներու որմերուն վարի մասին վրայ. նոյն դարու հաթեան պալատներու որմերուն վարի քարաշարները նաեւ կը կրեն փորագրուած զարդեր իրենց վրայ։ Մինչդեռ Միջագետքի մէջ չենք հանդիպիր նման արուեստի, մինչեւ այն օրը՝ երբ Ասորեստանցիք կը սկսին հետեւիլ Հաթեան ոճին եւ որմերուն ստորոտը կը զետեղեն փորագրուած սալաքարեր (plaques) Մալդիյայի մէջ, Ք. Ա. ԺԳ. դարուն, շէնքերու մէջ դրուելիք փորագրուած խոշոր քարերը մարդու հասակի չափ են։ Դարձեալ Հաթեանց կը պարտինք քաղաքներու եւ Պալատներու դրանց մուտքը իրական կամ երեւակայական էակներ ներկայացնող կոթողներ դնելու սովորութիւնը։ Ասորեստանցիք ու Աքեմենեան Պարսիկները առնցմէ պիտի փոխ առնէին այդ զարդարուեստը, բայց ոչ թէ ուղղակի կերպով, այլ Նոր-Հաթեանց միջնորդութեամբը։ Ինչպէս արդէն յիշեցինք, շինութեանց մէջ կիրարկուած հաթեան այս ոճը նոյնութեամբ կը տեսնուի թէ՛ Մալդիյայի եւ թէ Հիւսիսային Սուրիոյ Նոր-հաթեան բոլոր քաղաքներուն մէջ։ «Առիւծներու դուռն» ու տաճարին դուռը գրեթէ նոյնաձեւ են. իսկ «Սփինքսներու» դրան վրան ու շուրջը կը տեսնուին փորագրական զարդեր։ Մուտքի ամենէն աչքառու զարդերը կը կազմեն զոյգ առիւծները՝ մարդու հասակով, որոնք դրուած են սեմէն վեր քանի մը քարէ աստիճաններու վրայ։ (Քաղուած Delaporte, **Les Hittites,** pp. 327—331-էն. Հմմտ. Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան, ՍՈՒՐԻԱ, էջ 539—577)։

ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ.— Նոր-Հաթեանք իրենց քանդակները կը դնեն քաղաքներու եւ պալատներու դրանդիներուն, պատերուն, սիւներու պատուանդաններուն վրայ, նաեւ կոթողներու վրայ եւ ժայռերու կուշտին։

Սիւներու պատուանդանները բոլորշի եւ հաստ բարձիկներ են, եւ անտարակոյս նախատիպը կը կազմեն հելլէններու յոնիական սիւնի պատուանդանին։ Երկու տեսակներ կան։ Նուազ բաղադրեալին մէջ բարձիկը, պարզ կամ կլկնակ, զարդանկար մը կը կրէ՝ թեթեւօրէն բարձրաքանդակ տերեւներէ, արմաւենիի ճիւղէ, վարդաձեւերէ (rosette), հանգոյցներէ (torrade) կամ խ ո ն ջ ա ձ ե ւ գ ի ծ ե ր է (volute) բաղկացեալ։ Միւս տեսակ պատուանդանին վրայ երկու կենդանիներ, յաճախ սփինքսի

տեսքով, քով քովի դրուած են եւ միասին ուսամբարձ կը շալկեն պարզ բարձիկ մը։ Այս տեսակ պատուանդաններէ նմոյշներ պեղուած են Զենճիրլի եւ Սաքչէկէօզիւ. կարելի է որ անոնք գործածական էին Ք. Ա. Թ. եւ Ը. դարերուն Նոր Հաթեանց երկիրներու մեծ մասին մէջ, որովհետեւ Մաք Իվան երկու տեսակներէն ալ գտած է 1935-ին՝ Թայինաթի մէջ, Որոնդէսի եզերքը։

Քաղաքներու կամ պալատներու դրանդեաց զարդարանքին մէջ դրուագները (relief) երբեմն քանդակուած են տաշուած քարերու վրայ, որ կառուցուածքի մաս կը կազմեն, եւ երբեմն պատին երկայնութեամբ փակցըւած սալաքարերու վրայ։ Ամենաշատ պարագաներու մէջ ասոնք իբրեւ ստորեզր պարունակ (plinthe) գետնի հողին վրայ տեղաւորուած են. բայց յաճախ ալ մարդու հասակին բարձրութեամբ զետեղուած, ինչպէս Մ. Տըլափորթ անձամբ ստուգած է Մալաթիայի Ք. Ա. ԺԳ. դարէն շինուածոյ վրայ։

Մալաթիոյ մէջ, Ք. Ա. Թ. դարէն, կառքով որսորդութեան երկու տեսարաններ, որոնց կ'ընկերանայ մեհենագիր նշանագրերով արձանագրութիւն մը, քանդակուած են ագուցման (revêtement) սալաքարերու վրայ. բայց հոն չի դիտուիր արագութեան այն տպաւորութիւնը, որ յատկութիւնը պիտի ըլլայ աւելի վերջերն Ասորեստանեայց գեղարուեստին. անասուններուն ծառացումը ո՛չ Եգիպտոսինն է եւ ո՛չ Ասորեստանինը, հապա տեղական գեղարուեստի ստեղծագործութիւն մը։

Ինչպէս արդէն յիշեցինք, Թագաւորի մը հսկայական անդրին, Մալաթիոյ Առիւծուց Դրան մէջ կանգնուած, երկրաշարժի մը ժամանակ կ'իյնայ իր պատուանդանին վրայէն, եւ կը թաղեն զայն իր ինկած ու գլորուած տեղուանքով շինուած գերեզմանին մէջ։ Անիկա Իվրիզի աստուածին հետ միեւնոյն ցեղագրական տիպը կը ներկայացնէ։ Տարազը կը բաղկանայ կապայէ մը ու երիզուած (frangé) երկար ցփսիէ մը, որու մէկ ծայրը աջ ուսին վրայէն նետուած է եւ անութին տակէն ետ կու գայ դէպի առջեւը, որ ձախ ձեռքը զայն կը բռնէ։ Մօրուքը եւ մազերը վիրայուած են Ասորեստանեայց ոճով եւ գլուխը շրջապատուած է anthomianներով զարդարուն պսակով մը, կարգ մը Ասորեստանցի պաշտօնատարներու կրածին նման։ Ծանր ապարանջանները, որոնք դաստակները կը զարդարեն, գոցուած չեն, եւ ինչպէս յԱսորեստան՝ առիւծներու գլուխներով վերջաւորող ծայրեր ունին։ Մուճակները (sandales) բնաւ չեն տարբերիր Ասորեստանցւոց քանդակներուն վրայ տեսնուածներէն։ Աջ բազուկի վարի մասը երկնցած է դէպի առաջ եւ ձեռքին մէջ կը բռնէ դրեթէ գնդաձեւ ու côtelé բան մը՝ որ հրամանատարութեան խորհրդանշան մ'ըլլալ կը թուի։ Այս առարկան բռնող ձեռքը ճշդօրէն պատկերացնելու դժուարութիւն ունենալով արուեստագէտը եւ չկրնալով այդ դժուարութեան յաղթել, որոշեր է ամէն մէկ մատ չորս մատնոսկրներով ներկայացնել (Delaporte, **Les Hittites**, pp. 331-2)։

ՄԱԼԴԻՅԱՅԻ ԽՄԲԱՆԿԱՐ ՔԱՆԴԱԿԸ.— *Մալդիյա, պալատի դրանդիքուն հարթաքանդակներուն մէջ, վեց հատը կը կրեն անունը միեւնոյն իշխանին, առժամապէս* Սուլումիլի *ընթերցուած։ Ինքը հոն պատկերացուած է տարբեր աստուածութեանց դիմացը, ինչպէս արդէն յիշեցինք, որոնց իբրեւ հեղման պատարագ* (libation) *կը մատուցանէ անասունի մը արիւնը։ Հեղուկը կը ծորի ձեռքին մէջ բռնած ամանէ մը եւ կը հոսի մերթ գետինը եւ մերթ ուրիշ ամանի մը մէջ։ Զոհի անասունը, զոր ծառայ մը կը քշէ, գինեձօնք մատուցանողին ետեւը պատկերացուած է։ Աստուածներն են՝ դրանդիի գաւիթին մէջ աջ կողմը՝ Մալդիյայի Ամպրոպի աստուածը եւ ուրիշ քաղաքի մը Ամպրոպի աստուածը, որ հեծած է իր ստորոգելիքը ցուցնող անասունի մը վրայ եւ ձեռքին մէջ կը բռնէ ծռած ծայրը գետնին դպչող գաւազանը, քուրմերուն յատուկ։ Մեծ գաւիթին մէջ, դրանդիի անցքին վրայ, դէպի ձախ կողմը՝ անկիւնաքարին վրան, որ մուտքը պահպանող առիւծին ետեւը եւ հակառակ ուղղութեամբ զետեղեալ փոքր առիւծով մը զարդարուած է, կան չորս աստուածութիւններ՝ որոնց անունները փորագրուած չեն, բայց իրենց նմանները ունին Պօղազքէօյի մօտ Եազըլը գայայի չքախումբ Թափորներուն մէջ։ Դրացի քարահատորին վրայ իշխանը ներկայացուած է երկու անգամ, անմօրուս աստուածութեան մը դիմացը, որ յատկանշուած է գետնին դպչող ծայրը կորացած գաւազանով եւ արեգակնային սկաւառակով որ կը սաւառնի իր գլխուն վերեւը, ճշդիւ ինչպէս որ է Եազըլը գայայի մէկ աստուածութեան պարագային, եւ մօրուսաւոր ու թեւաւոր աստուծոյ մը դիմացը՝ կացինով մը զինուած, որու կոնաձեւ խոյրը, կողերէն կիսաբոլորակներով զարդարուած ու պաշտպանուած, կը կրէ խոշոր մահիկ մը, ինչպէս Եազըլը գայայի պատկերին մէջ այս մահիկը դրուած է գլխարկի վարի եզերքին վրայ։ Մեծ գաւիթին մէջ՝ աջ կողմը՝ գինեձօնքը կ'ուղղուի քաղաքի մը աստուծոյն, որ եղջերուի մը վրան կայնած է եւ աղեղով մը զինուած։ Հարկ է դիտել որ այս հարթաքանդակները, որոնց ոճը միօրինակ է, պատարագ մատուցանողի կեանքին տարբեր շրջաններուն կը վերաբերին։ Յիրաւի ասի կը հետեւի ոչ միայն հագուած տարազի տարբերութիւններէն, այլ մանաւանդ իր անուան այլաձեւ փորագրութիւններէն։ Իբր սկզբունք, այս անունը բարձրաքանդակ փորագրուած է եւ այսպէս կը գտնուի առանց ոեւէ յաւելուածի. ուրիշ անգամներ անունը արքայութիւն նշանակող երկու գաղափարագրերու մէջտեղ քանդակուած է. ինչ որ նմանութիւն կը յայտնէ Մեծ Արքայի կնքադրոշմին* (édicule), *որուն օրինակներն ուրիշ տեղ ալ կը գտնուին դրօշարուեստի* (glyptique) *մէջ։ Վերջապէս երեք դրուագներու վրայ՝ իշխանին արքայութեան բարձրացումէն ետքը փափաքուած է այս նոր տիտղոսը աւելցնել, բայց ասիկա բարձրաքանդակով ընել անկարելի ըլլալուն, խորաքանդակ փորագրուած է եւ այս յաւելուածին անախորժ տպաւորութիւնը չէզոքացնելու համար՝ արդէն բարձրադիր դրուագրուած գաղափարատառանշաններ կրկնուած են խորաքանդակ* (Delaporte, p. 293, fig. 16)։

*Մալդիյայի դրանդիի միւս երկու քանդակներէն մէկը, ներքին գաւիթին մէջ եւ ձախ կողմը զետեղուած, նմանապէս կը ներկայացնէ գինեձօնքի տեսարան մը: Հոն Սուլումիլիի տեղը կը բռնէ Թագուհի մը, որու հագուստը կը բովանդակէ, ինչպէս Եազըլը գայայի դիցուհիներունը, երկայն քօղ մը՝ որ կոնաձեւ գլխարկը ծածկելէ վերջ մինչեւ գետինը կ'իջնայ: Թեւաւոր աստուածութիւնը երկու թռչուններու վրայ կայնած, կը կրէ կոնաձեւ գլխարկը՝ կողերէն կիսաբոլորակներով զարդարուած, եւ պատմուճանը՝ ծունկին վերեւը վերցուած եւ համակեդրոն բոլորակներու պատկերներով փոթփոթուած, որ Եազըլը գայայի վրայ աստուածներու չքախումբի անդամներէն ոմանց տարազն է:*

*Վերջին քանդակապատկերը կը գտնուի պալատի մեծ բակի աջ պատին տակը: Ան կը պատկերացնէ նախորդներէն բոլորովին տարբեր տեսարան մը, եւ դժբախտաբար վնասուած է տարկային ամենէն կարեւոր մի քանի տեղերէն. իր ոճովը, անձնաւորութեանց տարազին մասնայատկութիւններովը, առանց տարակոյսի ան կը պատկանի միեւնոյն ժամանակաշրջանին ինչպէս Մալդիյայի միւս քանդակները եւ Եազըլը գայայի չքախումբի թափորները* (fig. 12): *Աստուած մը՝ կարճ հագուած, գլուխը կը կրէ խոյր մը քովընտի կիսաբոլորակներով շրջանակուած, կողին ունի սուր մը, զինուած է երկայն նիզակով մը եւ ընկերացած՝ իրեն նմանող աստուածով մը, որ կը կռթնի մանկլաւի (մեծ մուրճի) մը չափազանց հաստ կոթին վրայ եւ կը կրէ ուսին վրայ ուրիշ զէնք մը: Առաջինը կը յարձակի եւ կը զարնէ բազմագլխեան օձի մը, երեք անգամ ինքիր վրայ գալարուած. իսկ անոր օգնելու համար երկինքէն ոգիներ կ'իջնեն* à micorps *եւ իւրաքանչիւրը կը բռնէ անձրեւի խոշոր կաթիլներու պարկ մը, որոնցմով կը ռմբակոծեն հրեշային գազանը* (fig. 12 p. 250): *Ասիկա քանդակագործութեամբ պատկերացումն է* Իլլույանկա *վիշապի վերաբերեալ դիցաբանութեան, որու գրաւոր պատմուածքն ալ ունինք Պողազքէօյի պեղուած սեպագիր բնագիրներուն մէջ:*

*Պարտինք յիշել Սուլումիլիի մէկ ուրիշ քանդակագործութիւնն ալ. այս եւս մաս կը կազմէր մեծ դրան զարդարանքին, բայց երկնցուած էր մինչեւ արտաքին մուտքին մօտը: Ամենամեծն է, եւ երկու պատառի կտրուած: Միւսներուն պէս կը պատկերացնէ գինեձօնքի տեսարան մը: Հոս աստուածը իր յատուկ գաղափարագրովը* (ideogramme) *նշանակուած, Ամպրոպի մեծ աստուածն է՝ երկու ձիերէ քաշուած կառք մը հեծած, որմէ վար կ'իջնէ՝ թագաւորին երկրպագութիւնն ընդունելու համար* (Delaporte, **Les Hittites**, p. 293-4):

ՄԱԼԴԻՅԱ ԵՒ ՈՒՐԱՐՏՈՒ.— *Արդէն պատմագէտներու կողմէն դիտուած իրողութիւն մըն է որ մէկ կողմէն Կասեանց* (Kassites) *եւ միւս կողմէն Մելիտենացւոց ու Խալդեանց միջեւ մշակութային հասարակաց բաւական եզրեր կան: Ասկէ զատ, կ'երեւի թէ սկզբնական Բիայնացիք շատ կա–*

նուխէն ենթարկուած են արեւմուտքէն ճառագայթող քաղաքակրթական նոր ազդեցութեան եւ թէ տոր փառարանն էր Մալդիյա, ուր Ք. Ա. ԺԴ. դարուն մշակութային վերելքը ստեղծեց այն զարմանալի քաղաքակրթութիւնը զոր պատմագէտք «Նոր–Հատեան» կը կոչեն։ Եւ վերջապէս յիշելի է որ Բելք եւ Լէյման–Հաուպտ միշտ այն համոզումն ունեցած են թէ Ուրարտուի Մենուաս թագաւորը Մալաթիոյ Սուլիհաուալի թագաւորը պարտութեան մատնելէ ետք Մալաթիան այցելեց եւ անոր շրջակայ դրախտանման պարտիզաքաղաքը տեսնելով հիացմամբ, անկէ թելադրուեցաւ Տուսպայի Վանի մօտ նըման պարտիզաքաղաք մը ստեղծելու։ Թէեւ այս մասին դրական ապացոյց կը պակսի, սակայն անտեղի չէ այսպիսի գաղափար մը ունենալ։

ՄԵԼԻՏԻՆԷԻ ՆՈՐ–ՀԱՏԵԱՆ ՄՇԱԿՈՅԹԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ.— Այն խոր հնութեան մէջ Մալաթիոյ պատմութեան համար առ այժմ մեր առաջնորդներն են հին Հաթեանց, Ասորեստանեայց եւ Ուրարտացւոց բեւեռագիր արձանագրութիւնները։ Սոյն արձանագրութեանց շնորհիւ կրնանք պատասխանել կարգ մը հարցումներուն, բայց ոչ ամէն հարցումին։ Բարեբախտաբար վերջերս պեղումներ մասամբ կատարուած են Մալաթիոյ ամենահին դիրքը ձեւացնող Արսլանթեփէի աւերակաց մէջ, եւ գոնէ երեք հարցումներ իրենց բաւարար պատասխանը ստացած կ՚երեւին. ա — Ե՞րբ հիմնուեցաւ այդ վայրը. կը թուի թէ Ն. Ք. 2500–ի, մինչեւ անգամ Ն. Ք. 3000–ի պէս շատ կանուխ թուականի մէ մէջ։ բ — Ե՞րբ լքուեցաւ. հաւանօրէն Ն. Ք. 620—615 թուականներուն եւ գուցէ Սկիւթացւոց գործած աւերներուն երեսէն։ գ — Ե՞րբ սկսաւ Մալաթիոյ (Մալդիյայի) գեղարուեստական մշակոյթը. ըստ պեղումներու արդիւնքին՝ Ն. Ք. 1250—1200 թուականներուն, յամենայն դէպս՝ Խատտուսասի կործանումէն առաջ։ Հոն ամենականուխ շինուած պալատ–տաճարի քանդակներուն վրայ կը կարդացուի Սուլումիլի թագաւորի մը անունը եւ ամէն նշաններ կը յայտնեն որ Սուլումիլի կ՚ապրէր ու կը տիրէր Ն. Ք. 1250—1200 թուականներուն, նախ իբրեւ փոխարքայ իշխան եւ ապա իբրեւ անկախ թագաւոր, գուցէ վերջինը՝ Խատտուսասի անկման ու կործանման վրայ։ Արուեստասէր անձ մըն էր նա, եւ հին Հաթեան գեղարուեստի գաղափարներն ու տարրերն առնելով զարգացուց՝ նոր եւ ընդարձակ ոճով մը, եւ այսպէս հիմնադիրն եղաւ «Նոր Հատեան» ըսուած ընդարձակածաւալ քանդակարուեստին։ Ան օղակն ըլլալ կը թուի Մեծ Կայսրութիւնը Նոր Հատեանց օրերու թոյլ կազմակերպութեամբ կայսերական դաշնակցութեան հետ զօդւորող։ Բայց անկարելի ալ չէ որ Մալդիյայի գեղարուեստին եւ մտաւոր մշակոյթին հիմնարկութեան մէջ Հաթեան Մեծ Արքայ Խատտուսիլ Գ. եւս կարեւոր բաժին մը ունեցած ըլլայ, քանի որ ըստ Հրոզնիի՝ Խատտուսիլս ատեն մը, իր երէց եղբօր՝ Մուվատտալիսի օրով, երբ ստորակարգ թագաւոր իշխեր է Մալդիյայի մէջ (Կոզեան, ՄԵԼԻԴ, էջ 20)։

Հաթեանք, Ասորեստանեայք եւ Ուրարտացիք այդ հին ու երկար դա–

րերուն, իրենց բեւեռագիր արձանագրութիւններովը, համայն Փոքր Ասիոյ հետ Մալաթիոյ անցեալին ալ պատկերը կը պարզեն։ Բայց այդ պատկերը գլխաւորապէս արեան ու կրակի միջոցով գծագրուած է։ Միայն «Նոր-Հաթեան» ըսուած բնիկ յիշատակարաններն են որ մեզի խաղաղութեան, բարօրութեան, շինարարութեան եւ յառաջդիմութեան պատկերներ կը գծեն։ Եւ Մալաթիա բարեբախտ է ասոնցմով եւ պանծալի։

Մալդիյայի յուշարձաններուն մէջ՝ Պողազքէօյի մօտ Եազըլը գայայի, Քօյիւկի եւ նման յուշարձաններուն բուն Հաթեան մոտիւները միացուած են Միջագետքէ ուղղակի փոխանցուած ձեռարուեստին հետ, զոր կրնանք «Խանիգալբաթեան» անուանել։ Հաթեան Մեծ Արքաներու կնիքներուն վրայ գործածուած մեհենական նշանագիրներն ալ աւելի կատարելագործուած են եւ անոնցմով՝ բնիկ լեզուն կամ լեզուներն արտայայտելու յարմար գրական կանոնաւոր դրութիւն մը ստեղծուած է. իսկ այնուհետեւ «Խատտի» երկիրներուն մէջ բեւեռագիր դրութեան գործածութիւնը գիտակցօրէն զանց առնուած է, եւ այնպէս կը թուի թէ Կարքեմիշ, Մարաշ, Մալաթիա եւ այլ կեդրոններ նախապէս քիչ թէ շատ գոյութիւն ունեցող բեւեռագիր պատճէններ դիտմամբ փճացուած են։ Հիւսիսային Սուրիա — Զենճիրլի — եւ Կիլիկիա՝ աւելի ետքի ժամանակներ (Ն. Ք. 8–րդ դարուն) խատտի բարբառներ գրուած կ՚երեւին նաեւ «փիւնիկեան» ըսուած այփաբետով, եւ երբեմն միալեզու (արամերէն) եւ երբեմն ալ երկլեզու (Նոր–հաթեան մեհենագիրներու ընկերացած արամերէն), կարգ մը արձանագրութիւններ ալ այդ յիշուած տեղերը գտնուած են։

Վերեւ մեր մէջբերած խրողութիւններէն կարելի է որոշ տեսնել թէ «Նոր Հաթեան» ըսուած յուշարձանները խաղաղասիրական յիշատակարաններ են, զուտ գեղարուեստական ճաշակի գոհացման համար ստեղծուած հոգեկան նուաճումներ։ Մալաթիոյ պատմութեան համար այս փաստը մասնաւոր շահեկանութիւն ունի։ Տեսանք որ Մալաթիոյ արտաքին պատմութիւնը կցկըտուր կերպով գրուած է զայն նուաճող տէրութեանց՝ Հաթեանց, Ասորեստանեայց եւ աւելի ետքերն Ուրարտացւոց արիւնալի յաղթանակներովը։ Բայց սակս պատկերին մութ, թէեւ արտաքին կողմն է միայն. ներքին եւ աւելի լուսաւոր պատկեր մը կայ։ Այդ յաճախ չափազանց երկար ընդհարումներով կէտկիտուած ռազմական դէպքերուն մէջտեղերը ժողովուրդը եւ իր բնիկ կառավարութիւնը կը շարունակէին իրենց խաղաղ ու շինարար ներքին կեանքը, զոր մասամբ կ՚արտացոլացնեն մեզի հասած յիշատակարանները, եւ երբ անոնց ընկերացող մեհենագիր արձանագրութիւններն ալ յաջողապէս եւ գոհացուցիչ կերպով կարդացուին ու մեկնաբանուին, անշուշտ մեծապէս պիտի լուսաւորեն այդ ժամանակներու հասարակական կենցաղին վրայով ալ մեր գաղափարը։

Ասորեստանեայց եւ Ուրարտացւոց արձանագրութիւնները մեզի կու տան Ն. Ք. 837–էն սկսեալ մինչեւ 700 թուականը Մալաթիոյ ժամանակակից թագաւորներու բաւական կատարեալ ցանկ մը, զոր վերեւ տեսանք։ Բայց

նկատելի է որ Մալաթիոյ թագաւորութեան այս շրջանը, յորում իր դահակալները յանուանէ ծանօթ են մեզի, անոր ամենափայլուն շրջանը չէ. ընդհակառակն տկարութեան եւ անկման շրջանն է։ Արսլանթեփէի ցարդ եղած խուզարկութիւնները անոր բնիկ թագաւորներու յուշարձաններէն ինչ որ երեւան բերած են, նախաքրիստ. Թ. դարէն աւելի անդին չեն անցնիր. որով վստահ չենք թէ այդ յուշարձաններէն ամենէն ուշն իսկ անունը մեզի Ասորեստանեայ արձանագրութեանց միջոցաւ հասած թագաւորներէն ոեւէ մէկուն պատկանի։ Ուրեմն, Մալաթիոյ այդ շէնքերն ու քանդակները կը պատկանին գլխաւորապէս այն թագաւորներուն, որոնց անունները չեն յիշուիր Ասորեստանեան արձանագրութեանց մէջ, այսինքն՝ աւելի կանուխ են քան Սալմանասար Գ.ի գրաւման տարին։ Հետեւաբար, բնիկ արձանագրութեանց վերծանումը միայն կրնայ մեզի յայտնել զանոնք արտադրող թագաւորներուն անունները, եւ վստահ ենք որ անոնք մեզի մշակութային եւ բնիկ զարգացման նոր ու խիստ շահեկան էջեր պիտի բանան։

Հ. Սահակ Կոգեան ուղիղ դատողութիւն մը կ՚ընէ Մալաթիոյ աշխարհագրական դիրքին անոր ընդհանուր պատմութեան հետ ունեցած աղերսին վրայով. «Մալաթիա ախորժակ գրգռած ու կռուախնձոր եղած է», կ՚ըսէ, «պատմութեան ամբողջ ընթացքին։ Քրիստոսէ առաջ իբր 1300-էն սկսած, երբ Մելիդ անունը կը յիշուի առաջին անգամ, եւ այն՝ իբրեւ դաշնակից Հայասաներու եւ Խուրիներու, հակառակ Հիթթիթներու թագաւոր Մուրսիլիս Երկրորդի եւ Մուվատտալիսի, Մալաթիա կռուի առարկայ է հարեւան պետութիւններու։ Արեւմտեան հզօր պետութիւններ (Հիթթիթ, Յոյն, Հռովմայեցի կամ Բիւզանդացի) երբ ցանկան (ու ե՞րբ չեն ցանկացած) տիրանալ Եփրատի ձախ կողմին, պէտք է որ բանակ դնեն գետին աջ կողմը՝ Մալաթիայի մէջ։ Իսկ երբ արեւելեան հզօր պետութիւն մը (Ասորեստան կամ Ուրարտու, Պարսիկ կամ Արաբ) ձգտի Եփրատի աջ կողմ, նախ պէտք է Մալաթիան ապահովէ։ Ու եթէ ներկայ քաղաքակիրթ ըսուած դարուս չի կրնար ըլլալ պատերազմ ու աշխարհակալութիւն առանց աւերի, ի՞նչպէս կրնային նախկին աշխարհակալները տիրապետել առանց կործանելու եւ կողոպտելու» (ՄԵԼԻԴ, էջ 4)։

Հեղինակս ապա Ն. Ք. 1200—700 թուականներու պատմութեան մասին աս դիտողութիւնը կ՚ընէ. «Ահա այն հինգ դարերու միջոցին էր որ Մելիդ կ՚ունենար իր թագաւորները, որոնց ամբողջ գործը եղած է յարիլ կա՛մ Ասորեստանի կա՛մ Ուրարտուի։ Այս երկուքն ալ Եփրատի ձախ կողմն են, բայց երկուքն ալ աչք ունին Մելիդի եւ շրջակայ երկիրներու վրայ։ Մելիդի թագաւորները ստիպուած էին տկարներու յատուկ քաղաքականութիւն խաղալ։ Ուրարտուի դիրկը կը նետուէին, երբ Ասորեստան տկարանար. Ասորեստանի առջեւ կը խոնարհէին, երբ Ուրարտու տատանէր» (ՄԵԼԻԴ, էջ 20—21)։ Այս դիտողութիւնը սուր եւ մասամբ իրաւացի է. բայց առաւելապէս կ՚արժէ Ն. Ք. 900—700 թուականներուն համար։ Ասկէ զատ պէտք է նկատի առնել —

նախ, որ եթէ «բարգաւաճ շրջաններ բոլորած է Մալաթիա», եւ եթէ ունեցած է «իսկական փառքի, անկախութեան ու թագաւորութեան դարերը» (անդ, էջ 6եւ16), անոնք յիշեալ հինգ դարերու մասնաւորապէս առաջին երեքներն էին. երկրորդ, պէտք չէ մոռնալ որ ո՛չ Ասորեստան Ն. Ք. 707-էն առաջ եւ ո՛չ Ուրարտու մնայուն կերպով չեն կրցած տիրանալ Մելիտիային, այլ կարճ-կարճ շրջաններ միայն, երկար անջրպետներով իրարմէ անջատուած, եւ երկուքն ալ գրեթէ առանց բացառութեան խնայած ու պահած են իրենց յաղթահարած բնիկ թագաւորները անոնց գահուն վրայ. երրորդ, օտար գերիշխանութենէ ազատ եւ հարստահարութիւններէ զերծ շրջաններուն, որոնք զգալիօրէն երկարատեւ էին, այս բնիկ թագաւորները գիտցած են իրենց ժողովուրդը խնամել, երկրագործութիւնն ու արհեստը զարգացնել եւ վաճառականութիւնը քաջալերել. որով կրցած են դիզուած հարըստութեամբ գեղեցիկ շէնքեր շինել եւ զանոնք գեղարուեստական յուշարձաններով զարդարել:

Ուրեմն, Արսլանթեփէի, Կիւրինի եւ շրջակայքի ծանօթ ու պեղուած եւ դեռ պեղուելիք «Նոր-Հաթեան» կոթողները անշուշտ կը պահեն ոչ միայն շատ աւելի հին յիշատակներ, այլ նաեւ պիտի տարփողեն մոռցուած հին փառքեր, որոնք՝ ինչպէս ըսինք՝ խաղաղութեամբ շահուած փառքեր են, եւ ոչ թէ աւերիչ զէնքերով: Քանզի ինչպէս հին փիլիսոփաները կ'ըսէին, «խաղաղութիւնն ալ իր նուաճումներն ունի», որոնք աւելի գերազանց են: Ու թէեւ ըսուած է թէ «Խաղաղութեան ժամանակները պատմութեան էջերը ճերմակ կը թողուն», սակայն ոչ այնպէս՝ երբ խաղաղութիւնը վայելող ժողովուրդը ստեղծագործ հանճար ունի, գիտէ շինել եւ արտադրել: «Նոր-Հաթեան» յուշարձանները իսկապէս խաղաղութեան նոր գրականութիւն մը մեր առջեւ պարզելու բնոյթն ունենալ կը թուին: Սպասենք:

Մալաթիոյ շրջանակին մէջ հետեւեալ տեղերը «Հաթեան» ըսուած յիշատակարաններ եւ արձանագրութիւններ գտնուած են.—Մալդիյա (Արսլանթեփէ), Քէօթիւզալէ, Տարենտէ, Փալանկա (Արսլանթաշ), Իսփեքչիր, Կիւրին, Ուզունեայլայի արեւելեան մասին մէջ եւ կամ Թոխմա սուի Այվաթերէսի ըսուած երկայն օժանդակին վրայ՝ Գարագույու եւ Հավուզքէօյ. նաեւ Ալպիսթանի մօտերը եւ Իզկին: Կ'երեւի թէ Մանճըլըգի շրջանակին մէջ այս տեսակ յիշատակարաններ չեն գտնուած:

Մալդիյայէ զատ մէկալ տեղերու «Հաթեան» յիշատակարանները դեռ քննականօրէն չեն ուսումնասիրուած. որով չենք գիտեր անոնցմէ իւրաքանչիւրին պատկանած ժամանակագրական կարգն ու թուականը: Անոնց մէջ թերեւս գտնուին այնպիսիներ, որոնք մինչեւ Ն. Ք. 600 թուականի չափ ուշ ժամանակի մը վերաբերին: Այսպէս խորհելու կը թելադրեն մեզ հետեւեալ իրողութիւնները.—

Նախ, տեսանք Մուգալլու անուն թագաւոր մը, Ն. Ք. 670—640 թուականներուն իշխած, գլխաւորապէս Կիւրինը եւ ատեն մը Մալաթիան իրեն

մայրաքաղաք ունեցած՝ ըստ ասորեստանեայ արձանագրութեանց, որոնցմէ կ'իմանանք նաեւ որ Մուգալլու մեծահարուստ իշխան մըն էր եւ իր ժողովուրդն ալ ձիաբուծութիւն եւ այլ օգտակար զբաղմունք ունէր: Մուգալլու «Տաբալցի» կ'ըսուի, բայց այս ժամանակ Կիւրինի շրջանակը Տաբալի երկիր կը համարուէր, եւ միւս կողմէն՝ Տաբալցիք արդէն երկար դարեր առաջ հատեանացած էին. որով արդեւք մը չկայ Մուգալլուի պէս Թագաւորի մը Մելիտինէի եւ Կիւրինի շրջանակներուն մէջ «Նոր-Հատեան» յիշատակարաններ թողած ըլլալուն:

Ապա, Վանի մօտ Թոփրագգալէի աւերակաց մէջ, որոնք Ն. Ք. 700–600 Թուականներուն կը պատկանին, երեւան հանուած է արքայական գինեմառան մը, ուր գտնուած են յիսունէ աւելի խոշոր կարասներ բեկորային վիճակի մէջ, որոնց իւրաքանչիւրին պարունակման չափը նշանակուած է բերնին շուրջը՝ մեհենագիրներով: Բելք եւ Լէյման-Հաուպտ հաւանական կը համարին որ այս կարասները մէջերնին գինի լեցուած վիճակով Բիայնայի (Վանայ) ինքնակալին իբրեւ տարեկան տուրքի մաս կը ղրկուէին իրեն հպատակ եւ մեհենագիր գործածող ժողովուրդներու կողմէն, զորօրինակ Խաբբերդի եւ Հայնիի կամ մինչեւ իսկ Մալաթիոյ շրջանակներէն:

Միեւնոյն եզրակացութեան կը տանի Թոփրագգալէէն գտնուած կաւեայ պնակիտ մը, նմանապէս մեհենագրական նշանագիրներով գրուած, որ կը ցուցնէ թէ «Հատեան» կամ անոր նմանող մեհենագրական դրութեամբ մը գրող ժողովուրդ մը կաւէ պնակիտն ալ որպէս վրան գրելիք նիւթ գործածեր է: Բայց այսպէս ընողները հաւանօրէն ոչ թէ Խալդիացիք իրենք էին, այլ արեւմտեան ժողովուրդ մը: «Հիմա Պերլինի Թանգարանին մէջ պահուող մեհենագրեալ արոյրէ կոնքը», կ'ըսէ Լէյման-Հաուպտ, «եւ այս մեհենագիր աղիւս-նամակը յայտնապէս արեւմտեան ծագում ունին, եւ կը ցուցնեն թէ Թոփրագգալէի մեհեանին իր վերջնական ձեւը տուող Խալդիացի Թագաւորներն ունէին հպատակներ կամ դաշնակիցներ, որոնք այսպիսի մեհենագրական դրութիւն մը գործածող ժողովուրդի մը կը պատկանէին: Անոնցմէ ձօնուած պիտի ըլլայ այդ կոնքը, ինչպէս նաեւ այդ նամակն ալ ղրկուած: Մեհենագրական նշանագիրներով դրուագեալ այդ արոյրէ կոնքը եւ Թոփրագգալէէն մեր պեղած այս մեհենագիր աղիւս-նամակը կը կրեն նշանագիրներ որ Փոքր Ասիոյ Հատեան (Hittite) կոչուած արձանագրութեանց մեհենագրական տառերուն հետ նոյն են եւ կամ յոյժ նման: Այս առարկաները հաւանօրէն Ռուսախինայի տաճարին նաւակատեաց տօնին առիթով էին ղրկուած Բիայնայի վեհապետին խետացի հպատակներուն եւ դաշնակիցներուն կողմէն»: (Materialien, p. 108-9; cf. ibid., pp. 68-9, 100): Եւ պէտք է դիտել որ այդ «Խատտի» երկիրներուն մէջ Ուրարտուի ամենամօտը միշտ Մելիտինէն է:

## Է.

# ԿԱՏԱՒՈՆԻԱ ԵՒ ՄԵԼԻՏԻՆԷ՝ ՊԱՐՍԿԱԿԱՆ ԵՒ ՅՈՒՆԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՆ

Սկիւթացի բարբարոսներու արշաւանքի հեղեղին անցնելէն ետք՝ վերաշինուեցաւ Մելիտա, սակայն ոչ առաջուան տեղը, հապա ա՛յն տեղ, ուր ան տեւած է մինչեւ մեր թուականի 1839 տարին, եւ որուն աւերակները դեռ կը կենան եւ ծանօթ են «Էսքի Մալաթիա» անունով (Lehmann—Haupt, **Armenien** , I, pp. 484-6):

Ասորեստանեայց պետութեան անկումէն ետք, Մելիտինէ մաս մնաց կամ պիտի մնար Մարաց կամ Մեդացւոց պետութեան: Ըստ Հերոդոտոսի՝ Կիաքսար Ն. Ք. 591-ին ձեռնարկած ըլլալու է «Վերին Նահանգներու» նուաճման գործին, որ տեւեց վեց տարի (Herodotus, I, 73, 74): Նախ հարկ էր կործանել Ուրմիոյ լիճին եզերաց վրայ Մաննայի եւ Վանայ ծովուն բոլորտիքը խալդ–ուրարտեան թագաւորութիւնները. ապա կային հայկական բարձրաւանդակին վրայ նորակազմ («Այրարատեան») Հայ–Արմէն թագաւորութիւնը եւ թերեւս երկրորդ կարգի իշխանութիւններ: Հայ–Արմէններուն զինակից օժանդակ էին մէկ կողմէն Անդրկովկասի եւ հիւսիսային Հայաստանի Սկիւթացիք («Ասքանազեան» գունդեր) եւ միւս կողմէն հեռաւոր Լիւդիոյ պետութիւնը (հմմտ. (Lehmann - Haupt, **Armenien**, I, pp. 1-4): Կիաքսար տարիներ գործածեր է ասոնք մէկիկ–մէկիկ ընկճելու. որով վերջապէս կրցաւ հասնիլ Արեւմտեան Եփրատի(Գարասուի)գիծը: Անկէ անդին, Մելիտինէի մէջ առանձին իշխանութիւն կա՞ր թէ ոչ, որոշ չենք գիտեր. բայց աւելի արեւմուտքը կար Գամրաց կամ Կապպադովկիոյ (Katapatuka) թագաւորութիւնը, զոր նաեւ պէտք էր հնազանդութեան բերել՝ Ալիւսի գետի(Գըզըլ ըրմագի)ստորին հովիտը չհասած: Հուսկ ուրեմն հոս տեղի ունեցաւ Լիւդիոյ եւ Մեդացւոց միջեւ Ալիւսի մեծ ճակատամարտը, արեւու կատարեալ մէկ խաւարման բերած ակամայ զինադուլը եւ անոր յաջորդող հաշտութեան դաշնագիրը՝ Ն. Ք. 585 Մայիսին: Այս դէպքերու վըրայով արդէն մանրամասնօրէն կը պատմուի տիեզերական պատմութեան գիրքերուն մէջ:

Այս դաշնագրով Կիաքսարին կը մնային Մարաստանէ մինչեւ ստորին Ալիւսի գիծը բոլոր երկիրները, որոնց կարգին հարկաւ նաեւ Մելիտինէ: Ոմանք խորհեր են թէ նախ այս թուականէն ետք Կիաքսար առաւ Արմէնները Մելիտինէէն եւ տարաւ հաստատեց զանոնք հայկական բարձրաւանդակին վըրայ: Մենք այս գաղափարն ամէն տեսակէտէ հակապատմական կը գտնենք: Հայ–Արմէնները շատոնց(Ն.Ք. 650-ի ատենները)մտած էին Ուրարտուի սահ–

մաններուն մէջ եւ հետզհետէ Հայաստանի այլեւայլ մասերուն մէջ տեղաւորուած եւ մինչեւ իսկ թագաւորութիւններ հիմնած՝ Խալդ–Ուրարտեան կամ Բիայնայի թագաւորութեան անկումէն առաջ եւ անոր զուգահեռաբար (տես ՆԱԽ. ՀԱՅԱՍՏ., էջ 561—581։ Նաեւ ԱԿՕՍ, Ժ. Գիրք, Պէյրութ, 1945, էջ 109—117, «Թէ ի՛նչպէս Ուրարտուն փոխանցուեցաւ Հայ–Արմէններուն»)։

Երբ Ն. Ք. 550–ին Կիւրոս յաղթելով Մարաց վերջին թագաւոր Աստիագէսին (Աժդահակ)՝ Իրանի պետութեան տէր դարձաւ, բնականաբար Մելիտինէ ալ մաս կազմեց Աքեմենեան Պարսից պետութեան։ Դարեհ Վշտասպեանի օրով Պարսից պետութեան քաղաքական բաժանումներուն մէջ կ'երեւի թէ Մելիտինէ կը պատկանէր Արմենիա (արեւմտեան Հայաստան) սատրապութեան։ Ըստ Հերոդոտոսի՝ բուն Հայաստան համարուած այս նահանգը արեւմուտքէն կը հասնէր մինչեւ Ալիս գետի աղբերակունքը եւ սահմանակից էր Կիլիկիոյ, որ այն ատեն դէպի հիւսիս չափազանց կը տարածուէր՝ բովանդակելով ոչ միայն Կեսարիա–Մաժաքի մարզը, այլ եւ միջին Ալիսի աղեղին կարեւոր մէկ մասը. իսկ արեւելքէն ալ Կոմմագինէ աշխարհը մէկ մասն էր Կիլիկիոյ, որ այսպէս կը հասնէր մինչեւ Եփրատ։ Միւս կողմէն, քանի որ Ալիս գետի աղբերակունքը կը բովանդակուէին Արմենիոյ մէջ (Herodotus, I. 73), հետեւաբար այն ատեն Արմենիոյ մաս էր հետագային Փոքր Հայք կոչուած մարզը. բայց ոչ միայն այսչափ, այլեւ կ'երեւի թէ Մելիտինէի ընդարձակ գաւառն ալ Արմենիոյ սահմաններուն մէջ էր, եւ ասիկա անկէ յայտնի է որ Հայկական Լեռնանցք (Pylae Armeniae) անունը կը կրէին արեւելեան Տաւրոսի հիւսիսէն հարաւ կարեւոր կիրճերը, այսինքն՝ անո՛նք, որ Մելիտինէն կը կապեն Կոմմագինէի հետ (Strabo, Geography, Engl. transl. vol. I, pp 123, 124, Book II, chap. i. 26, 27)։

Բայց միշտ այսպէս չմնաց։ Ն. Ք. 400 թուականէն առաջ արդէն կարգ մը սատրապութեանց սահմանները պզտիկնալ եւ կարգ մը ցեղեր անկախութիւն կամ ինքնավարութիւն ստանալ սկսած էին։ Այսպէս, Կիլիկիա եւ Արմենիա սատրապութեանց միացած տեղը, Անտիտաւրոսեան ու Տաւրոսեան լեռնաշխարհին մէջ, գոյացաւ Կատաւոնիա անուն քաղաքական նոր միութիւն մը, բնիկ իշխաններու ներքեւ ինքնօրէն կառավարուած, հաւանօրէն տարեկան փոքր հարկ մը վճարելով Աքեմենեան ինքնակալին։ Կ'երեւի թէ Կատաւոնիոյ իշխանները դրամ ալ կը հատանէին եւ հետզհետէ թագաւորի դիրք ալ բռնեցին։ Ինչեւիցէ, Մելիտինէ այսուհետեւ մաս կը կազմէր Կատաւոնիոյ, որ ժամանակ մը կը տարածուէր մինչեւ արեւմտեան Հայաստանի Եկեղեաց գաւառն անգամ։

Մեծն Աղեքսանդրի աշխարհակալութեամբ Փոքր Ասիա Աքեմենեան Պարսից միւս երկիրներուն պէս, մակեդոնական ստացուածք եղաւ, եւ երբ Ն. Ք. 301–ին Իպսոսի դաշնադրութեամբ Աղեքսանդրի կայսրութիւնը չորսի բաժնուեցաւ, Կատաւոնիա, Մելիտինէ, Կոմմագինէ եւ յարակից նահանգներ Սելեւկեան ինքնակալութեան կալուածք մնացին։ Բայց արդէն Կապադովկիա եւ Պոնտոս անկախ թագաւորութիւններ եղած էին, ինչպէս նաեւ Հայաստան։

Իբր կէս դար յետոյ, երբ Սելեւկոս Բ. էր Անտիոքի ինքնակալը, անոր եղբայրը Անտիոքոս Հիերաքս, որ Հայոց Արշամ Թագաւորին մտերիմ բարեկամըն էր, ապստամբեցաւ իր եղբօրմէն եւ Սելեւկեանց փոքր–ասիական կալուածոց բռնատիրելով, անկախաբար կ'իշխէր՝ իրեն ոստան ունենալով Եփեսոսը։ Սակայն Սելեւկոս Բ.ի աներն ու զինակիցը, Պերգամոնի Ատտալոս Թագաւորը, չախորժեցաւ Անտիոքոս Հիերաքսի դրացութենէն եւ սկսաւ զայն ճնշել արեւմուտքէն, մինչ Սելեւկոս ալ զօրաւոր բանակով մը Կիլիկիա կը յառաջանար։ Անտիոքոս՝ Ատտալոսի յաղթական զէնքերուն առջեւէն փախուստ տալու ստիպուած՝ Կապադովկիա ապաստանեցաւ, յետոյ խորհեցաւ իր զինակից բարեկամին, Հայոց Արշամ Թագաւորին օգնութեամբը բարւոքել իր բախտը։ Ուստի փորձեց իր եղբօր բանակին թիկունքը դառնալ՝ Եփրատը շատ վերէն անցնելով եւ Հայաստանի մէջէն յառաջանալով ու յանկարծ Միջագետք իջնելով։ Տարակոյս չկայ թէ Անտիոքոս Հիերաքս գործածեց առենօք Հաթեանց մեծ արքայ Սուպպիլուլիումայի բռնած ճամբան, այսինքն՝ Մալաթիոյ քով Փիրոթէն անցնելով Եփրատը, Խարբերդի ու Ամիդայի վրայէն յառաջացաւ մինչեւ Մծբինի մօտերը, բայց իր նախորդին յաջող բախտը չունեցաւ։ Արդարեւ ծրագրին առաջին մասը յաջողեցաւ իր հայ բարեկամին պաշտպան ձեռնտուութեամբը, սակայն Միջագետքի մէջ պատրաստ բանակով մը իրեն կը սպասէր Սելեւկոսի զօրավարը։ Անտիոքոս յաղթուելով Եգիպտոս փախաւ (Ն. Ք. 235), ուր ութ տարի բանտի մէջ հիւծելէ ետք մեռաւ։

Կատաւոնիա աւելի ետքի ժամանակներուն մէկ կառավարչութիւնն էր Կապադովկիոյ Թագաւորութեան, այսինքն՝ ա՛յն կառավարչութիւնը, որ կը բովանդակէր Սարոս եւ Պիւրամոս գետերուն վերին ընթացքները՝ Կոմանա սրբազան եւ Կոկիսոն ու Արաբիսոս գլխաւոր քաղաքներով։ Ստրաբոն կ'ըսէ որ Կատաւոնացիք ի բնէ Կապադովկացիներէն տարբեր ժողովուրդ մը չէին՝ ո՛չ լեզուով ու ո՛չ սովորութիւններով, սակայն առանձին իշխանութիւն մը կը ձեւացնէին, մինչեւ որ Արիարաթ Դ.ի օրով (Ն. Ք. 220—160) Կատաւոնիա միացուեցաւ Կապադովկիոյ Թագաւորութեան։

Կատաւոնիոյ մեզի որոշապէս ծանօթ առաջին տիրապետողն (dynast) էր Ասպիս ոմն, որ Պարսից Արտաշէս Բ. Թագաւորին դէմ ապստամբեցաւ Ն. Ք. 375-ին։ Դատամէս, որ դեռ նոր սատրապ կարգուած էր հարեւան Կապադովկիոյ նահանգին, արքայէն հրաման ստացաւ ապստամբ Ասպիս իշխանը հնազանդութեան բերելու, եւ զայս ըրաւ ալ իր վեհապետին բարձր դոհունակութեան արժանանալու ձեւով մը։ Հիմակուան Մալաթիա նոր քաղաքին տեղը Ասփըզու անուն գիւղ մը կար, որ կրնայ իր կոչումն ստացած ըլլալ սոյն Ասպիսէ։ Կատաւոնիոյ մայրաքաղաքը բնականաբար Կոմանա (Շար) էր, բայց Ասփըզու ալ կրնար իշխանին իբրեւ երկրորդ ոստան ծառայած ըլլալ Մելիտինէի մէջ։

Ասկէ ետք գրաւոր աղբիւրներու մէջ Կատաւոնիոյ իշխանները յանուա-

նէ չէն յիշուիր․ պատճառն ալ հաւանօրէն սա է որ ատեն մը զաւրած է Կատաւոնիոյ իշխանութիւնը, մինչեւ որ Մեծն Աղեքսանդրի մահէն ետք, ինչպէս Արեւմտեան Ասիոյ ուրիշ ժողովուրդներ, Կատաւոնացիք ալ իրենց անկախութիւնը վերստացան։ Այսպէս, կան կարգ մը պատկերաւոր դրամներ՝ վերատութիւններովս — Մորիսարի, Արիայոս, Քարասպէս, Աբդիսարէս, Անիսատէս, զորս դրամագէտներ տարակուսանօք կ՚ընծայեն Փոքր Հայքի կամ Արեւմտեան Հայաստանի կարծեցեալ արքայիկներուն։ Բայց քանի որ զորօրինակ Արիայոսի դրամը Տիւանայի պէս Հայաստանէ շատ հեռու քաղաքի մը մէջ տպուած է, իմ կարծիքովս՝ այս դրամները շատ աւելի իրաւամբ կրնային Կատաւոնիոյ իշխաններուն ըլլալ, որովհետեւ Կատաւոնիա այլեւայլ ժամանակներ տարածուած է Տիւանայէն մինչեւ Մելիտինէ։ Ասկէ զատ, այս անունները բոլորն ալ խետական կամ հաթեան (Hittite) տիպ ունին, եւ ինչպէս Ստրաբոնի վկայութիւններէն որոշ կը տեսնենք, Կատաւոնները յայտնապէս կը զանազանուէին Հայերէն եւ կը նոյնանային Կապադովկացւոց հետ։Արդ,Կատպատուկա(= Կապպադովկիա) եւ Կատաւոնիա երկրանուններէն երկուքն ալ միեւնոյն Կատա(=Խաթի)արմատը կը բովանդակեն։Արդէն Ենաէն Անիսատէսի դրամին վրայի «Տարի» տիտղոսին մէջ հաթեան բառ մը տեսած էր «իշխան» իմաստով։ Ուրեմն Մորիսարի, Արիայոս, Քարասպէս, Աբդիսարէս եւ Անիսատէս շատ լաւ կրնան իշխաններն եղած ըլլալ Կատաւոնիոյ՝ Ն․ Ք․ 260—190 թուականներուն մէջտեղ։

Արդեօք կրնա՞նք Կատաւոնիոյ վերջին իշխանը նկատել Ակուսիլոքոսը, որ Պոնտոսի Փառնակ Ա․ Թագաւորին հետ Ն․ Ք․ 181–ին նշանաւոր հաշտութեան դաշնագիրը կնքողներէն մէկն էր։ Ասոր մահէն ետք Կոմմագինէի կառավարիչը Պտղոմէոս, որ Սելեւկեանց հպատակութիւնը թօթափած էր, ջանաց Ն․ Ք․ 163–ին Կատաւոնիան ալ Մելիտինէին հետ գրաւել, բայց Կապադովկիոյ Արիարաթ Դ․ Թագաւորը յաջողապէս դիմադրեց անոր եւ Կատաւոնիան ամբողջ կցեց Կապադովկիոյ Թագաւորութեան, անշուշտ Մելիտինէն ալ միասին։

Տեսանք թէ Մելիտինէ ատեն մը մաս կը կազմէր մինչեւ Եկեղեաց գաւառը տարածուող, ընդարձակ Կատաւոնիոյ։ Երբ Կապադովկիոյ Թագաւորութեան կցուեցաւ Կատաւոնիա, հարկաւ Մելիտինէ ալ միասին գնաց։ Բայց երբ Կապադովկիոյ Թագաւորութիւնը պաշտօնապէս տասը կառավարչութեանց (strategisi) կը բաժնուի, Մելիտինէ Կատաւոնիայէն անջատաբար կառավարչութիւն մը կ՚ըլլայ, որուն կառավարիչին նիստն էր անշուշտ Մելիտա ամրոցը։

Երբ Կապադովկիոյ Թագաւորը Ն․ Ք․ 160–ի ատենները Մեծ Հայքի Արտաքսիաս (Արտաշէս) Թագաւորին դէմ կը պաշտպանէ Ծոփաց Զարիադրիս (Զարեհ) Թագաւորի Միհրբուժան որդւոյն իրաւունքը, որպէս փոխարինութիւն այս վերջինէն կը ստանայ Տոմիսա աւանն, որ Մելիտինէէ Խարբերդ տանող ճամբուն վրայ Եփրատի կարեւոր կամուրջին արեւելեան կամրջագլ–

*լուխն էր։*

*Մելիտինէ նահանգը կը գտնուէր բոլորովին արեւելեան Տաւրոսի լեռնաշղթային հիւսիսային կողմը, որ զայն կը բաժնէր լերանց հարաւային կողմը գտնուող Կոմմագինէ երկրէն։ Մելիտինէ կը տարածուէր Կատաւոնիոյ եւ Եփրատի մէջտեղ, եւ իր հիւսիսային կողմն էր Փոքր Հայք երկիրը։ Հարկաւ Մելիտա ամրոցին շուրջը կամ մօտը կար նաեւ ժողովուրդին բնակութեան համար անպարիսպ աւան մը, ինչպէս շրջակայքն ալ բազմաթիւ գիւղեր կային։Մելիտինէ Կապադովկիոյ այն մասն էր, որ կ'երկարէր դէպի Հայաստան՝ Եփրատի մէկ կարեւոր ծունկին դիմաց։ Մելիտինէի հիւսիսը գտնուող Փոքր Հայք եւ հարաւը գտնուող Կոմմագինէ, երկուքն ալ նախաքր. Բ. դարուն անկախ փոքր Թագաւորութիւններ եղան, եւ քանի որ վկայուած է թէ երկուքն ալ հայաշատ մարզեր էին, պէտք է ընդունիլ որ երկուքին մէջտեղը՝ Մելիտինէն ալ նշանակելի հայ բնակչութիւն ունէր։*

*Մելիտինէ Կապադովկիոյ մաս մնաց մինչեւ Հայոց Մեծն Տիգրան թագաւորին աշխարհակալութիւնը։ Տիգրան, որ կանուխէն նուաճեց Ծոփաց թագաւորութիւնը եւ միացուց Մեծ Հայքին, հարկաւ իր աչքը տնկած պիտի ըլլար Ծոփաց երկրին դիմացը, Եփրատին արեւմտեան կողմը տարածուող Մելիտինէի արգաւանդ երկրին վրայ ալ, որ արդէն կարեւոր մասամբ հայաբնակ էր, եւ կ'երեւի թէ երկրին բնիկ խեթական* (Hittite) *ծագումով բնակչութիւնն իսկ հայանալու անատակ չէր։ Այս առիթը եկաւ՝ երբ Ն. Ք.* 77*–ին Տիգրան Մելիտինէն ալ գրաւեց ամբողջ Կապադովկիոյ հետ։ Յունահռովմէական հեղինակներ բացորոշ կը պատմեն թէ Մեծն Տիգրան Կապադովկիոյ եւ Կիլիկիոյ* 12 յունաբնակ *քաղաքներու բնակիչները փոխադրեց իր նորաշէն Տիգրանակերտ մայրաքաղաքը. բայց չենք կարծեր որ Մալաթիա Մեծն Տիգրանի օրով յունաբնակ եղած էր, դուցէ տակաւին «քաղաք»* (polis) *իսկ չէր։*

*Տիգրան Փիւնիկէ կամ Պաղեստին կը գտնուէր, երբ Լուկուլլոս իր Ապպիոս Կղոդէոս տեղակալը ղրկեց՝ Հայոց թագաւորին հետ տեսակցելու համար։ Այս տեսակցութիւնը տեղի ունեցաւ Ասորւոց Անտիոքին մէջ, ուրկէ Տիգրան Հայաստան փոխադրուեցաւ։ Եւ քանի որ Անտիոքէ Հայաստան բնական ճամբան Մելիտինէի վրայէն է, Տիգրան այս անգամ ալ Մալաթիայէն անցած պիտի ըլլայ։*

*Կը յաջորդէ Լուկուլլոսի արշաւանքը Տիգրանակերտի վրայ։ «Թէ Լուկուլլոս Եփրատը անցաւ Իզոլիի մօտակայքը», կ'ըսէ Լէյման–Հաուպտ, «առանց այլեւայլի կ'եզրակացուի Ստրաբոնի գրածէն* (Geogr. XII. ii. 1), *թէ այդ անցքը Ծոփքի մէջ, Մելիտինէի հանդիպակաց Դոմիսայի բերդին առջեւ տեղի ունեցած է»։* (**Armenien,** I, p. 511)։ *Բայց ըսողներ ալ կան թէ Լուկուլլոս Թեպանմատէնի առջեւէն անցաւ Եփրատը. եւ նկատի առնելով որ Լուկուլլոս Պոնտոսէն կու գար եւ կ'աճապարէր օր առաջ Տիգրանակերտ հասնելու, անհաւանական չէ որ Արաբկիրէն Խարբերդ տանող ճամբան*

*քանեց, որ աւելի կարճ է եւ Քեղանմատէնի առջեւ կ'անցնի Եփրատը գետային խոշոր նաւակներով։ Ես բրած եմ այս անցքը, եւ գիտեցի որ Արածանիի եւ Գարասուի գետախառնումքէն ետք միացեալ Եփրատը հոս չափազանց լայննալով լիճի մը կերպարանքը կ'առնէ եւ շատ խաղաղ ընթացք մը ունի։*

*Մեծն Տիգրան Ն. Ք. 67–ին, Լուկուլլոսը նահանջի ստիպելէ ետք, կրկին անգամ Եփրատն անցաւ եւ Մելիտինէն գրաւեց։ Բայց կարճատեւ եղաւ այս գրաւումն ալ։ Քանզի թէեւ Տիգրան կը փափաքէր զինք Մելիտինէն Հայաստանի կցուած պահել, սակայն յաղթականն Պոմպէոս Ն. Ք. 64–ի դաշնագիրով վերջ տուաւ Մեծն Տիգրանի կազմած հայկական կայսրութեան եւ պահանջեց որ Հայոց թագաւորը հրաժարի Եփրատէն արեւմուտք իր գրաւած ամբողջ երկիրներէն։*

*Այսպէս Մելիտինէ վերադարձուեցաւ Կապադովկիոյ թագաւորութեան, որ արդէն Հռովմի հովանաւորեալն էր, եւ այս հանգամանքը ունէր Մելիտինէ՝ երբ վերջին անգամ Ն. Ք. 33–ին Մարկոս Անտոնիոս եռապետն անկէ անցաւ՝ Հայաստանի վրայէն դէպի Պարթեւաց երկիրն արշաւելու համար։*

*Երբ Յ. Տ. 17–ին Գերմանիկոս կեսար Կապադովկիոյ թագաւորութիւնը ջնջելով, երկիրը հռոմէական նահանգի վերածեց, բնականաբար Մելիտինէ ալ հռոմէական տիրապետութեան տակ մտաւ։ Այնուհետեւ Մելիտա ամրոցը հռոմէական կայսրութեան սահմանապահ լեգէոններուն կայանը դարձաւ։*

*Ստրաբոն աշխարհագիրը* (+ ca. 25), *որ այդ ժամանակներուն կը գրէր իր մեծ երկը, շատ հիացումով կը խօսի Մելիտինէի մասին։ Ան իր Աշխարհագրութեան մէջ յաճախակի կը յիշէ Մելիտինէն, եւ յարմար է հոս մէջբերել իր կարգ մը յիշատակարանները։ Ստրաբոն կը ցուցնէ թէ Մելիտինէ նահանգը հարաւէն սահմանակից էր Կոմմագինէի հետ եւ երկուքին մէջտեղ սահմանագլուխ կը կազմէր Արեւելեան Տաւրոսի լեռնաշղթան, զոր ինք յաճախ «Ամանոս» ալ կը կոչէ։ «Ազգերը համրելու ատեն», կ'ըսէ, «անոնք [հիները] Կատաւոնիան կը դնէին Կապադովկիայէն ետք եւ ապա Եփրատը... այնպէս որ Մելիտինէն անգամ Կապադովկիոյ (ուղիղը՝ Կատաւոնիոյ) մաս կը համարէին, թէպէտեւ Մելիտինէ, որ Կատաւոնիոյ ու Եփրատի մէջտեղ կը գտնուի եւ Կոմմագինէին շատ կը մօտենայ, Կապադովկիոյ տասներորդ մասն է՝ այդ թագաւորութեան տասնեակ կառավարչութեանց բաժանման համեմատ»* (Geography, XII, i. 2). *«Նա [Պոլիւբիոս] կը սկսի Կոմմագինէի մէջ Սամոսատէն, որ կը գտնուի [Եփրատի] հունին վրայ. եւ կ'ըսէ թէ Սամոսատի քով Եփրատի կամուրջէն եւ Կապադովկիոյ Տաւրոս լեռներուն վրայէն մինչեւ Տոմիսա 450 ասպարէզ է»։* (XIV, ii, 29). *«Քանզի Քալիւբեանց երկրէն անցնող միջօրէականը Փոքր Հայքի մէջէն եթէ մինչեւ Եփրատ երկնցնենք, բոլոր արեւմտեան կողմը կը մնան Կապադովկիա, Կոմմագինէ, Ամանոս լերինք եւ Իսոսի ծովածոցը»* (XIV, V. 24)։ *«Ապա մէկ կողմէն Ամանոս կը բաժնուի անկէ (Տաւրոսէն), եւ միւս կողմէն՝ Անտիտաւ–*

րոսը: Վերջինիս մօտն է Կոմանա, որ վերին Կապադովկիոյ կը պատկանի: Ան [Անտիտաւրոսը] կը վերջանայ Կատաւոնիոյ մէջ. իսկ Ամանոս լեռը կը շարունակուի մինչեւ Եփրատ ու Մելիտինէ, ուր Կոմմագինէ կը տարածուի Կապադովկիոյ հարաւը» (XI, xii, 2): Յայտնի է թէ Ստրաբոն հոս «Ամանոս» ըսելով Արեւելեան Տաւրոսի լեռնաշղթան կը հասկնայ:

«Կապադովկիա կը բաղկանայ շատ մասերէ, եւ յաճախակի փոփոխութիւններ կրած է: — Միեւնոյն լեզուն խօսող ազգերը գլխաւորապէս անոնք են որ հարաւէն սահմանուած են Կիլիկեան Տաւրոսով, ինչպէս կը կոչուի. արեւելքէն՝ Հայաստանով, Կողքիսով ու մէջտեղը գտնուող ժողովուրդներով, որոնք այլազան լեզուներ կը խօսին. հիւսիսէն Եւքսինեան ծովով մինչեւ Ալիսի բերանը. արեւմուտքէն Պափլագոնացիներով, նաեւ Գաղատացիներով, որոնք Փռիւգիա գաղթած են ու մինչեւ Լիկայոնիա տարածուած, ու Կիլիկեցիներով, որոնք կը գրաւեն լեռնային Կիլիկիան» (Strabo, Geography, XII, i, 1):

«Այս ազգերուն մէջ, որ միեւնոյն լեզուն կը խօսին, հիները կը դասէին Կատաւոնացիները առանձինն, զանազանելով զանոնք Կապադովկացիներէն, զորս կը նկատէին իբրեւ տարբեր ժողովուրդ մը: Ազգերու թուահամարման ատեն Կատաւոնիան կը դնէին Կապադովկիայէն ետք, ապա Եփրատը եւ այն ազգերը, որ այդ գետի միւս կողմն են. այնպէս որ Մելիտինէն անգամ Կատաւոնիոյ մէջ կը պարփակէին, թէպէտեւ երկրին տասը կառավարչութեանց բաժանման [ներկայ] դրութեան համեմատ՝ Մելիտինէ կը գտնուի Կատաւոնիոյ ու Եփրատի մէջտեղ եւ Կոմմագինէին կը մօտենայ ու կը կազմէ Կապադովկիոյ տասներորդ բաժինը: Քանզի մեր ժամանակի թագաւորները, որ Արքեղայոսի նախորդած էին, Կապադովկիոյ թագաւորութիւնը այս կերպով կը տրոհէին:— Կատաւոնիա մէկ տասներորդ բաժինն է Կապադովկիոյ: Մեր օրով ամէն կառավարչութիւն իր յատուկ կառավարիչն ունէր, եւ քանի որ Կատաւոնացւոց լեզուին մէջ ոեւէ տարբերութիւն չի նշմարուիր ուրիշ Կապադովկացւոց լեզուին հետ համեմատելով, ոչ ալ ոեւէ տարբերութիւն իրենց սովորութիւններուն մէջ, զարմանալի է թէ ի՛նչպէս օտար ազգի մը առանձնայատուկ նշանները բոլորովին անհետացեր են, մինչդեռ անջատ ազգեր էին անոնք առաջ: Արիարաթ Առաջին, որ Կապադովկիոյ թագաւորի տիտղոսը կրեց, Կատաւոնացիները կցեց Կապադովկիացւոց» (XII, i, 2):

«Բայց մինչ [Կապադովկիոյ] երկիրը Արքեղայոսի եւ անոր նախորդներուն իշխանութեան տակ կը գտնուէր, տասը կառավարչութեանց բաժնուած էր. հինգը Տաւրոսի մօտ կը համրէին՝ Մելիտինէ, Կատաւոնիա, Կիլիկիա, Տիանիտիս և Գարսաւրիտիս. մնացած հինգն էին՝ Լաւինեանսինէ, Սարգարաւսինէ, Սարաւենէ, Քամմանինէ, Մորիմենէ» (XII, i, 4):

«Մելիտինէ կը նմանի Կոմմագինէի, քանզի ամբողջովին պտղատու ծառերով տնկուած է, եւ Կապադովկիոյ միակ մասն է՝ այս կերպով տընկուած: Ձէթ կ՚արտադրէ եւ Մոնարիտ կոչուած գինին, որ Յունաստանի գինիներուն հետ կը մրցի: Դիրքը Տոփայ դիմացն է, ունենալով Եփրատ գետը

որ կը հոսի անոր եւ իրեն մէջտեղ. եւ Կոմմագինէ՝ որ սահմանակից է։ Գետի ձախ կողմն եղող գաւառին մէջ է Դոմիսա, Կապադովկիոյ մէկ կարեւոր ամրոցը։ Անիկա 100 քանքարի ծախուած էր Ծոփաց իշխանին. բայց Լուկուլլոս զայն նորէն իբրեւ քաջութեան մրցանակ պարգեւեց Կապադովկիոյ իշխանին՝ Միհրդատի դէմ պատերազմի մէջ մատուցած ծառայութեան փոխարէն» (XII, ii, 1)։

«Ոչ Կատաւոնացւոց գաւառը եւ ոչ Մելիտինէ ունի ոեւէ քաղաք, այլ ամրոցներ՝ լեռներու վրայ, ինչպէս Ազամորա եւ Դադասարկոն, որուն շուրջը կը հոսի Կարմալաս գետը։ Կայ հոս Կատաւոնեան Ապողոնի մեհեան մըն ալ, որ պաշտելի է ամբողջ Կապադովկիոյ մէջ, եւ զոր Կապադովկացիք ընտրած են իբրեւ տիպար իրենց մեհեաններուն...։ Մնացածներէն՝ Սարգարաւսինէ ունի Հերփա անուն փոքր աւան մը՝ Կարմալաս գետի վրայ...։ Միւս նահանգներէն մէկուն մէջ է Արգոս, բարձր ամրոց մը Տաւրոսի մօտ....» (XII, ii, 6)։

«Պոնտոսի ու Կապադովկիոյ սահմանագլուխը լեռնաշղթայ մըն է Տաւրոսի զուգահեռական, որ Քամմանինէի արեւմտեան ծայրերէն սկսեալ, ուր կը կանգնի Դասմենտա, ամրոց մը՝ ապառաժի մը վրայ շինուած, կ՚երկարի մինչեւ Լաւինեանինէի արեւելեան մասերը։ Քամմանինէ եւ Լաւինեանինէ՝ երկուքն ալ Կապադովկիոյ կառավարչութիւններն են» (XII, ii, 10)։

## Ը.

## ՄԵԼԻՏԻՆԷ ՀՌՈՎՄԱՅԵՑԻՈՑ ՕՐՈՎ

Ըսինք թէ Յ. Տ. 17-ին՝ երբ Գերմանիկոս կեսարը Կապադովկիոյ թագաւորութիւնը ջնջելով երկիրը հռովմէական նահանգի վերածեց, բնականաբար Մելիտինէ ալ հռոմէական տիրապետութեան տակ մտաւ, եւ այնուհետեւ Մելիտինէ ամրոցը Հռովմի կայսրութեան սահմանապահ լեգէոններուն կայանը դարձաւ։ Հայաստանի թագաւորութեան համար Պարթեւաց դէմ մղուած Ներոնեան պատերազմներուն մէջ Մելիտինէ շատ անգամ կը յիշուի, որովհետեւ Հայաստան արշաւող հռոմէական լեգէոններուն միացեալ խարիսխը կը կազմէր այս ամրոցը, որ կը պահպանէր Դոմիսայի կամուրջը, որ Եփրատի ամենադիւրաւոր անցքը կը նշանակէր։

Այդ պատերազմներուն հայթայթած աշխարհագրական եւ այլ գիտական տեղեկութիւնները կը շահագործէ Երէցն Պլինիոս իր «ԲՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ» հռչակաւոր մատեանին մէջ, ուր Ստրաբոնի նման չափազանց կը գովէ Մելիտինէն եւ կը գրէ որ Մելիտա կոչուած ամրոցն ըստ աւանդութեան Ասորեստանի Շամիրամ թագուհին շիներ է։ Ամրոցին այս առասպելական հիմնադիրին անունը թերեւս կը պահպանուէր տակաւին մեր թուականի ԺԲ. դարուն, երբ Միքայէլ Ասորին կը յիշէ Շամբինի ամրոցը Մալաթիոյ սեւա-

հող (sawad) պաւտոյն մէջ (**Chronographie,** թարգմ. Ghabot, III, p. 272) Պլինիոս գիտունը մեռած է 79 թուականին՝ Վեսուվ հրաբուխի մեծ բռնկումին ատեն:

Հռովմայեցւոց շրջանին Մալաթիա իր ծաղկումն ու բարգաւաճումը կը պարտի իր դիրքին՝ կայսրութեան ամենէն արեւելեան սահմանին վրայ: Տիտոս կայսեր օրով (Յ. Տ. 79—81) եղած զինուորական կարգադրութեանց համեմատ՝ Մելիտա մնայուն կայանը եղաւ Երկոտասաներորդ լեգէոնին. իսկ անկէ առաջ Մելիտայի մէջ սահմանապահ կայազօր էր Քսաներորդ Լեգէոնը: Յովսեպոս կը պատմէ որ Յ. Տ. 70-ին Երուսաղէմի նուաճումէն ետք՝ Տիտոս կեսարը, որ այն ատեն իր Վեսպասիան հօրը փոխանորդ սպարապետ էր Պաղեստինի մէջ, թոյլատրեց որ Տասներորդ Լեգէոնը Երուսաղէմ մնայ եւ ետ չղրկուի Եփրատէն անդին, ուր անոնք գտնուած էին նախապէս: Իսկ միանգամայն յիշեց Երկոտասաներորդ Լեգէոնի մասին, որուն կայանը նախապէս Անտիոքի մօտ Ռափանէա էր, թէ իր Կեստիոս հրամանատարին ներքեւ տեղի տուած էր Հրէից յարձակման առջեւ. ուստի զանոնք ղրկեց Եփրատի մօտ Մելիտինէ, որ Հայաստանի ու Կապադովկիոյ սահմանագլուխին վրայ կը գտնուէր (Josephus, **Bella Jud,** VII, i, 3):

Մելիտայի օտար այցելուներուն մէջ կրնանք համարել Չինաստանի Ճանչաւոյ կայսեր Հռովմայեցւոց քով ղրկած պատգամաւորը, Քիու Ֆան-Եինկ անուն մեծ պաշտօնեան, որ մեր 97 թուականին Հայաստանէն ալ անցած է, եւ իր օրագրութեան մէջ կը յիշէ որ Ծոփաց երկրէն ետք մեծ գետը — Եփրատն — անցաւ եւ վերջապէս Սիւրիոյ Անտիոքը հասաւ: Նա հարկաւ Մելիտայի քով անցած է Եփրատը, Դոմիսայի կամուրջով, որովհետեւ Ծոփաց երկրէն դէպի Անտիոք կարճ եւ բնական ճամբան ա՛յս է:

Կ'երեւի թէ այս ատենները ամրոցին շուրջ աւելի ընդարձակ բնակչութիւն հաստատուած է եւ անոնց մէջ յունախօս ժողովուրդ ալ կայ. որով աստիճանաբար քաղաքի ձեւ կ'առնէ: Այսպէս, Տրայիանոս կայսրը, երբ Հայաստանը կը նուաճէ՝ Յ. Տ. 114-ին, Մելիտինէ նահանգն ալ միացնելով հռոմէական վարչութեան տակ մտած հայկական նահանգներուն, բոլորին մայրաքաղաք եւ կուսակալանիստ կ'որոշէ Մելիտինէ քաղաքը: Գ. Ատտիլիոս Յուլիանոս Կղաւտիոս Ռուփինոս անունով մէկը կը կարգուի այն ատեն «Օգոստեան տեղակալ փոխպրետոր» Հայաստանի:

Բայց շատ չի տեւեր քաղաքական այս կացութիւնը, որովհետեւ Տրայիանոսի մահէն ետք (Յ. Տ. 117) անոր յաջորդող Ադրիանոս կայսրը, որ Արեւելք ալ այցելած է, թերեւս մինչեւ Մելիտինէ իսկ եկած, թոյլ կու տայ որ Հայաստան նորէն իր թագաւորութիւնն ունենայ եւ Մելիտինէն վերադառնայ Կապադովկիոյ՝ մաս կազմելու իր նախկին վիճակին: Սակայն Մելիտինէ քաղաքն իր մայրաքաղաքի աստիճանին բարձրացումովն շահած զարգացումը չի կորսնցներ. «Այս բարձրացումով կը կրկնապատկուի դաշտին ձգողականութիւնը», կ'ըսէ Հ. Սահակ Կոգեան (ՄԵԼԻԴ, էջ 13), «կը խմբուին հոն շինու-

բար տարրներ : Շէնքեր կը բարձրանան ամրոցին չորս կողմը : Ընդարձակ հրապարակներ քաղաքին կու տան հռոմէական կերպարանք : Գեղեցկութեան շուք կը տարածեն տաճարները, բաղնիքները եւ թէատրոնը՝ անհրաժեշտ թէ՛ զբօսանքի եւ թէ՛ կրթութեան համար : Այսպէս գեղակերտ ու բարեզարդ կը ճանչնայ զայն Պրոկոպիոս 562-ին՝ հինգ դարու աշխատանքին արդիւնքը նկարագրելով» (ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ, Դ. 15) :

Քրիստոնէական Բ. դարու մէջտեղը գրած է Պտղոմէոս գիտունն ալ իր Աշխարհագրութիւնը եւ նոյն ատենները պատրաստուած են «Անտոնինեան Ուղեգրութիւնք» անուանեալ քարտիսաւոր տախտակները : Սոյն երկու աղբիւրներն ալ Մելիտինէ քաղաքը կը նշանակեն իբր հռոմէական կայսրութեան ամենակարեւոր սահմանապահ մէկ վայրը :

Հռոմէական քաղաքին տեղը, որ ներկայ Մալաթիայէն երկու ժամ դէպի հիւսիս-արեւմուտք գտնուող Էսքիշէհիր կամ Էսքի Մալաթիա լքեալ վայրով կը ներկայացուի, դժբախտաբար գիտական պեղումներու եւ խուզարկութեանց առարկայ եղած չէ : Ինչպէս **Murray's Handbook of Asia Minor** գիրքը կ'ըսէ (էջ 256), պարիսպներու, մզկիթներու, եկեղեցիներու, խաներու եւ այլ շինութեանց փլատակները հոն կը ծածկեն շատ ընդարձակ տարածութիւն մը, բայց խառն ի խուռն եւ առանց շահեկանութեան կը մնան : Հռոմէական Մելիտինէէն եւ կամ ԺԲ. «Որոտացող» լէգէոնի մնայուն բանակատեղիէն գրեթէ ոչ մէկ մնացորդ կայ տեսանելի : Հռոմէական շրջանէն քանի մը սիւներ միայն ինկած կը պառկին Ալամինարէ ճամիին մօտերը :

Հոս պատշաճ կը համարինք Լէյման-Հաուպտի ՀԱՅԱՍՏԱՆ ԱՏԵՆՕՔ ԵՒ ՀԻՄԱ գիրքէն քաղուածք մը տալ թարգմանաբար.— «Քառասուն ժամ տեւող, տաքութեամբ ու ծարաւով դժուարացած աշխատանքէ եւ վերջին 1,5 ժամը կատարեալ մութի մէջ ձիավարելէ ետք», կ'ըսէ, «հասայ Իզոլի կամ Գառըքէօյ : Քանի որ կ'ըսէին թէ միւս ափը լաւագոյն պիտի ըլլար օթեւանումը, ուստի իսկոյն Եփրատի վրայէն նաւակով անցայ եւ դիմացը գտնուող Փիրոթ գիւղին մէջ անցուցի գիշերը, Եփրատի երկու ափանց հետազօտութիւնը միւս առտուան ձգելով : Փիրոթէն մեկնելով Յունիս 26-ին՝ աւելի հարաւ-արեւմուտք ուղղուեցայ դէպի ՄԱԼԱԹԻԱ : Մալաթիա — Նոր քաղաքը — որ Եփրատէն քանի մը ժամ հեռու կը գտնուի, իր դիրքին ու շինուածքին համեմատ՝ մեծ նմանութիւն ունի Պարսկաստանի Մարաղա քաղաքին հետ : Ասոր պէս ան ալ կ'երկարի մէկ ու կէս գերմանական մղոնէ աւելի տեղ : Տուները կատարելապէս կը կորսուին ծառաստաններու եւ պտղաբեր պարտէզներու մէջ : Մալաթիա հռչակաւոր է իր հասցուցած պտուղներով : Եւ մասնաւորապէս հիւրասէր ընդունելութիւն գտայ Միւթեսարրֆ Ճեմիլ փաշայի քով, որ լաւ դաստիարակուած թիւրք էֆէնտի մըն է եւ սահուն ֆրանսերէն կը խօսէր : Իր լուսամիտ գաղափարներուն շնորհիւ լաւ յարաբերութիւն կը մշակէր ամերիկացի միսիոնարներու եւ տեղացի բողոքական դաւանու-

թիւնն ընդունած Հայերու հետ: Պատահմամբ Մալաթիա գտնուող Մր. Պրաունը եւ միանգամայն Մալաթիոյ Հայ Աւետարանականաց հոգեւոր հովիւը նախաճաշի հրաւիրեց ինծի հետ:

«Պատուելին Վանք անուն գիւղի մը բնիկն էր Աղընի մօտ, որ այս վերջինին կը հասնի մարդ՝ եթէ Մալաթիայէն առանց Արաբկիր հանդիպելու դէպի Էկին ճամբորդէ: Ան ինծի հաղորդեց որ Վանք գիւղի մօտ գալա մը կայ, որ իսկապէս քարայրներու քաղաք է, որուն ապառաժին երեսը արձանագրութիւն մը փորագրուած է. զոր կարելի է միայն հասնիլ իրարու ծայրը կցուած երկու երկայն ելարաններով, իսկ արձանագրութեան գրութիւնը ճիշդ Քէօմիւրխանի արձանագրութեան գիրերուն կը նմանի: Վանք գիւղի տեղացիէ մը այսչափ ճշդութեամբ տրուած սոյն մանրամասնութիւնները զիս համոզեցին Մալաթիայէն անդին ճամբաս յիշեալ գիւղին վրայէն ընտրելու» (**Armenien einst u. jetzt**, vol., I, p. 483-5):

«Մալաթիայէն մեկնեցայ Յունիս 27-ին, դէպի Վանք գիւղը. ճամբան նախ կը տանի դէպի հին քաղաք — Էսքի Մալաթիա — որ իր ինկած պարիսպներուն եւ մինարէներու եւ պալատներու աւերակներուն մէջտեղ տակաւին կարեւոր թիւ մը թիւրք բնակիչներ կը պատսպարէ, մինչդեռ հոն բնակած Հայերը կոտորածի ժամանակ բնաջնջուած են բացի երեք եղբայրներէ, որոնց մէկուն հետ ես խօսակցեցայ»:

«Մալաթիայէ դէպի Սիվաս ուղղագիծ խճուղիին վրայ, Էսքի Մալաթիայէ քիչ մը անդին, հանդիպեցայ հռոմէական մղոնաքարի մը...» (որուն ընդօրինակութիւնն ու կաղապարն առեր է): «Քիչ վերջը անցայ Գըրգ Կէօզ Քէօփրիւ ըսուած կամուրջը՝ Թոխմասուի վրայ, ճիշդը՝ կեդրոնի գլխաւոր մեծ աղեղէն զատ՝ ասդին 10 եւ անդին 12 նեղ կամարներ կը ներկայացնէ: Անիկա աստ եւ անդ հանդիպող, լաւ պահպանուած միջնադարեան կամուրջներէն մէկն է, բայց անշուշտ աւելի հին, Հռոմայեցւոց օրուան կամուրջի մը տեղը շինուած պիտի ըլլայ: Ապա խճուղին կը հետեւի, ինչպէս մղոնաքարն իսկ կ'ապացուցանէ, հռոմէական հին պողոտայի մը, որ, ինչպէս .... պիտի տեսնենք, Լուկուլլոսի եւ Կորբուղոնի ալ գործածած զինուորական պողոտան է բանակով Հայաստան արշաւելու համար, Մալաթիա-Իզօլի ճամբով եւ Խարբերդի դաշտին մէջէն»: (Ibid, p. 486):

Մեր ճամբորդը ապա դէպի ձախ ձգելով Սիվաս տանող խճուղին, բռնած է հին ժամանակ մինչեւ Սատաղա տանող հռոմէական զինուորական պողոտայի գիծը, Եփրատի ընթացքն ի վեր, եւ գետին դէպի արեւմուտք ցցուած մէկ ծունկը անցնելէ ետք, ուր Էգրիպիւք անուն գիւղ մը կայ, Գըզըլպաշ կամ Ալլահի ազանդէն մարդոցմով բնակեալ, ապա Քեպանմատէնի մօտ Մուրատսուի եւ Գարասուի գետախառնուրդը դէպի աջ ձգելով, Յունիս 29-ին անցաւ Արաբկիր-սու գետակի միակամար կամուրջը եւ յետոյ գետակի ձախ կողմէն մնացող վտակի ձորին մէջ հասաւ Վանք գիւղը եւ անոր ժայռաբերդը: Շատ դժուարութեամբ մագլցեցան ապառաժն ի վեր եւ գտան արձանագրութիւնը, որ սակայն սեպագիր չէր, այլ 10 ոտանաւոր տողերէ բաղկացեալ

յուճարէճ արձանագրութիւն մը, որուն մէջ Աթենայիս անուն իշխանուհիի մը, որ Մարկոս Անտոնիոս եռապետէն սերած ըլլալ կը թուի, վաղաժամ կորուստը կ'ողբայ իր ամուսինը, որ ինքն ալ նոյն սերունդէն պիտի ըլլայ: Լէյման-Հաուպտ եւ արձանագրութեանս վերծանումին մէջ իրեն օգնող լեզուագէտ պատմագէտներն այն եզրակացութեան եկեր են որ հոս Արաբկիրի շրջանակին մէջ տեղական փոքր իշխանութիւն մը գոյութիւն ունեցած է տակաւին Յ. Տ. 130-ի ատենները. բայց թէ Աթենայիս իշխանուհին եւ իր ամուսինը դեռ քրիստոնեայ չէին, որովհետեւ երկնային ու սանդարամետական աստուածները կ'ոգեկոչուին եղերերգութեանս մէջ (Armenien, I, pp. 488–494, արձանագրութեան լուսանկարով եւ այլ պատկերներով): Ծանօթագրենք որ Փրոֆ. Լէյման-Հաուպտ կրնար լաւ հայերէն խօսիլ, եւ Մալաթիա հանդիպած է համիտական ընդհանուր կոտորածներէն մի քանի տարի վերջը 1899-ին:

## ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԻՒՆԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

Մալաթիա քաղաքը շատ կանուխէն ճանչցած պիտի ըլլայ քրիստոնէական կրօնքը, աւելի կանուխ քան բուն Հայաստանը, որով արդէն Դ. դարուն դարձած էր քրիստոնէութեան կարեւոր կեդրոններէն մէկը: Զրոյցներ հիւսուած են Մալաթիոյ մէջ քրիստոնէութիւնն առաջին քարոզողի մասին՝ ձեւուած բուն Հայաստանի առաքելներուն աւանդութեանց վրայէն: Այսպէս, կը զրուցուի թէ Թադէոս առաքեալն է որ քարոզեր է, եւ իր այցելութեան անմոռաց յիշատակ թողեր է հոն՝ Քրիստոսի խաչելութեան գամերէն մէկը (Սրուանձտեանց, ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Բ., էջ 320): Այս հետաքրքրական զրոյցներու վրայ առանց ծանրանալու՝ անկախ աղբիւրներու տեղեկութեանց հիմամբ՝ կրնանք ընդունիլ որ արդէն Բ. դարու վերջերը Մալաթիա քրիստոնեայ էր եւ իր մարտիրոսներն ալ ունեցած, մինչ Եփրատի ձախ կողմը բուն Հայաստանը տակաւին հեթանոսութեան խոր խաւարին մէջ կը քնանար:

Արդէն Պետրոսի Առաջին Թուղթին մէջ, որ ըստ Փրոֆ. Րեմսէյի՝ Թերեւս Քրիստ. 80 թուականին գրուած է, կը յիշուին եկեղեցիներ՝ Փոքր Ասիոյ միւս երկիրներուն հետ՝ Կապադովկիայի (Ա. Պետ. ա. 1), որու մասն էր Մելիտինէ: Եւ արդէն Պենտեկոստէի հրաշքին ականատեսներուն մէջ կը յիշուին Կապադովկիացի մարդիկ (Գործք. Բ. 9): Նոր Կտակարանի քննական սերտողութեամբ սա համոզման եկած եմ որ շատ հաւանօրէն Շիղա առաքեալի ձեռքով էր որ Աւետարանը քարոզուած է Փոքր Ասիոյ արեւելեան երկիրներուն մէջ, եւ նշանակելի է որ Մելիտինէի անմիջական դրացի Կոմմագինէի մէջ, Սամոսատի մօտերը, «Շիղայի վանք» մը կը յիշեն սուրբ պատմիչները:

Կ՚ըսուի թէ երբ մեր 177 թուականին Մարկոս Աւրելիոս կայսրը Պանոնիոյ երկրին մէջ կը պատերազմէր, սաստիկ երաշտութեան պատճառաւ ջուր չկար բանակին խմելուն համար իսկ։ Այն ատեն կայսրը հրամարեց որ բանակին մէջ ամէն զինուոր աղօթէ իր հաւատացած մէկ աստուածին, որպէսզի անձրեւ գայ։ Վերջին անգամ աղօթեց բանակին մաս կազմող «Որոտացող» (Fulminata) մականուանեալ ԺԲ․ Լեգէոնը, որուն զինուորները բոլորն ալ քրիստոնեայ էին․ասոնք դաշտին մէջտեղ ծունկի եկան եւ Յիսուս Քրիստոսի անունով Աստուծոյ աղօթեցին․ եւ իսկապէս անձրեւ եկաւ, բանակին բոլոր զինուորները անձրեւի կաթիլներն իրենց վահաններուն մէջ բռնելով խմեցին եւ բանակը ծարաւէն մեռնելէ ազատեցաւ։ Իրականին մէջ ալ այսպիսի տեսարանի մը պատկերը քանդակուած կայ Հռովմի մէջ Մարկոս Աւրելիոսի յաղթութեան կամարին վրայ։

«Որոտացող լեգէոնի» այս աւանդութիւնը կը ցուցնէ որ Մարկոս Աւրելիոս կայսեր օրերուն (Յ․ Տ․ 161—181) արեւելեան Կապադովկիոյ մէջ քրիստոնէութիւնը բաւական ընդհանրացած էր, որովհետեւ Fulminata կոչուած Երկոտասաներորդ Լեգէոնի սովորական կայանն էր Մելիտինէ, եւ անոր զինուորներն ալ հաւանօրէն մեծաւ մասամբ այս գաւառի տեղացիներէն կ՚առնուէին։ Միեւնոյն լեգէոնի պատկանող Պօղիկտոս Մելիտինեցին նահատակուեցաւ Դեկիոս կայսեր հալածանքին ատեն (Յ․ Տ․ 250), երբ արդէն զօրաւոր եկեղեցիներ կային Մելիտինէի եւ այլ քաղաքներու մէջ։

«Մելիտինեցի կամ ի Մելիտինէ նահատակեալ», կ՚ըսէ, Հ․ Ղեւոնդ Ալիշան, «բայց Հայ ճանչցուած եւ այսպէս կոչուած մէկը մինչեւ հիմա կը պատուուի Նափոլիի երկրին Կաղանիա գաւառին Աչչի—Րէալէ քաղաքին մէջ․ յատուկ եկեղեցի մը նուիրուած է իրեն․ անունը լատինաբար կը կոչուի Expeditus, որ անշուշտ թարգմանուած է բնիկ լեզուէն... Աւանդութիւնը նոյնիսկ Մելիտինեան Շանթաձիգ Լեգէոնի գնդապետ կը կարծէ այս սուրբը։ Անունը կրնայ առնուած կամ նմանցուած ըլլալ նաեւ հայ բառէ մը, ինչպէս ասպետ կամ Սպետ։ Մելիտինէի նահատակաց հռչակաւորյններն են Սուրբ Պոլիեւկտիս եւ Նէարխոն (Նոր իշխան), Դեկոս կայսեր հալածանաց ժամանակ․ ասոնց երկնաւոր փառքը՝ յերկրի կամ ի դպրութեան ալ անմահացուց փրանկ բանաստեղծն Քորնէյլ իր գերահռչակ թատերական ողբերգութեամբը» (ԱՐՇԱԼՈՅՍ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ, էջ 88—9)։

Մեծն Տրդատի գահակալութեան առթիւ հռովմէական նահանգներէն հաւաքուող օժանդակ գունդերու ժամադրավայրը հաւանօրէն Մելիտա էր։ Եւ հարկաւ Գրիգոր Պարթեւն ալ, Հայաստանի ապագայ Լուսաւորիչը, իբր սպասաւոր Տրդատ արքայազունին, այս միջոցին այցելեց Մելիտինէն։ Այս պարագան անորոշ կը թողու Ագաթանգեղոս, որ սաչափը միայն կ՚ըսէ թէ Կայսրը «գումարեաց ի ձեռն նորա (Տրդատայ) զօրս բազումս յօգնականութիւն նմա, եւ արձակեաց յիւրական աշխարհն Հայոց» (էջ 48)։ Մովսէս Խորենացի կ՚աւանդէ որ երբ Տրդատ Կեսարիա հասաւ, Հայոց նախարարներէն

չատեր անոր ընդառաջ ելան հոն (ՊԱՏՄ․ Բ․ ձբ․ էջ 346)։ Այս ճշմարիտ ըլլալով հանդերձ, Մելիտինէն պէտք է որ ընդունինք իբր ընդհանուր հաւաքավայր օժանդակ հռովմէական բանակին։ Արդ, Ֆարդինի յունարէն արձանագրութեան համաձայն, զոր գտնողը՝ Փրոֆ․ Լէյման–Հաուպտ սխալմամբ մեր Պապ Թագաւորի ժամանակին կ'ընծայէ, մինչդեռ բոլոր ներքին նշանները կը ցուցնեն թէ անիկա Մեծն Տրդատի գահակալութեան պարագային կը վերաբերի, Հայոց Թագաւորին օժանդակ գունդեր հասած են ԵՓՐԱՏԱՑԻՔ, Մատիանէ, Մելիտիա, Կոմմագինէ եւ Ոսրոյենէ նահանգներէն (Lehmann—Haupt, **Armenien**, I, p. 416)։ Ասոնց բոլորին համար ամենադիւրին եւ բնական հաւաքավայրն է Մելիտիա։ Այսպէս, երիտասարդ գահաժառանգը հսկայազօր եւ իր հաւատարիմ հայ նախարարները, հռովմէական քաջ զօրավարներուն ու զինուորներուն հետ, իրենց չեփորներով գոռացուցին եւ իրենց երիվարաց սմբակներուն տրոփիւնով թնդացուցին Մալաթիոյ պողոտան՝ անցնելու համար Հայաստան եւ անկէ վանելու Պարսից բանակները, որ «զաշխարհն գրաւեալ էին յինքեանս ի ծառայութիւն»։ Իսկ պատերազմը պիտի յանգէր քաջն Տրդատի թագադրութեան եւ Հայաստանի մէջ Արշակունի հարստութեան վերահաստատման։

350 Թուականին Կոստանդիոս կայսրը իր Կոստաս եղբօր նշանածը, Աբլաբիոս կոմսի Ողոմպիադա անուն դուստրը, Հայոց Արշակ Բ․ Թագաւորին հետ կ'ամուսնացնէ Կապադովկիոյ Կեսարիա քաղաքին մէջ, եւ ապա զանոնք ճամբայ կը դնէ Փոքր Հայքի Մելիտինէ քաղաքէն, եւ ինքն ալ Եփրատ գետն անցնելով Եդեսիա կ'երթայ։ Այսպէս կը գրէ հռովմայեցի պատմիչ Ամմիանոս Մարկեղինոս (XX, 1)։ (Հ․ Ն․ Անդրիկեան, ԲՈՒԶԱՆԴԻ ՄԱՄԻԿՈՆԵԱՆՆԵՐԸ, էջ 38—9-ի ստորեւ ծանօթութիւնը)։

Հաւանօրէն Մալաթիա է դարձեալ տեսարանը Հայոց Պապ երիտասարդ Թագաւորին մէկ սխրագործութեան, զոր կը պատմէ ժամանակակից լատին հեղինակ Ամմիանոս Մարկեղինոս։ Պապ Թագաւորը Վաղէս կայսեր գաղտնի հրամանաւ եւ հռովմայեցի Տերենտիոս զօրապետի խաբկանօք Կիլիկիա — Տարսոն — տարուած էր իր 300 քաջ պալատականներով եւ հոն արգելափակուած։ Վերջապէս Հայոց Թագաւորն ու պալատականները կերպը գտնելով, փախուստ կու տան եւ կայսերական նահանգապետին հետապնդումէն ալ մազապուր կ'ազատին։ «Ետեւէն հասնող լեգէոն մըն ալ Պապին յանկարծական յարձակումին առջեւ ցիրուցան եղաւ։ Թէեւ հալածուելու վտանգէն ազատած, սակայն երկու օրուան անընդհատ արշաւանքէն բոլորովին խոնջած էին, երբ Եփրատի եզերքը հասան Պապ եւ իրենները։ Մերձակայ տուներէն քուական անկողիններ հայթայթելով, որոնց ներքեւ հաստատեցին երկերկու — ուռած — տիկեր, Թագաւորը եւ մեծամեծները նստան այդ վտանգաւոր անդրուվարներուն վրայ եւ անցան գետին միւս կողմը․ մաս մը ձիաւորներ ալ ալիքներուն դէմ կռուելով՝ մօտեցան ափունքին ահագին դժուարութիւններով» (Եղիշէ Արք․ Դուրեան, ԱԶԳԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, էջ 288)[1]։ Պէտք է

(1) Տես նաեւ Ասատուրեան, ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՀՌՈՎՄ, էջ 306-9։

նկատի առնել դարձեալ որ Կիլիկիայէն Հայաստան ամենակարճ եւ բնական ճամբան ան է, որ Մալաթիոյ մօտ կ'անցնի Եփրատը:

Վերջապէս, Մովսէս Խորենացին Վարազդատ Թագաւորին համար կ'աւանդէ հրաշալի արարք մը: Այս սրտոտ, անձնեղ, ուժով ու շատ ճարտար նետաձիգ երիտասարդ իշխանը երբ թագաւորելու համար Հայաստան կ'երթար, Դարանաղեաց դժուար կիրճերուն մէջ խումբ մը ասորի աւազակաց կը հանդիպի, զորս զարնելով փախստական կ'ընէ: Անոնք ալ Եփրատի նեղ տեղը շինուած կամուրջէն անցնելով, զայն իրենց ետեւէն կը քանդեն. բայց Վարազդատ մէկ ոստումով գետէն անդին կը ցատկէ, ուրմէ զարհուրելով աւազակները՝ զէնընկէց անձնատուր կ'ըլլան՝ (Մ. Խորենացի, ՊԱՏՄ. Գ. Խ. էջ 483—5): Ասիկա եթէ Պապ Թագաւորի դէպքին մէկ վարիանտը չէ, որովհետեւ Բիւզանդ Փաւստոս այսպիսի բան մը չի պատմեր Վարազդատի մասին, նորէն Մալաթիոյ կողմերը պատահած ըլլալու է: Բայց ուշագրաւ է Խորենացւոյ այս աւանդութեան մէջ ասորի աւազակներու յիշատակութիւնը, որովհետեւ ես Արաբկիրէ մեկնելով Անջրդիի վրայէն դէպի Ծնկախ՝ Եփրատը(Գարասու)անցնելէ ետք, Զմշկածագի ճամբուն վրայ հանդիպեցայ քանի մը լքեալ վանքերու եւ եկեղեցիներու, որոնց պատերուն վրայ ասորերէն արձանագրութիւններ կային: Ուրեմն, թերեւս Հայ Արշակունեաց հարստութեան անկումէն առաջ իսկ Ասորիներ հաստատուած էին Մելիտինէի կողմերը:

«Զորրորդ դարուն Մալաթիա քաղաքը բոլորովին յունացած կը գտնենք», կ'ըսէ Հ. Ս. Կոգեան: «Յունական էր հոն եկեղեցական իշխանութիւնը եւ յոյն էին անոր եպիսկոպոսները: Մելիտինէի մէջ հայ եպիսկոպոս կանուխէն տեսնելու փափաքը առիթ տուած է Հայ Մետրապոլտութիւն մը երեւակայելու հոն Ներսէս Մեծի օրէն (Հացունի, ԿԱՐԵՒՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ ՀԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՊԱՏՄՈՒԹԵՆԷՆ, Վենետիկ, 1927, էջ 169—172): Կորիւնի լռութիւնը լաւագոյն եւ անհերքելի փաստն է որ Մելիտինէ չունէր հայ եպիսկոպոս այդ դարերուն» (ՄԵԼԻԴ, էջ 15): Բայց եպիսկոպոսները յունածէս ըլլալով հանդերձ, անոնցմէ ոմանք կրնային ծագումով հայազգի ըլլալ: Այսպէս էր հաւանօրէն Մեսրոպ Մաշթոցի ժամանակակից Ակակիոս եպիսկոպոսը Մելիտինէի (տես Ն. Ադոնց, ՄԱՇԹՈՑ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ, էջ 38):

Մեծն Թէոդոսիոսի օրովն էր ,385թուականին, որ Հայաստան բաժնուեցաւ Հռովմայեցւոց ու Պարսից միջեւ: Հայաստանի բաժանումէն չորս տարի ետք մեռաւ Արեւմտեան Հայաստանի Թագաւորը Արշակ Գ.: Այն ատեն կայսրը ջնջեց Յունահայաստանի Թագաւորութիւնը եւ Բիւզանդիոնի կողմէն կոմէս մը իբր ընդհանուր կառավարիչ նշանակուեցաւ այս երկիրներուն վրայ: Սա ալ յիշատակելի է որ Հայաստանի բաժանումէն տասը տարի ետք, 395 թուին, Հռովմէական Կայսրութիւնը ինքը երկուքի բաժնուեցաւ եւ բնականաբար Մելիտինէ մաս մնաց Արեւելեան Հռովմէական Կայսրութեան: Կայսրութեան այս մասին մայրաքաղաքն էր Կ. Պոլիս, հին անունով Բիւզանդիոն, որով Արեւելեան Հռովմէական Կայսրութիւնը սովորաբար Բիւզանդա-

կան Կայսրութիւն ալ կը կոչուի։ Ասկէ զատ, Կ. Պոլիս եւ շրջակայքը յունախօս էր, եւ հետզհետէ լատիներէն լեզուն կառավարութեան մէջ անգամ գործածութենէ ելնալով, տեղը յունարէնն անցաւ։ Ասոր համար ալ մեր պատմիչները սովորաբար «Յունաց Կայսրութիւն» կ'անուանեն Արեւելեան Կայսրութիւնը, թէեւ անոր բնակիչները Հոռոմք ալ կը կոչեն, որ Հոռոմայեցիք բառին համառօտութիւնն է։

Բայց Մելիտինէ յունական դառնալուն հետ նաեւ հայկական դարձած է։ Արդէն Դիոկղետիանոս (284–305 Յ. Տ.) Փոքր Հայքը եւ Մելիտինէ գաւառը բաժնելով Կապադովկիայէն, զանոնք ինքնուրոյն նահանգ ըրած էր՝ անոր մայրաքաղաք նշանակելով Մելիտինէ քաղաքը։ Վաղէս կայսեր օրով՝ Փոքր Հայքի նահանգը բաժնուեցաւ երեք մասերու՝ Առաջին, Երկրորդ եւ Երրորդ Հայք անուններով, եւ Մելիտինէ 378 թուականին՝ Երկրորդ Հայքի մայրաքաղաքը մնաց։ Հայաստանի բաժանումէն ետք՝ անկէ գաղթականութեան նոր հոսանք մըն ալ սկսաւ դէպի յունական երկիրներ, Մելիտինէ, Կատաւոնիա եւ Փոքր Ասիոյ ուրիշ մասերը։ Արդէն 404 թուականին՝ Ս. Յովհան Ոսկեբերանի աքսորուած ժամանակ՝ հայ գիւղացիութիւն կար Կոկիսոնի եւ Արաբիսոնի շրջանակներուն մէջ։ Մանաւանդ 428 թուին, Արշակունեաց թագաւորութեան բարձումէն ետք՝ արտագաղթի այս հոսանքը աւելի սաստկացաւ։ Հայ ծաւալումը հետզհետէ հասած է մինչեւ Կեսարիա–Մաժաք անգամ։ Իսկ Մելիտինէէն հարաւ, Կոմմագինէի մէջ, Հայեր շատ կանուխէն Ասորիներուն հետ խառն կը բնակէին։

Մկրտիչ Եպս. Աղաւնունին հետեւեալ խիստ հետաքրքրական տեղեկութիւնը կու տայ մեզի Մելիտինէի քրիստոնէական դպրոցին վրայով. «Ս. Եւթիմէոսի կենսագիր՝ Կիւրեղ Սկիւթոպոլսեցին կը գրէ որ Մելիտինէի եպիսկոպոսին դպրոցը արտաքին գրականութենէ զատ, կ'ուսուցանէր Ս. Գիրքը եւ աստուածաբանութիւն։ Եւթիմէոս կ'աշակերտէր հոն Դ. դարուն եւ անոր յաճախած այդ դպրոցը կային նաեւ Հայեր, վասնզի Մելիտինէ հայաշատ կեդրոն մըն էր» (ՏԱԹԵԻ տարեգիրք, Բ. տարի, 1926, Հալէպ, էջ 83)։

Հայոց գրի գիւտին կատարելագործումէն ետք, Ս. Սահակ կ'որոշէ նաեւ Հայաստանի յունական բաժնին մէջ հայ դպրոցներ բանալ։ Զարմանալի է որ Յոյները քրիստոնեայ ըլլալով հանդերձ, արգելքներ կը յարուցանէին իրենց բաժնին մէջ հայ դպրոցներու բացման, հայ դպրութեան ծաւալման եւ Հայոց եկեղեցիներուն մէջ պաշտամունքը հայերէնով կատարելու դէմ։ Ս. Սահակ Պարթեւ վերջապէս — 422–ին — ստիպուեցաւ Կ. Պոլիս ղրկել Ս. Մեսրոպ–Մաշթոցը, Վարդան Մամիկոնեանի ընկերակցութեամբ։ Մաշթոց իրեն հետ կը տանի իր աշակերտներէն խումբ մըն ալ մինչեւ արտասահմանի առաջին կայանը, որ է Մելիտինէ քաղաքը։ Աւելի անդին ուղեւորելու առթիւ իր աշակերտներուն բազմութիւնը Մելիտինէ կը թողու, եւ զանոնք քաղաքին Ակակիոս եպիսկոպոսին յանձնելով հանդերձ, անոնց վրայ դասապետ կամ գլխաւոր կը կարգէ Վանանդեցի Ղեւոնդ Երէցը։ Սա ալ մինչեւ իր վար–

*պալատին Կ. Պոլիսէն վերադարձը արթուն կերպով հսկեց իր աշակերտներուն վրայ, միանգամայն իրեն ու ընկերներուն մտաւոր զարգացման հոգ տանելով Մելիտինէի վերոյիշեալ մետրապոլտական բարձր ուսումնարանին մէջ* (ԿՈՐԻՒՆ, *էջ* 27)։

*Ս. Մեսրոպ կայսերական թոյլտուութեան հրամանն առած՝ Բիւզանդիոնէ վերադառնալէն ետք, առաւ իր աշակերտները Մելիտինէէ եւ անոնցմով կազմակերպեց կրթական գործը Յունահայաստանի մէջ։ Այնտեղ հիմնեց բազմաթիւ վարժարաններ, որոնց վրայ շրջանային տեսուչներ ալ կարգեց։ Մենք տարակոյս չունինք թէ հայ դպրոց մըն ալ Մելիտինէ քաղաքին մէջ բացուեցաւ՝ յունական ուսումնարանի կողքին։ Ինչպէս Հ. Ս. Կոգեան ուղիղ կերպով կը դիտէ, կարեւոր էր հայ դպրոցին դերը Մելիտինէի մէջ՝ հայ տարրը ազգային ուծացումէն եւ գաղթելու վտանգէն ազատելու համար։ Եւ ի՞նչ աւելի բնական եւ հաճելի է քան «խորհիլ, թէ Մաշթոցի աշակերտները եղան ուսուցիչ Մելիտինէի համատոհմ եւ համալեզու հայ մանուկներուն»* (*ՄԵԼԻԴ, էջ* 14—5)։

*Մելիտինէի Ակակիոս եպիսկոպոսը, զոր վերեւ յիշեցինք, իր ժամանակին ամենակարեւոր անձնաւորութիւններէն մէկն էր, եւ դաւանական խնդիրներու մասին՝ Աղեքսանդրիոյ Կիւրեղ եւ Կոստանդնուպոլսոյ Պրոկղոս Պատրիարքներու հետ թուղթեր գրած է մեր Սահակ եւ Մեսրոպ հայրապետներուն* (*Օրմանեան*, *ԱԶԳԱՊԱՏՈՒՄ*, *էջ* 312)։ *Պէտք է ընդունիլ թէ մեր գըլխաւոր թարգմանիչները՝ Ղեւոնդ, Եզնիկ եւ Կորիւն, դաւանաբանօրէն խորապէս ազդուած պիտի ըլլան Եդեսիոյ Ռաբուլաս եւ Մելիտինէի Ակակիոս եպիսկոպոսներէն, Կիւրեղեան դաւանութեան պինդ փարելու մասին։ «Հայերը բռնել էին որոշակի Կիւրեղի կողմը», կը գրէ Ն. Ադոնց. «Մելիտինէի եպիսկոպոս Ակակը, որ երեւում է եւ ծագումով մօտ էր Հայերին, վճռական դեր ունեցաւ եւ այս խնդրում, հաւատ ներշնչելով իր հայրենակիցներին՝ նա նպաստեց մեծապէս Կիւրեղեան հոսանքի յաղթանակին։ Հայ Եկեղեցու Եփեսոսեան դաւանանքի հիմը դրուեցաւ, որ այնուհետեւ անսասան մնաց դարերի ընթացքում։ Ո՛չ միայն Կիւրեղին նրա անմիջական մասնակցութեան, այլեւ Մելիտինէի նշանաւոր եկեղեցականին եւ նրա ջանքերին է պարտական Հայ Եկեղեցին իր դաւանաբանական խարիսխը»* (*ՄԱՇԹՈՑ ԵՒ ՆՐԱ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ*, *էջ* 38—9. *հմմտ. նաեւ էջ* 50—1)։

*Հիմա նորէն դառնանք Մելիտինէի քաղաքական կեանքին։ Մեծն Յուստինիանոս Յունահայաստանի մէջ հայ նախարարութեանց գոյութիւնը երկրին պաշտպանութեան տեսակէտէն վնասակար համարելով, դանոնք ջնջեց, եւ ապա իր իշխանութեան տակ գտնուող բոլոր հայաբնակ նահանգները բաժնեց չորս մասի, իւրաքանչիւրը առանձին զինուորական կազմակերպութեամբ։ Բարձր Հայք նահանգը անուանեց* Առաջին Հայք, *Եփրատէն արեւմուտք Փոքր Հայքը՝* Երկրորդ Հայք, *Մելիտինէի երկիրը՝* Երրորդ Հայք, *եւ Եփրատի արեւելեան կողմը Ծոփաց աշխարհը՝* Չորրորդ Հայք։ *Այս կարգադրութիւն–*

ները եղան 536 թուականին։ Ասոր վրայ Հայոց նախարարները անյաջող փորձ մը ըրին իրենց անկախութիւնը պահպանելու, բայց եօթը տարուան պատերազմէ ետք, որու միջոցին Պարսից Թագաւորին օժանդակութիւնը կը վայելէին, ընկճուեցան, եւ Յունահայաստանի հայ ժողովուրդը ստիպուեցաւ կայսերական նոր կարգադրութեանց համակերպիլ։ Երբ 536–ին Մեծն Յուստինիանոս Երրորդ Հայքի մայրաքաղաքը ըրաւ Մելիտինէն, ան հիմնական պակաս մը ունէր, որ պատերազմի պարագային շատ ծանր կը կշռէր. այսինքն՝ քաղաքը զուրկ էր պարիսպէ, ինչպէս կը հաղորդէ ժամանակակից Պրոկոպիոս պատմիչը (ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ, Դ. 15)։ Արդարեւ Անաստաս կայսրը (491–518) սկսած էր դարմանել այդ պակասը, բայց կիսաւարտ մնացած էր կայսեր մահուան պատճառով։ Սկսուածը կը շարունակէ Յուստինիանոս Ա. (527—565), ու ոչ միայն պարիսպը կ՚ամբողջացնէ, այլեւ կը շքեղացնէ քաղաքը նորանոր շինութիւններով (Հ. Ս. Կոգեան, ՄԵԼԻԴ, էջ 15—6)։

Մալաթիա քրիստոնեայ կայսրերու շրջանին Դ.—Զ. դարերուն այսպէս փայլուն ժամանակներ ունեցած էր. բայց ափսո՜ս որ Յուստինիանոս Մեծի մահէն քիչ ետք, մեծ աղէտի ենթարկուեցաւ Պարսիկներուն կողմէն։ Երկրորդ Վարդանանց ապստամբութեան առթիւ, 571 թուականին, մեծ ու երկարատեւ պատերազմ մը սկսաւ Յունաց եւ Պարսից միջեւ։ Խոսրով Ա. Անուշիրվան արքան, որ մինչեւ Սեբաստիա արշաւած էր, վերադարձի ատեն Յոյներէն պարտուեցաւ Մալաթիոյ քով ու մազապուր կ՚ազատէր՝ փիղի վրայ հեծած անցնելով Եփրատը, բայց իբր վրէժխնդրութիւն եւ որպէսզի քաղաքն իր գեղեցիկ վիճակով չմնար Յունաց, մեկնելէ առաջ հրաման ըրած էր իր զինուորներուն որ հրոյ ճարակ ընեն Մալաթիան։ Յոյներն ապա վերաշինեցին զայն, բայց ոչ առաջուան շքեղութեամբը (նոյն, անդ, էջ 6)։

Բայց յարմար է այս դէպքին վրայով մեր Սեբէոս պատմիչին մանրամասն նկարագրութիւնն ալ լսել. «Խոսրով իսկոյն անձամբ օգնութեան փութաց իր տեղակալին [ի Հայաստան], իրեն հետ առնելով խիստ զօրաւոր բանակ մը՝ դարձեալ բազմաթիւ փիղերով։ Ճամբայ ելաւ Հայաստանի Արտազ գաւառէն, անցաւ Բագրեւանդը եւ Կարինն աջ կողմը թողլով անցաւ Եփրատէ արեւմուտք եւ մտաւ Կապադովկիա։ Առաւ Սեբաստիան ու հրոյ ճարակ ըրաւ։ Յոյնք քիչ մը անդին մեծ ոյժով ընդդիմացան եւ յաղթեցին, ու եթէ իրենց մէջ անհամաձայնութիւն չիյնար, կրնային Պարսիկները փճացնել։ Խոսրով ասկէ համարձակութիւն գտած՝ վերակազմեց իր բանակը եւ գնաց առաւ Մելիտինէն ալ, զոր նոյնպէս այրեց եւ քանդեց։ Յոյնք որ զինքը կը հետապնդէին, վերջապէս հասան իրեն Մելիտինէի արեւելեան կողմը եւ Եփրատի մօտ սաստիկ յարձակում մը գործեցին։ Պարսիկները խուճապի մատնուեցան եւ փութացին մեծ գետն անցնելու. սակայն հունին ճիշդ տեղը չգիտնալնուն, անհամար բազմութիւն մը ջրահեղձ կորաւ։ Մովպետան մովպետին հետ գետամոյն կորաւ նաեւ սրբազան հուրը, զոր արքան միշտ իրեն հետ կը պտըտցնէր։ Իսկ Խոսրով իր արքայական խորանը եւ նոյնիսկ բամ-

բիչներէն մէկը Յունաց ձեռքը թողլով, Ծոփաց ու Աղձնիքի մէջէն ապաստանեց դէպի Տիգրոն (ՍԵԲԷՈՍ, տպ. Թիֆլիս, 1913, էջ 41—2, հմմտ. էջ 53)։

Կ'արժէ այս մասին լսել Միխայէլ Ասորւոյ խիստ հետաքրքրական պատմուածքն ալ. «Այս ժամանակ հպարտացաւ Պարսից Խոսրով թագաւորը յաղթութեամբը, որ եղաւ իրեն Միջագետքի մէջ. եւ եկաւ Հայոց երկիրը եւ Հայեր մեծ քաջութիւն ցուցուցին Յունաց սատարելովը. երկու անգամ զայն զարնելով դարձուցին։ Ապա երրորդ անգամին՝ թագաւորը իր բանակը ժողվելով, հիւսիսային կողմերը գնաց՝ լերանց բոլորտիքը դառնալով. ապա Հայաստանը թողլով՝ Կապադովկիա եկաւ, ուր Յոյներ դիմադրեցին իրեն։ Եւ Սեբաստիա եկաւ, զայն առաւ եւ կրակով այրեց։ Յոյներ դարձեալ զօրացան եւ գալով առին անոր բանակը եւ կրակատունը, զոր կը չրջեցնէր իր ետեւէն, ու քակեցին. եւ եթէ Յոյներ իրենց մէջ երկպառակութիւն չունենային, Պարսիկները կը բնաջնջէին։ Բայց երբ Յունաց մէջ շփոթութիւն ինկաւ, Պարսիկները զօրացան եւ գնացին առին Հայոց Մելիտինէն եւ այրեցին։ Եւ Յունաց զօրքը անոր մարդ ղրկելով՝ ըսին. «Ի՞նչ է այդ քու ըրած աւերումդ ու այրումը. այդ չէ թագաւորի վայել. եւ մենք զինուորներս առանց թագաւորի քու երկրիդ մէջ եղած աւեննիս ալ անանկ չըրինք։ Հիմա եղած տեղդ կեցիր եւ պատերազմէ, եւ եթէ յաղթես այս երկիրը քուկդ թող ըլլայ»։ Եւ Պարսիկը զայս լսելով ամչցաւ. եւ կանգ առաւ քաղաքին արեւելեան կողմը. Յունաց զօրքերն ալ գացին ու կանգնեցան անոնց դիմացը, առտուընէ մինչեւ օրուան իններորդ ժամը եւ չկռուեցան։ Եւ ապա Պարսիկները սկսան երթալ անցնիլ Եփրատը։ Յոյներն ալ ելան անոնց ետեւէն. եւ Պարսիկները չտապելով անցքը՝ շատեր գետակուր եղան. եւ մնացածները Հայաստանի մէջէն իրենց երկիրը գացին» (ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ, տպ. Երուսաղէմ, 1871, էջ 272—3)։

Մաւրիկ կայսրը, որ արդի Ալպիսթանի մօտ Արաբիսոս աւանը ծնած էր եւ հայ ծագումով էր՝ կ'ըսուի, 591 թուականին, Պարսից փախստական Խոսրով Բ. Պարուէզ արքան գահին վերադարձնելուն ի վարձատրութիւն՝ ստացաւ Հայաստանի մեծագոյն բաժինը։ Մաւրիկ իր իշխանութեան տակ միացուած ամբողջ հայաբնակ ընդարձակածաւալ երկրամասին նոր նահանգային բաժանում մը տուաւ, որ չափազանց բարդ է։ Միայն սաչափ ըսել բաւական է որ Մելիտինէ հիմա Երրորդ Հայքի մայրաքաղաք եղաւ, եւ թէ Կապադովկիոյ Կեսարիան անգամ «հայկական» ըսուած շրջանակի մը մէջ կը մտնէր իբր նոր «Առաջին Հայք» նահանգին մասն ու ոստան։ «Եւ [Մաւրիկ] հրամայեց», կ'ըսէ Միխայէլ Ասորի, «ընդարձակել Արփսուս [Արաբիսոս] քաղաքը, ուրկէ էր ինքն, եւ որ Երկրորդ Հայքի (Մելիտինէ երկրին) մէջ էր. բայց չորս տարի ետք չրջեցաւ երկրաշարժէ, եւ կայսրը զայն դարձեալ շինեց լաւագոյն քան առաջինը՝ մեծ հոգածութեամբ. բայց վերստին ընկղմեցաւ երկրաշարժէն» (ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ, տպ. Երուսաղէմ, 1871, էջ 281)։ Ըսուածներէս կարելի է տեսնել որ Հայերը հպատակ վիճակ մը ունենալնուն

հակառակ՝ կարեւոր դիրք ունեցող տարր մը կը կազմէին եւ հակառակ որ դաւանական խտրութեանց պատճառաւ Հայեր եւ Յոյներ իրարու թշնամացած էին, Հայութիւնն ինչպիսի՛ ընդարձակ ծաւալում կ՚ունենար դէպի Փոքր Ասիոյ խորերը:

Մաւրիկ կայսրը հայ ծագումէ կարծուելուն հակառակ, Հայոց ազգին ամենէն վնասակար քաղաքականութիւն մը որդեգրեց, այսինքն՝ հայ նախարարներն ու զինուորները բռնի Թրակիա փոխադրել ու հաստատել: Ասոր երեսէն շատ մը ապստամբութիւններ ծագեցան եւ արիւնահեղ խռովութիւններ տեղի ունեցան, որոնք միայն 601-ին Մաւրիկի սպանումովը վերջացան: Ապա Պարսից Խոսրով Պարուէզ արքան իբր թէ իր բարերարին վրէժը լուծելու համար՝ պատերազմ հրատարակեց Մաւրիկը սպաննող, յափշտակիչ Փոկաս կայսրին դէմ՝ 604-ին: Պարսիկները հետզհետէ ամբողջ Փոքր Ասիան — բնականաբար Մելիտինէն ալ միասին —, Սուրիան ու Պաղեստինը եւ մինչեւ անգամ Եգիպտոսը Բիւզանդացւոց ձեռքէն առին, եւ 621 թուականին Կ. Պոլիսը պաշարած էին Սկիւտարի կողմէն: Բայց հետեւեալ տարին Հերակլ քաջ կայսրը պատերազմի դաշտը իջաւ եւ վեց տարի տեւող հեռաւոր ու արկածալից արշաւանքներով այնպիսի չարաչար պարտութեան մատնեց Պարսիկները, որ անոնք հարկադրուեցան Խոսրով արքան սպաննել եւ որդին Կաւատ Բ.ը գահ նստեցնել՝ 628-ին, հաշտութիւն ընել Հոռոմոց հետ, բոլոր առածներնին ետ տալով:

Սակայն մէկ քառորդ դար տեւող այս շարունակական եւ երկուստեք սպառիչ պատերազմն ա՛յնչափ տկարացուցած էր թէ՛ Սասանեան եւ թէ՛ Բիւզանդական կայսրութիւնները, որ մի քանի տարի յետոյ — 632-էն — հարաւէն արշաւող խուժ Արաբացւոց բանակներուն առջեւ երկուքն ալ խորտակուեցան, եւ Պարսից պետութիւնը վերջնականապէս կործանեցաւ՝ 651-ին: Իսկ Բիւզանդացիք Սուրիան, Պաղեստինն ու Միջագետքը կորսնցնելով, Տաւրոս լեռներէն հիւսիս քաշուելու ստիպուեցան:

Հիմա որ հռովմէական տիրապետութեան վախճանին հասած ենք, յարմար կը սեպենք հոս տալ Մ. Խորենացւոյ ընծայեալ Աշխարհագրութենէն երկու հատուածիկներ՝ ըստ Հ. Սուքրեանի հրատարակութեան: Վերջերս ապացուցուած կը համարուի թէ այս Աշխարհագրութիւնը 667 թուականին խմբագրուած է Անանիա Շիրակացի մեծ հայ գիտնականին ձեռքով. բայց իսկապէս հիմնական մասերը թարգմանութիւն են Պտղոմէոսի Աշխարհագրութեան համառօտութենէն, զոր Պապպոս անուն հեղինակ մը ըրած էր, եւ ուստի յաճախ աւելի կանուխ ժամանակի պարագաները կը ցոլացնէ:

Էջ 24. — «Ժէ. Աշխարհ՝ Երկրորդ Հայք, որ արդ կոչին Առաջին Հայք, յելից կալով Կիլիկիոյ առ Տաւրոս լերամբ՝ երի Ամանոս լերին, որ բաժանէ ընդ նա եւ ընդ Կոմագինէ Ասորւոց մինչեւ Եփրատ: Ունի եւ այլ լերինս. զՁիզոն (Պինդոս) եւ զԲասիլիսկոս (Պէյտաղ) եւ զԿոռմանոտն (Ձիյարէթ կամ Փիրան տաղ). եւ գետ զնոյն Պիռամիս (Ջահան) եւ զՊառատիս (այ-

*սինքն կա՛մ Աչոտիի ջուրը եւ կամ Թոխմա սուի վերի բազուկը), եւ զԿաւկաւա (Թոխմա սու) եւ զԿառամասոս (Սուլթան սո՞ւ Թէ Շահնա սու), եւ զրունս (կիրճեր) երկու ելանելոյ Ասորւոց»:*

*Էջ* 30.— *«Որոց հանդէպ ի հարաւէ Գաւրէք գաւառ. ընդ որս եկեալ Արածանի (Մուրատ սու), խառնի յԵփրատ ի քաղաքն Լուսաթառիճ (Քեպան-մատէն), եւ երթալով զմտիւք ելանէ ի սահմանս Փոքր Հայոց, յելից Մելիտինէի. եւ ապա խառնի ի նա Կաւկաւա (Թոխմա սու), գալով ի մտից կուսէ ի լերին, որ կոչի Ձիգոն (Պինպողա կամ Սունկուրլու տաղ) եւ Բասիլիկոն (Պէյ տաղ). եւ նախ քան զանկանել նորա յԵփրատ խառնի ի նա գետն Կառամենոս (կամ Կառամանոս, Սուլթան սո՞ւ Թէ Շահնա սու), որ գայ ի Տօրոս լեռնէն. եւ ընկալեալ յԵփրատ, գնա ընդ հարաւ, հատանէ զլեառն Տօրոս»:*

*Երբ մահմետական Արաբները աշխարհակալութեան համար Արաբիայէն դուրս խուժեցին, ինչպէս վերեւ ըսինք, Արեւելեան Հռովմէական կամ Բիւզանդական պետութեան բանակներուն յաղթելով, անոր ձեռքէն խլեցին Պաղեստինը, Սուրիան, Միջագետքը եւ Կոմմագինէն: Սակայն Տաւրոսի լեռնագօտին, որ Կոմմագինէն հիւսիսէն կը սահմանէր, քիչ եւ դժուարանցանելի կիրճեր ունի, զորս ամրացուցին Հռոմները եւ թող չտուին Արաբացւոց աւելի անդին անցնիլ: Այսպէս Մելիտինէ դեռ ժամանակ մըն ալ կը մնար քրիստոնեաներուն ձեռքը, եւ մոռնալու չենք որ այդ տեղերը մեծաւ մասամբ հայաբնակ դարձեր էին արդէն:*

*Արաբները Միջագետքէն ետք նուաճեցին Ամիդայի շրջանակը կամ Վերին Տիգրիսի աւազանը եւ զայն* Տիարպեքիր *անուանեցին: Անկէ հիւսիս՝ Բաղէշի (Պիթլիսի) կիրճին ճամբայովը մտան Արեւմտեան Հայաստան, որ այն ատեն դեռ Բիւզանդացւոց ձեռքն էր, եւ նուաճեցին երկիրը մինչեւ Կարին. ու նուաճուած երկիրը* Արզռում *կոչեցին՝ զայն Հռոմներէն գրաւած ըլլալնուն համար: Ապա գրաւեցին Շիմշատ (Աշմուշատ կամ Արշամաշատ) քաղաքն ալ Խարբերդէն դէպի հիւսիս-արեւելք, նաեւ* Քեմախ *(Անի-Կամախ) բերդաքաղաքը Գարասուի (արեւմտեան Եփրատի) վրայ:*

*Վերջապէս հիճրէթի* 36 *թուականին* (Յ. Տ. 657) *Մասլամայի որդի Հաբիբ զօրապետը Չորրորդ Հայքի կառավարիչ Իյադ Բին-Ղանիմի կողմէն ղրկուելով, անցաւ Եփրատը եւ հիւսիսէն հարաւ անակնկալ արշաւանքով մը Մալաթիան առաւ Յոյներուն ձեռքէն: Բայց այդ միջոցին Արաբներու խալիֆան՝ Օթման ամիրապետը մեռնելով, Դամասկոսի մեծ փոխարքան* Մուաւիա *եւ Մարգարէին հօրեղբօրորդին ու փեսան Ալի թշնամացան իրարու հետ, իւրաքանչիւրը ուզելով ինքը բազմիլ ամիրապետական աթոռին: Այսպէս Արաբները երկու կուսակցութեանց բաժնուած, սկսան կատաղի ներքին պատերազմ մղել, եւ Բիւզանդիոնի Կոստաս Բ. կայսրը Արաբներու երկպառակեալ վիճակէն օգուտ քաղելով,* 658 *թուականին իսկ եկաւ եւ ետ առաւ Մալաթիան ու մինչեւ Արեւելեան Հայաստան ալ արշաւեց:*

*Չորս կամ հինգ տարուան ներքին պատերազմէն ետք, երբ Ալի ամիրա-*

պետը սպաննուեցաւ իրեններէն, Մուաւիա իշխան արաբ–իսլամ աշխարհի միահեծան տէրը դառնալով, Խալիֆայութեան մայրաքաղաքը Մետինէէն փոխադրեց Դամասկոս՝ 661ին։ Այն ատեն Արեւելեան Հայաստանի նախարարները Ներսէս Գ. Իշխանցի (Շինող) կաթողիկոսին գլխաւորութեամբ՝ հաշտութեան համար դիմեցին Մուաւիային, առաջարկելով տասը տարի առաջ Մուաւիայի եւ Թէոդորոս Ռշտունիի միջեւ կնքուած դաշնագրի պայմաններով հարկատու ըլլալ արաբ մեծազօր տէրութեան։ Մուաւիա հաւանեցաւ Հայոց այս առաջարկին եւ Հայաստանի ընդհանուր կառավարիչ ղրկեց Գրիգոր Մամիկոնեանը, որ տասը տարիէ ի վեր Դամասկոսի մէջ պատանդ էր իր քով։ Գրիգոր Մամիկոնեան համոզեց Յունահայաստանի ընդհանուր կառավարիչ Շապուհ Բագրատունին, որ ան ալ ինքնակամ հպատակի Արաբաց, որպէսզի երկու բաժիններու Հայերը իրարու դէմ պատերազմելու վտանգէն զերծ մնան։ Շապուհ հաշտուեցաւ Արաբաց հետ, եւ այսպէս Մալաթիան կրկին անցաւ Իսլամներու իշխանութեան տակ։

Բիւզանդիոնի կայսրը բարկանալով ասոր, 662 թուականին պատերազմ բացաւ Հայոց եւ Արաբաց դէմ։ Բայց Թէոդորոս Ռշտունիի որդի Վարդ Պատրիկ, որ հայազգի գունդով մը տակաւին Բիւզանդեան բանակին մաս կը կազմէր, ըստ մեր Ղեւոնդ պատմագրի աւանդածին՝ իր մեռած հօրը կտակին անսալով, ճակատամարտին մէջ, որ Եփրատի եզերքը (Սամոսատի մօտ) կ'ըլլար, Յունաց դաւաճանելով՝ Արաբներուն կողմն անցաւ. որով Բիւզանդացիք չարաչար պարտուեցան ու ետ քաշուեցան։

Այս թուականէն սկսեալ կրնանք Մալաթիան այլեւս մնայուն կերպով Արաբացւոց կալուած դարձած համարել։

Եւ հոս կը վերջացնենք Մալաթիոյ մասին մեր պատմական տեսութիւնը։

ԵՂԻԱ Ս. ՔԱՍՈՒՆԻ



## Թ.

# ՄԱԼԱԹԻԱ ԱՐԱԲԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ

*Արաբներու անօրինակ եւ յանկարծական յաջողութիւնը մեկնութեան կարօտ հարց մըն է, զոր զանազան կերպ կը լուծեն ուսումնասէրներ: Առանց յամենալու այս տեսութիւններուն վրայ, միայն իրողութիւնները առնելով իրենց պարզ ձեւին մէջ, ըսենք թէ անոնք շատ արագ յառաջխաղացութեամբ մը տակնուվրայ ըրին Մերձաւոր Արեւելքը եւ Բիւզանդական Կայսրութիւնը սահմանափակեցին Փոքր Ասիոյ մէջ:*

*Բիւզանդիոն չհանդուրժեց իր հողային կորուստներուն եւ ինչ որ Արաբները գրաւած էին իրմէ, աշխատեցաւ վերագրաւել Է. դարէն մինչեւ ԺԱ. դար, անընդհատ պատերազմելով արաբ խալիֆաներու տիրապետութեան դէմ, քիչ շատ բնական հաստատուն սահմանագիծի մը վրայ, որ կը սկսէր Տայքէն մինչեւ Կիլիկիա կամ Սեւ ծովու հարաւ-արեւելեան ծայրէն՝ Պաթումէն մինչեւ Իսկենտէրունի ծոց, հետեւելով լեռնաշղթաներու եւ գետահովիտներու, անցնելով Հայաստանի մէջէն*[1]*: Այս սահմանագիծին մէկ մասն էր Եփրատի հովիտին այն մասը, ուր էր նաեւ Մալաթիա, որ իբր կարեւոր կամրջագլուխ բիւզանդ-արաբական պատերազմին ամենէն կարեւոր հանդիսավայրերէն մէկը եղած է, եւ քանի՛, քանի անգամներ առնուած-տրուած է, սակայն կանուխէն Իսլամներու ենթարկուած քաղաքներէն մէկը եղած եւ մինչեւ ցարդ մնացած է մահմետական իշխանութիւններու տիրապետութեան տակ*[2]*:*

---

(1) *Նշանակելի է որ Միջագետքի արաբ զինուորական հրամանատարութիւնը կը տարածուէր Մարաշէն Կամախ՝ անցնելով Մալաթիայէն* (տես Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 10 եւ 244):

(2) *Մալաթիոյ պատմութեան իսլամական շրջանին համար իբր աղբիւր ունեցած եմ* E. Honigmann-*ի արժէքաւոր ուսումնասիրութիւնը՝ հրատարակուած* Encyclopédie de l'Islam-*ի Գ. հատորին մէջ* (էջ 208-214): E. Honigmann *մասնաւորապէս ԺԲ. եւ ԺԳ. դարերու խառնակ ժամանակամիջոցին համար ունեցած է գլխաւոր աղբիւր Մալաթիա ծնած երկու մեծ ասորի պատմաբաններու քրոնիկները: Ասոնցմէ առաջինն է Միքայէլ Ա. Պատրիարք* (1126-1199), *որդի Եղիաս երէցի, որ Մալաթիոյ Քինտանի կամ Գանդ խեան ընտանիքէն կը սերէր: Անոր գլխաւոր աղբիւրն էր Իգնատիոս* (+ 1105), *որ նոյնպէս Մալաթիոյ ասորի արքեպիսկոպոսն էր: Այս ստուար գործը թարգմանած է ֆրանսերէնի* J. B. Chabot, Chronique de Michel le Syrien, Patriarche Yacobit d'Antioche (1126-1199). Editée pour la première fois et traduit en français par J. B. Chabot (1890-1906, Paris) *եւ հրատարակած երեք հատորներով, ասորերէն բնագրին հետ: Այս գործին երկու տարբեր համառօտագրութիւնները թարգմանուած են հայերէնի եւ երկուքն ալ տպագրուած Երուսաղէմ.* ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԵԱՌՆ ՄԻԽԱՅԷԼԻ ԱՍՈՐՒՈՑ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՀԱՆԵԱԼ Ի ՀՆԱԳՈՅՆ ԳՐՉԱԳՐԷ, 1871: *Հայերէն թարգմանութիւնները*

Պատմութենէն յայտնի է որ արաբական առաջին յարձակումները արհամարհանքով դիտուած են բիւզանդական պետութեան կեդրոնին մէջ, բայց երբ 634-ին Բոսդրան՝ հռոմէական Արաբիոյ գլխաւոր քաղաքը՝ Մահմետականներու ձեռքը ինկաւ, այն ատեն ցնցուեցաւ Բիւզանդիոն: Հերակլ կայսրը (610—641) անձամբ գնաց Անտիոք, բայց չկրցաւ կասեցնել Արաբները, որոնք անհաւատալի յաջողութիւններով կ'առաջանային դէպի Դամասկոս եւ բիւզանդական ամբողջ արեւելքը՝ Անտիոքն ալ մէջը ըլլալով, իրենց իշխանութեան կ'ենթարկէին:

Երբ Հերակլ մեռաւ (641 Փետր. 11), բիւզանդական կայսրութիւնը Ասիոյ մէջ միայն Փոքր Ասիան ունէր իր տիրապետութեան տակ:

Աներկբայ Մալաթիան եւ իր շրջակայքը առաջին անգամ գրաւուած պէտք է ըլլան այն շրջանին, երբ արաբական բանակները՝ Ասորիքի եռանգուն հրամանատարին՝ Մուավիէի հրամանատարութեամբ կ'արշաւէին բիւզանդական երկիրներ: Այսպէս Օմարի խալիֆայութեան (634—644) շրջանին՝ 641-ին Արաբները գրաւեցին Միջագետքը Իյատ Իպն Ղանըմ զօրավարին ձեռքով (ՊԵԼԱՏՀՈՐԻ, էջ 172—181) եւ առաջացան մինչեւ Հայաստան, իսկ միւս կողմէն 645-ին Մուավիէ մինչեւ Ամորիոմ (կամ Ամորիա, այժմ Համզա Հաճի ըստ ոմանց, կամ Սիվրի Հիսար՝ ըստ այլոց) արշաւեց: Այս միջոցին Մուավիէ պէտք է գրաւած ըլլայ նաեւ Մելիտինէն:

Մուավիէի այս յաղթական առաջացման հետեւանքով Անտիոքի եւ Տարսոնի միջեւ գտնուող բերդերը պարպած են Բիւզանդացիք եւ Մուավիէ անոնց մէջ արաբ պահակազօրք զետեղած է որպէսզի մինչեւ իր դառնալը հոն մնան (ԱՊՈՒ ՍԱԼԵՀ):

Ըստ նշանաւոր արաբ աշխարհագիր Եագութի Ապու Սալեհ պատմած է թէ Մուավիէ 651-ին Միսիսի կողմերէն արշաւելով մինչեւ Տարավալիա հասած է եւ իր նահանջած կամ քաշուած պահուն այդ քաղաքին եւ Անտիոքի միջեւ գտնուող բոլոր բերդերը քանդած է (տես ԻՊՆ ԽԱԼԻՔԱՆ, Թրգ. Գէորգ Մըսըրլեան, էջ 338)՝ անշուշտ ի նախատեսութիւն ապագայի:

Այսպէս, Մահմետականներու տիրապետութեան կ'ենթարկուէր այս շրջանակը, որուն՝ ըստ Ապու Սալեհի՝ նշանակուեցան քաջ եւ ռազմագէտ

---

ԺԳ. դարուն կատարուած են:

Honigmann-ի երկրորդ աղբիւրն է Մաֆրշեան Կրեկոր Ապու'լ Ֆարաճ, յորջորջուած Բարհեբրէոս (Barhebraeus) (1226-1286), որուն հայրը, Ահարոն, հրեայ բժիշկ մըն էր, քրիստոնեայ մկրտուած: Ասիկա իր համաքաղաքացիները արգիլած է Թաթարներուն առջեւէն անձնատուր փախչելէ: Ապու'լ Ֆարաճ ասորական եկեղեցական պատմութեան մէջ նշանաւոր դէմք մըն է:

E. Honigmann ձեռքի տակ ունեցած է նաեւ բազմաթիւ արաբ եւ եւրոպացի պատմագիրներու գործերը: Որոշ չափով օգտուած է նաեւ հայ աղբիւրներէ՝ անոնց Ֆրանսերէն թարգմանութիւնները գործածելով:

Իր ուսումնասիրութիւններուն վրայ աւելցուցած է ուրիշ աղբիւրներէ առնուած զանազան տեղեկութիւններ, որոնք Մալաթիոյ Հայութեան կեանքը լուսաբանելու կը ծառայեն:

հրամանատարներ (տես նոյն)։ Արաբ-բիւզանդական պայքարը այս հողամասին վրայ եւ շուրջ անընդհատ շարունակուեցաւ։ Գրեթէ Արաբները ամէն տարի գարնան կանոնաւորաբար կը մտնէին բիւզանդական երկիրներ եւ ձմեռը ետ կը քաշուէին՝ մեծ աւարով։

Մուաւիէ այս պարբերական յարձակումներուն միջոցին մեծ յաղթանակներ շահած է Բիւզանդացիներու դէմ Փոքր Ասիոյ մէջ եւ առաջացած նոյնիսկ մինչեւ Բիւզանդիոնի պարիսպներուն տակ (653 Քր.ի)։ Այս յարձակումներուն առաջին թիրախը Մալաթիան էր, զոր Արաբները գրաւեցին կանուխ, բայց յետոյ լքեցին մեծ տարածութեամբ երկիրներու հետ, երբ Օթման Իպն Աֆֆան խալիֆային (644—656) մահէն ետք Խալիֆայութեան աթոռին շուրջ պայքար ծագեցաւ Սիւրիոյ հրամանատար՝ Մուաւիէ Իպն Ապի Սուֆիայի եւ Ալի Իպն Ապի Թալըպի (Խալիֆա 656—661) միջեւ (տես վերը)։ Կոստանս Բ. կայսրը (641—668) օգտուելով առկէ՝ 658-ին ետ առաւ Մալաթիան եւ մինչեւ Արեւելեան Հայաստան առաջացաւ (տես վերը)։

Մուաւիէ հարկադրուեցաւ ոչ միայն խաղաղութիւն կնքելու, այլ նաեւ յանձն առաւ տուրք վճարելու (Հ. Գելցեր, ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆ ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, Թրգ. Մեսրոպ Վրդ. Տ. Մովսէսեան, 1901 Վաղարշապատ, էջ 128)։

Խալիֆայութեան մայրաքաղաքը Դամասկոս հաստատուելէն եւ Մուաւիէի Խալիֆայութիւնը ձեռք բերելէն, այսինքն 661-էն ետք, երբ ներքին խռովութիւնները վերջ գտան, սկսան վերստին արաբ-բիւզանդական պատերազմները։

Առաջին անգամ Հապիպ Իպն Մասլամա ալ Ֆեհրի Մալաթիայի դէմ ղրկուեցաւ՝ Դ. Հայքի կառավարիչ Իյատ Իպն Ղանըմի կողմէ եւ գրաւեց քաղաքը, որ սակայն ետ առնուեցաւ Բիւզանդացիներէն։

Երբ Մուաւիէ Սիւրիոյ եւ Միջագետքի կուսակալ եղաւ, նորէն Մալաթիոյ վրայ ղրկեց Հապիպ Իպն Մասլաման, որ 662-ին (Հիճրէթի 36-ին) գրաւեց քաղաքը յարձակումով եւ հոն խլամ պահակազօրք ու կառավարիչ դրաւ (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ. տես Թրգ. ԲԱԶՄԱՎԷՊ, 1953, էջ 132 եւ **Encyclopédie de l'Islam** Գ., էջ 208)։

Մուաւիէ ինքն ալ Մալաթիա գնաց Փոքր Ասիա արշաւած ատեն եւ քաղաքին կայազօրքին թիւը աւելցուց։ Պելլատհորիի համաձայն Մուաւիէ Մալաթիան «լեցուց Սիւրիոյ եւ Միջագետքի եւ ուրիշ ժողովուրդներով, եւ եղաւ ամառնային արշաւանքներու ճամբայ» ընդդէմ Պիլատ-ալ-Ռումիի (Հռոմ երկիր) եւ կարեւոր կայան մը զինուորական (տես ԲԱԶՄԱՎԷՊ, նոյն)։

Արաբները այս կամրջագլուխէն կ'անցնէին եւ առաւել կամ նուազ ընդարձակ հողամասեր ոտնակոխ կ'ընէին, կը կողոպտէին եւ աւարառութեան կ'ենթարկէին։

Պելլատհորի արաբ պատմիչը կը հաւաստէ թէ յետոյ Մալաթիոյ բնակիչները անկէ հեռացած են Ապտալլահ Իպն Ճոպէյրի ժամանակ (ԲԱԶՄԱ-

Վէք, նոյն), դուցէ չկարենալով տոկալ քաղաքին պատերազմական վայր մը ըլլալուն: Այն ատեն է որ «Քրիստոնեայ Հայեր ու Նաբատացիներ» եկան քաղաքին մէջ բնակեցան (անդ):

Իսլամները Ապտալլահ Իպն Ապտըլ Մելիքի արշաւանքէն ետք, 702–ին կ'իջնեն Տարենտէ, որ Մալաթիայէն երեք օրուան հեռաւորութիւն ունէր եւ կից էր Պիլատ–ալ–Ռումի եւ հոն կը կառուցանեն բնակարաններ, մինչ նոյն օրերուն՝ Մալաթիա աւերակ էր, մէջը մարդ չկար բացի ոչ–մահմետական Հայերէ եւ ուրիշներէ (ՊԵԼԱՏՀՈՐԻ, ՔԱՋՄԱՎԷՔ, նոյն 133): «Ամառ ատեն անոնց յառաջապահ գունդը կու գար, որ Միջագետքի զինուորներէն էր, եւ հոն կը բնակէին մինչեւ որ ձմեռն իջնէր ու ձիւնը գար: Եւ երբ ձմեռը գար, կը քաշուէին» (նոյն):

Այսպէս 668–ին եւ 673–ին, երկու անգամ մինչեւ Բիւզանդիոն առաջացան եւ Բիւզանդացիք մեծ դժուարութեամբ կարողացան պաշտպանել իրենց մայրաքաղաքը:

677–ին կնքուած երեսնամեայ դաշինքը Բիւզանդացիք 690–ին խզելով Արաբները գրգռեցին: Ապտալլահ Իպն Ճոպէիր 683 եւ Ապտ էլ Մելիք Իպն Մրուան (685—705) խալիֆաներու կատարած յարձակումներուն ատեն Մալաթիոյ բնակիչները լքեցին քաղաքը, զոր Յոյները գրաւեցին եւ աւերեցին[1]:

Դամասկոսի Ումեան Ապտէլ Մելիք Իպն Մրուան խալիֆային (685—705) բանակները 690–ին կրկին սկսան կռուի Բիւզանդիոնի դէմ եւ Կապադովկիան վտանգի ենթարկեցին (Հ. Գելցեր, նոյն 141) եւ տեղաւորուեցան Կիլիկիոյ մէջ (նոյն, 144) եւ սկսան ազատօրէն արշաւել Փոքր Ասիա, իրենց բանակներուն գլխաւոր յենակէտերէն մէկը ընելով Մելիտինէի ռազմական դիրքը (տես Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 303—5):

Հերակլեան հայ տոհմին կայսրները, որոնք այնքան քաջութեամբ կըռուած էին նախ Պարսիկներու եւ յետոյ Արաբներու դէմ, բիւզանդական գահը կորսնցուցին, Գերդամոնի հայ ազնուականներու դաւէն (ՊԱՏՄՈՒԹ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., 178) Նիկեփոր Պատրիկին որդին՝ Փիլիպիկոս Վարդանէս կամ Վարդան Փիլիկ (Pilépieus կամ Philippieus Bardanes) հայ յայտնի զինուորականին[2] ապստամբութեան եւ գահը բռնի յափշտակելուն հետեւանքով (Brooks CMH, բ. 420): Այս պատճառով բիւզանդական կայ–

(1) ENCYCLOPEDIE DE L'ISLAM, Գ. Հատորը՝ E. I. Համառօտագրութեամբ պիտի նշանակուի միշտ յաջորդ գլուխներուն մէջ: Անդ, էջ 218:

(2) Փիլիպիկոս Վարդան հայ զօրավարը, որ բիւզանդական կայսրութեան տիրապետութեան տակ գտնուող Քերսոն (արդի Քերչը՝ Ազախու ծովը Սեւ ծովուն միացնող նեղուցին վրայ) կը նստէր իբրեւ Բիւզանդիոնի ներկայացուցիչ, երբ ապստամբեցաւ, Խազարներու օգնութեան դիմեց, անցաւ ապստամբներու գլուխը եւ նաւարկեց դէպի Պոլիս, զոր բարբարոս զօրքերով գրաւեց եւ կայսր հռչակուեցաւ (Գելցեր, էջ 164 եւ ՊՀԳ., Ա., էջ 260):

*ոըրութիւնը մատնուեցաւ աննախանձելի վիճակի մը, վասնզի Փիլիպիկոս թէեւ լաւ զօրավար, անընդունակ հանդիսացաւ երկիրը կառավարելու: Պուլկարները ասպատակային արշաւանքներով մինչեւ մայրաքաղաք առաջացան, իսկ Արաբները* 712*–ին՝ Ամասիան եւ Մխթեան եւ* 713*–ին Պիսիտիական Անտիոքը գրաւեցին* (*Գելցեր, նոյն* 147):

*Փիլիպիկոս փոխանակ իր ռազմական տաղանդը գործածելու Արաբներու դէմ եւ անոնց գրաւած հողերը ետ առնելու, կրօնական վէճերու խառնուեցաւ: Օրթոտոքս եկեղեցին վերանորոգելու մտայնութեամբ՝ Զենոն կայսեր* (474—491) *նման փորձ մըն ալ ինքն ըրաւ, սահմանափակելով պատկերներու գործածութիւնը եկեղեցիներու մէջ* (Paparizopoulo, **Histoire de la Civilisation Hellénique,** 1878, *էջ* 189), *Փոքր Ասիոյ մէջ արդէն ժամանակէ մը ի վեր խմորուող պատկերամարտութեան շարժումը կասեցնելու համար, ինչ որ չյաջողեցաւ, վասնզի քիչ յետոյ, Լեւոն Գ. Իսաւրացի կայսեր* (717—741) *ատեն պատկերամարտութիւնը ահեղ պոռթկումի մը տեղի տուաւ:*

*Փիլիպիկոս Հայերը սիրաշահելու համար միանգամ ընդմիշտ կորսուած Հայաստանը վերագրաւելու աշխատելու տեղ, Արաբներէն հալածուած եւ խոյս տուող Հայերուն բնակութեան տեղեր տուաւ* 712*–ին աւերակ դարձած Մելիտինէի շրջանակին եւ Դ. Հայքի մէջ* (*ԹԷՈՓԱՆԷՍ, էջ* 385, *Գելցեր,* նոյն 148, **E. I.** *էջ* 208) *եւ Միակամութեան դաւանութիւնը ընդգրկեց, թերեւս Հայերը սիրաշահելու համար* (*Գելցեր* 148):

*Թէեւ մեր հայ պատմիչները կը հաւաստեն թէ հրամայած է որ Յոյները հայկական ծէսը ընդունին, սակայն օտար պատմիչներ տարբեր կերպով կը ներկայացնեն եւ չեն հաստատեր մեր պատմիչներու այս տեղեկութիւնը:*

Brooks (CMH, *Բ. հատոր, էջ* 414), *բիւզանդական պատմութեան ուսումնասիրողներէն մէկը, կ՚ըսէ թէ* «Փիլիպիկոս անծանօթ պատճառներէ մղուած Հայերը կայսրութենէն դուրս վռնտեց եւ անոնք Արաբներու կողմէ Դ. Հայքի եւ Մելիտինէի նահանգին մէջ հաստատուեցան»[1]:

*«Անծանօթ պատճառները» ուրիշ բան չէին կրնար ըլլալ եթէ ոչ Հայերուն բիւզանդական կայսրութեան սահմաններուն մէջ կրած կրօնական եւ քաղաքական հալածանքները: Կրօնականին պատճառը որոշ է թէ այն դաւանական տարբերութիւնն էր որ Հայերը ունէին Յոյներէն, իսկ քաղաքականը՝ ապահովաբար դժգոհ Հայերուն՝ Արաբներու հետ գործակցութիւնն էր*

---

(*1*) J. Lamrent (*էջ 197 եւ 207*) *նոյն համոզումը կը յայտնէ հիմնուելով Թէոփանէսի* (*382*), *Michel le Syrien-ի* (*Բ. 482*) *եւ Աբու՚լ Ֆարաճի* (*Chronicum Syriacum, 121*( *վկայութիւններուն վրայ: Յայտնի չէ թէ ի՛նչպէս Հ. Գելցեր* (*148*) *Փիլիպիկոսի կը վերագրէ գրաւումը Դ. Հայոց՝ Մելիտինէ մայրաքաղաքով, եւ լեցնելը այդ շրջանակը գաղթական Հայերով: Ասոնց ալ իբր աղբիւր ցոյց կու տայ նախ դարձեալ Թէոփանէսը* (*585*), *որուն գրածը սա է.* «711 Թուին Փիլիպիկոս կայսրը Հայաստանէն տարագրեալ Հայերը ստիպեց որ Մալաթիա եւ Դ. Հայոց երկիրները բնակին»:

(Michel le Syrien, Բ. 482)։

Փիլիպիկոսի գահակալութենէն սկսեալ Մելիտինէի երկիրին եւ Դ. Հայքի մէջ բնակեցուցուած հայ գաղթականները, արաբ էմիրներու բարեկամ դարձան, վասնզի Յոյները զանոնք հալածեցին։

Նոյնը կը հաստատէ Թէոփանէս՝ գրելով թէ «Հռոմայեցիք խելագարութիւնը իր կատարելութեան հասցուցին բոլոր ոչ-Օրթոտոքսներու դէմ իրենց ատելութեամբ»։

Այս հալածանքներուն պատճառով Հայերը բիւզանդական երկիրներէն հեռացան եւ հաստատուեցան արաբական երկիրներ, Մելիտինէի շրջակայքը, ուր եղան անկէ ետք Հռոմներու կատաղի թշնամիները (Michel le Syrien, Բ. հտ., էջ 482 եւ J. Laurent, էջ 188)։

Փիլիպիկոս իր երկու տարուան (711—13) իշխանութեան միջոցին իր հաճոյքներուն համար վատնելէ ետք պետութեան գանձը, որ արաբական պատերազմներու մեծ ծախքերուն հետեւանքով արդէն իսկ դատարկուած էր (Գելցեր, էջ 156—7), Օբսիկեան թեմի զինուորականներու ապստամբութեամբ գահընկէց եղաւ 713 Յունիս 3-ին (Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 395—6)։

Իր երկու յաջորդներու Անաստաս Բ.ի (713—715) եւ Թէոդոսիոս Գ.ի (715—7) խռովալից եւ անհաստատ իշխանութենէն ետք գահը գրաւեց Լեւոն Գ. Իսաւրացի (25 Մարտ 717—741), որ հերոսական քաջութեամբ մաքառեցաւ Արաբներու դէմ, սակայն չկրցաւ վճռական յաղթանակ մը շահիլ եւ Արաբները վանել Եփրատէն անդին։

Սակայն Յոյները հոն չկրցան տոկալ եւ նահանջեցին։ Այն ատեն Հայերը եւ «Նաբատացիները», այսինքն արամերէն խօսող գիւղացիները (Noldeke), զորս Փիլիպիկոս կայսրը վտարած էր իր պետութենէն, հաստատուեցան Մալաթիա եւ ամբողջ Դ. Հայքի մէջ (ՊԵԼԱՏՀՈՐԻ, էջ 185, Michel le Syrien Բ., էջ 482)։

Բնակիչներու թիւը աճեցաւ շատ մեծ համեմատութեամբ եւ Արաբները բնակիչներուն հետ (Հայերուն եւ Նաբատացիներուն) զինակցեցան Բիւզանդիոնի դէմ իրենց պայքարներու մէջ (Michel le Syrien, նոյն)։

Օմար Իպն Ապտիւլ Ազիզ Խալիֆան (717—720) Մալաթիա բերաւ Տարենտէի բնակիչները, ըստ Պելլատհորիի անոնց վրայ գթալով, վասնզի վախնալով թշնամիներէն ղուրս հանած էր զանոնք Տարենտէէն, որովհետեւ իրենց կամքին հակառակ հոն կը բնակէին։

Անոնք իրենց հետ տարին ինչ որ ունէին՝ առանց բան մը ձգելու, մինչեւ իսկ կոտրեցին քացախի եւ ձէթի ամանները։

Օմար Իպն Ապտիւլ Ազիզ Խալիֆան զանոնք իջեցուց Մալաթիա ու կործանեց Տարենտէն, իսկ Մալաթիոյ կուսակալ նշանակեց Ճաուանա Իպն ալ Ջարիթ, Ամր Իպն Սասայի որդիներէն մին (E. I. էջ 208, ԲԱՋՄԱՎԷՊ, նոյն)։

*Արաբներ օրէ օր աւելի սպառնական դարձան եւ շարունակեցին իրենց արշաւանքները։ Այսպէս 726-ին Միւսլիմէ Իպն Ապտիւլ Մելիքի հրամանատարութեամբ առաջացան մինչեւ Կեսարիա եւ Նէոկեսարիա, 729-ին Սայիտ Իպն Հաշամի եւ 732-ին Սիւլէյման Իպն Հաշամի հրամանատարութեամբ կըրկին առին Կեսարիան եւ նոյնիսկ Ամասիան, եւ մինչեւ Նիկիա եւ Պափլագոնիա (=Գասթեմունի) առաջացան, անշուշտ Մելիտինէն իրենց ռազմակայան ունենալով, բայց չկրցան Փոքր Ասիոյ մէջ տեղաւորուիլ եւ ամրանալ (Արշակ Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ* 305)։

740-*ին Լեւոն Իսաւրացիի ժամանակ* 20·000 *յոյն զօրքով բիւզանդական բանակ մը Մալաթիոյ վրայ եկաւ եւ քաղաքին շրջակայքը աւերեց։ Բնակիչները փակեցին իրենց դուռները եւ կիները երեւցան պատնէշին վրայ՝ իրենց գլուխները ծածկած գլխարկներով, եւ պատերազմեցան։ Այն ատեն Մալաթիացիները պատգամաւոր ղրկեցին Հաշամ Իպն Ապտիւլ Մելիքին, որ կը գտնուէր Ռասսաֆայի*[1] *մէջ։ Հաշամ կոչ ըրաւ ժողովուրդին Մալաթիա երթալու, բայց քիչ ետք իմացաւ որ Յոյները քաշուած էին անկէ։ Հաշամ պատգամաւորները ետ ղրկեց հեծելազօրքերու ջոկատի մը հետ, որպէսզի պաշտպանեն քաղաքը, եւ յետոյ ինքն անձամբ արշաւեց դէպի Մալաթիա, բանակ դրաւ քաղաքին առջեւ, մինչեւ որ քաղաքը, զոր թշնամիները կործանած էին, վերաշինուեցաւ. (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ, Michel le Syrien Բ., էջ* 506, *ԹԷՈՓԱՆԷՍ, եւայլ.* E. I. նոյն)։

*Լեւոն Իսաւրացի սակայն վերջապէս Արաբները հարկադրեց որ քաշուին (Գելցեր, ԲԻՒԶ. ԿԱՅՍՐ. ՊՏՄ. էջ* 154 M. Ph. le Bas, **Asie Mineure,** *էջ* 532. *ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ* 305)։ *Բիւզանդական պատմութեան այդ շատ յատկանշական շրջանին, ուր «անհաւատ»ներու դէմ պայքարը սաստկութեամբ կը շարունակուէր, Հայերու թիւը զգալապէս աւելցաւ բիւզանդական երկիրներու մէջ, վասնզի արաբական տիրապետութիւնը Հայաստանի մէջ որքան իր տնտեսական խիստ նշանակալից հետեւանքներով, նոյնքան նաեւ իր անհանդուրժելի բռնութիւններով, ստեղծած էր այնպիսի մտայնութիւն մը, որ հակառակ անոր որ Հայերը դառնացած էին Բիւզանդիոնի դէմ զիրենք անպաշտպան ձգած ըլլալուն համար, երբ անոր կողմէն պզտիկ յոյս մը կը տրուէր, կրկին Բիւզանդիոնի կը յարէին եւ արաբական լուծէ փրկուելու համար քրիստոնեայ Բիւզանդիոնի կը գործակցէին եւ գրեթէ միշտ լքուած եւ յուսախաբ, արաբական վրէժխնդրութեան սարսափով դարձեալ նախամեծար կը համարէին Բիւզանդական երկիրներ ապաստանիլ։*

*Այսպէս Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի* (741—775) *ատեն Հայերը քաջալերուած անոր Արաբներու վրայ Փոքր Ասիոյ մէջ տարած մի քանի յաղթութիւններէն, փորձեցին ապստամբիլ։ Գրիգոր Մամիկոնեան եղաւ գործին նախաձեռնարկը եւ միւս նախարարները ըմբոստանալ հրաւիրողը։*

---

(1) *Ալ-Ռուսաֆա* (Al-Rusafa = Resafa, Sergispolis), *Բաղդադի արեւմտեան կողմը։*

Նախարարները առ հասարակ կը համաձայնին եւ կը հաղորդեն իրենց խորհուրդը Աշոտ Վասակեան Բագրատունի Պատրիկին, որ շատ կ'աշխատի զիրենք համոզելու, որպէսզի հրաժարին այդ գաղափարէն, սակայն չեն համոզուիր եւ իրեն ալ կը սպառնան։ Վերջապէս Աշոտ եւ Գրիգոր համաձայնութեամբ ոստիկանը կը վանեն, ապստամբութիւն կը հռչակեն եւ Տայքի լեռները կ'ամրանան եւ Պոնտոսի բիւզանդական բանակին պաշտպանութեան կը վստահին 747-ին (ՂԵՒՈՆԴ, էջ 154)։

Սակայն տարի մը չանցած Աշոտ մաս մը նախարարներով բաժնուած Բագրեւանդ կը մեկնի, իրեն սեպհական գաւառը, եւ նորէն Արաբներու հետ հաշտուելու մասին կը խորհի։

Գրիգոր կը պաշարէ Աշոտը եւ կը կալանաւորէ եւ կուրցնել կու տայ, իսկ ինք իբրեւ Հայոց իշխան, Կարին կ'երթայ եւ յաղթութեան աւետիսը կը տարածէ եւ կը հռչակէ Կոստանդին Կոպրոնիմոսի տիրապետութիւնը (748) Հայաստանի վրայ։

Գրիգոր շուտով կը մեռնի եւ իրեն կը յաջորդէ իր եղբայրը՝ Մուշեղ Մամիկոնեան, որ կարճ իշխանութիւն մը կ'ունենայ։

Հայերը — ինչպէս նաեւ Յոյները — որ օգտուած էին Ումմեանց եւ Աբբասեանց պայքարի պատճառով արաբ պետութեան մէջ ստեղծուած ներքին պառակտումներէ, չարաչար կը պատժուին, երբ Աբբասեանք յաղթական՝ միահեծան տէր կը դառնան արաբ պետութեան (750) եւ ապստամբ նահանգները խստութեամբ պատժելու կը ձեռնարկեն։

Հայաստան անօրինակ խստութեանց թատերավայր կ'ըլլայ երկու տարի (750—752)։

Կոստանդին Ե. Կոպրոնիմոս (741—775) կայսրը նոր արշաւանքի մը կը ձեռնարկէ դէպի Հայաստան, ուր կրկին նպաստաւոր էր մթնոլորտը։

Կոստանդին 750-ին կ'երթայ Մալաթիա, որ Կամախի պէս այն օրերուն իսլամներուն ձեռքն էր, կառավարիչ ունենալով Պանի Սուլայմ ցեղէ մէկը։

Կամախի բնակիչները օգնութիւն խնդրեցին Մալաթիոյ բնակիչներէն, որոնք 800 ձիաւոր ղրկեցին։ Ասոնք յարձակում կրեցին յունական ձիաւորներէն եւ պարտուեցան, Բիւզանդացիք շարունակելով իրենց արշաւը բանակեցան Մալաթիոյ առջեւ եւ պաշարեցին զայն 751-ին (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ, եւ E. W. Brooks, CMH, Դ. 121)։

Մալաթիացիները պատուիրակ ղրկեցին Միջագետքի կառավարիչին եւ օգնութիւն խնդրեցին, բայց ան չկրցաւ օգնութեան հասնիլ Մալաթիոյ, վասնզի Միջագետք խառնակութեան մէջ էր։ Այնպէս որ քաղաքը ստիպուեցաւ անձնատուր ըլլալ։ Կայսրը կը պահանջէր որ բնակիչները իրենց շարժուն ըստացուածքներով հեռանան եւ պարպեն քաղաքը։

Նախ մերժեցին, բայց երբ սովի ենթարկուեցան, ստիպուեցան համակերպելով կայսեր հրամանին, հեռանալ իրենց բոլոր ունեցածներով եւ Մի-

ջագետք (ծեզիրէ) երթալ: Այն ատեն Կոստանդին Մալաթիան քարուքանդ ըրաւ E. W. Brooks CHM, Դ. 121) եւ միայն ցորենի կիսաւեր մթերանոց մը կանգուն ձգեց: Կոստանդին առաւ նաեւ Գլոտիասը[1] կամ Գլոտիոպոլիսը (Cladias=Glaudia , Հին Գալաուտիա=Kalewdhija=Klaudias )և բնակիչները, ինչպէս Դ. Հայքի միւս բնակավայրերու բնակիչները, իբր գերի կը տանի բիւզանդական հողեր (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ, Michel le Syrien , Բ. հտ. 518 եւ այլ եւ այլ E. I. էջ 208):

Կայսրը կը ձախողի Արշամուշատի առջեւ, սակայն ինչպէս Մելիտինէէն եւ Գլոտիասէն, նոյնպէս Դ. Հայքէն, բնակիչներ կը փոխադրէ բիւզանդական երկիրներ (J. Laurent 192 եւ 198):

Այս արշաւանքին միջոցին, Խուզան (Խուլիկ) անուն Հայը կը պաշարէ Կամախը, ուրկէ 750–ին Բիւզանդացիք փախած էին:

Կոստանդին Ե. կը յառաջանայ նաեւ մինչեւ Կարին եւ կը գրաւէ Հայաստանի սիրտին վրայ կանգնած այս ռազմական կարեւոր քաղաքը 752–ին (ՊՀԳ., Ա. 216) եւ աւարի կու տայ:

Բայց գիտնալով որ իր տիրապետութիւնը տեւական պիտի չկարենայ ըլլալ թէ՛ Կարինի եւ թէ Մելիտինէի մէջ, հայ եւ ասորի բնակիչները իբրեւ պատերազմական գերի կը փոխադրէ Թրակիա (ԹԷՈՓԱՆԷՍ, 6247. Նիկեփոր 60), ուր արդէն վաղուց հաստատուած կային Հայեր (ՊՀԳ., Ա. 180), որոնց վրայ կ'աւելնային այս նոր գաղթականները (նոյն, Բ. 229 եւ 557): Մասնաւորապէս յիշուած է թէ Կարինի բերդապահ գունդը գերի տարուած եւ արաբ բնակիչները տեղահան եղած են, իսկ քաղաքը աւերուած է (Brooks նոյն, 122):

Հայ բնակիչներն ալ կամաւորապէս հետեւած են այս տեղահանեալներուն, վասնզի ըստ Ղեւոնդի (էջ 129) «Բազումք ի բնակչաց գաւառացն խընդրեալ արքայէն, զի գնասցեն զկնի նորա: Եւ նորա տուեալ հրաման վաղվաղակի հանդերձեալ զաղխ իւրեանց խաղային յառաջ...: Թողին զերկիրն ծընընդեան իւրեանց եւ հատուածեալք անկան ի կողմս արքայի բարեպաշտի»:

Ոչ միայն հասարակ ժողովուրդը, այլ նաեւ հայ նախարարներէն ոմանք «մերժեալք լքին զժառանգութիւնս իւրեանց եւ փախստեայ անկան յաշխարհն Յունաց, ապաւինեալք առ կայսրն Կոստանդին» (ՂԵՒՈՆԴ, գլ. ԼԲ.):

Կոստանդին Կոպրոնիմոս, որ շատ մը բիւզանդական կայսրերու պէս մոլեռանդութենէ տարուած էր, մասնաւոր կերպով ուշադրութիւն դարձուց Պաւղիկեաններուն վրայ, որոնց աղանդը արմատախիլ ընելու համար Հայաստանի արեւմտեան եփրատամերձ գաւառներէն, ուր էր այդ աղանդին կեդրոնը, մեծ բազմութիւն մը բռնի տեղափոխեց Պուլկարիա, եւ հոն հաստատեց թէ՛ զանոնք ձուլելու համար Օրթոտոքսներու հետ եւ թէ՛ զանոնք իբրեւ պատնէշ գործածելու համար Պուլկարներու եւ Սլաւոններու դէմ (տես Պրոֆ. Կոնիպէրի ԱՇԽԱՐՀԻ ԿՐՕՆԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ):

---

(*) Այս քաղաքը կը գտնուէր Մալաթիոյ հարաւ-արեւմուտքը, Եփրատի եզերքը

*Այսպէս, Կոստանդին կը յուսար առաւելագոյն չափով օգտուիլ Հայաստանի անհաստատ տիրապետութենէն, որ արդարեւ տեւական չեղաւ: Կոստանդինի նախատեսութիւնը եւ հայ ժողովուրդին երկիւղը իրական էին: Կոստանդին Ե. Կոպրոնիմոսի տիրապետութիւնը Հայաստանի վրայ շատ վաղանցուկ եղաւ, վասնզի 750-ին խալիֆայութեան Աբբասեաններուն փոխանցուելէն եւ անդորրութիւնը հաստատուելէն ետք Արաբները կրկին զօրացան եւ նախ վերագրաւեցին Կարինը եւ զայն վերաշինեցին եւ հեռացող բնակչութեան տեղ արաբ գաղթականներ բերին* (756—759):

*Նոյնպէս* 755-*ին Սալեհ Իպն Ապտ Ալլահ՝ Կոստանդինի հրամանատարութեան տակ գտնուող* 100·000*նոց բիւզանդական բանակը պարտութեան մատնեց եւ վերագրաւեց Մալաթիան* (G. W. Freytag, Selecta, ex-histor, Halebi, Paris , 1819, *էջ* 68. *Ծանօթ.* 58 = E. I. 208):

*Յաջորդ տարի* (756 *Քր.* = 139 *հիճ.*) *Աբբասեան Բ. Ամիրապետը Ապտալլահ Ապու Ճաֆէր էլ Մանսուր* (754—775) *գրեց Սալեհ Իպն Ապտ Ալլահի որ Մալաթիան վերաշինէ եւ ամրացնէ: Այս նպատակով իր զարմիկը՝ Իմամ Ապտ ալ Վահապ Իպն Իպրահիմը՝ Միջագետքի Ալ-Ճեզիրայի եւ անոր կապուած սահմանագլուխի շրջաններուն* (Al-Thughas) *կառավարիչ անուանեց: Իմամը* 757-*ին այս շրջանները գնաց ընկերակցութեամբ Ալ-Հասան Իպն Գահթապայի Խորասանի զօրախումբերուն, որոնց միացան նաեւ* 70·000 *զինուորներ Սուրիայէն եւ Միջագետքէն:*

*Իմամը բանակը դրաւ կործանած քաղաքի առջեւ, ամէն կողմէ գործաւորներ եւ հիւսներ բերել տուաւ եւ Մալաթիան վերաշինեց, հոն մզկիթ մը եւ ընդարձակ զօրանոցներ շինել տուաւ սահմանապահ զօրքերուն համար: Վեց ամիս ետք, քաղաքը վերաշինուած եւ ընդարձակուած էր*[1]:

*Հիսն Գալաուտիա ալ վերաշինուեցաւ* (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ, Michel le Syrien *Բ.* 522. ԿԵՂԾ ԴԻՈՆԻՍԻՈՍ, *հտ.* Chabot A 67, *Եագութ*, Weil, *Բ.* 35 E. I. 209): *Քաղաքէն* 30 *մղոն անդին սահմանագլուխին վրայ ամրոց մը շինուեցաւ եւ ուրիշ մըն ալ Նահր Քուպաքիպին* (=*Թոխմա Սու*) *վրայ:*

*Ապտալլահ Ապու Ճաֆէր էլ-Մանսուր Մալաթիոյ մէջ բնակեցուց Միջագետացի* 4·000 *ռազմիկներ, որոնց յատկացուց աւելի բարձր թոշակ, ինչպէս նաեւ իբրեւ աւատ* (fief) *հողեր:*

*Յաջորդ տարին* (758) *Մուհամմէտ Իպն Իպրահիմ Մալաթիա ղրկուե-*

(1) Արաբական ոճով իր կառուցած մզկիթներուն եւ նշանաւոր բաղնիքներուն հետքերը կարելի է նշմարել դեռ աղօտ կերպով, ինչպէս կը հաւաստէ Ն. Գ. Նաճարեան (Պապ Ուխտի, Բ. տարի, Թիւ 3), վարանումով հիմնուելով Էլ-Իսթախրիի վկայութեան վրայ, վասնզի այս արաբ նշանաւոր երկրաչափը եւ շրջիկ պատմաբանը, որ հեղինակն է Mazalik-ul Mamalik եւ Ritab el Aslkal-ի, մեծ հիացող մըն էր Մանսուրի շինարարութեանց եւ թերեւս չափազանցութեամբ անոր վերագրած է շատ մը շինութիւններ Փոքր Ասիոյ մէջ (նոյն):

ցաւ Խորասանի մէկ բանակին հետ քաղաքը պաշտպանելու համար թշնամիներուն դէմ: Նախկին բնակիչները, գէթ անոնք որ դեռ ողջ էին, Մալաթիա դարձան (E. I. Գ. 209):

Այսպէս Մալաթիա վերստին շէնցաւ, սակայն երկար խաղաղութիւն մը չվայելեց, վասնզի Բիւզանդացիներու եւ Արաբներու պայքարը կը շարունակուէր միշտ, Մալաթիան ունենալով իբրեւ գլխաւոր ռազմական կայան:

Արաբները անկէ կը սկսէին իրենց արշաւանքները: Անոնք Մալաթիայէն անցնելով կը մտնէին Կիլիկիա եւ Պամփիւլիա, ուր Խալիֆային եղբայրը՝ Աբբաս 760-ին շահեցաւ Մելասի[1] ճակատամարտը (տես Arabic par Noël des Vergers, Paris 1817, էջ 363) ՀայկականԲանակաթեմի զօրավար (stretigus) Պօղոսի դէմ, որ այս պատերազմին մէջ մեռաւ: Բանակը ունեցաւ ծանր կորուստներ եւ 42 գլխաւոր սպաներ գերի ինկան Արաբներու ձեռքը (Brooks CMH, Դ. 122):

Արաբները իրենց այս յաջողութիւնը կը պարտէին այն իրողութեան որ Կոստանդին Ե. Պուլկարներու հետ պատերազմի մէջ էր եւ չկրցաւ զբաղիլ Ասիոյ գործերով:

Կոպրոնիմոսի որդին Լեւոն Դ. (775—780) Արաբներու հետ շարունակեց կռիւները եւ Գերմանիկէի (Մարաշ) մօտ 778-ին շահած յաղթութեամբ, ժամանակի մը համար կայսրութեան ասիական սահմանագլուխը ապահովեց:

Իր մահէն (780 Սեպտեմբեր 8) ետք իր անչափահաս զաւակին՝ Կոստանդին Զ.ի իբրեւ խնամակալ, կայսրութիւնը կառավարեց Իրենէ կայսրուհին, որ իմաստուն, բայց չափազանց փառասէր կին մըն էր:

Իր իշխանութեան ատեն շարունակուեցաւ Աբբասեաններու դէմ պատերազմը՝ իբրեւ թատերավայր ունենալով Փոքր Ասիան:

Պատերազմները Բիւզանդիոնի համար ճախող վախճան ունեցան եւ Իրենէ ստիպուեցաւ 783-ին եռամեայ զինադադար կնքել՝ տարեկան 70·000 ոսկի հարկ վճարել յանձն առնելով:

Հարուն էլ Ռաշիտ (786—809) օգտուելով այս զինադադարէն 783—786-ին շինեց շարք մը ամրութիւններ, որոնք յետոյ մեծ օգտակարութիւններ ունեցան արաբական բանակներուն (Գելցեր, նոյն, էջ 164):

Այս ամրութիւնները Մալաթիայէն մինչեւ Տարսոն կ'երկարէին եւ խիստ կը նպաստէին Արաբներուն, որոնք այս կերպով առաւելութիւններ կ'ունենային բիւզանդական բանակներու վրայ:

Այնպէս որ զինադադարին պայմանաժամը լրանալուն, այսինքն 789-ին, երբ պատերազմը վերսկսաւ եւ Բիւզանդացիք փորձեցին դէպի Մալաթիա արշաւել, Հարուն ալ Րաշիտ (786—809) յաջողեցաւ զանոնք ետ մղել (ՊԵԼԼԱՏՀՈՐԻ, էջ 185—8, ԲԱԶՄԱՎԷՊ, 1953, էջ 134):

---

(1) Մելաս կը գտնուէր Մալաթիոյ եւ Կեսարիոյ միջեւ (CMH, Դ., էջ 122):

*790-ին Ալեքս Մուշեղի հրամանատարութեան տակ գտնուող զօրագունդին պահանջումով երբ Կոստանդին ինքնիշխան եւ առանց մօրը խնամակալութեան կառավարել սկսաւ, ինքն ալ մաքառեցաւ 790—792-ին Արաբներու դէմ՝ չատ քիչ անգամ յաջողելով։*

*792-ին մեծ սխալ մը գործեց կրկին գահակից առնելով իր մայրը, որ յաջողեցաւ զայն անժողովրդական դարձնել զանազան խարդաւանքներով (տես Գելցեր, նոյն, էջ 166)։*

*Իրենէ կուրցուց իր որդին 15 Օգոստոս 797-ին եւ կրկին ինքը կառավարել սկսաւ Բիւզանդական Կայսրութիւնը եւ Արաբներու դէմ կռիւը շարունակեց, բայց պարտաւորուեցաւ նուաստացուցիչ պայմաններով խաղաղութիւնը գնել։*

*802-ին Իրենէ գահընկէց եղաւ եւ իր տեղը տուաւ ելեւմտից Նախարար Նիկեփորի, որ իբրեւ կայսր (802—811)՝ պետութեան տնտեսական վիճակը բարւոքեց Իրենէի մսխող իշխանութենէն ետք։ Ան հակառակ որոշ ընդդիմութիւններու՝ գործադրեց խիստ միջոցներ եւ նոյնիսկ եկեղեցական կալուածները տուրքի ենթարկեց։*

*Նիկեփոր դժբախտաբար ռազմական յաջողութիւններ չկրցաւ ձեռք բերել։ Երբ անիկա չուզեց հարկ վճարել, Արաբները բիւզանդական երկիրներ մտան եւ յաղթեցին կայսերական բանակներուն եւ գրաւեցին սահմանին վրայ գտնուող կարգ մը բերդերը։ Նիկեփոր 806-ին աւելի ստորնացուցիչ պայմաններով խաղաղութիւն կնքեց։*

*Բիւզանդական կայսրութիւնը տագնապի մէջ էր, վասնզի իր արեւելեան եւ արեւմտեան սահմանները վտանգի տակ էին արտաքին թշնամիներու յարձակման սպառնալիքին տակ ըլլալով, եւ կայսրութեան ներքին միութիւնը ամուր չէր, աղանդաւորական շարժումներու եւ զինուորական ըմբոստութիւններու հետեւանքով, եւ Բիւզանդիոնի վարիչները կարող չէին գոնէ ներքին պառակտումներու տեղի չտալու։*

*Մասնաւորապէս Պաւղիկեաններու դէմ կը շարունակուէին հալածանքները Միքայէլ (Ռանգաբէ) (811—813) եւ Լեւոն Հայկազն (813—820) կայսրերու ատեն։ Միքայէլ կայսրը 813-ին Պատրիարքին խորհուրդով ջնջել կ'աշխատէր Պաւղիկեան եւ այլ աղանդաւորները Փռիւգիոյ եւ Լիկաւոնիոյ մէջ (ԹԷՈՓԱՆԷՍ)։*

*Կայսեր հրամանը գործադրել կը յանձնարարուի Նէոկեսարիոյ Թովմաս եպիսկոպոսին եւ Փոքր Հայքի կառավարիչ Պարակոնդասին։ Ասոնք այնքան անողոք խստութիւն մը ցոյց կու տան որ կը սպաննուին Պաւղիկեաններու կողմէն 812-ին։ Այս սպանութիւնները կատարելէ ետք Պաւղիկեանները փախան Մալաթիոյ Մոնոքերարէ կամ Մանոքերարէս էմիրին քով եւ անոր օժանդակութեամբ հաստատուեցան Արգաուս[1] կամ Արկաւուն եւ շարունակեցին*

---

(1) *Արգաուսը կամ Արկաւունը (=Արգաւն) այժմեան Արգովան է, որ կը գտնուի*

իրենց պայքարը Բիւզանդիոնի դէմ (Ս. Տ. Մելիք-Բախչեան, ՊԱՒԼԻԿԵԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, 1953, Երեւան, էջ 172. Կարապետ Եպս. Տէր-Մկրտիչեան, ՊԱՒՂԻԿԵԱՆՔ, Երուսաղէմ, 1938, էջ 38)։

Անոնք տեղաւորուելով արաբական տիրապետութեան սահմաններուն մէջ կը վայելէին անոնց պաշտպանութիւնը եւ անոնց հետ դաշնակցելով կ՚աւերէին բիւզանդական երկիրները, մարդկային եւ նիւթական հսկայ վնասներ պատճառելով կայսրութեան։ Անոնց նոր բնակավայրը գտնուելով բիւզանդ-արաբական սահմանին վրայ, կը կազմէին ռազմական գօտի մը երկու ախոյեան պետութիւններու միջեւ։ Անոնք պատրաստ էին միշտ կռուելու զիրենք ճնշողներուն դէմ, գլխաւորապէս Բիւզանդիոնի դէմ։ Ուստի Արաբները, որոնց ամենէն լուրջ թշնամիները Բիւզանդացիք էին, Պաւղիկեաններու հետ բնական դաշնակիցներ եղան եւ անոնց բնակութեան տեղեր եւ արտօնութիւններ տուին։

Այս պառակտումէն զատ գահուն շուրջն ալ պայքար կար։

822-ին Թոմաս ծեր զօրապետը կ՚ապստամբէր Փոքր Ասիոյ մէջ եւ գրեթէ ամբողջ երկիրը կը գրաւէր եւ յարաբերութեան մէջ կը մտնէր Արաբներուն հետ, որոնք թոյլ կու տային որ Անտիոքի պատրիարքը զայն կայսր օծէր (Գելցեր, նոյն, էջ 178)։ Արաբները ասով կը ջանային Բիւզանդական կայսրութիւնը ներքին քաղաքային պատերազմով տկարացնել։

Բիւզանդիոն 824-ին այս վտանգը կրցաւ դիմագրաւել Թոմասը մէջտեղէն վերցնելով։

Բիւզանդական կայսրութեան այս տագնապի շրջանին Արաբները չդադրեցուցին կռիւը։ Էլ-Մամուն (813—838) Խալիֆայի որդին, Աբբաս, Ճեզիրէի (Միջագետք) կառավարիչի հանգամանքով, քալեց Բիւզանդացիներուն դէմ՝ Մալաթիան խարիսխ ընելով (Weil, նոյն, Բ., էջ 289)։

Յաջորդ Խալիֆային Մութասիմի (833—842) իշխանութեան ժամանակ ալ նոյնպէս Տարսոն-Մարաշ-Մելիտինէ գիծին վրայ գրեթէ շարունակ կռիւ կար, փոփոխական յաջողութիւններով, որոնց մանրամասնութիւններուն մէջ մտնել աւելորդ կը նկատեմ (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 306), միայն դիտել կու տամ թէ Թէոփիլոս կայսեր (829—842) ատեն եւ աւելի առաջ Փոքր Հայք արդէն մեծ մասամբ բիւզանդական տիրապետութենէն կորզուած եւ արաբական իշխանութեան ենթարկուած էր։

Արաբները հոն զինուորական իշխանութիւն մը հաստատած էին (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 109) կամ ինչպէս թէ՛ Բիւզանդացիներու եւ թէ՛ Արաբներու համար սովորութիւն էր, հոն հաստատած էին սահմանապահ կուսակալութիւն մը, որ բաւական անկախ դիրք մը ունէր։ Այս իշխանութեան

---

Մալաթիայէն մօտաւորապէս 40 ՔՄ. դէպի հիւսիս՝ ըստ Ա. Վասիլիեւի։ Մուշեղ Սեռոբեան (ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ., էջ 12) կը կարծէ թէ Արկաւուն ամրոցը Արաբկիրի մօտն է (հմմտ. Ալպոյ., ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., 270)։ Իսկ Ստ. Տ. Մելիք-Բախչեան (ՊԱՒԼԻԿԵԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, էջ 190) զայն կը նոյնացնէ Արկա=Արգայի հետ, հիմա Աղճասաղ, Մալաթիոյ արեւմտեան կողմը։

գլուխը դրած էին էմիր մը, որուն նստոցը յետոյ փոխադրուեցաւ Մալաթիա։

Բիւզանդական կայսրութեան ներկայացուցած քայքայուն վիճակէն օգտուելով Արաբները եթէ չկրցան վճռական հարուած մը տալ, պատճառը այն էր որ անոնց երկիրն ալ խառնակութիւններու ենթարկուած էր։

Այս շփոթութիւններուն մէջ ամենէն նշանաւորն էր Բաբէկի յարուցած տնտեսական յեղափոխութիւնը, որ կը յիշեցնէ արդի համայնավարութիւնը։

Այս տագնապէն օգտուելով 837-ին (222 Հիճրէթի) ամառը, Թէոփիլոս կայսրը (829—842) արշաւեց Հայաստան, ճամբու վրայ գրաւելով Սամոսատը, եւ կործանելով Զապետրան (=Սոզոպետրա), որ Խալիֆային ծննդավայրն էր։ Այս արշաւանքէն վերադարձին կայսրը մտաւ Մալաթիոյ սահմանները, գրաւեց քաղաքը, քայքայեց ամրութիւնները եւ յոյն ու հայ բնակիչները փոխադրեց Կ. Պոլիս (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ 395)[1]։

Միայն խնայեց բուն քաղաքին, զոր իրեն յանձնեցին քաղաքին մէջ գտնուող բիւզանդացի գերիները՝ վախնալով թշնամի բանակէ մը, որ կը մօտենար։

Դէպի յաջորդ տարուան վերջերը (838) Մութասիմ Խալիֆան սահմանապահ էմիր Ապու Սայիտ Մէհէմմէտ Իպն Եուսուֆը մեծ ոյժերով ղրկեց Փոքր Ասիա Բիւզանդացիներուն դէմ։ Ասիկա կործանեց կայսերական տոհմին օրօրանը եւ պետութեան մեծ ամրոցը՝ Ամորիումը, զարհուրելի վրէժխնդրութիւն մը ցոյց տալով։

Այս մեծ ճակատամարտին, զոր Մութասիմի մեծ բանակը շահեցաւ Յոյներու Թէոփիլոս կայսեր դէմ՝ Dazimen-ի ամրոցին (=Եւդոկիոյ) մօտ ( E. I. Գ. 209), մասնակցեցան Մալաթիոյ բնակիչները, Աֆշինի եւ Արաբներու Փոքր Հայքի մէջ հաստատած զինուորական իշխանութեան պետը՝ էմիր Սաուտի որդին Ուաթէքի հրամանատարութեան տակ գտնուող Հայերու եւ 10.000 Թուրքերու օգնութեամբ յաղթեցին։

Ուաթէքի յաջորդեց Օմար, որ Փոքր Հայքի էմիր նշանակուելէն ետք, նստած է Մալաթիա եւ հպատակելով Խալիֆային, արաբ բանակներու հետ բազմաթիւ կռիւներու մասնակցած է Բիւզանդիոնի դէմ (Անդրէաս Վ. Աղեքսանդրեան, ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, 1911, Վենետիկ, էջ 109)։

Բիւզանդացիք Ամորիումի աղէտէն ետք, պարտուած վերստին խաղաղութիւն կնքեցին, պատերազմի ծախքերը վճարելով՝ իբր տուգանք։ Սակայն Բիւզանդացիները 841-ին գրաւեցին Al-Hadath-ը[2], Մարաշը եւ Մա-

(1) Michel le Syrien Գ. 89. Իւլ Մասունտի, Իթ-Թապարի, Եագութ եւ ուրիշ արաբ պատմագէտներ սխալմամբ այս արշաւանքը կը դնեն 838-ին։ Այս կարծիքին համամիտ չեն (Weil Բ. 310), Bury (History of the Eastern Roman Empire, 1912, էջ 260), Markwart (Հ. Ա. 1914, էջ 44)։

(2) Al Hadath-ի (բիւզանդական Adata-ի) տեղը չէ ճշդուած, սակայն կասկած չկայ թէ կը պաշտպանէր այն կիրճը, որ Մարաշէն (Գերմանիկէ) Al Bactar (Arabisius = Արաբիսոս) կ'երթար եւ կը գտնուէր այժմեան Աք-Սուի ափերուն վրայ (տես, Le

լաթիոյ շրջանը (Michel le Syrien Գ. 102)։

Թէոդորա հայ կայսրուհին, որ, երբ խնամակալ կայսրութիւնը կառավարել սկսաւ իր որդւոյն Միքայէլ Գ. Արբշիռի կամ Հարբեցողի (842—867) անչափահասութեան պատճառով, ցոյց տուաւ նախանձելի կարողութիւն մը, սակայն մեծ սխալ մը գործեց 843—844-ին Պաւղիկեանները, որոնք դէպի Թ. դարուն կէսերը մեծ մասամբ հաստատուած էին Մալաթիոյ արեւմուտքը եւ հիւսիսը՝ Եփրատի ձորին մէջ, Կողոնիա[1] եւ Մելիտինէ քաղաքներուն միջեւ, եւ որոնք Իսլամներու դէմ սահմանապահի աշխոյժ ու գործօն ամրութիւնը կը հանդիսանային, հալածելով եւ պատճառ ըլլալով որ անոնք ապստամբին Բիւզանդիոնի դէմ։ Մալաթիոյ էմիր Օմար Իպն Ապտալլահ Ալ-Ագթա զանոնք պաշտպանեց զիրենք հետապնդողներուն դէմ (E. I. Գ., 209)։

Բիւզանդական զօրքերը Թէոկտիստի հրամանատարութեամբ առաջացան դէպի արեւելք՝ Մելիտինէի Արաբներուն վրայ, որոնք մտած էին Բիւզանդական Կայսրութեան սահմանը, զանոնք ետ մղելու եւ ապա Պաւղիկեանները բնաջնջելու համար։

Առաջին բախման իսկ Կեսարիոյ հիւսիսը Մաւրոպոտամոնի[2] (Սեւ Ջուր) ճակատամարտին մէջ, բիւզանդական բանակը բոլորովին ջախջախուեցաւ եւ 40·000 Յոյներ լքուեցան բախտի քմահաճոյքին, հազարաւորներ անոնցմէ գերի ինկան եւ կրօնափոխ եղան, եւ Թէոկտիստ փախաւ (843-ին)։

Թէոդորա սակայն չդադրեցուց Պաւղիկեանց դէմ հալածանքը. «Արեւելքի մէջ Պաւղիկեանները ուղիղ հաւատքի բերելու եւ կամ արմատախիլ ընելու եւ մնացեալները հեռացնելու աշխատեցաւ։ Անիկա մեր երկրին շատ աղէտներ պատճառեց։ Որովհետեւ դրկեց մագիստրոսներէն մէկ քանին։ Անոնք ոմանք խաչեցին փայտի վրայ, միւսները սրախողխող ըրին կամ նետեցին ծովուն անդունդը։ Այդպէս, ինչպէս կը հաշուուի, զոհուեցան 100·000 մարդեր։ Անոնց հարստութիւնը տարուեցաւ եւ յանձնուեցաւ կայսերական գանձուն» (ԹԷՈՓԱՆԷՍ ՇԱՐԱՅԱՐԵԱԼ)։

Թէոդորա մաքառեցաւ նաեւ Պատկերամարտներու դէմ, որոնք դրեթէ համախոհներ էին Պաւղիկեաններու։

Եկեղեցին Թէոդորան սուրբերու դասը անցուց՝ Յունադաւանութեան պաշտպանութեան համար ըրած կատաղի եւ արիւնռուշտ պայքարին համար, որ սակայն ապարդիւն եղաւ, վասնզի Պաւղիկեանները նոյնիսկ այդ օրերուն համախմբուեցան ուրիշ աւելի տաղանդաւոր առաջնորդի մը՝ Կարբէասի շուրջը։

---

Strange, The lands of the Eastern Caliphate, էջ 122)։

(1) Կողոնիա = Կուլունիա, հիմա Շէօյլիւ Հիսար. կը գտնուի Լիկոսի եզերքը, Նէոկեսարիոյ հարաւ-արեւելքը։ Հին ատեն ամրոց մըն էր. Պոմպէոս Պոնտոսը նուաճելէ ետք այդ ամրոցը վերածեց քաղաքի եւ կոչեց Կողոնիա (Գուլոնիա)։

(3) Ալիս գետի հովիտին մէջ։

Կարբէաս Անատոլեան Թեմի կուսակալ Թէոդոս Մելիսէնի գրադիրն էր, որ վերջին կոտորածներու ժամանակ կը գտնուէր բիւզանդական բանակին մէջ եւ ունէր սպայի աստիճան:

Անիկա լսելով որ Պաւղիկեաններու հալածանքի զոհ եղած էր նաեւ իր ծերունի հայրը, վրէժխնդրութեամբ լեցուած իր շուրջ հաւաքեց 5000–ի մօտ մարդեր եւ անցաւ Մելիտինէի էմիր Օմար Իպն Ապտալլահ ալ–Ագթայի կողմը՝ անոր հետ պայքարելու համար բիւզանդացի հալածիչներու դէմ:

Մելիտինէի էմիրը ուրախութեամբ զայն ընդունեցաւ եւ ղրկեց Խալիֆային, որ անոր բնակութեան տեղ շնորհեց Արկաւուն եւ Ամարա[1] քաղաքները: Արաբներու ցոյց տուած այս ջերմ ընդունելութիւնը կը բացատրուի այն բանով, որ Արաբները յատկապէս Թ. դարու կէսերուն անհրաժեշտ պէտք ունէին մարտունակ մարդերու՝ դիմակալելու համար Բիւզանդացիներու դէպի արեւելք յառաջացումը, եւ Պաւղիկեանները ճիշդ փնտռուած մարդիկն էին եւ ասոր համար շատ գնահատուած Արաբներէն, ինչպէս կը վկայէ Պոտամա արաբ պատմիչը (հմմտ. Ստ. Տ. Մելիք–Բախշեան, ՊԱՒԼԻԿԵԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, էջ 174—7):

Ըստ Թէոփանէս Շարայարեալի (էջ 103) Պաւղիկեանք այս երկու քաղաքները չինելէ ետք՝ 885–ին չինած են երրորդ քաղաք մը՝ Տիփրիկէն (Տիվրիկ), (Կարապետ Եպս. Տէր Մկրտչեան, էջ 53) Կողոնիոյ Թեմին սահմաններուն մօտ, Եփրատի միջին ընթացքի վրայ՝ աջ եզերքէն քիչ մը արեւմուտք, շատ ամուր դիրքի մը վրայ: Ոմանք կ'ըսեն թէ Պաւղիկեանք հիմնած են նաեւ Արաբկիրը (որ կրնայ չփոթուած ըլլալ Ամարայի հետ) եւ Կիւրինը (որ նոյնպէս անհաւանական չէ որ չփոթուած ըլլայ Արկաւունի ամրոցին հետ):

Պաւղիկեանք իրենց հիմնարկած այս քաղաքներէն դուրս հաւանօրէն մեծ թիւով կ'ապրէին նաեւ Մելիտինէ, որ Պաւղիկեանց գլխաւոր բնակավայրերուն մօտ՝ Արաբներու կողմէ կազմուած սահմանապահ էմիրութեան մը մայրաքաղաքն էր, ինչպէս տեսնուեցաւ, եւ Խալիֆան հրամայած էր Մելիտինէի էմիրին՝ ամէն աջակցութիւն եւ օգնութիւն ընծայել Պաւղիկեաններուն:

Տարագրեալ հերձուածողներուն այս բաց եւ անպաշտպան ապաստանը չուտով անբաւական եղաւ:

Պաւղիկեանք միացան Արաբներուն, սարսափ սփռեցին Բիւզանդիոնի ասիական բոլոր նահանգներուն մէջ, իրենց հալածիչները սպաննելով եւ հրո–

(1) Ամարա կամ Աւարա ըստ A. A. Vasilief-ի (BYZANCE ET LES ARABES, Բ. 31) կը գտնուէր Արկաւունի հիւսիսը, իսկ ըստ V. Guinet-ի՝ արդի Էմիրքէօյի տեղը: Պաւղիկեաններէն բնակուած գլխաւոր քաղաքներէն մէկն էր (Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 251, ԿԵՆԴՐԻՆՈՍ Բ. 154, ԹԷՈՓԱՆԷՍ, ՀԱՅ-ԿԵՍԱՐԻԱ, էջ 432), Թոքմա Սուի մէջ թափող Պաւըգըլը-Սուի հետ միացման տեղւոյն վրայ՝ Կիւրինի եւ Մանճըլըգի մօտերը:

սակային արշաւանքներ կատարելով։

Օմար ալ Ագթա, Մելիտինէի էմիրը, որ պաշտօն ունէր ամէն կերպով օգնելու այս աղանդաւորներուն, անոնց օգնութեամբ աւերեց Կապադովկիան եւ Պոնտոսը եւ առաջացաւ մինչեւ Բիւթանիա (Le Beau, **L'Histoire du Bas Empire**, հտ. ԺԳ., էջ 180) եւ առաւ հազարաւոր գերիներ (M. Ph. le Bas, **Asie Mineure,** էջ 506—507)։

Պաւղիկեանք այդ սահմանագլուխէն, ուր հաստատուած էին, արձակազէնի յաջող կռիւներով նշանաւոր հանդիսացան։ Անոնք Տիվրիկը կայան մը դարձուցին ասպատակութեան եւ սկսան աւազակային արշաւանքներու, իրենց գլուխը ունենալով Կարբէասը, որ յաջող յարձակողականները գործադրեց (Գելցեր, նոյն, 183)։

Պաւղիկեանք՝ այսպէս բռնութեան եւ հալածանքի հետեւանօք նետուած դրացի մահմետական պետութեան գիրկը, դադրեցան բնական պատուար ըլլալէ Արաբներուն դէմ եւ դարձան անոնց դաշնակից եւ մեծ հարուածներ տուին բիւզանդական կայսրութեան։

855–ին Կարբէաս Տարօնի Արաբ էմիր Ալի էպն Եահիա էլ Արմանիի հետ յարձակեցաւ բիւզանդական երկիրներուն վրայ։

Յաջորդ տարին, 856–ին, Բիւզանդիոն Պաւղիկեաններու դէմ կանոնաւոր բանակ մը ղրկեց Պետրոնասի հրամանատարութեամբ։ Արաբները եւ Պաւղիկեանք տեսնելով թշնամիին գերակշիռ ոյժը, ետ քաշուեցան եւ Բիւզանդացիք 857–ին գարնան գրեթէ անարգել մտան Սամոսատի եւ Ամիթի շրջանները եւ յետոյ գացին Տիվրիկի վրայ, զոր չկրցան գրաւել եւ ետ դարձան։ Այս ատեն Պաւղիկեանները եւ Արաբները սկսան հետապնդել բիւզանդական բանակը, որուն սակայն չհասան (էթ–Թապարի)։

856—857–ի բիւզանդական արշաւանքը, ինչպէս կը տեսնուի, ունէր աւազակային բնոյթ եւ նպատակ՝ թալանելու եւ աւերելու Փոքր–Հայքի եւ հիւսիսային Միջագետքի շրջանները եւ աճաբեկել բնակիչները։

Բայց Պաւղիկեանք կը մնային եւ կ'աւերէին անընդհատ, կը նեղէին բիւզանդական կայսրութիւնը՝ անվհատ եւ չարունակ կռիւ մղելով։

Միքայէլ Գ. կայսրը (859—867) որոշեց միանգամ ընդ միշտ վերջ տալ Արեւելքի մէջ տիրող այս անհանդարտ վիճակին եւ 859–ին, Արաբներու եւ Պաւղիկեաններու հետ գերիներու փոխանակութեան համար բանակցած պահուն իսկ, նենգութեամբ յարձակեցաւ անոնց վրայ։

Միքայէլ կայսրը ինք անձամբ կը վարէր այս արշաւանքը։ Կայսերական զօրքերը յառաջացան մինչեւ Եփրատ եւ պաշարեցին Սամոսատ քաղաքը (859) (Ն. Ադոնց, ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ, 1948, Պարիս, էջ 321)։ Արաբները երեք օր ետք դէպի դուրս անակնկալ յարձակումով մը պարտութեան մատնեցին բիւզանդական զօրքը եւ Միքայէլ կայսրը հազիւ կրցաւ ճողոպրիլ, իր վրանը եւ ինչքը յաղթական թշնամիին աւար ձգելով (ԿԵՆԴՐԻՆՈՍ, էջ 91, ԹԷՈՓԱՆԷՍ Շար., էջ 176, Ն. Ադոնց, նոյն, 321)։

Երկու տարի ետք, 861–ին, Օմար դարձեալ ասպատակեց 30,000 զորքով: Վարդ, որ ամենայն ինչ էր Միքայէլ կայսեր իշխանութեան ատեն կիւրապաղատի աստիճանով, հաւաքեց Թրակիայէն, Մակեդոնիայէն եւ ասիական թեմերէն 40,000 զօրք եւ կազմեց բանակ մը եւ գնաց Թշնամիին դէմ:

Մելիտինէի էմիրը Սեբաստիոյ գիծով կ'երթար դէպի ծովեզերք Ամիսոսի (Սամսոն) շրջանը: Վարդ, անոր ընթացքը կասեցնելու համար, բանակեցաւ Դազիմոնի (Թոգատ) մօտ, Կելլարիոն կոչուած դաշտը: Շուտով հասաւ նաեւ Օմարի բանակը եւ դիրք բռնեց Դազիմոնէն դէպի արեւմուտք Զիլա քաղաքին մօտ, Խոնարիոն ըսուած վայրը: Ճակատամարտին մէջ կայսրը պարտուեցաւ եւ մազ մնաց որ Արաբներուն ձեռքը գերի իյնար, եթէ Վարդ Մամիկոնեան դիւցազնաբար զայն չփրկէր[1]:

Երկու տարի ետք (863) Բիւզանդիոնի յամառ Թշնամին Օմար, իր հետը ունենալով կայսրութեան անհաշտ Թշնամի Պաւղիկեանները, 40,000 զինուորով մտաւ Արմենեակ Թեմը եւ հասաւ մինչեւ Ամիսոսի (Սամսոն) ծովեզերքը, ուր իբր նոր Քսերքսէս հրամայեց ծեծել ջուրը, որ յանդգնած էր կասեցնել իր արշաւը, որ շատ սուղ արժեց Կապադովկիոյ, Պոնտոսի եւ Կիլիկիոյ, որոնք ամայի անապատի վերածուեցան. Փոքր Ասիան, աւերուեցաւ: Օմար իր այս աղիտաբեր արշաւին ատեն առաւ 60,000 գերիներ, զորս հետը տարաւ: Օմար նաեւ մեծ աւար ձեռք բերաւ:

Այսպէս քանի մը տարի տեւեց կռիւը, մերթ յաղթութեամբ եւ մերթ պարտութեամբ ( Weil, նոյն, Բ., էջ 362—65 եւ E. I. Գ., էջ 209):

Վերջապէս Արաբները պարտուեցան Պոսոն կամ Պոսոնտա[2] քաղաքին մօտ՝ Պետրոնասէն, որ Թէոդորա կայսրուհիին կրտսեր եղբայրը եւ «սքոլարներու դոմեստիկ» էր (պալատական կանոնաւոր եւ հեծեալ գունդերու զօրապետ): Օմար սպաննուեցաւ եւ իր որդին գերի ինկաւ Բիւզանդացւոց ձեռքը (863 Սեպտ. 3) (տես Ն. Ադոնց, ՊԱՏ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ, էջ 324)[3]: Պետրոնաս ճարտար ռազմավարութեամբ մը Արաբները պաշարեց եւ

---

(1) Բիւզանդացի պատմիչներ կայսրը փրկելու պատիւը Մանուէլ Մամիկոնեանի կու տան, սակայն Ն. Ադոնց կը փաստէ թէ Վարդն է կայսեր ազատարարը (ՊԱՏՄ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ, էջ 325-8):

(2) Այս քաղաքին տեղը ճշդուած չէ (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 208): Ըստ Ադոնցի՝ կը գտնուէր Արմենեակ թեմի եւ Պափլագոնիոյ սահմանին վրայ (ՊԱՏՄ. ՈՒՍՈՒՄ., էջ 323) Ալիսի ձախ եզերքը (նոյն):

(3) E. I. (էջ 209) տարբեր կերպով կը պատմէ: Ըստ այդ պատմութեան՝ Օմար ալ-Ագթայի բանակը Փոքր Ասիոյ մէջ արշաւանքի մը ատեն 865-ին Րաճապ ամսուն ամբողջովին փճացաւ Մարճ ալ Ուսգուֆի մէջ (Մարճ ալ Ուսգուֆ կը նշանակէ «եպիսկոպոսին դաշտը» եւ Podandos = Պոդանթիի արեւմտեան կողմը կը գտնուէր [Le Strange, Eastern Caliphate, էջ 138]) քաջասիրտ Պետրոնասի կողմէ, որ Միքայէլ Գ. կայսեր սպարապետն էր (Weil, Բ. 380, Thannercheck, Saoun, էջ 23):

Օմարը երկաթէ օղակի մէջ առաւ: Օմար, գառագեղի մէջ փակուած գազանի մը պէս, ուրիշ ճար չգտաւ եթէ ոչ չափուիլ իր ուժերով անոր հետ: Փորձեց, եւ շուտով համոզուեցաւ որ անհնար էր խզել իր բանակը հրջապատող շղթան եւ սուրը ձեռքը իյնալ նախընտրեց:

Այդ ճակատամարտին մէջ ինկան նաեւ Պաւղիկեան պետ՝ Կարբէաս եւ Տարօնի էմիր (կամ Կիլիկիոյ կուսակալ) Ալի Իպն Եահիա էլ-Արմէնի — հայ զօրավարը արաբական բանակին (նոյն եւ J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 363 եւ ՊՀԳ. Ա. 278)[1]: Ան դաշնակցելով Մելիտինէի էմիր՝ Օմար Իպն Ապտ Ալլահ ալ-Ագթայի հետ, օգնած էր Պաւղիկեանց պետին՝ Կարբէասի (Ն. Ադոնց. Les fonds historiques de l'épopée Byzantine Degenis Akritas, Byzantinishe Zeitshchrift XXIX 209):

863 Սեպտ. 3-ի յաղթութենէն ետք բիւզանդական բանակը յառաջացաւ եւ մտաւ արաբական հողերը (863 Հոկտ. 18 — Նոյեմ. 16 Ռամազան ամսուան միջոցին, Պրոֆ. Ն. Ադոնց, նոյն, էջ 330):

Պոսոնի յաղթանակը պատմական մեծ դէպք մըն էր, քանզի զինուորական երկարատեւ եւ փոփոխական մրցութենէ մը ետք, առաջին անգամ էր որ բիւզանդական զէնքը կը փայլէր դերիվերոյ ռազմական ուժի եւ մանաւանդ արուեստի առաւելութեամբ:

Պետրոնաս կրցաւ ահեղ հարուած մը տալ արաբ բանակին եւ զայն սաստիկ ջարդել:

Այս յաղթութեամբ երկար ատեն ապահովուեցաւ արեւելքի խաղաղութիւնը (Գէորգ Մոնախոս Միայնակեաց, 825):

Օմարի մահէն ետք Մալաթիոյ նոր էմիրին զինակցեցաւ Պաւղիկեանց նոր պետը՝ Քրիւսկիւրոս (Կիւրշահր կամ ըստ Յունաց Կրիսոչեր), Կարբէասի որդին, որ անոր յաջորդած էր: Անիկա մեծ չարիք հասցուց Բիւզանդացւոց եւ նոյնիսկ խրոխտաբար մերժեց Միքայէլ Գ.ի (842—867) խաղաղութեան բանագնացները, կրօնական եւ քաղաքական ազատութիւն պահանջելով (ԱԶԳ., 978):

Պաւղիկեանները եւ Մալաթիոյ էմիրին զօրքերը մտան Փոքր Ասիա եւ ասպատակութեամբ արշաւեցին մինչեւ Նիկիոյ եւ Նիկոմիդիոյ դուռները եւ մաս մըն ալ Եփեսոսի կողմերը:

Վասիլ Ա. (867—886) գահ բարձրանալէ ետք ներքին շփոթութիւններուն պատճառով, ուզեց հաշտարար ուղղութիւն բռնել եւ բանակցութեան համար Պետրոս Սիկիլիացին ղրկեց Պաւղիկեաններու պետին մօտ: Պետրոս Սիկիլիացի երկու տարի մնաց Տիվրիկ, սակայն չկրցաւ սիրաշահիլ զանոնք, այլ միայն գերիները փրկեց: Քրիւսկիւրոս կը պահանջէր որ Վասիլ հրաժարի

---

(1) Պրոֆ. Ն. Ադոնց Ալի Իպն Եահիա զօրավարին մահը կը յետաձգէ մէկ ամիս, զայն սպաննուած ցոյց տալով Նփրկերտի (=Մուֆարղին) մէջ, 863 Հոկտ. 18-էն Նոյեմ. 16-ի միջոցին տեղի ունեցած ճակատամարտին ատեն, ուր խառնուած էր կայսերական զօրքերուն (ՊԱՏՄ. ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ, էջ 330):

Փոքր Ասիայէն եւ գոհանայ միայն կայսրութեան եւրոպական բաժինով։

Վասիլ Ա. 871-ին անձամբ գնաց Պաւղիկեանց դէմ. ուստի արշաւեց դէպի Տիփրիկէ (Տիվրիկ) եւ Տարենթոն (=Տարենտէ), կողոպտելով Զապետրան[1] կամ Զուպատրան և Սամոսատը եւ բանակ դնելով Նահր ալ Զարնուքի (այժմ Զիրմիքլի Սու) վրայ (ԹԷՈՓԱՆԷՍ ՇԱՐԱՅԱՐԵԱԼ, էջ 210)։

Վասիլ գրաւեց նաեւ Մելիտինէն եւ կցեց բիւզանդական կայսրութեան։

Յաջորդ տարին (872-ին) կայսրը առաջացաւ մինչեւ Պաւղիկեաններու կեդրոնը, այս անգամ անցնելով Եփրատի հովիտին հին ռազմական ուղիով՝ Դորիլայոն-Սեբաստիա ճանապարհով։ Յաղթեց Պաւղիկեաններուն եւ անսահման աւարի տիրացաւ, բայց չկրցաւ գրաւել Տիվրիկը՝ անոնց անառիկ ամրոցը, եւ գոհացաւ քաղաքին շրջակայքը աւերելով եւ թալանելով։

Վասիլ Ա. ապա անցաւ Եփրատը ու շարունակեց իր արշաւը Մելիտինէ-Տարենտէ-Գուրան-Ազիզէ ուղղութեամբ եւ գրաւեց Տարենտէ քաղաքը, որուն անկումէն ետք, Վասիլի հպատակութիւն յայտնեցին նաեւ ուրիշ քաղաքներ ու ամրոցներ, ինչպէս Լոքանա, որուն տէրն էր Քուրտիկ կամ Քուրտիկոս Փոքր Հայքի հայազգի իշխանը որ Միքայէլ Բ. կայսեր ատեն ապստամբած եւ 872-էն սկսեալ կը տիրէր Թոխմա Սուի վերին հովիտին (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 310) եւ յաճախ բիւզանդական հող կ'ասպատակէր (ԹԷՈՓԱՆԷՍ ՇԱՐԱՅԱՐԵԱԼ, էջ 268. ԿԵՆԴՐՈՆՈՍ, Բ. 207, ՎԱՍԻԼԻԵՐ Բ. 31)։

Բիւզանդական զօրաբաժին մը գրաւեց նաեւ Զապետրա ամրոցը, որ կը գտնուէր Մելիտինէ-Սամոսատ ճամբուն վրայ, եւ Սամոսատ քաղաքը։

Այս բոլորէն ետք Վասիլ յարձակեցաւ Մելիտինէի վրայ եւ ստիպեց անոր էմիրը փակուիլ քաղաքին բերդէն ներս։ Կայսրը չկարենալով գրաւել ամրացած Մելիտինէն, դարձաւ եւ իր բոլոր զայրոյթը թափեց Պաւղիկեաններուն վրայ, աւերելով քաղաքը եւ ջարդելով բնակիչները։

Ան յաջորդաբար գրաւեց Արկաւուն քաղաքը եւ 5—6 բերդեր։ Ասկէ յետոյ է որ կայսրը դարձաւ մայրաքաղաք՝ Սեբաստիա — Դորիլայոն ճամբով (Ստ. Տ. Մելիք Բախշեան, նոյն, էջ 190)։

Ուրեմն 872-ին արշաւանքը եւս չտուաւ Վասիլ Ա.-ի գոհացում, վասնզի Պաւղիկեանութիւնը ջնջելու չյաջողեցաւ։

873-ին Պաւղիկեանք նորէն ասպատակային արշաւանքներու ձեռնարկեցին եւ առաջացան մինչեւ Սամոսատ եւ Նախկին Դ. Հայք, բայց չկրցան գրաւել Մելիտինէն, Եփրատի այդ անցքը, որ պէտք եղածին չափ ամրացուած էր (Գելցեր, նոյն, էջ 199 և Weil, Բ., էջ 471)։ Կայսեր բանակը Մալաթիոյ պաշարման ընթացքին ծանր կորուստներ կրեց եւ նոյնիսկ քիչ մնաց որ գերի իյնար ինքը, եթէ հայ զինուոր մը՝ Թէոփիլակտոս (հայրը՝ Ռոմանոս Լեկաբանոս կայսեր) զայն չփրկէր։

Սակայն Տիվրիկի շրջակայքը գտնուող եւ Արաբներէն բնակուած ու

---

(1) Կը գտնուի Մելիտինէի հարաւ-արեւմտեան կողմը ըստ Լօուանի։ Ե. Քասունի Վերանշեհիրի համապատասխան կը նկատէ եւ բեւեռագիրներու Բիէ քաղաքը կը համարէ։

Մալաթիոյ էմիրին հնազանդող եւ Պաւղիկեանց հետ գործակից շատ մը քաղաքներ՝ սարսափած Վասիլի խստութենէն՝ անցան անոր կողմը եւ հպատակիլ խոստացան։

Քրիւսկիւրոս, Մալաթիոյ մօտ կրած իր մեծ պարտութենէն ետքն ալ, դիւրաւ նոր զօրք հաւաքեց եւ աւելի մեծ ոյժով Կապադովկիա մտաւ եւ աւերեց։

Վասիլ անոր դէմ ղրկեց Քրիստափոր հայ զօրավարը, որ իր ազգականն էր։ Պաւղիկեան պետը առանց բիւզանդական բանակին դէմ ճակատելու՝ իր աւարովը Տիվրիկ քաշուեցաւ։

Քրիստափոր հսկել որոշեց հեռուէն Քրիւսկիւրոսի շարժումներուն վրայ (ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆ Ե., 41·73) եւ ի վերջոյ յաջողեցաւ կռիւի մը ընթացքին սպաննել Պաւղիկեանց պետը[1] եւ ապա գնաց Տիվրիկի վրայ, ուր մտաւ առանց ոեւէ ընդդիմութեան, որովհետեւ սաստիկ երկրաշարժ մը, որ նոյն տարին պատահած էր, քաղաքին բնակչութեան հեռանալուն եւ անոր պարիսպներուն փլուզումին պատճառ եղած էր։

Բիւզանդացիք քաղաքը գտան աւերակներու կոյտ մը (873)[2]։ Պաւղիկեանք ընկճուեցան եւ ջնջուեցաւ անոնց կրօնական հանրապետութիւնը[3]։

Վասիլ՝ Պաւղիկեանց կատարեալ պարտութենէն ետք իր Կոստանդին որդիին հետ անձամբ եկաւ Եփրատի հովիտը, եւ հպատակեցուց կամ վանեց կարգ մը արաբ էմիրներ, որ այդ կողմերը կը բռնային։

Վասիլ Ա.ի հաստատած այս կարգը տեւական չեղաւ եւ իր մահէն (886) ետք վերստին խռովութեան մատնուեցաւ Եփրատի շրջակայքը եւ պատերազմը շարունակուեցաւ երկու կայսրութիւններու միջեւ փոփոխակի յաջողութիւններով, մինչեւ որ Կոստանդին Ծիրանածին կայսեր (913—959) անուանական իշխանութեան ժամանակամիջոցին հայ զինուորականներ պետութեան ղեկը ձեռք առին եւ Արաբներու դէմ ոգեւորութեամբ յաղթական պատերազմներ մղեցին։

916–7ին (Հիճրէթի 304)Մունիս արաբ զօրավարը,մեկնելով Մալաթիայէն աւարառութեան արշաւանքի մը ձեռնարկեց Կապադովկիոյ մէջ ( Weil, Բ., էջ 625)։ Նման արշաւանքներ տեղի ունեցան նաեւ 922–ին եւ յաջորդ տարիներու ընթացքին, երբ Ռոմանոս Լեկաթենոս կայսրը (920—944) կը դահակալէր։ Իր իշխանութեան ատեն բիւզանդական կայսրութեան սահմանը, որ մինչեւ Ալիս գետ քաշուած էր, մինչեւ Եփրատ տարածուեցաւ նորէն, շնորհիւ Յովհաննէս եւ Թէոփիլէ Գուրգէն (Գուրգուաս) հայ երկու եղբայրներուն, որոնք 22 տարի (920—942) բիւզանդական բանակին հրամայեցին Ասիոյ

(1) Հ. Գելցեր (էջ 198–9) զայն սպաննուած ցոյց կու տայ 874-ին՝ խարդախ եւ ստոր եղանակով մը, Յոյնի մը ձեռքով, որ իրմէ բարերարուած մըն էր։

(2) Գելցեր կ'ըսէ թէ Բիւզանդացիք զայն հիմնայատակ ըրին։

(3) E. I., էջ 209 հիմնուելով Weil-ի (Բ. հտ., էջ 475) վրայ, կը գրէ թէ 881—2-ին յայտնի չէ թէ Վասիլ Ա. երկրորդ պատերազմի մը ձեռնարկած է Մալաթիոյ դէմ։

մէջ եւ նշանաւոր յաղթանակներ չահեցան Արաբներու վրայ՝ հազարի չափ քաղաքներ եւ բերդեր առնելով անոնց ձեռքէն ( M. Ph. le Bas, Asie Mineure, էջ 500) եւ մինչեւ Վասպուրական յառաջանալով (Ալպոյ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., էջ 290)։

Նախ ընկճուեցաւ եւ ապա նուաճուեցաւ Մելիտինէի էմիրը, եւ Մելիտինէն, այդ կարեւոր ռազմական դիրքը, որ անհաւատներու յարձակման գլխաւոր կեդրոնավայրը դարձած էր, բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան հզօր յենարանը դարձաւ եւ Կուրատոր (=Հոգաբարձու) մը հրամանատար կարգուեցաւ այդ տեղերուն վրայ, որոնք երկար ատեն խլամ տիրապետութեան ենթարկուած էին (Գելցեր, նոյն, էջ 213—214)։

Ընդդէմ Արաբներու մղուած այս երկարատեւ կռիւներուն գլխաւոր հերոսն էր Յովհաննէս Գուրգէն կամ Գուրգուաս հայ զօրապետը եւ քաջասիրտ Դոմեստիկոսը, որուն հրամանատարութեան տակ բիւզանդական բանակը մտաւ Մալաթիոյ սահմանները եւ յառաջացաւ մինչեւ քաղաքին աւարաձանները, աւերեց անոր շրջակայքը եւ յառաջացաւ մինչեւ Սամոսատ (=Արշամուշատ կամ Արաբներու Շիմշաթը)։

Յովհաննէս Գուրգէն, այս ռազմական կարեւոր դիրքին տիրանալէ ետք է որ անընդհատ եւ ծանր պատերազմներով, տէրութեան սահմանները Ալիսէն Եփրատ եւ Տիգրիս փոխադրեց՝ ընդարձակ երկրամասեր գրաւելով։ Այս կռիւներու միջոցին երկու անգամ պաշարեց Մալաթիան, որուն արաբ էմիրը Բիւզանդիոնի գերիշխանութիւնը ճանչնալ ստիպուեցաւ (Գելցեր, էջ 213)։

Յովհաննէս Գուրգէն պահանջեց Մալաթիոյ էմիրէն իրեն ղրկել իր որդին Ապու Հաֆսը եւ զօրավար Abu'l—Ash'ath—ը (հաւանօրէն մեր պատմագիրներուն Ապուլասարը) եւ ճանչնալ կայսեր գերիշխանութիւնը, ինչպէս կը յիշատակեն բազմաթիւ բիւզանդական պատմագիրներ (տես E. I. Գ., էջ 209)։

Այսպէս 928—ին Մելիտինէի էմիրը՝ Ապու Հաֆս (Ապսխատս կամ Ապու—Խաֆս ալ գրուած է) Բիւզանդիոնի հետ դաշնակցեցաւ (Գելցեր, նոյն, էջ 213)՝ Ռոմանոսի ոյժին առջեւ խոնարհելով։ Այսպէս, այդ կամրջագլուխը, որ մինչեւ այն ատեն «անհաւատ»ներու գլխաւոր յարձակման տեղն էր, բիւզանդական պետութեան զօրեղ պաշտպանութեան վայրը դարձաւ։ Էմիրին գունդերը բիւզանդական զօրքերու հետ կողք կողքի կը կռուէին իրենց կրօնակիցներուն դէմ։

Յաղթութենէն ետք, անոնք բիւզանդական զօրքերու հետ յաղթանակով կը մտնէին մայրաքաղաք, իրենց հետ բերելով գերի բռնուած Արաբները (Գելցեր, նոյն)։

Այսպէս բիւզանդական կայսրութեան արեւելեան սահմանագլուխը «անհաւատ թշնամիներէ գրաւուելու վտանգին տակ ըլլալու սարսափէն ազատեցաւ», եւ Մալաթիա, թէեւ արաբ էմիրներու իշխանութեան տակ, բիւզանդական կայսրութեան ենթարկուեցաւ, իբրեւ հովանաւորեալ իշխա—

նուԹին :

Արաբ էմիրները կը դողային Յովհաննէս Գուրգէնէն :

934–ին Ռոմանոս գրաւեց ծաղկեալ Մելիտինէն եւ անոր հարեւան քաղաքները (Հ. Յակոբոս Վրդ. Տաշեան, ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՍԱՀՄԱՆԸ՝ ՓՈՔՐ ՀԱՅՔ ԵՒ ԿՈՂՈՓԵՆԷ (Սեբաստիա), Հանդէս Ամսօրեայ, 1945, էջ 13) : Յովհաննէս Գուրգէն կ'ըսուի Թէ շնորհուկ մը բրած է Պուլկարական պատերազմին մէջ նշանաւոր հանդիսացող հայազգի Գէորգ Մլեհին (ըստ Արաբներու Malikh, բիւզ. Mgdias) եւ տուած է իբր կալուած կամ աւատ Ամանոս լերան եւ Եփրատ գետի միջեւ գտնուող երկրամասը, այսինքն Մալաթիոյ եւ Սամոսատի շրջանները, որոնք դեռ նոր ազատագրուած էին Արաբներէն (Finlay, **History of the Byzantine Empire**, էջ 247—8, 286) :

«Այս Մլեհը նախապէս Տարոնի հիւսիսային կողմը կալուած մը ունէր, գղեակով մը միասին, զոր Տարոնի արաբ ամիրան Ռուստամ, 911 Թուականին յարձակմամբ առաւ ու այրեցաւ ըրաւ» (Barhebraeus Chronography, էջ 155) : Լեւոն Զ. կայսրը, 920 Թուականի առենները, Լիւկանդոն անուն նոր բանակաթեմ մը ստեղծեց, որ կը բովանդակէր Արեւելեան Տաւրոսի կիրճերուն երկիրը Հաճնոյ մօտ Կոմանայէն մինչեւ Մելիտինէ ու Եփրատ, եւ այս բանակաթեմին, որուն կեդրոնական քաղաքը Լառիս էր, կառավարիչ–հրամանատար կարգեց յիշեալ Մլեհը՝ պատրիկի տտիճանով (Murray's Handbook of Asia Minor Introduction, էջ 45. հմմտ. Մատթ. Ուռհայեցի, էջ 518—9) :

Լիւկանդոսի բանակաթեմը, գոնէ ի սկզբան, կը ներառնէր նաեւ Կոմմագինէի կամ Եփրատացւոց երկիրը : Հայերը որ Մլեհի առաջնորդութեամբ այս տեղ եկած էին, մեծ յառաջդիմութիւն ունեցան եւ իրենց նուաճումները ընդարձակեցին Կիլիկիոյ վրայ ալ՝ գրաւելով Անարզաբա եւ Մամեստիա քաղաքները (Եղիա Քասունի, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԹԷՊԻ ՀԱՅՈՑ, էջ 190) :

Բայց Մլեհ 932–ին վտարուեցաւ Մալաթիայէն եւ Սամոսատէն Սայիտ Իպն Տէօվլէի կողմէ, որ մօրեղբայրն էր Մուսուլի Նասր Իպն Տէօվլէի ( E. I. 209) :

Սակայն 934–ին Բիւզանդացւոց երկու բարեկամներուն՝ Ապու Հաֆսի եւ Ապուլասարի մահերէն ետք, Գուրգէն եւ Մլեհ նորէն երեւցան քաղաքին առջեւ, որ այն ատեն պաշտպանուած էր կրկնակ պարիսպներով եւ ջրալից խրամատով մը : Բնակիչները, որոնց կը սպառնար սովը, ստիպուեցան անոնց հետ բանակցութեան ձեռնարկել քաղաքը յանձնելու համար :

Այս բանակցութեանց ընԹացքին, Յոյները պատերազմական նենգութեամբ մը յաջողեցան քաղաք մտնել հիւսիսային դռնէն եւ զայն գրաւեցին 19 Մայիս 934–ին :

Տրուած խոստումներուն համաձայն բնակիչները կրցան մեկնիլ առանց արգելքի հանդիպելու : Յետոյ պարիսպները հիմնայատակ քանդուեցան. այնպէս որ քաղաքը անպաշտպան մնաց յարձակումներու դէմ (Michel le Syrien,

Գ. 122 եւ յաջորդ, Իպն Էլ–Աթիր Ը. 221, Rambend, l'Empire grec au Xme siècle , Paris, 1870, էջ 423 եւայլն. հմմտ. E. I. էջ 210)։

Այսպէս է որ, յաջորդ տարիներուն Մալաթիոյ շրջակայքը ենթարկուեցաւ արաբական յարձակումներու, որոնք կատարուեցան Համտանեան ցեղէն Սէյֆ էտ Տէօվլէի կողմէ, որ օգտուելով Ռոմանոսի գահընկէցութենէն (944 Դեկտ. 16) եւ Յովհաննէս Գուրգէնի պաշտօնանկութենէն, զօրացած էր։

Սէյֆ էտ Տէօվլէ Ալի Իպն Հէմտուն (կամ Ապուլ Հասան Ալի Սէյֆ էտ Տէօվլէ, 944–967), Յոյներու կողմէ Քափտաճ կամ Խաբտաճ կոչուած, Ժ. դարուն սկիզբը Միջագետքի եւ Տիարպեքիրի շուրջը ունէր իշխանութիւն մը, զոր ընդարձակեց դէպի արեւմուտք՝ բիւզանդական կայսրութենէն հողեր գրաւելով, եւ ընդարձակ պետութիւն մը կազմեց, որուն մայրաքաղաքն էր Հալէպ։ Այս պետութեան մաս կը կազմէին Կիլիկիա, Մալաթիոյ եւ Տիարպեքիրի նահանգները՝ մինչեւ Խլաթ, Վանի լիճին վրայ, ինչպէս նաեւ Ազազ, Այնթապ, Հռոմկլայ, Հիսնի–Մանսուր, Սամոսատ, Մարաշ եւայլն (հմմտ. Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան, ՀԱԼԷՊ, էջ 912—3)։

Հալէպի այս կորովի ամիրան ուխտած էր իսլամական Ա. դարու նուաճումները նորոգել. ուստի զօրաւոր բանակներով յարձակումներ կ'ընէր բիւզանդական երկիրներու վրայ (Եղիա Քասունի, նոյն, 190)։ Սէյֆ էտ Տէօվլէ նոր պատուհաս մը եղաւ Բիւզանդական Կայսրութեան համար, վասնզի ծանր կորուստներ պատճառեց անոր՝ քանի՛–քանի անգամ կռուելով անոր դէմ, ինչպէս նկարագրած է Բարհեբրէոս (տես մանրամասնութիւնները Եղիա Քասունի, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԹԷՊԻ ՀԱՅՈՑ, 191—3, Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան, ՀԱԼԷՊ, էջ 916, եւայլն)։

Եղաւ պահ մը որ Սէյֆ էտ Տէօվլէ այնքան զօրացաւ որ երկու ամիս կայսրութեան սահմանները ասպատակելէ եւ աւերելէ ետք, մտաւ Կապադովկիա հզօր բանակով մը եւ բազմաթիւ բանաստեղծներով, որոնք կու գային տեսնելու իր քաջութիւնները եւ զանոնք յաւերժացնելու։

Սակայն Սէյֆ էտ Տէօվլէի առաջին արշաւանքը, որ այնքան յաջող սկիզբ ունեցած էր եւ այնքան մեծ ուրախութիւն պատճառած՝ արաբ բանաստեղծներու, փաղանցուկ եղաւ, վասնզի բիւզանդական բանակին հրամանատարը՝ Վարդ Փոկաս անոնց ծանր հարուած մը տուաւ։

Երբ անոնք կ'անցնէին Տաւրոս լեռներէն, Կիկերոնեան կիրճէն յանկարծ ժայռերու ծոցէն դուրս ժայթքեց փողերու գոչիւն մը, ռազմի աղաղակ մը եւ Վարդի դարանակալ բանակը, որ այդ պահուն համար պատրաստ կը սպասէր, յանկարծական գրոհ մը տուաւ։ Դիակներ ծածկեցին ժայռերու կատարները եւ հոն կեր եղան արծիւներու։ Անթիւ էին աւարը եւ գերին։

Վարդ Փոկաս առանց ժամանակ տալու թշնամիին որ իր ուժերը հաւաքէ, հասաւ Ասորիք, ուր 5000 հոգի ջարդեց եւ 3000 հոգի շղթայի զարկաւ,

950-ին (հմմտ. Հ. Կ. Տէր Սահակեան, ՀԱՅ ԿԱՅՍԵՐՔ ԲԻՒԶԱՆԴԻՈՆԻ, Վենետիկ, 1903, Բ. հտ., էջ 133—4):

Երկու տարի յետոյ, 952-ին, Արաբները նոր ուժով կրկին յարձակեցան եւ Հալէպի ու Տարօնի էմիրները տարբեր ճամբաներով մտան Կապադովկիա եւ տակնուվրայ ըրին բիւզանդական կայսրութեան ասիական հողերը։ Այսպէս փոփոխակի յաջողութիւններով պատերազմը շարունակուեցաւ:

Գարնան Փոքր Ասիան Բիւզանդացիներու կը պատկանէր, ձմեռը՝ Արաբներուն:

Վարդ Փոկասի յաջորդեց իբրեւ բիւզանդական բանակներու վերին հրամանատար կամ մեծ Դոմեստիկոս իր որդին՝ Նեկիփոր Փոկաս, որ յաջողութեամբ առաջ տարաւ պայքարը եւ յաջողեցաւ մինչեւ Եփրատ՝ կարգ մը յաղթանակներով:

Քափտան սակայն անընկճելի մնաց եւ այն պահուն որ Նիկեփոր զբաղած էր Կրետէն նուաճելու, կազմեց երկու բանակ, մէկը իր ազգականին՝ Ապուլասարի եւ միւսը՝ իր հրամանին տակ:

Ապուլասար առաջացաւ մինչեւ Գաղատիա, ուր անակնկալ յարձակումի մը ենթարկուելով՝ իր բանակը ջարդուփշուր եղաւ (960) եւ ինքն ալ գերի ինկաւ: Իսկ Քափտան յաղթական էր:

Սէյֆ էտ Տէօվլէի Մամլուքը՝ Նաճա, 961-ին Հանձիթի դէմ իր արշաւանքին ատեն հանդիպեցաւ Մալաթիոյ Ապտալլահին եւ զայն փախուստի մատնեց իր Յոյներուն հետ (Freytag, ZDMB XI, էջ 197, Rosen, անդ, էջ 88): Յաջորդ տարին (962) 18 օր աւերեց Մալաթիոյ սահմանները հուրով եւ սուրով ( Freytag. նոյն, էջ 204—206):

Սէյֆ էտ Տէօվլէ իր այս յաջողութիւնները կը պարտէր սա իրողութեան որ Նիկեփոր Փոկաս զբաղած էր Կրետէի նուաճումով, զոր գլուխ հանելէ ետք, ահեղ բանակով մը արշաւեց Սէյֆ էտ Տէօվլէի երկիրները եւ ջախջախելով անոր բանակը գրաւեց 55 բերդեր եւ Դոլիենէ, Հերապոլիս եւ Անարզաբա քաղաքները եւ առաջացաւ մինչեւ Հալէպ (962), սակայն իմանալով որ Դամասկոսի Ալի էմիրը օգնութեան կու գայ, ետ քաշուեցաւ հարուստ աւարով (962 Դեկտ.):

Նիկեփոր Փոկաս, 963 Օգոստ. 16-ին կայսերական գահ բարձրանալէ ետք, երեք տարի անընդհատ Կիլիկիա, Սիւրիա եւ Անդրեփրատեան երկիրները արշաւեց:

Պատերազմը շարունակուեցաւ երեք տարի, մինչեւ որ Սէյֆ էտ Տէօվլէ մեռաւ Սամարայի մէջ 967 Յունուար 25-ին: Որդին՝ Սաատ էտ Տէօվլէ չկրցաւ շարունակել պայքարը եւ խոյս տուաւ, Հալէպի պաշտպանութիւնը ձգելով Սէյֆ էտ Տէօվլէի հաւատարիմ քարտուղարին՝ Քարկույայի որ կը մաքառէր ապստամբ Նաճայի դէմ, որ Հալէպ մտած էր, սակայն Քարկույա, որ միջնաբերդ ապաստանած էր, յաջողած էր վտարել ապստամբ Նաճա զօրավարը:

Քարկուլյա չկրցաւ պաշտպանել եւ 969–ին անձնատուր եղաւ Բիւզանդացիներուն եւ անոնց Թողուց Կիլիկիան, Եփրատացիքը կամ Կոմմագինէն, Մելիտինէն եւ այլ հիւսիսային գաւառներ։ Իրեն կը մնար Հալէպի էմիրութիւնը, որուն համար հարկ պիտի վճարէր։

Եփրատի շուրջը մղուած այս երկարատեւ պատերազմներուն հետեւանքով՝ Մալաթիան եւ իր շրջակայքը չարաչար վնասուեցան եւ գրեթէ աւերակ դարձան։

Նիկեփոր, որ որոշած էր իր գրաւած հողերէն խլամ բնակիչները վանել կամ ջնջել, երբ 964–ին Մելիտինէն գրաւեց, զայն դատարկեցուց իր իսլամ բնակիչներէն։

Նիկեփոր, Եփրատի սահմանագլուխին ամրապէս տիրակալելէ ետք, ուզեց վերստին բնակիչներ հաստատել աւերեալ եւ ոչ–ամրացեալ քաղաքին մէջ։ Բայց Բիւզանդացիները մերժեցին հոն բնակիլ՝ վախնալով արաբական ասպատակութիւններէն։ Իր խորհրդականները այն ատեն առաջարկեցին հոն տանիլ Միաբնակ Ասորի Յակոբիկեանները, եւ Նիկեփոր գործադրեց անոնց խորհուրդը, խոստանալով ասորի պատրիարքին՝ Մար Յովաննա Սարիկթայի կամ Սրիգատի (965—985) որ եթէ Մալաթիան, Հանձիթը եւ Կապանաբերդերը[1] բնակավայրերու վերածէր, Յակոբեանները հալածանքէ զերծ պիտի մնային կայսրութեան մէջ (Michel le Syrien, Գ. 130 յաջ., Barhebraeus, Chron. Ա. 411 եւ յաջ., Margwart, ՄԵԼԻՏ, ՄԵԼԻՏԻՆԷ, ՄԱԼԱԹԻԱ, Հ. Սահակ Կոգեան, էջ 6)։

969–ին կայսեր խոստումին վստահելով եւ պատրիարքին յորդորներուն անսալով մեծ թիւով Ասորիներ հաստատուեցան այդ տեղերը. Մար Յովաննա պատրիարքը իր աթոռը հաստատեց Բարիդկեոնորիում կոչուած վայրը։ 28 ասորի եկեղեցիներ զարդարեցին քաղաքը։ Բազմաթիւ վանքեր հիմնուեցան քաղաքին մէջ եւ շուրջը (Գելցեր, նոյն, էջ 228)։

Այսպէս կարճ ժամանակի մէջ Մելիտինէ իր աւերակներուն վրայ շատ աւելի փառաւոր կերպով վերստին կանգնեցաւ եւ Մալաթիա եղաւ ասորական կեդրոն մը։ Ասորիները հոն մեծապէս աճեցան եւ զարգացան։

Իգնատիոս Եպս. Ս. Կոյսին անունով մեծ եկեղեցի մը եւ վանք մը կառոյց[2]։ Քաղաքը շէնցաւ ու ընդարձակուեցաւ եւ իր շուրջը գիւղեր կազմուեցան։

Մօտաւորապէս 150 տարի ետք, այսինքն 1100–ին ատենները Մալա–

---

(1) Կապանաբերդերը (Kleisoure = Clisure) սահմանագլուխի մերձակայ կիրճերու վրայ շինուած բերդեր էին, որոնց պաշտպանութիւնը կը վստահուէր նախկին զինուորականներու՝ կապաններու հսկելու պարտականութեամբ։ Այդ կապանապետները (կլեսուրարխները) ունէին բաւական անկախ դիրք, իրենց հաստատուած բերդերուն մէջ։

(2) Այս վանքը կը կարծուի ըլլալ Տէր Մեսիհի գլուխը գտնուած շէնքը, որովհետեւ ասորերէն «Տիյէր-իւլ-Մեսիհ» Մեսիայի վանք ըսել է (Մ. Ոբբերեան, Բիւրակն, 1900, էջ 119)։

Թիոյ մէջ եւ շրջակայքը 53 եկեղեցի եւ 60·000 զէնք կրելու կարող քրիստոնեաներ կային, որոնց մէջ նաեւ բազմաթիւ Մելքիտներ (Michel de Tinis Renardo–ի, **Histoire Patriarch. Alexander**–ի մէջ, Paris, 1713, էջ 403, Barhebraeus, նոյն, I, 4243)։

Այս քրիստոնեայ զանգուածը, որ հոն կը հաստատուէր, քաղաքական մեծ նշանակութիւն ունէր, վասնզի ասով բիւզանդական պետութիւնը թէ պաշտպանի դեր կը ստանձնէր արեւելեան քրիստոնեայ ժողովուրդներու նըկատմամբ եւ թէ՛ կ՚ապահովէր արեւելեան սահմաններու պաշտպանութիւնը, զոր անձնուիրութեամբ պիտի կատարէին այդ փոքր, սակայն արիասիրտ ժողովուրդները։

Սակայն Մելիտինէի յոյն արքեպիսկոպոսը ստոր նախանձէն մղուած, Կ. Պոլսոյ պատրիարքին աջակցութեամբ, յաջողեցաւ յայտնապէս խոստըմնադրուժ ընել կայսրը, որ սկսաւ ասորի եպիսկոպոսները բանտարկել, Կ. Պոլիս կանչել եւ զանազան միջոցներով հաւատոյ միութիւն հարկադրել։ Գելցեր (էջ 229) կ՚ըսէ թէ այս բոլոր մանր-մունր հալածանքները, որոնց համար կը գանգատէին հռոմէական իշխանութեան ժամանակ, հիմա Յոյները իբրեւ իշխողներ գործադրեցին իրենց ասորի հաւատակիցներուն դէմ եւ ասով իրենց անհեռատեսութիւնը ցոյց տուին։

Նիկեփորի պէս կորովի զինուորական մը, որ կրնար կղերը սանձել, չկրցաւ իր կամքը հարկադրել անոր եւ չյարգեց տուած խոստումը, յունադաւան կարճամիտ կղերին ազդեցութեամբ եւ հալածեց միադաւան արեւելքի ժողովուրդները, որոնց մէջ մեծ թիւ ունէին Ասորիները՝ Մալաթիոյ կողմերը։

Այս պատճառով Յակոբիկեան Ասորիները հետզհետէ աւելի մօտեցան Արաբներուն եւ անոնց իշխանութիւնը նախընտրեցին քան Յունացը (Michel le Syrien Գ. 131, 136, 147)։

Զմշկիկ (969—976) իր դարուն մեծագոյն զինուորական տաղանդը, յաջորդելով Նիկեփորի, «անհաւատ»ներու դէմ պատերազմը շարունակեց յաղթական եւ մեծ յաջողութիւններ ունեցաւ, այնպէս որ նոյնիսկ Երուսաղէմը մահմետականներու ձեռքէն ազատելու գաղափարը մշակեց, սակայն ժամանակ չունեցաւ իրագործելու, վասնզի մահը շուտով վրայ հասաւ (10 Փետր., 976)։

Յովհաննէս Զմշկիկ ինքն ալ իր նախորդին պէս, իր գրաւած հողերուն մէջ բնակող Իսլամները բնաջնջեց։ Մասնաւորապէս հիւսիսային Սուրիոյ մէջ, ուր անընդհատ կռիւներ մղեց, ահարկու կոտորածներ ըրաւ Արաբներուն եւ ահաբեկեց զանոնք եւ յաջողեցաւ բիւզանդական տիրապետութեան ենթարկել վերստին Միջագետքը եւ Սուրիան եւ նոյնիսկ Պաղտատի խալիֆան հարկատու դարձուց։ Այս չորս տարի (972—976) տեւող շարունակական կռիւին մէջ

Անատոլեան բանակին հրամանատար Մլեհ Դեմեսլիկոս[1] Հայ զօրավարը, 973-ին կը մտնէ հիւսիսային Միջագետք եւ կ'աւերէ Նիզիպինի, Մուֆարղինի եւ Եդեսիոյ շրջակայքը եւ կը գրաւէ Մալաթիան։ Բայց Ամիթի մէջ ծանր պարտութիւն մը կը կրէ եւ կը մեռնի գերութեան մէջ (G. Schlumberger, L'Epopée Byzantine à la fin du dixième siècle, Ա. 228 եւայլն եւ Ալպոյ., ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա. 301)։

Ըստ Իպն ալ Աթիրի (Al—Kamil Գ. 65) այդ շրջանին Մալաթիան կը գտնուէր Հայկական Թեմին (Թեմա Արմենիակոս) մէջ, որ կը տարածուէր մինչեւ Վոսփոր (Խալիճ ալ Քոնսթանթին)։ Այս պատերազմներուն մէջ ալ Մալաթիա կատարեց՝ իբր ռազմական կարեւոր դիրք՝ դեր մը։

Այսպէս կը յիշուի թէ Յովհաննէս Զմշկիկ Մծբինի դէմ իր արշաւանքին ատեն Եփրատը անցաւ Մալաթիոյ մօտէն 972-ին (Հիճրեթի 361) (Gahya al—Antaki, Rosen.-ի յիշուած գիրքին մէջ, էջ 183, Schlumberger, l'Epopée Byzantine, Paris, 1896, Ա. էջ 255)։

Առանց այս պատերազմական ընդարձակ գործողութիւններու մանրամասնութիւններուն մէջ մտնելու, կրնանք ապահովութեամբ ըսել թէ, ինչպէս հիւսիսային Սուրիոյ մէջ Մահմետականները անխնայ ջարդած է, նոյնպէս Մալաթիոյ մէջ եթէ Իսլամները ոեւէ կերպով չէին կրցած խոյս տալ եւ հոն մնացած էին, բնաջնջած է։

Մահմետականներէն զատ այդ օրերուն Մալաթիոյ մէջ եւ չուրջը կային նաեւ Պաւղիկեանները, Ասորիները եւ Հայերը, զորս կ'ատէր յունադաւան կղերը, թերեւս Իսլամներուն չափ եւ գուցէ աւելի՝ մոլեռանդական կիրքով ատելավառ։

Զմշկիկ հայ էր եւ կը թուի թէ չատ համաձայն չէր հալածանքին, զոր կղերը կ'ուզէր որ գործադրուէր ոչ-յունադաւան այս տարրերուն դէմ։ Պաւղիկեանները, զորս Զմշկիկի նախորդները չարաչար հալածած էին եւ ջարդած, այս կայսրը տեղահան ընելով բաւականացաւ եւ անոնց մնացորդները փոխադրեց Պալքանեան թերակղզի, վասնզի իրենց տեղւոյն վրայ միանալով Արաբներուն, կրնային վտանգել կայսրութիւնը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., էջ 297 եւ 365)։

Զմշկիկ Մալաթիոյ Հայերն ալ իբրեւ Պաւղիկեաններ, հալածած եւ զանոնք ալ Եւրոպա փոխադրած է։

Զմշկիկի յաջորդեց Վասիլ Բ. (976—1025), որուն գահակալութեան տարին իսկ, Վարդ Սքլերոս ապստամբեցաւ։ Ամէն բան Սքլերոսի ի նպաստ էր, վասնզի բանակը իր հետն էր։ Անիկա լիովին յաջողելու համար պէտք ունէր երկու բանի՝ զինուորի եւ դրամի։

(1) Հաւանօրէն վերոյիշեալ Գէորգ Մլեհ Լեկանդոնի կառավարիչ-հրամանատարին թոռը։

Ջինուորը առատօրէն տուին իրեն Արաբները եւ մանաւանդ Հայերը, որոնք փութացին զայն կայսր ճանչնալու:

Ջահանի եւ Մելիտինէի կողմերէն մինչեւ Տարօն հաստատուած կէսանկախ (գլխաւորաբար Տիարպեքիրի եւ Մուֆարղինի էմիրները) ճորտ իշխանութիւնները իր կողմը անցան:

Իսկ դրամ հայթայթելու համար Սքլերոս դիմած էր խիստ միջոցի մը: Հարուստները կ'առեւանգէր եւ մեծ գումարներ իբր փրկանք առնելով կ'արձակէր:

Սքլերոս գրաւեց Մալաթիա քաղաքը եւ գերի բռնեց յանուն կայսեր քաղաքը կառավարող զօրավարը եւ ինքզինքն կայսր հռչակեց: Երբ Սքլերոս կռուեցաւ Միքայէլ Պուրքէս (Ալ-Պուրճ) բիւզանդական կայսեր զօրավարին դէմ, իրեն հետ ունէր մկրտուած Շէյխ մը, Մալաթիոյ Ուպաիտ կամ Ուպայտ Ալլահ ալ Մութանասեր պատրիկը, որ հաւանաբար 961-ին յիշատակուած Ապտալլահն է:

Սքլերոս Ուպաիտ Ալլահին Մագիստրոսի աստիճան տուաւ եւ իր ընտրրուկներէն մէկուն Քաաթաթիչ ներքինիին հետ, որուն բդեշխի աստիճանը տուած էր, Անտիոք ղրկեց Քուլայպ պասիլիկոսին դէմ, որ այդ քաղաքին կայսերական կառավարիչն էր: Քուլայպ անոնց յանձնեց Անտիոքը, Թուղարը եւ ամբողջ «Արեւելքը»: Ինքը, ինչպէս նաեւ բոլոր նշանաւոր Անտիոքցիները, գերի տարուեցան եւ ամէնքն ալ ղրկուեցան Ալ-Կապատուկ (al Kabadhuk = Կապադովկիա) (Rosen, նոյն, էջ 9 եւ յաջ., եւ ծանօթ., էջ 81—90. G. Schlumberger, **L'Epopée Byzantine,** I, էջ 359, 362, 376 եւ յաջ.), բայց Սքլերոս Անտիոքի երեւելիները անմիջապէս իրենց տեղը դարձուց եւ Քուլայպը Մալաթիոյ բդեշխ ըրաւ եւ Ուպայտ Ալլահ չուտով անցաւ Վասիլ կայսեր կողմը (977—8-ին): Երբ աւելի ետք Բարթաս (=Վարդան) Սքլերոս եօթը տարի Տիգրիսի Մատիտա կղզիին մէջ (Պաղտատի մօտ) մնալէ ետք յաջողեցաւ փախչիլ եւ Մալաթիա երթալ Պետեւիններու օգնութեամբ, եւ հոն 987 Մարտին անմիջապէս գերի վարեց Քուլայպ բդեշխը, որ կայսեր կողմը անցած էր, եւ կրկին ինքզինքը կայսր հռչակեց (Եահիա Թրգ., (Rosen, էջ 22 եւ G. Schlumberger նոյն Ա. 678):

Սքլերոսի, ինչպէս նաեւ անոր յաջորդող Վարդ Փոկասի ապստամբութիւնները ընկճուեցան եւ զսպուեցան երկարատեւ կռիւներով (տես ՀԱՑ ԿԵՍԱՐԻԱ, 317—21), որոնց թատերավայրերէն մէկն ալ Եփրատի հովիտը եւ Մալաթիոյ շրջակայքն էր, որ անշուշտ չարաչար տուժած է այդ խառնակութիւններէն:

Վարդ Սքլերոս, որ 979-ին ապաստանած էր Պաղտատի Խալիֆային քով, Վարդ Փոկասի ապստամբութեան ատեն ինքն ալ եօթնամեայ աքսորէ մը ետք բիւզանդական երկիր մտաւ Մալաթիայէն, ուրկէ 11 տարի առաջ ալ

սկսած էր իր չորս տարի տեւող պայքարը Վասիլ Բ․ի դէմ։ Հազիւ Մալաթիա մուտք գործած, իր դրօշին տակ հաւաքուեցան, ինչպէս 11 տարի առաջ, խումբ մը յամառ կուսակիցներ ամէն ցեղէ եւ ամէն հաւատքէ, անապատի հրոսներ, Տաւրոսի եւ Եփրատի մարզերու բախտախնդիրները եւ բազմաթիւ պետեւիններ։ Հմայուած այս մարդուն փայլուն արժանիքներէն եւ այն դերազանց կարողութենէն, որով գիտէր ինքզինք այնքան սիրցնել զինուորներուն, անապատի այս ազատ զաւակները ընդգրկեցին խանդավառութեամբ իր դատը, իր հրամանին տակ վազելով կռուի փառքի եւ աւարին։

Նոյնպէս, բազմաթիւ մարտիկներ հայ ցեղէն, միացան Սքլերոսի, որ դարձեալ դիմեց օգնութեանը դրացի Սարակինոս իշխանական տուներուն, մասնաւորապէս Ամիթի զօրեղ էմիրին (տես G. Schlumberger, l'Epopée Byzantine, I էջ 674—9 եւ ԱՍՈՂԻԿ, էջ 238)։

Սքլերոսի Մալաթիա հասնելէն ետք Վարդ Փոկաս, որուն ապաւինած է Վասիլ Բ․ անոր խոստումներ շռայլելով, անվստահ կայսեր խոստումներուն, կը դաւէ անոր դէմ եւ ինքն ալ ինքզինք կայսր կը հռչակէ, աջակցութեամբ Կապադովկիոյ ազնուականութեան։

Վարդ Փոկաս եւ Սքլերոս իրարու հետ եթէ անկեղծօրէն գործակցէին, Վասիլ Բ․ կրնար տապալիլ, սակայն Փոկաս դաւեց Սքլերոսի (14 Սեպտ․ 987)՝ զայն ձերբակալելով եւ բանտարկելով․ սակայն չկրցաւ վերջնական յաջողութիւն մը ունենալ, վասնզի հակառակ իր մինչեւ Պոլիս առաջացած ըլլալուն, 989 Ապրիլ 13–ին սպաննուեցաւ պատերազմին մէջ։ Վարդ Սքլերոս 989–ի ամառը պզտիկ պայքարէ մը ետք հաշտուեցաւ Վասիլ Բ․ի հետ (989 Հոկտ․ 1) եւ այսպէս բիւզանդական կայսրութիւնը փրկուեցաւ իր ճգնաժամային մէկ մեծ տագնապէն, եւ տակաւին հարիւր տարի կրցաւ դիմակալել արեւելեան բարբարոս ցեղերու գրոհը, մինչեւ որ տեղի տուաւ եւ Փոքր Ասիայէն ջնջուեցաւ քրիստոնեայ քաղաքակրթութիւնը։

Այս մէկ դարու յապաղումին նպաստած են Վասիլ Բ․ի բարենորոգչական ձեռնարկները եւ մանաւանդ իր հաստատած հողային օրէնքը, որ կը ձգտէր ընկճելու Փոքր Ասիոյ ազդեցիկ հողատիրութիւնը, որ վտանգ կը սպառնար կայսրութեան միութեան։

Իրաւամբ կ'ըսէ Ֆինլէյ․ «Վասիլ Բ․ի կառավարութիւնը ցոյց կու տայ բիւզանդական զօրութեան զենիթը։ Կ․ Պոլսոյ արծիւները անոր կենդանութեան ժամանակ կը թռչէին երկար յաղթական ճանապարհով Դանուբի եզերքներէն մինչեւ Եփրատի ափերը եւ հայկական լեռներէն մինչեւ Իտալիոյ ծովեզերքը։ Վասիլի անընկճելի քաջութիւնը, անոր սոսկալի խստասրտութիւնը, անոր անտարբերութիւնը դէպի գեղարուեստը եւ դէպի գրականութիւնը եւ անոր կրօնական թերահաւատութիւնը բոլորը կը միանային, որպէսզի ասոնցմով ստեղծեն իր տէրութեան եւ իր ժամանակի տիպ մը»։

Բայց Վասիլ Բ․ի պետութիւնը եթէ ընդարձակուած էր մանաւորապէս Պուլկարները ընկճելով մեծ խստութեամբ եւ արտաքին շուքով պատ-

կառելի դարձած, ներքնապէս տկարացած էր կայսրութիւնը յարատեւ պատերազմներով:

Վասիլ Բ. արեւմուտքի մէջ զբաղած միջոցին 994-ին Նիկեփորոս Ուրանոս զօրավարը Արաբներէն պարտուեցաւ: Վասիլ 995-ին ինքն անձամբ գնաց Արեւելք եւ գրաւեց Հալէպը, Հոմսն ու Սիւրիական Կեսարիան, բայց չկրցաւ գրաւել Տրիպոլիսը:

Իր Կ. Պոլիս դառնալէն ետք Ֆաթիմեանք վերստին գրաւեցին Հալէպը: 1008-ին Համտանեան Ապուլ Ջաիճա Մալաթիա ապաստանեցաւ, ազատելու համար Միրտասեան Մահսուտ Իպն Լուլուի հետապնդումէն եւ հոն Մագիստրոս անուանուեցաւ կայսեր կողմէն (Rosen, նոյն, էջ 51, Schlumberger, նոյն, Բ. 442):

Վասիլ Բ. միջամտեց նաեւ Հայաստանի մէջ իշխող Բագրատունի Թագաւորութիւններու գործերուն եւ զանոնք իր ազդեցութեան ենթարկելու աշխատեցաւ: Տայքի Դաւիթ իշխանը իր դրացիներու օգնութեամբ փառաւոր ջարդ մը տուած էր Մամլուն ամիրայի անհամեմատ ստուար զօրքին:

Վասիլ զայն պատուեց Կիւրապաղատ տիտղոսով: Դաւիթ, որ իր երկիրը կտակած էր Վասիլ Բ.ի, երբ մեռաւ կայսրը փութաց Մալաթիոյ եւ Բալուի ճամբով երթալու Երզնկա եւ գրաւելու Դաւիթի հողերը, որոնք գլխաւորաբար Տայքի մէջ էին (Յ. Մանանդեան, ՔՆՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, Գ., էջ 16): Վասիլ աշխատեցաւ Հայաստանն ալ գրաւել եւ կայսրութեան կցել, սակայն չյաջողեցաւ:

1021-ին առաջին անգամ Սելճուկները մտան Հայաստան: Վասիլ փոխանակ պաշտպանելու Հայաստանը այս հրոսներուն դէմ, զայն մատնեց բարբարոսներուն, Հայերը Հայաստանէն հեռացնելու սխալ քաղաքականութեան հետեւելով:

Վասպուրականի Սենեքերիմ Թագաւորը երբ սարսափած Սելճուկներէն իր երկիրը Վասիլի ձգել ուզեց, Վասիլ ընդունեցաւ եւ անոր տուաւ արդէն կիսահայ Սեբաստիան իբր ճորտական իշխանութիւն:

Վանի շրջակայ քաղաքներու, ինչպէս Բերկրիի, Մանազկերտի, Խլաթի, Արճէշի մահմետական էմիրները Բիւզանդիոնի կայսեր գերիշխանութիւնը ճանչցան, պաշտպանութիւն գտնելու ակնկալութեամբ:

Յովհաննէս Սմբատ Թուլամորթ Թագաւորը՝ Անիի մէջ նոյնպէս բիւզանդական ճորտ դարձաւ:

Վասիլ Բ. ջանաց կայսրութեան արեւելեան սահմանները ամրացնել բերդերով, որոնք յետոյ օգտակար եղան երբ իր մահէն ետք Կոստանդին Թ.ի ատեն Սելճուկները խուժեցին:

Բայց Վասիլ Բ. չկրցաւ շահիլ Հայերը անոնց քաղաքական եւ կրօնական իշխանութիւններուն գոյութեան սպառնալով: Անիկա չկրցաւ հասկնալ թէ Հայաստանի մէջ միաբնակութեան դաւանութիւնը դեռ իրական ոյժ մը կը ներկայացնէր, զոր պէտք էր հաշւի առնել: Ասոր համար չկրցաւ տոկալ

կայսրութիւնը Արեւելքի մէջ եւ Վասիլ Բ.ի տարապայման ընդարձակ կայսրութիւնը շուտով փլաւ:

Բայց մինչեւ այդ աղէտին իրականացումը, մօտաւորապէս կէս դար, Եփրատի հովիտը, Կոմմագինէն կամ Եփրատացիք, հեռու մնացին բիւզանդական կայսրութեան սահմանագլուխէն եւ ազատ այն աւերումներէն, որոնց ենթարկուած էին բիւզանդ-արաբական երկարատեւ կռիւներու միջոցին:

Այդ շրջանին բովանդակ Փոքր Հայք, ինչպէս նաեւ Կապադովկիոյ, Կոմմագինէի կամ Եփրատացւոց երկիրին եւ մանաւանդ Դ. Հայքի մէջ հայաբնակութիւնը մեծապէս բազմացաւ՝ անշուշտ իբր հետեւանք բիւզանդական տիրապետութեան հոն ամրացած ըլլալուն:

Մելիտինէ, որ արդէն շատոնց Հայերով լեցուն քաղաք մըն էր, այդ շրջանին բոլորովին հայաբնակ եղաւ, բայց հոն գտնուած Հայերը զերծ չմնացին կրօնական հալածանքներէ եւ դառնացած մնացին Բիւզանդիոնի դէմ, ուր կղերը աղիտալի դեր կը կատարէր կայսրութեան բաղկացուցիչ տարրերուն հետ վարուելու եղանակին համար սխալ առաջնորդ մը ըլլալով:

Մալաթիոյ Հայերն ալ այս սխալ քաղաքականութեան հետեւանքները կրեցին:

Ռոմանոս Արկիւրոպուլոս կայսրը (1028—1034), Զոէին ամուսինը, երբ գահ բարձրացաւ կղերին ի նպաստ շատ մը որոշումներ տրուեցան, ինչպէս նաեւ ամենէն առաջ Մալաթիա պաշտօնավարող «հեստեալ եպիսկոպոսները եւ ականաւոր աստուածաբանները բռնի Կ. Պոլիս կանչուեցան: Թոյլ չտուին որ վիճաբանութիւն կատարուի աւելի ընդարձակ՝ Արեւելքցիներու հետ խօսուած ատեն, այլ երկու բնութեան մասին անոնց դէմ հաւատաքննութեան դատավարութիւն կատարեցին: Բայց որովհետեւ անոնք գրեթէ առանց բացառութեան հաստատակամ կը մնային, իրենց բաժինը եղաւ աքսոր եւ բանտ:

Ապահովաբար բարեբարոյ կայսրը այս պարագային աւելի մղուողն էր քան մղողը: Ինչպէս կը պատմուի, այդ մասամբ իսկապէս զզուելի արարքներուն ժամանակ յայտնի արքունական պաշտօնեաներ դառն արցունքներ կը թափէին: Միայն Օրթոտոքս եկեղեցական պետերն էին որ կը մնային ժայռի պէս անկարեկիր: Բայց կառավարութիւնը ծանր պատասխանատուութեան տակ ինկաւ: Դժբախտ Ասորիները ամբողջ խումբերով գաղթեցին մահմետական երկիրներ: Տէրութիւնը յաջողած էր բոլոր հեստեալներու տածած համակրանքը ոչնչացնել: Սխա՛լ մը, որ ծանր պիտի կշռէր յետոյ» (Գելցեր, նոյն, 270):

Ինչպէս Հ. Գելցեր (էջ 286) շատ յատկանշական կերպով կը մատնանշէ, Է. դարու բոլոր խիստ փորձերը խրատ չէին եղած յոյն եպիսկոպոսներուն, որոնք ոչինչ չէին սորվեր եւ ոչինչ չէին ներեր:

Եւ կամազուրկ եւ մոլեռանդ կայսրեր, ինչպէս Ռոմանոս Դ. Դիոգինէս տարաբախտ կայսրը, չէին դադրեր սպառնալէ բնաջնջելու կայսրութեան ոչ-

*յունադաւան քրիստոնեաները, եւ այս վերպով կը դրդուէին զանոնք պետութեան դէմ։*

*Ահա այս հոգեբանական տրամադրութեամբն է որ կրնայ լուծուիլ ասիական բարբարոսներու յաջողութեան գաղտնիքը բիւզանդական երկիրներու նուաճման ատեն (հմմտ. Գելցեր, էջ 286)։*

## Ժ.

# ԱՐԱԲՆԵՐՈՒ ԵՒ ԲԻՒԶԱՆԴԱՑԻՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԱՍՆԱՒԱՐ ԿԱՐԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ

*Է. դարէն մինչեւ Ժ. դարուն սկիզբը Արաբները եւ Բիւզանդացիք մաքառեցան իրարու հետ, — ինչպէս տեսնուեցաւ — Տայքէն մինչեւ Կիլիկիա, կամ Սեւ Ծովու հարաւ-արեւելեան ծայրէն՝ Պաթումէն մինչեւ Իսկենտերունի ծոց երկարող ոչ-հաստատուն սահմանագիծի մը վրայ, փոփոխական յաջողութիւններով։*

*Արաբ խալիֆայութիւնը եւ բիւզանդական կայսրութիւնը այս գիծին վրայ իրենց մղած խիստ երկարատեւ պայքարին մէջ ամենէն աւելի իրարու դէմ մաքառած են Եփրատի հովիտին այն մասին մէջ, որ Ակն եւ Արաբկիր քաղաքներէն կը սկսի եւ կ'իջնէ Սուրիոյ սահմանները, կեդրոն ունենալով Մալաթիան, որմէ անցնելով էր որ արաբ բանակները կրնային մտնել Փոքր Ասիա , անկէ Կ. Պոլիս առաջանալու նպատակով։*

*Հետեւաբար Մելիտինէ իբրեւ Թատերավայր մշտնջենական պատերազմի մը չարաչար տուժած է եւ տեսանք թէ հակառակ անոր որ ինչպէս բոլոր եփրատամերձ վայրերը ամենահին ժամանակներէ սկսեալ հայ բնակչութիւն ունեցած են, Մալաթիա ալ ունեցած էր ստուար Հայութիւն մը, սակայն արաբ-բիւզանդական մաքառումի այս չորս դարերուն, Մելիտինէ իր հայ բնակիչներէն պարպուած եւ ետքը նորէն լեցուած է, պարագաներու բերմամբ, երբեմն Արաբներուն քաջալերութեամբ եւ երբեմն Բիւզանդացիներու խրախոյսով, սահմանագլուխի պաշտպանութեան համար Հայերու հոն բնակութիւնը երբ նպաստաւոր նկատուած է այս պետութիւններէն։*

*Յայտնի է որ բիւզանդական բանակները մեծ մասամբ վարձկաններէ կը բաղկանային։ Պարտաւորիչ զինուորագրութիւն եւ վճարկութիւն չկար։ Կայսրերը կը հաստատէին նահանգներու մէջ զինուորական գաղութներ մասնաւորապէս սահմանագլուխներու մօտ։ Զինուորները երբեմն Թոշակի տեղ*

կը ստանային հող, զոր իբր ժառանգութիւն կը փոխանցէին իրենց զաւակներուն, բայց այդ ժառանգորդները պարտաւոր էին արեան տուրք վճարել սահմանագլուխները պաշտպանելով։

Հիւսիսային Սուրիան գոտեմարտի գլխաւոր վայրն էր բիւզանդական եւ արաբ կայսրութիւններու համար, որոնք միշտ իրարու ընդհարած են, մանաւանդ Ը. դարէն ետք, երբ Աբբասեան խալիֆայութեան մայրաքաղաքը Պաղտատ փոխադրուեցաւ եւ Սուրիան ծայրագաւառ մը դարձաւ, մինչ մինչեւ այն ատեն Իումմեանք, որոնք Դամասկոսը ունէին իրենց մայրաքաղաքը, ամուր ձեռքով մը կը պաշտպանէին այդ սահմանագլուխը։

Թ. դարէն ետք, երբ խալիֆայութիւնը պառակտեցաւ, Սուրիա դարձեալ կռուախնձոր եղաւ, այս անգամ թէ՛ իսլամ պետութիւններու եւ թէ Բիւզանդիոնի միջեւ։ Այսպէս, երբ 868-ին Ահմէտ Իպն Թուլուն ապստամբեցաւ Եգիպտոսի մէջ եւ ինքզինքն անկախ սուլթան հռչակեց, ցոյց տուաւ ձգտումներ, զոր հին ատեն Եգիպտոսի Փարաւոնները ունեցած էին եւ փորձեց տարածուիլ Ասիոյ մէջ եւ գրաւեց Պաղեստինը եւ Սուրիան եւ հասաւ մինչեւ Եփրատ (868—888) (հմմտ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Ա., էջ 375—6)։

Թուլունի մահէն ետք, իր թոռներուն մէջ երկպառակութիւն իյնալով, Սուրիա եւ նոյնիսկ Եգիպտոս կրկին Աբբասեաններու տիրապետութեան ենթարկուեցան (905)։ Սակայն կարճ տեւեց այս նուաճումը, վասնզի Ֆաթիմեանք, 925-ին, Եգիպտոսի մէջ ապստամբեցան եւ քանի մը յաջորդական նուաճումներէ եւ ապստամբութիւններէ ետք, 968-ին, վերջնականապէս վանեցին Եգիպտոսէն Աբբասեանները եւ առանձին խալիֆայութիւն մը կազմեցին։

Արաբներու այս ներքին պառակտումներէն օգտուելով մասնաւորապէս Նիկեփոր Փոկաս (963—969) եւ Զմշկիկ (969—976) նուաճեցին Կիլիկիան եւ Սուրիան եւ յառաջացան մինչեւ Պաղեստին, սուրէ անցընելով, գերելով եւ վտարելով իսլամ բնակիչները (հմմտ. անդ, Ա., էջ 239—241) եւ անոնց տեղը քրիստոնեաներ բնակեցնելով (հմմտ. անդ, Ա., էջ 376)։

Այս պատերազմներուն թատերավայրերը մասնաւորապէս հիւսիսային Սուրիան եւ Եփրատացիք կամ Կոմմագինէ էին, եւ Մելիտինէ կը ներկայացնէր գլխաւոր ուղին, ուրկէ արաբական բանակները կը մտնէին Փոքր Ասիա։

Ան իրապէս կը ներկայացնէր բիւզանդական կայսրութեան թերեւս ամենէն աւելի վտանգուած սահմանագլուխը։ Հետեւաբար հոն ապահովաբար կային այդ զինուորական գաղութներէն, որոնք հաւանօրէն կը բաղկանային մեծամասնաբար Հայերէ, վասնզի Նիկեփոր Փոկաս կայսրը (963—969) Հայերու նկատմամբ բացառիկ բարեացակամութիւն մը ցոյց տուած է եւ շատ չփացուցած իր հայ զինուորները, հակառակ անոնց անկարգապահութեան համար իր դժգոհութեան։ Այս արաբական ոյժին դէմ արժանաւորապէս կը-

*ռուող կայսեր այս ընթացքին շարժառիթը ուրիշ բան մը չէր, այլ՝ հայ զինուորներու քաջութիւնը եւ ճարպիկութիւնը (տես ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ* 406—7)։

*Այսպէս* «Հայկական թեմին ու ուրիշ հեռաւոր փոքր թեմերու հայ զօրքերը, ճորտ կամ նիզակակից հայ իշխաններու առաջնորդութեամբ, նշանաւոր հանդիսացան Արաբներու դէմ մղուած կռիւներուն մէջ» (*Շլումպերժէ*, *ՆԻԿԵՓՈՐ ՓՈԿԱՍ*, *էջ* 83)։

*Հետեւաբար Նիկեփոր Փոկաս հաստատած էր Եփրատի եւ Տաւրոսի անցքերուն — այդ կենսական ու կարեւոր վայրերուն — մօտ, զանոնք պաշտպանելու համար, մեծ մասամբ Հայերէ բաղկացեալ զինուորական գաղութներ, որոնք թէ՛ զինուոր եւ թէ հողատէր էին։*

*Ուստի Նիկեփոր զանոնք սիրաշահելու եւ առաւելագոյն չափով օգտագործելու համար, իր անձնական փորձառութեամբը նոր օրէնք մը դրաւ հայկական* fundi*-ներու, այսինքն այն հողերուն համար, զորս ծառայութեան մէջ գտնուող հայ վարձկան զինուորներ ստացած էին իրենց թոշակներուն տեղ, որոշ յանձնառութիւններով, զորս սակայն միշտ չկատարեցին* (*հմմտ.* Abbé Albert Vogt. Cambridge Med. Hist. *Դ. հտ. էջ* 76 *եւ ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ*, *էջ* 408)։

*Նոյնպէս Նիկեփորի յաջորդը Յովհաննէս Զմշկիկ* (969—976) *իր բանակին մեծամասնութեան կազմող Հայերը, որոնք բոլոր ճակատներուն վրայ իրենց քաջութեամբ հրաշքներ կը կատարէին, սիրաշահելու համար պարգեւատուութիւններով կը վարձատրէր, այդ զօրականներուն բնակութեան տեղեր եւ հողեր տալով այն երկիրներուն մէջ, զորս Իսլամներէն ետ կ՚առնէր զէնքով անոնց շնորհիւ, եւ կը դատարկացնէր իսլամ բնակիչներէն եւ անոնց տեղերը կու տար իր զինուորներուն։*

*Զմշկիկ կայսրութեան սահմանները հասցուց Տաւրոս, ուր իրեն նեցուկ եւ օգնական հանդիսացան Բիւզանդացիներու սահմանապահ իշխանները, որոնք* Ակրիտ *կը կոչուէին եւ կիսանկախ երկիրները, որոնց ժառանգական իշխանները պատիւներ կը ստանային կայսրէն, անոր ճորտերը կը համարուէին։*

*Բիւզանդիոնի արեւելեան սահմանագլուխին վրայ, այսպէս հաստատուեցան ճորտական հայ իշխանութիւններ եւս, որոնց վրայ յոյս կը դնէր կայսրութիւնը իր սահմանները պաշտպանելու համար։*

*Բիւզանդացիներու պէս Արաբներն ալ պարտաւորուած էին մասնաւոր ուշադրութեան առարկայ ընել Եփրատի եւ Տաւրոսի սահմանագլուխը, որուն համար անոնք ալ նոյնպէս յատուկ եւ առանձնաշնորհեալ վիճակ մը ստեղծած էին հոն, ուր անոնք ալ կազմած էին Բիւզանդացւոց Ակրիտներուն պէս իսլամ էմիրութիւններ՝ իրենց սահմանագլուխին պաշտպանութեան համար։*

*Եադութ* (1179—1229), *հռչակաւոր արաբ աշխարհագիրը, իր նշանա-*

*ւոր գործին՝ ՄՈՒՃԱՄ ԷԼ ՊՈՒԼՏԱՆի մէջ այս սահմանագլուխը կը կոչէ* Էր-Րում, Սաղր-Էրրում, Սաղր Էլ Շամ *կամ Կիլիկիա*: «*Սաղր*» *բառը արաբերէնի մէջ կը նշանակէ թշնամի երկիրին սահմանակից վայր*:

*Եագութ կը գրէ թէ* «Սաղր Էլ Շամ, որ այժմ (*այսինքն ԺԳ. դարուն*) Իպն Լաւոնի երկիր[1] կը կոչուի, կեդրոնական քաղաք (*Գասապա*) չունէր, որովհետեւ այս երկրամասին մէջ քաղաքներէն շատեր իրարու հաւասար են եւ անոնց իւրաքանչիւրը կեդրոնական քաղաք նկատուելու արժանի է ըստ ժողովուրդին հայեցողութեան:»

*Նոյնպէս Եագութ կը գրէ թէ* «Ահմէտ Իպն Եահիա Իպն Ճապիր կը վըկայէ թէ Օմար եւ Օսման խալիֆաներու օրով Սաղր Էլ Շամի շրջանը եւ ապա Անտիոք եւ ուրիշ վայրեր *Աւասըմ* կոչուեցան, որմէ անդին կ'արշաւէին Մահմետականները:»

«Ալեքսանտրէթի եւ Տարսոնի մէջտեղ բերդեր եւ զինարաններ ունէին Յոյները: Հերակլ կայսրը տարաւ եւ ցրուեց այդ բերդերուն բնակչութիւնը: Արշաւող Մահմետականները մարդ չէին գտներ յիշեալ բերդերուն մէջ, բայց դարանակալ Յոյները անոնց մօտերը յանկարծակիի կը բերէին բանակէն հեռացող Մահմետականները: Ձմեռանոցներու (*Էլ Շաւաթի*) եւ ամառանոցներու (*Էս Սաւայէֆ*) վալիները (*կուսակալ*), երբ Պիլատ Էր Րում (*յունական երկիր*) կը մտնէին, պահակազօրքեր կը դնէին իրենց ետին մինչեւ վերադարձ (տես Իպն Խալլիքան ՎԷՖԱՅԱԹ ԷԼ Ա'ԱԵԱՆ, թրգ. Գէորգ Մըսըրլեան, էջ 236—238):

*Գալգաշանտի, իր ՍՈԲՆ ԷԼ Ա'աշայ գործին մէջ* (*գրուած Քս. ի 1412-ին*) Աւասըմ *եւ* Էս Սուղուր (=*Սաղր*) *կոչուած վայրերը կը լուսաբանէ: Անկէ կը հասկցուի թէ անոնք սահմանապահ վայրեր էին*:

*Գալգաշանտի Հալէպի հիւսիսային կողմը գտնուող երկիրները* «հայկական երկիրներ» *կը կոչէ, եւ կը գրէ թէ* «Սիսի Միւթէ Մելլիքին»[2] *յատուկ թղթակցութեան բաժնին մէջ* «Էթ Թաարիֆ» *հետեւեալը կը գրէ.—*

«Այս երկիրներէն մէկ մասը Էլ Աւասըմ կը կոչուի, իսկ մաս մըն ալ ատենօք սահմանապահ վայրեր *Էս Սուղուր* կը կոչուէին: Րումի երկրին սահմանակից ըլլալուն համար այսպէս կոչուեցաւ»:

*Նոյնիմաստ ակնարկութիւն կայ նաեւ* «Թագվիմ Էլ Պիւլտան»*ի մէջ*:

*Իպն Հուգալ հետեւեալը կը գրէ.* «Էլ Աւասըմ շրջանին անունն է եւ ո՛չ թէ մասնաւոր վայրի մը: Կեդրոնական քաղաքն է Անտիոք: Էլ Աւասըմի թըւումը ընելով, Իպն Խուրտաղապան կը ստուարացնէ զայն եւ անոր բաղկացուցիչ մասը կը նկատէ Մենպեճի շրջանը: Թիզինի, Պոլիսի եւ Րուսաֆէթ Հեշամի շրջանը, Ճումայի, ինչպէս նաեւ Շայզարի եւ Աֆամիայի շրջանը,

(1) *Լեւոնի երկիրը Կիլիկիան է*:

(2) *Այս բառը կը նշանակէ արքայի պաշտօն վարող. ըստ Գէորգ Մսրլեանի արաբ մատենագիրներ սովորաբար այս տիտղոսը կու տային Կիլիկիոյ Հայ Թագաւորներուն*:

Մաարրէթ էն Նոոմանի թեմը (*իգլիմ*), Սուրանի թեմը, Թէլլ Պաշիրի եւ Քաֆր Թապի թեմը, Սելեմիյիէի թեմը, Ճուսիյէի թեմը, Լիբանանի թեմը, մինչեւ որ կը հասնի Գասթալի թեմին՝ Հոմսի եւ Դամասկոսի մէջտեղ»:

*Ըստ Գալգաշանտիի այս շրջանին առաջին անգամ Հարուն էլ Րաշիտ տուած է այս անունը, երբ Հիճրէթի 170–ին (Քս.ի 786–7) շինեց հոն Տարսոն քաղաքը*: «Կ'երեւի թէ այս շրջանը «էլ Աւասըմ» (պահպանողներ) կոչուեցաւ, որովհետեւ իրմէ անդին գտնուող իսլամական երկիրները թշնամիէն կը պահպանէր, տրուած ըլլալով որ ան սահմանակից էր անհաւատներու երկիրին, կ'իյնար թշնամիին ճիշդ դիմացը, եւ կը պահպանուէր մահմետական բանակներով»:

*Գալգաշանտի շարունակելով կը գրէ թէ* «իսկ «էս Սուղուր» (սահմանապահ վայրեր) յոգնակին է Սաղր բառին: «էլ Միւշթէրէք» հետեւեալը կը գրէ. «Թշնամիին հանդիպակաց ամէն վայր այս անունը կը կրէ: Սիւրիոյ սահմանապահ վայրերն էին Ազվան, Տարսոն եւայլն, որոնք գրաւուեցան Հայերու կողմէ»:

*Համայի տէրը Սուլթան Իմամետտին իր պատմութեան մէջ կը յիշէ, թէ Հիճ.ի 170 թուականին Հարուն էլ Րաշիտ սահմանապահ վայրերը ամբողջութեամբ անջատեց Միջագետքէ ու Գընննասրինէ եւ մէկ շրջանակի վերածելով «էլ Աւասըմ» անուանեց զայն»:*

*Գալգաշանտիի տեսութեամբ* «պէտք է, ուրեմն, որ էս Սուղուր եւ էլ Աւասըմ բառերը հոմանիշ անուններ եղած ըլլան: Այս տեսութեան կը համապատասխանէ էլ Մագարր էշ Շինապի պին Ֆատլալլահի խօսքը, էթ Թաարիֆի մէջ: Այս երկիրները ամբողջութեամբ հետեւեալ կերպով սահմանագրծուած են «էթ Թաարիֆ»ի մէջ.— Հարաւէն եւ դէպի Միջօրէական հակող կողմէն՝ Պաղրաս եւ անոր յարակից երկիրներ, Արեւելքէն՝ Տերպենտաթի լեռներ, հիւսիսէն Իպն Գարամանի երկիրներ եւ արեւմուտքէն մինչեւ էլ Ալայա եւ Անթալիա հասնող յունական եզերքները»:

*Այս բացատրութիւններէն որոշ կ'երեւի թէ Արաբները ինչպիսի՛ տարապայման ընդարձակութիւն մը կու տային գրեթէ իրարու հոմանիշ «էս Սուղուր» եւ «էլ Աւասըմ» բառերով սահմանուած երկիրին, զոր բիւզանդական պետութեան դէմ իրենք պատուար մը դարձուցած էին:*

*Գալգաշանտի կ'ըսէ թէ «այս երկիրները կը պարունակեն քանի մը նահանգապետութիւններ, որոնց մէկ մասը յիշատակուած է «էթ Թաարիֆ»ի մէջ, իսկ մէկ մասը ետքէն կազմուած է: Կը բաժնուին երկու կարգի: Առաջին կարգը կը կազմեն մեծ վիճակներ, որոնք նոյնպէս երկու տեսակի կը բաժնուին»:*

*Լեռնայինը կը բաղկանար երեք վիճակներէ, որոնք էին ըստ Գալգաշանտիի.*

1.— *ՄԱԼԱԹԻԱ, որուն համար կը գրէ թէ Համայի տէրը գրած է թէ* «աւելի յարմար է Պիլատ էլ Րումի (*Հոռոմ երկիր*) նկատել, թէեւ ոմանք Մի–

ջագետեան սահմանապահ վայրերու մաս կը նկատեն»։

2·— *ՏԱՐԱՆՏԱՅԻ ՎԻՃԱԿ (Տարենտէ)*։

3·— *ՏԱՊՐԱՔ ԿԱՄ ՏԱՎՐԱՔԻ ՎԻՃԱԿ*, *որ ըստ Գալգաշանտիի «մեծ քաղաք մըն է Հալէպի հիւսիս-արեւմտեան կողմը՝ մօտաւորապէս 10 իջեւան հեռաւորութեան վրայ։ Ունի այգեստաններ եւ ծառեր։ Գրեթէ 12 օրուան հեռաւորութիւն ունի Հալէպէն»։ Յայտնի չէ թէ արդի ո՞ր վայրին կը համապատասխանէ։*

*Քիչ մը աւելի ծանրացայ արաբ աշխարհագիրներու եւ պատմագիրներու տեղեկութեանց վրայ, վասնզի անոնք կը պարզեն կարգ մը իրողութիւններ, որոնք Մալաթիոյ համար յատուկ կարեւորութիւն ունին։*

*Ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիա մաս կը համարուէր սահմանապահ երկիրներու, սակայն բիւզանդական հող էր եւ Արաբները զայն գրաւելով կըցած էին իրենց հողերուն։ Եւ ինչպէս որ Բիւզանդացիք իրենց արեւմտեան սահմանին վրայ հաստատած էին զինուորական գաղութներ, սահմանապահ իշխաններ* (Ակրիտ) *եւ ճորտական իշխանութիւններ, նոյնպէս ալ Արաբները իրենց «էս Սուղուր» եւ «էլ Աւասըմ» կոչած երկիրներու մէջ հաստատած էին աւատապետական կարգերով ճորտ իշխանութիւններ։*

*Այսոնցմէ մէկն էր Մալաթիոյ էմիրութիւնը, որ ինչպէս տեսանք երկերեսանի դեր մը կատարեց, երբեմն բիւզանդական կայսրերու զօրութեան առջեւ խոնարհելով եւ անոնց գերիշխանութիւնը ընդունելով եւ երբեմն ալ կայսրութեան թշնամիներու հետ միանալով եւ անոր դէմ կռուելով։*

ԺԱ·

# ԱՍԻԱԿԱՆ ԲԱՐԲԱՐՈՍՆԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՇՈՒՐՋ

*Բարբարոսներու տեղաշարժը*[1] *դէպի արեւմուտք Մերձաւոր Արեւելքի պատմութեան համար եղաւ անկիւնադարձ մը, վասնզի սկսաւ նոր շրջան մը, ուր փոփոխութեան ենթարկուեցան շատ բաներ, ինչպէս բնակչութեան ցեղային նկարագիրը, զանազան կրօնքներու հետեւողներու համեմատութիւնը, պետական կազմակերպութիւնները, քաղաքակրթական եւ մշակութային*

---

(1) *Այս մասին ընդարձակ տեղեկութիւններ ուզողներուն կը յանձնարարուի կարդալ ուրիշ շատ մը հեղինակներու երկասիրութեանց կարգին, այս տողերը գրողին մասնաւորապէս* Պատմութիւն Հայ Կեսարիոյ *գործին (տպ. 1936) 480—560 էջերը,* Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց *(տպ. 1952) 188—240 էջերը,* Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմանները *(տպ. 1950) էջ 257—324 եւ* Պատմութիւն Հայ Գաղթականութեան *(Բ. հատոր, տպ. 1955) էջ 45-67, 230—244*։

կեանքը եւայլն ։

Ժողովուրդներ կը տեղափոխուէին մէկ տեղէն միւսը եւ մինչեւ այն ատեն անյայտ, թափառիկ եւ ոեւէ քաղաքակրթութիւն չունեցող ցեղախումբեր, հեռաւոր վայրերէ, ինչպէս Ծայրագոյն Արեւելքէն եւ Կեդրոնական Ասիոյ տափաստաններէն կու գան Մերձաւոր Արեւելք եւ հոն հաստատուելով նոր պատմութիւն մը կը կերտեն, քանդելով Մերձաւոր Ասիոյ ազգերուն վաղեմի քաղաքակրթութիւնը, որ դարերու փառաւոր անցեալ մը ունէր իր ետին ։

Հայերը — Մերձաւոր Ասիոյ ազգերէն մէկը — չէին կրնար այս բարբարոս ժողովուրդներու աղէտաբեր տեղափոխութիւններուն եւ աւերիչ ու քանդող արշաւանքներուն հետեւանքները չզգալ, քանի որ Հայաստան կը գտնուէր այդ վաչկատուն եւ վայրենի ժողովուրդներուն դէպի Միջերկրական ծով դիմող արշաւուղիին վրայ ։

Ասպատակող հրոսներու այս արշաւանքներուն հետեւանքներէն գլխաւորներէն մէկը եղաւ այն, որ Հայերը, որոնք արդէն Արշակունեաց կործանումէն ետք, չարունակ դէպի արեւմուտք բիւզանդական երկիրներ ապաստանած էին, աւելի խոշոր թիւերով անցան Եփրատը եւ ստուար խումբերով հաստատուեցան Փոքր Հայք, Կոմմագինէ կամ Եփրատացիք, հիւսիսային Սիւրիա, Կիլիկիա եւ Փոքր Ասիոյ ամէն կողմերը, մինչեւ Եգէական եւ Մարմարա[1] ։

Մալաթիոյ գաւառը, որ Եփրատի արեւմուտքը կը գտնուէր, ասիական բարբարոսներու Հայաստանի սահմաններուն վրայ երեւնալէն հազիւ 25—30 տարի վերջը, ենթարկուեցաւ այդ արշաւանքներուն, երբ Հայաստանէն փախչող Հայերէն հոն ապաստանողներով հոծ Հայութիւն մը ունէր եւ մաս կը կազմէր Փոքր Հայքի Գ. Հայք կոչուած Նահանգին ։

Այս շրջանակը ոտնակոխ ըրաւ նոյնիսկ Տուղրիլ Բէկ, 1054—1060-ին, երբ Շիրակ, Բասեն, Տայք, Հաշտեանք, Խաղտիք, Բարձր Հայք, Դ. Հայք գաւառները ընդարձակագոյն տարածութեան վրայ իր յարձակման առարկայ ըրաւ (Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 67 եւ նոյնին՝ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 33-43) ։

Սելճուկները 1057-ին, Իսահակ Ա. Կայսեր ատեն (1057—1059) հասան Եփրատի եզերքը, Մելիտինէի արեւելեան կողմը, շնորհիւ Բիւզանդացիներու ապիկարութեան եւ անհեռատես քաղաքականութեան ։

Յաջորդ տարին (1058), Ապու Դինար անուն էմիրին հրամանատարութեան տակ 3000 հոգիէ բաղկացեալ Թրքական բանակ մը, առաջնորդուած Լիպարիտի որդի Իւանէ Ուռպելեանէ, որ Բիւզանդիոնի կողմէ Հաշտենից եւ

(1) Այս եւ յաջորդ Մոնկոլ եւ Խօզպէք-Թաթար արշաւանքներու հետեւանք հայ գաղութներու վրայ ամբողջական գաղափար մը կու տայ Արշակ Ալպօյաճեանի Պատմութիւն Հայ Գաղթականութեան Բ. հատորը։

*Արշամունեաց գաւառներուն իշխան կարգուած էր* (*ԼԱՍՏ*., *էջ* 82—4, *ՈՒՌ*. *էջ* 155, *ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ*, *էջ* 112. *հմմտ*. *ՊԱՏ*. *ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ*, *էջ* 254—5, *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ*, *Բ*., *էջ* 43), *առաջին անգամ անգամ Եփրատը եւ Հանձիթի մէջ ձմեռեց իր զինուորներով* (*ՈՒՌ*., *էջ* 155 *եւ ՍՄԲԱՏ*, *էջ* 72)՝ *անլուր չարիքներ գործելով իր* 5–6 *ամսուան բնակութեան միջոցին*, *ինչպէս կը նկարագրէ ժամանակակից հայ պատմագիրը Արիստակէս Լաստիվերտցի* (*էջ* 89—95)։

*Այս արշաւի միջոցին է որ Մալաթիա գրաւուեցաւ բարբարոսներէն*։ *Քաղաքին բնակիչներէն մէկ կարեւոր մասը խոյս կու տայ եւ կ'ապաստանի շրջակայ լեռները*, *ուր անօթութենէ եւ ցուրտէն կը մեռնին* (E. I., *էջ* 210)։

*Սելճուկները տասը օր Մալաթիան կը կողոպտեն եւ ապա կը հրկիզեն եւ շրջակայքը մինչեւ մէկ օրուան ճամբայ հեռաւորութիւն*, *շրջանակի կ'աւերեն* (*նոյն*)։

*Արիստակէս Լաստիվերտացի*, *մեր ողբերգու պատմիչը*, *Մելիտինէի գրաւումը բարբարոսներէն նկարագրած է իր պատմութեան մէջ* (*էջ* 92–3).

«Հասին, *կ'ըսէ*, ի վերայ նորա գիշերաւ եւ ճանզի զուգդ մի հեծելազօր ի Հոռոմաց կայր պահապան քաղաքին, ի հասանել հինին, յանկարծակի գրոհ տուեալ արտաքս ելին, եւ ի պատահելն իւրեանց բազում կոտորածս առնէին յերկոցունց կողմանց եւ ի լենել պատերազմին, քաղաքն որքան ելանել կարաց, նա զերծաւ եւ մարտիկ արքն, որ մնացին, այն զհետ փախստականին չոգան. իսկ զոր ի քաղաքին ըմբռնեցին, զամենեսեան սրակոտոր արարին, կացեալ ի քաղաքին աւուրս երկոտասան, եւ ի հիմանէ բրեալ ապականեցին զնա եւ զդաստակերտս նորա շուրջանակի»։

*Այսպէս*, «*կործանում*»*ի կը մատնուի*, *ինչպէս կ'ըսէ Լաստավերտացի* (*էջ* 89), *Մելիտինէ* «*չահաստան քաղաքը*», *ինչպէս կը կոչէ զայն պատմագիրը* (*նոյն*, *էջ* 89)։

*Արդարեւ Մելիտինէ*, *հակառակ իր փոտնգաւոր դիրքին եւ այն դըժբախտութեան*, *որ իր դիրքին պատճառով կռուախնձոր եղած էր Բիւզանդացիներու եւ Արաբներու միջեւ*, *ինչպէս կ'երեւի*, *շատ բարգաւաճ վիճակ մը ունեցած է*, *վասնզի Մատթէոս Ուռհայեցի* (*էջ* 153) *զայն կը կոչէ* «*հռչակաւոր քաղաք*» *եւ կը հաւաստէ թէ* «անչափ է հարստութիւն ոսկւոյ եւ արծաթոյ՝ ականց եւ մարգարտաց եւ դիպակաց»։

*Մեր շատ հաւատացեալ պատմագիրը Արիստակէս Լաստիվերտացի այս առթիւ կարծես թէ քաղաքի այս հարստութիւնը եւ գուցէ անոր հետեւանք անառակ կեանքը դատապարտելով*, «զաւազան տանջանաց եւ ոչ խրատու առ ի ձեռն Աստուած զԹուրքաստան եւ զտունն Պարսից եւ նոքօք դատեաց զմեզ ըստ իրաւի իւրոց դատաստանացն, զի խրատու զաւազանն՝ հայրական է, իսկ տանջանացն՝ դատաւորի», *կ'ըսէ եւ երկար բացատրութիւններ կու տայ Ս. Գրոց զանազան դրուագներով*։

Եւ Մալաթիոյ աղէտին նկարագրութիւնը տալէն ետք սա տողերով կը փակէ անոր պատմութիւնը․ «Եւ այս եղեւ ամբարտաւանութեան նոցա հատուցումն յանկաշառ եւ յարդարադատ Տեառնէ, որ հատուցանէ իւրաքանչիւր զարժանն ըստ գործոց իւրեանց» (էջ 93)։

Այսպէս եղածը կը նկատէ աստուածային պատիժ մը Մալաթիոյ բնակչութեան ամբարտաւանութեան։

Այս պատուհասէն ետք Տուղրիլ կը դառնայ 1058 Հոկտեմբերին Պարսկաստան, Հարաւային Հայաստանի եւ Վասպուրականի ճամբով, իրեն հետ ունենալով Մելիտինէ քաղաքէն վերցուած աւարը եւ գերիները։

Անոնք կ՚անցնին Տարօնէն եւ կ՚առաջանան Սասուն (ԼԱՍՏ․, էջ 96 եւ ՈՒՌՀ․, էջ 155—6)։ Այս ճամբուն վրայ ցուրտէն կը մեռնին 3000 հոգի Սելճուկներէն, իսկ մնացեալները կը ջարդուին Հայերէն, որոնք բաւական զօրաւոր ոյժ մը կը ներկայացնէին եւ կը պահէին իրենց անկախ իշխանութիւնը։ Իրենց իշխանը Թոռնիկ, որդի Մուշեղի, իր լեռնականներուն գլուխը անցած անակնկալ յարձակումով մը կը կոտորէ ասպատակները եւ կ՚ազատէ Մելիտինէէն Սելճուկներու վերցուցած գերիները (ԼԱՍՏ․, էջ 24, ՈՒՌՀ․, էջ 155–6, ՍՄԲԱՏ, էջ 72, ՍԱՄՈՒԷԼ, էջ 114, ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 395, Տոմաշէկ, ՍԱՍՈՒՆ, էջ 29, Յ․ Մանանդեան, ՔՆՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, Գ․, էջ 51–2, Laurent, **Byzance et les Turcs**, էջ 40) եւ անոնց ձեռքէն կը խլէ աւարը։

Այս յարձակման ատեն Սասունցի Հայերուն կ՚օգնեն Մալաթիոյ բնակիչներէն անոնք որոնք գերի կը տարուէին, ինչպէս նաեւ փախստականները[1] (Michel le Syrien, Գ․, 158), որոնք ցուրտին վարժ ըլլալով կրցած էին տոկալ եւ ապրիլ (հմմտ․ Տոմաշէկ, ՍԱՍՈՒՆ, էջ 41—2)։

Կոստանդին Ժ․ Տուկաս (1059—1067) վերաշինել կու տայ հաւանաբար 1060—1061-ին, Մելիտինէի զոյգ պարիսպները եւ խրամը, զորս բարբարոսները քանդած էին (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 396)։

Երբ այս վերաշինութեան վերաբերեալ հրովարտակը հրատարակուեցաւ, Պոլիս գտնուող Մալաթիացիներէն ոմանք իրենց ծննդավայրը դարձան եւ շնորհիւ անոնց բազմաթիւ գործաւորներ եւ ճարտարապետներ Փոքր Ասիայէն եւ Անտիոքէն Մալաթիա հրաւիրուեցան։ Կարճ ատենուան մէջ — որովհետեւ քաղաքը միշտ յարձակման սպառնալիքին ենթակայ էր — ամրութիւնները վերանորոգուեցան ( Michel le Syrien Գ․ 165)։ Այդ ատեն բիւզանդացի Քաթարան Քրինոտիս կնոջը եւ զաւակներուն հետ սպաննուեցաւ, եւ քաղաքը

---

(1) Michel le Syrien-ի սխալ ժամանակագրութեան համաձայն Թոռնիկի այս դիւցազնական արարքը կատարուած է Կոստանդին Թ․ կայսեր ատեն կամ անոր մահուան տարին, այսինքն 1050—1051ին կամ 1054—1055ին, ինչ որ սխալ է։

Վերապրող գերիներէն մէկը՝ Ասորի Յովսէփ աբեղայ երեք ողբ գրած է այս դէպքերուն վրայ։ Նոյնպէս Յովհաննա Ժ․ պար Շուշան Պատրիարք չորս ողբ յօրինած է Մալաթիոյ աւերման վրայ (E. I., Գ. հտ․, էջ 210)։

«այլեւս խաղաղութիւն չվայելեց» (Michel le Syrien, *նոյն*)։

*Տուղրիլի յաջորդը աՀարկու Ալփասլան* (1063–1073) *Հայաստանի տիրելէ ետք մտաւ Միջագետք, եւ գրաւեց Սեւերեկը, Նիզիպը, Եդեսիան, Հալէպը, Այնթապը եւ առաջացաւ մինչեւ Քեսուն՝ Մալաթիոյ մօտ* (*նոյն*, 168. *Համմտ*. *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ*, *Բ*., *էջ* 48—9)։

*Ալփասլան* 1065 *Օգոստոս* 15-*ին Անին՝ Բագրատունիներու փառաւոր մայրաքաղաքը գրաւելէ ետք, Հայաստանի եւ անոր արեւմտեան սաՀմանագլուխին վրայ եփրատամերձ գաւառներու մէջ կը Հաստատէ իր Հրոսներէն անոնց ընտանիքները, որոնք կը Հետեւէին իրեն բանակին իրենց կառք-բնակարաններուն մէջ տեղաւորուած եւ իրենց բովանդակ ստացուածքը կազմող չատ նախնական տնական գոյքերը իրենց Հետ ունենալով* (*ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ*, *Բ*., 49)։

*Այսպէս Հայաստանի բնակչութեան ցեղագրական նկարագիրը փոխուեցաւ եւ Սելճուկները՝ այդ ռազմական դիրքէն չարունակեցին Արաբներու պայքարը՝ անոնց պէս Եփրատէն անդին արչաւելով կողոպուտի եւ աւարի Համար*։

*Թրքական այս տեւական արչաւանքները, որոնք տեղի կ'ունենային մասնաւորապէս Մալաթիոյ չուրջը* (*ՅՈՎՀ*. *ԱԿԻՒԼԻՑԷՍ ԿԻՒՐԱՊԱՂԱՏ*, 660) *բնաւ դիմադրութեան չՀանդիպեցան, որովՀետեւ բիւզանդական զինուորները, որոնք բանակած էին Մալաթիոյ չրջակայքը, զրկուած էին Թոչակէ եւ պարէնէ եւ ասոր Համար իբրեւ դժգոՀութեան ցոյց, մերժեցին պաՀակազօրքին Հետ Եփրատը անցնիլ Թչնամիին դէմ քալելու*։ *Անօգնական մնացած պաՀակազօրքը յաղթուեցաւ ու փախաւ եւ բարբարոսները Եփրատը անցան, որպէսզի Մալաթիա մտնեն*։

*Թուրքերը չուզեցին քաղաքը պաչարելով ժամանակ կորսնցնել եւ ուղղակի առաջացան դէպի Կապադովկիա՝ Մելիտինէի բիւզանդական բանակը ջարդելէ ետք, աւերելով, այրելով եւ յափչտակելով իրենց ճամբուն վրայ գտնուած վայրերը եւ* «բազում գաւառաց տիրեալ» (*ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ*, *էջ* 167) *Հասան Կեսարիա, ուր կամ անոր չրջակայքը Հաւանօրէն այդ միջոցին իբր բիւզանդական ճորտ կ'իչխէր Գագիկ Բագրատունի*։

*Ալփասլան քաղաքը կը գրաւէ* 1067-*ին յարձակմամբ եւ կ'աւերէ* (*ԱՏՏԱԼԻԱՏԷՍ*, 94, *ԱԿԻՒԼԻՑԷՍ*, 661, Lebeau *ԺԴ*., 460, Gibbon, *գլ*. *ԾԷ*., *Ալպոյաճեան ՊԱՏՄ*. *ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ*, *էջ* 448—9)։

*Բիւզանդական բանակները Հաւանօրէն ոչ մէկ օգնութիւն կ'ընծայեն Հայ Թագաւորին, պաչտպանելու Համար պատմական այդ մեծ քաղաքը, որուն Համար կ'ըսուի Թէ առանց դիմադրութեան յանձնուած է Ալփասլանի* (*ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ*, *էջ* 440)։

*Մալաթիոյ եւ Կեսարիոյ տիրապետութենէն ետք Թրքական պզտիկ Հրոսակախումբեր Թափանցեցին մինչեւ Կիլիկիա եւ Տաւրոս եւ աւերումի մատնել սկսան այս չրջանակները եւս* (*ԱՏՏԱԼԻԱՏԷՍ*, *էջ* 135)։

*Այսպէս իրարու կը յաջորդէին սելճուկ արշաւանքներ, որոնք տակնուվրայ կ'ընէին Փոքր Ասիան եւ առիթ կու տային որ երեւան գան կարգ մը իշխանութիւններ, որոնց գլուխ կը կանգնէին յաճախ Սելճուկներու գործակից յելուզակներ եւ հրոսապետներ։*

*Ասոնցմէ մէկն էր Ահմէտ Տայլու, զոր իսլամ պատմագիրներ Մելիտինէի Օմար էմիրէն (Թ. դար) սերած կը նկատեն։*

*Այս հրոսապետը, որ հաւանօրէն հայ ծագում ունէր,* 1058*-ին Աբբասեան ամիրապետէն թոյլտուութիւն ստացած էր Ռումի երկիրներուն մէջ, այսինքն Անատոլուի կողմերը «Սրբազան պատերազմ» մղելու եւ իր նուաճած հողերուն իշխանութիւնը իրեն սեպհականելու։*

*Տայլու նոյն տարին* (1058) *Ապու Դինարի հետ կը թուի մասնակցած ըլլալ Տուղրիլի արշաւանքին եւ Մալաթիոյ պաշարման ու կործանման (տես* ՊԱՏՄ. ԵԻԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, *էջ* 190 *եւ վերջը)։ Տայլու նաեւ գործօն մասնակցութիւն ունեցած է Սելճուկեանց դէպի Փոքր Ասիա կատարած արշաւանքներու մէջ եւ ծանօթացած էր երկիրին վիճակին եւ ճամբաներուն։ Յետոյ եղած Ալփասլանի* հեճպը *(սեննեկապետ) եւ մեծապէս օգտակար եղած էր իր ունեցած ծանօթութիւններով եւ տուած խորհուրդներով։ Ասոր համար Ալփասլան ինքն ալ հաստատած է Աբբասեան ամիրապետին շնորհքը եւ տուած՝ Երզընկայէն դէպի արեւմուտք մինչեւ Ալիսի բերանը տարածուած հողերը, որոնք տակաւին գրաւուած չէին, բայց ծրագրուած էր գրաւել։*

*Արդարեւ, այդ հրամանը ստացած տարին* (1071) *Տայլու գրաւեց Նիքսարը, զոր իրեն նստոց ըրաւ, եւ ապա գրաւեց յաջորդաբար Ամասիան, Թոգատը, Մարզուանը եւ Զորումը եւ* 1073—4*-ին Սեբաստիան ու Կեսարիան (Ալպոյաճեան,* ՊԱՏՄ. ԵԻԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, *էջ* 191)։

*Տայլու միակը չէր Անատոլուի մէջ այս տեսակ իշխանութեան մը տիրացողներուն։*

*Իրեն հետ ժամանակակից եւ թերեւս զինակից՝ ուրիշ բախտախնդիրներ ալ կային իր հողերուն շուրջը, ինչպէս Աւշէն անուն Ամիրան, որ Սեւ լերան կողմերը յարձակում, կոտորած եւ աւարառութիւն կը կատարէր, եւ Կիւմիւշթէքին ամիրան, որ աւերած էր Հիւսնի Մանսուրի երկիրը եւ տեղւոյն իշխանները սպաննած (Գերպ. Անդրէաս Ալեքսանեան,* ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍԵԲԱՍՏԻՈՅ, *էջ* 170)։

*Հաւանօրէն ուրիշ էմիրներ ալ գտնուած են, որոնք առիթէ օգտուելով մեծ ու պզտիկ տարածութեամբ հողերու վրայ բռնակալած էին եւ բիւզանդական կայսրութեան սահմանները կը կողոպտէին։*

*Ալփասլանի բանակներուն եւ անոր յառաջապահ, օգնական ու գործակից այս էմիրներու դէմ կանգնելու եւ անոնց յառաջխաղացութիւնները կասեցնելու համար Ռոմանոս Դ. Դիոգինէս (Տիոժէն) կայսրը* (1067—1071) 1068*-ին գնաց Թուրքերուն դէմ, որոնք տարածուած էին Փոքր Ասիոյ բոլոր կողմերը, վասնզի Ալփասլան մինչեւ Փռիւգիա առաջանալէ ետք, պատերազ-*

*մի շարունակութիւնը յանձնած էր ամիրաներու, որոնց զօրքերը կողոպուտով յղփացած եւ անկարգապահութեամբ քայքայուած, տկարացան Ռոմանոսի բանակին առջեւ եւ Եփրատէն անդին վանուեցան (Կոմմագինացի, ՓԻԼԱՐՏՈՍ ՀԱՅԸ, էջ 6 եւ հմմտ.* Gibbon, VI, *էջ* 247)։

*Ռոմանոս իր այս առաջին արշաւին մէջ իր ձեռք բերած յաջողութիւններու կարգին, կը յիշուի թէ Կոկիսոնէն (այսօր Կէօքսիւ) Մալաթիա ղրկած է զօրավար մը*[1]*՝ պաշտպանելու համար սահմանագլուխը Աւշէն* (Atwaihios) *Թուրքին դէմ, զոր* «ամիրայն Պարսից» *կը կոչէ Ուռհայեցի* (223) *եւ կը պատմէ թէ ան* «զօրաժողով արար... եւ յապականութիւն դարձոյց զբազում գաւառս»․ *Նոյն պատմագիրը կ'ըսէ թէ* «բազում սուգ եւ խաւար տարածեցաւ ի վերայ երկրի ի ձեռաց անօրինին այսմիկ»։

*Աւշէնի դէմ Ռոմանոս Դ. Տիոժէն կայսեր ղրկած զօրավարը չհամարձակեցաւ Մալաթիայէն դուրս ելլել. այնպէս որ Աւշէն կրցաւ հանդարտօրէն յառաջանալ բիւզանդական հողերու մէջ (ԱԿԻՒԼԻՑԷՍ, Բ.*, 671, Weil *Գ.* 112) *եւ ըստ Ուռհայեցիի* (223) *մինչեւ Սեւ լեռ կամ Ամանոս, այսինքն մինչեւ Միջերկրական հասնիլ*։

*Աւշէնի ասպատակութեան ժամանակակից* «ամիրա մի մեծ եւ հզօր ի դրանէն Ալփասլան Սուլթանին, որ էր հենգ նորա եւ անուն նորա Գոմէշ տիկին (=*Գամշտիկան կամ Կիւմիւշթէքին*) եւ յարուցեալ գայր մեծաւ ահարկութեամբ եւ ախոյեան զօրօք հասանէր ի վերայ քրիստոնէից եւ վտակս արեան յարուցանէր ի յազգէ հաւատացելոց եւ բազում խոցուածով գայրացեալ... արար սաստիկ կոտորածս...» (*ՈՒՌՀ., էջ* 224—5) *Դ. Հայքի մէջ, ինչպէս Եղեսիոյ եւ Նիսիպի շրջակայքը, եւ անցաւ Եփրատը ու յարձակեցաւ Հիւսնի Մանսուրի (կամ Ատըեամանի) վրայ՝ մեծ չարիքներ գործելով (ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ* 225)։

*Կիւմիւշթէքին* «մեծ յաղթութեամբ եւ բազում գերութեամբ եւ անհամար աւարաւ խաղաց եւ գնաց յաշխարհն Պարսից» (*ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ* 227)։

*Այսպէս, Մելիտինէ եւ անոր մօտաւոր գաւառները կ'ենթարկուէին սելճուկ հրոսներու աւերին*։

*Ռոմանոս Դ. կայսրը, այս տագնապալի վիճակին հանդէպ կայսրութեան պաշտպանութեան համար միջոցներ ձեռք կ'առնէ եւ զինուորական վարչութիւնը կը վերակազմէ*։

*Ի մէջ այլոց այն ատեն է որ Փիլարտոս յունադաւան հայ զօրավարին պաշտօն կու տայ պաշտպանելու Ռոմանուպոլիսէն (=Բալու) մինչեւ Մելիտինէ եւ Անտիոք երկարող ռազմական կարեւոր գիծը։ Դժբախտաբար պաշտօնակալներու երկարատեւ յոռի վարչութիւնը քայքայած էր բանակներու*

---

(1) *Ըստ* Gfrörer-*ի այս զօրավարը պուլկար Ալիւսիանոսն է* (E. I. *Գ. էջ* 211), *որ չեմ գիտեր թէ կապ մը ունի՞ Սամուէլ Զարի եղբօր Աշարոնի որդիին հետ, որ 1040-ին միացաւ պուլկար ապստամբներուն եւ սկզբնական յաջողութենէ մը ետք ընկճուեցաւ (տես* Պատմութիւն Հայ Գաղթականութեան, *Բ. հատոր, էջ* 562)։

կարգապահութիւնը, դէչ մատակարարութիւնը դատարկացուցած էր պետութեան գանձարանը, եւ դժուար եւ անապահով դարձուցած էր երկիրին պաշտպանութիւնը։

Հակառակ այս յոռի պայմաններուն Ռոմանոս 1068–ին յաջողեցաւ լաւ պատժել թէ՛ Հալէպի միւսիւլմանները (ՈՒՌ․, էջ 231) եւ թէ՛ խիստ հարուած մը տալ եւ ետ մղել սելճուկ աւազակային գունդերը, որոնք կը կողոպտէին Պոնտոսի շրջակայքը (Գելցեր, էջ 301․ ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 1291)։

Թուրք դիւրաշարժ ձիաւորներուն հանդէպ կ՚անճրկէին ծանր սպառազինութեամբ զրահուած դանդաղաշարժ բիւզանդական զօրքերը։ Ասով հանդերձ կայսրը վերջապէս կրցաւ բարբարոս հրոսակները Եփրատէն հեռու քշել, սակայն երբ ուզեց յանդուգն արշաւանքով մը եւ նախկին Դ․ Հայքի ճամբով անակնկալօրէն գրաւել Խլաթը — Վանի լիճին ամրոցը — լսեց որ իր զօրապետը՝ Փիլարտոս Կապադովկիոյ մէջ ջարդ կրած էր (Գելցեր, նոյն, էջ 301)։

1069–ին վայրենի հրոսակները խուժեցին Եփրատի արեւմուտքը եւ մինչեւ Իկոնիա առաջացան (նոյն, էջ 301 եւ ՈՒՌՀ․, էջ 232) եւ մեծ կողոպուտով ետ դարձան։

Ռոմանոս Դ․, որ յաջող սկզբնաւորութիւն մը ըրած էր՝ բարբարոսներու դէմ յաղթանակներ տանելով, թերեւս անձամբ կռիւը շարունակելով պիտի կարենար աւելի մեծ արդիւնքներ ձեռք բերել, 1069–ին ստիպուեցաւ դառնալ մայրաքաղաք, վասնզի իր կինը Եւդոքսիա, որուն կը պարտէր իր գահը, զինքը իր մօտը ունենալու համար Պոլիս կանչած էր (ԱԶԳ․, էջ 1291, ՈՒՌ․ էջ 231—2)։

Իր բացակայութեան ասիական բանակին ընդհանուր հրամանատար նշանակուեցաւ Մանուէլ Կոմնէն — Իսահակ կայսեր (1057—1059) եղբօրորդին — որ Սելճուկներէն մեծ ջարդ մը կրեց եւ գերի ինկաւ (Գելցեր, էջ 302)։

Թերեւս այս պարագային է որ 1069–ին Փիլարտոս կոչուած է ասիական բանակի հրամանատարութեան եւ ինչպէս Ակիւլիցէս (681), Աննա Կոմնէն (205), Զոնարաս (Դ․ 209) կը վկայեն, Մեծ Դոմեստիկոսի աստիճանը ստացած է Ռոմանոս Դ․էն (Տոմաշէկ, ՍԱՍՈՒՆ, էջ 30)։

Ալփասլան Հայաստանի եւ Միջագետքի մէջ կը շարունակէ իր գրաւումները (Մանազկերտ, Ամիթ եւ այլն) եւ միշտ յարձակումներ կը գործէ բիւզանդական կայսրութեան վրայ։ Ասոնք Ռոմանոսը կը պարտաւորեն որ հաւաքէ իր ոյժերը եւ պատերազմի պատրաստուի (ԼԱՍՏ․, էջ 112—3, ՈՒՌ․, 237)։ Ռոմանոս կը հաւաքէ 100·000 զինուոր (Գելցեր, էջ 301) եւ անձամբ կ՚երթայ թշնամիին դէմ։

Դժբախտաբար 1071 Օգոստոս 19–ին Մանազկերտի մէջ Ռոմանոս ոչ միայն կը պարտուի, այլ նաեւ գերի կ՚իյնայ Ալփասլանի ձեռքը։

Ալփասլան վեհանձնութեամբ կը վարուի եւ Ռոմանոսը կ՚արձակէ, զայն իրեն զինակից դարձնելու համար։

*Ամբարտաւան Բիւզանդացիք սակայն կը մերժեն Ռոմանոսը ընդունիլ եւ իրենց կայսրութեան կործանումը կը պատրաստեն։*

*Բիւզանդական յոխորտութեան դէմ Ալփասլան նոր յաղթանակներով կայսրութիւնը ընկճել կը փորձէ, ընելով կարգ մը կարգադրութիւններ, որոնք նպատակակէտ ունէին ապագային ընդարձակել սելճուկ պետութիւնը։*

*Ան Հայաստանի փոխարքայ կը նշանակէ Սիւլէյման Իպն Գութուլմիշ՝ իր քեռորդին, Կարինը կու տայ Սալթուկ անունով Թուրքման ամիրայի մը եւ Երզնկան՝ Մանկուճակի, իսկ Երզնկայէն մինչեւ Ալիսի բերանը տարածուող հողերն ալ — որոնք դեռ նուաճուած չէին — կը շնորհէ, ինչպէս յիշեցինք, Ահմէտ Տալուի՝ Դանիշմենտ (=ուսուցիչ) մականուանեալին, արտօնելով զանոնք որ իրենց տիրապետած երկիրներուն ապահարկ իշխեն, պայմանով որ միաբան գործեն եւ ջանան տկարացնել քրիստոնեայ իշխանութիւնները եւ ժողովուրդը ընտելացնել Իսլամներու տիրապետութեան։*

*Դանիշմենտ* 1071–*ին գործի ձեռնարկեց, առաջին առթիւ գրաւելով Նիկիսարը եւ ապա առաւ Ամասիան, Թոգատը, Մարզուանը եւ Զորումը, ինչպէս նաեւ շրջակայ հողերը, մանաւանդ Սեբաստիան, Կեսարիան եւայլն։*

*Դանիշմենտ այսպէս կը գրաւէր Հայաստանէն տեղափոխուած հայ փոքր թագաւորութիւններու հողերը, որոնք կը գտնուէին Փոքր Ասիոյ մուտքին վրայ։*

1079–1080–*ին կատարուած ընդհանուր յարձակողականով* «ազգն Թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երկիր» (*ՈՒՌՀԱՅԵՑԻ*, *էջ* 261)։ *Նախաձեռնարկը Դանիշմենտն էր, որ մինչեւ Ալիս իրեն սահմանուած հողերը գրաւեց՝ աջակցութեամբ դրացի մահմետական ամիրաներուն, մասնաւորապէս Երզնկայի, Կամախի եւ Կողոնիայի (Շապին–Գարա–Հիսար) տէր Մանկուճակի։*

*Այսպէս, Փոքր Ասիոյ բերանը Բիւզանդացիներէն կերտուած նոր ամբարտակը կամ պաշտպանութեան Բ. գիծը Սելճուկներէն ճեղքուեցաւ՝* 1071–*ին Մանազկերտի մէջ առաջին գիծը խորտակուելէն հազիւ* 10 *տարի ետք։ Բարբարոսները այս նոր յաջողութեամբ կը գրաւեն Փոքր Ասիան, վասնզի Բիւզանդացիք, ինչպէս Հայաստանը, նոյնպէս Սեւ ծովէն մինչեւ Տաւրոսի շղթան տարածուող երկիրները պաշտպանելու անհող գտնուած էին եւ թողած որ անկէ ներս խուժեն սելճուկ բարբարոսները։*

*Դանիշմենտ կը յաջողէր աւելի ընդարձակել իր երկիրը Զանկըրն եւ Գասթեմունին ալ գրաւելով եւ մինչեւ Սեւ ծով տարածելով իր իշխանութիւնը։*

*Կը թուի թէ դարուն սովորութեան համաձայն Տալլուի տէրութիւնն ալ աւատապետական կազմ ունէր եւ շրջակայ հողերուն վրայ հաստատուած էին իր գերիշխանութեան տակ ուրիշ ճորտ իշխանութիւններ։*

*Այսպէս,* 1094–*ին Սամոսատի մէջ Դանիշմենտ մը կ'իշխէր եւ Եփրատացւոց երկիրին մէջ ԺԲ. դարուն սկիզբը կը տոկար տակաւին Մելիտինէի քրիստոնեայ իշխանը՝ Գաբրիէլ եւ Միջագետքի մէջ՝ անոր փեսան, Եդեսիոյ*

իշխանը՝ Թորոս, որոնք կը հովանաւորուէին եւ կը պաշտպանուէին Դանիշմենտեաններէն, որոնց պետը Տայլու համակիր էր բնիկ քրիստոնեաներուն, որոնք փոխանակ այս բարեկամութենէն օգտուելու, Խաչակիրներուն յարեցան եւ անոնց նպաստեցին, այնպէս որ Դանիշմենտեանք պայքարիլ սկսան այս քրիստոնեայ իշխանութիւններուն հետ:

Տայլուի մահուան տարին (1084) գրաւուեցաւ Սեբաստիան, Կեսարիան եւ Պոնտոսը, որոնց վրայ Աբուլ Ֆետա (ՏԱՐԵԳՐ. Գ., էջ 724) կ'աւելցնէ Մալաթիան, որուն գրաւումը Ալպխթանի հետ 1086-ին կը յետաձգեն ուրիշ պատմագիրներ, սակայն այս գրաւումը վերջնական չէր գոնէ Մալաթիոյ համար, որ մինչեւ 1102 հայկական իշխանութեան մը տակ էր, ինչպէս պիտի տեսնուի (Հեզարֆիննի, ԹԱՔՎԵՀ ԷՏ ԹԱԻԱՐԻԽ եւ Հաճի Խալիֆա, ՃԻՀԱՆՆԻՒՄԱ, էջ 629):

Մելիքշահի իշխանութեան (1072—1092) փառաւոր շրջանէն ետք երբ սելճուկ պետութիւնը սկսաւ բաժան-բաժան ըլլալ, Բիւզանդացիք կարծեցին թէ պիտի կարենան ընկճել Սելճուկները եւ անոնց հետ մաքառիլ սկսան:

Մելիք Շահի որդին Պարկիարուք (1092—1104) անցաւ Եփրատը եւ առաջացաւ մինչեւ Անարզաբա եւ Հիւսնի Մանսուր (ՊԱՏ. ՀԱՅ. ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 69), այնքան մօտը Մալաթիոյ: Այսպէս Մալաթիոյ շրջանակը կրեց ասիական բարբարոսներու դէպի արեւմուտք արշաւին բոլոր հետեւանքները, եւ բազմաթիւ հարուածներ ստացաւ սելճուկ եւ բիւզանդական կայսրութեան միջեւ սահմանագլուխի վրայ գտնուելուն, առնուելով ու տրուելով քանի մը անգամներ, ինչպէս պատահած էր արաբական շրջանին:

ԺԲ.

# ՄԵԼԻՏԻՆԷ՝ ՓԻԼԱՐՏՈՍԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՄԱՍ

Ինչպէս շատ մը տարապայմանօրէն ընդարձակուած պետութիւններու ճակատագիրը եղած է, սելճուկ մեծ տէրութիւնն ալ չկրցաւ իբրեւ միաձոյլ ու միակ պետութիւն մը զօրաւոր կեդրոնական իշխանութեամբ մը շարունակել իր գոյութիւնը եւ ստացաւ աւատապետական կազմ. երեւան եկան մեծ թիւով տանուտէրութիւններ կամ հողատէրութիւններ, որոնք առաւել կամ նուազ իրական հնազանդութեամբ մը ենթարկուած էին Մեծ Սելճուկին իշխանութեան: Անոնք իրենց պարբերական ըմբոստութիւններով ոչ միայն կը տկարացնէին կեդրոնական իշխանութիւնը, այլեւ իրենց իրարու դէմ մղած պատերազմներով նաեւ բովանդակ կայսրութիւնը (Loewe, **The Seljuqs,** ի CMH, Դ., էջ 299—318 եւ ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 69):

*Մանազկերտի ճակատամարտը բիւզանդական կայսրութեան համար ճակատագրական նշանակութիւն ունեցաւ վասնզի անոր ոյժը խորտակուեցաւ անկանգնելի կերպով:*

*Այս քայքայումէն ու կազմալուծումէն օգտուելով Փիլարտոս Հայը*[1] *յղացաւ Փոքր Ասիոյ արեւմուտքը եւ հիւսիսային Ասորիքի մէջ կազմել անկախ իշխանութիւն մը՝ այդ կողմեր հաստատուած Հայերուն վրայ կրթնելով*[2]*:*

*Փիլարտոս, թէեւ յունադաւան, գիտնալով Հայերու ժխտական կեցուածքը հանդէպ Բիւզանդիոնի ընդգրկած կրօնական քաղաքականութեան, Մանազկերտի պարտութենէն ետք ծրագրեց Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հաստատուած եւ Հայաստանէն տեղափոխուած հայ Թագաւորներն ու իշխանները իր գլխաւորութեան եւ Բիւզանդիոնի հեռաւոր հովանաւորութեան տակ միացնել եւ զօրաւոր ու ընդարձակ դաշնակցային պետութիւն մը կազմել, ներքին միութեամբ ամրացած եւ կազմակերպուած, որ մէկ կողմէն սելճուկեան յարձակումներուն դէմ կայսրութեան արեւելեան սահմանագլուխին վրայ՝ իբրեւ պատուար պիտի ծառայէր, իսկ միւս կողմէն ալ ջախջախուած եւ հալածուած հայ ժողովուրդին նոր օճախ մը պիտի դառնար, իբրեւ նոր հաւաքավայր մը եւ հայրենիք մը:*

*Ռոմանոս երբ պարտուեցաւ Մանազկերտի մէջ* (1071 *Օգոստ.* 19) *Փիլարտոս Խարբերդ կը գտնուէր իբրեւ պահեստի զօրքերու հրամանատար: Ան քայքայուած բիւզանդական բանակին մէկ կարեւոր մասը յաջողեցաւ կասեցնել իր անկանոն նահանջէն եւ զանոնք սրտապնդելով Թումբ կանգնեցաւ դէպի արեւմուտք խուժող սելճուկ հեղեղին եւ արգելք եղաւ բարբարոսներու աւելի առաջ գալուն:*

(1) *Ինչպէս տեսնուեցաւ, Փիլարտոս Փոքր Ասիոյ մուտքին վրայ կարեւոր բանակի մը հրամանատար կարգուած էր: Աննա Կոմնէն Փիլարտոսը կը ներկայացնէ* «սքանչելի՝ դիտողներու աչքին առջեւ, առնենի կազմուածքով եւ իմաստուն ու խոհեմ»: *Ն. Ադոնց* (*տես* Byzantion, *1934, հտ.* IX *պրակ* I, «Փիլարէտ իշխանի ընտանեկան ծագումը» *յօդուածը*», *թրգ.* Հայրենիք *ամսաթերթ, ԺԵ. տարի, թ. 8, էջ 167 - 171*) *կ'ըսէ թէ ան* «կը պատկանէր իշխանական տան ու սերունդի, որուն անդամները յայտնի էին բիւզանդական պատմիչներուն Բրաքամիոս = Բրախամիոս կամ Բաքիամէս = Բախտամէս անունով: Այս տան անդամներէն շատերը կայսեր ծառայութեան մէջ էին, ինչպէս կը տեսնուի (*Schlumberger, Sigellographie*): Այս ընտանիքը խառնուած է Բարդաս Սկլերոսի ապստամբութեան շարժումին (տես *E. W. Bussel*, Բ. հտ, 238—248): Կենտրենոս (Բ. 422) կը պատմէ թէ ինչպէս զօրավար մը դաւեց կայսեր բանակին եւ փրկեց Սկլերոսը, 976ի ապստամբութեան ատեն»: *Հայ պատմիչներ կը կարծեն թէ Փիլարտոս կը պատկանէր Վարաժնունի տոհմին:*

(2) Իսլամ. Համայն. (*Գ. էջ 211*) *կը գրէ թէ Փիլարտոս իր հայ ասպատակախումբերով իրեն համար ստեղծեց վաղանցուկ թագաւորութիւն մը Սուրիոյ սահմանագըլուխին վրայ: Իրականին մէջ Փիլարտոսի հիմնած տէրութիւնը աւատապետական կարգերով իշխանապետութիւն մը կամ շատ մը փոքր իշխանութիւններու համադաշնակցութիւն մըն էր:*

Այսպէս պատեհութիւնը օգտագործելով հիմնեց ինքնիշխան կառավարութիւն մը Գերմանիկէն (Մարաշը) կեդրոն ունենալով եւ հետզհետէ ընդարձակեց իր սահմանները:

Բիւզանդական զօրավարին այս արարքը պատժելու անկարող էր Պոլսոյ կառավարութիւնը. ուստի անոր անուանական կերպով ինքզինք բիւզանդական պաշտօնատար մը նկատելը իրեն համար բաւական գոհացում մը նկատեց եւ թոյլ տուաւ որ անիկա ազատ գործէր, եւ Սելճուկեանց ճամբան փակելով Կիլիկիան եւ Կապադովկիան փրկէր: Միքայէլ Ասորի (Michel le Syrien, Դ. հտ., էջ 187—8) այնպէս կը ներկայացնէ թէ «Հոռոմները իշխան կարգեցին Փիլարտոսը Կիլիկիոյ վրայ, որպէսզի դիմադրէ Թուրքերուն, որովհետեւ Փիլարտոս ռազմիկի համբաւ ունէր»:

Մանազկերտի պարտութենէն ետք՝ Փիլարտոսի հետ միեւնոյն ատեն ինքզինքնին բիւզանդական կայսրութենէ անկախ նկատած են նաեւ Սեբաստիոյ, Ծամնդաւի եւ Պիզուի մէջ հաստատուած հայ Թագաւորները, որոնք եթէ Փիլարտոսի պէս կարեւոր դեր մը չեն կատարած եւ այս պատճառով եթէ իրենց գործերը չեն յիշուած, սակայն դէթ սա որոշ է՝ թէ Բիւզանդիոնէն կախում չեն ունեցած եւ աւելի Փիլարտոսի միացած եւ անոր գլխաւորութիւնը ճանչցած են, ինչպէս կը հաստատուի ինչ-ինչ դէպքերով (տես Ալպօյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 457—460):

Այսպէս, հայ Թագաւորները իրարու մէջ եւ ամէնը միասին Փիլարտոս իշխանապետին հետ կատարեալ համաձայնութեամբ, համաձայն էին եւ յոյժ հաւանօրէն ամէնքն ալ կը փափաքէին Փոքր Ասիոյ մուտքին վրայ կազմելու հայ պետութիւն մը աւատապետական կարգերով, ամէն մէկը իր սահմանին մէջ ինքնավար, սակայն իրարու միացած:

Փիլարտոս իշխանապետը այսպէս իր վերին հեղինակութեան ենթարկեց Փոքր Ասիոյ արեւելեան կողմը գոյութիւն ունեցող կարգ մը իշխանները, անոնցմէ իրեն չհնազանդողները եւ իր վերին հեղինակութեան չենթարկուողները փոխեց եւ կարգ մըն ալ իրեն ճորտ նոր իշխաններ նշանակեց:

Մալաթիա մէկն էր այն քաղաքներուն, որ կեդրոնը եղաւ Փիլարտոսի հեղինակութեան ենթարկուած այս իշխանութիւններուն, եւ ունեցաւ իր սեպհական կառավարութիւնը:

Եւ եթէ թոյլ տրուէր որ ամրապնդուէր Փիլարտոսի կազմած այս համադաշնակցութիւնը, որուն բնակչութեան գլխաւոր տարրերը կը կազմէին Հայերը եւ դաւանակից Ասորիները, ապահովաբար կրնար քրիստոնեայ քաղաքակրթութեան համար փրկարար մեծ դեր մը կատարել եւ բիւզանդական կայսրութեան կեանքը երկարաձգել եւ թերեւս կործանումէ փրկել: Դժբախտաբար ամրապնդելու ժամանակ չտրուեցաւ:

Ինչպէս ըսի, 1079—1080-ին Դանիշմենտի նախաձեռնութեամբ Ալփասլանի հիմնած խլամ իշխանութիւնները, որ ՄեծՍելճուկին հովանաւորութեան տակ կը գտնուէին, ընդհանուր գրոհ մը տուին շատ ազիտալի հետեւանքնե-

*րով, վասնզի Հայաստանէն Փոքր Ասիա տեղափոխուած հայ թագաւորութիւնները ջնջուեցան եւ Բիւզանդացիներու պաշտպանութեան երկրորդ գիծը ճեղքուեցաւ։*

*Փիլարտոս կորսնցուց իր դաշնակիցներէն կամ ճորտերէն մէկ կարեւոր մասը։*

*Փիլարտոս զբաղած յարձակող Սելճուկներուն դէմ պաշտպանելու Անտիոքը, Կոմմագինէն եւ Կիլիկիան, չկրցաւ Փոքր Ասիոյ արեւմուտքը հաստատուած հայ թագաւորներուն օգնութեան հասնիլ։*

*Սեբաստիոյ, Պիզուի եւ Ծամնդաւի հայ արքունիքներու վերջին մնացորդները իսկոյն ապաստանեցան սելճուկ հարուածներու յաջողութեամբ տոկացող Փիլարտոսի քով, որ կրցած էր կազմել Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հաստատուած հայ իշխանութիւներէն դաշնակցային պետութիւն մը։ Ուստի Փիլարտոս նախապէս այդ շրջանակին մէջ գտնուող հայազգի կամ օտար ծագումով բիւզանդական պաշտօնակալները, երբ կամովին հպատակեցան ու գործակցեցան իրեն, հաստատեց եւ պաշտպանեց զանոնք իրենց իշխանութիւններուն մէջ։*

*Նոյնպէս Արեւելեան Հայաստանէն արտագաղթող հայ իշխանները, որոնք իրենց զօրքերով կու գային Եփրատի արեւմտեան կողմը, Փիլարտոս հովանաւորեց եւ զանոնք տեղաւորեց զանազան վայրեր։ Անիկա ոչ մէկ ոյժ արհամարհեց, եւ աշխատեցաւ իր կազմած իշխանապետութիւնը ամրապնդել։ Անիկա զիջաւ նոյնիսկ քաղաքականութիւնը եւ կրօնքը իրարու չխառնել, եւ աշխատեցաւ դրացի արաբ իսլամ էմիրներն ալ գործակից ունենալ, քանի որ անոնք ալ իբրեւ հակառակորդներ Սելճուկներուն իրեն բնական զինակիցներն էին։*

*Ուստի հասկացողութեան եկաւ բոլոր հայ եւ իսլամ մանր իշխանութեանց հետ, որոնք արդէն գոյութիւն ունէին։*

*Այս քաղաքագիտութեամբ Փիլարտոս՝ ինչպէս կը թուի՝ կ'ուզէր բոլոր սելճուկ եւ բիւզանդական տիրակալութեան հակառակորդ իշխանութեանց դաշնակցային միութիւն մը ստեղծել։*

*Իր գնահատելի ծրագիրը իրագործելու համար երբեք խտիր չդրաւ միջոցներուն մէջ, ինչպէս Սասունի Թոռնիկ Մուշեղեան իշխանը դաւով սպաննել տուաւ 1073-ին, վասնզի անիկա չէր համակերպած իր ծրագիրներուն։*

*Փիլարտոսի իշխանապետութիւնը, որ պզտիկ տէրութիւններու համադաշնակցութիւն մըն էր, եւ շրջապատուած՝ հիւսիս-արեւելքէն եւ հարաւ-արեւելքէն Մեծ Սելճուկին եւ հիւսիս-արեւմուտքէն՝ Դանիշմենտի երկիրներէն, ունէր իր մէջ կարեւոր եւ բազմամարդ քաղաքներ, ինչպէս Մալաթիան, Խարբերդը, Մարաշը, Ուռհան եւ Անտիոքը։*

*Այս շրջանակը մեծ մասամբ հայարնակ դարձած էր Յոյներու եւ Ասորիներու չափաւոր խառնուրդով մը, իսկ Իսլամները շատ քիչ էին։*

*Երբ Փիլարտոս, իր մայրաքաղաքը եւ անոր անմիջական շրջակայքը*

*պաշտպանելու հարկադրանքին տակ չկրցաւ պաշտպանել հայ թագաւորութիւնները՝ Դանիշմենտի տան յարձակումներուն դէմ, անոնց սահմաններուն մէջ հաստատուած հայ իշխանական տուներէն անոնք, որ իրեն դիմեցին, ընդունեցաւ եւ իւրաքանչիւրին առանձին կալուածներ յատկացուց, որոնց վրայ պիտի իշխէին իբր ճորտեր, միեւնոյն ատեն զօրացնելով իր պետութիւնը, որպէսզի տոկար հարաւէն եւ արեւմուտքէն իր վրայ գործադրուած ճնշումին:*

*Ըստ Միքայէլ Ասորիի՝ Բիւզանդիոն երբ լսեց որ Փիլարտոս եւ իր ճորտերը յաջողած էին առնել շուրջանակի Կիլիկիոյ շատ մը մասերը, Մարաշը, Քեսունը, Ալպիսթանը եւ Մելիտինէն, նաեւ Ուռհան՝ Եփրատի միւս կողմը եւ ուրիշ տեղեր, տուաւ Փիլարտոսի պարգեւներ եւ զայն* Սեւաստոս *տիտղոսով պատուեց: Այսպէս, Ալեքս Կոմնէն կայսրը իմաստութիւնը ունեցաւ Փիլարտոսը ճանչնալու Բիւզանդական Կայսրութեան ներկայացուցիչ եւ ընդունելու իբրեւ օրինաւոր տէր եւ իշխող Ծոփաց, Մելիտինէի, Կոմմագինէի, Կատաւոնիոյ եւ Լեռնային Կիլիկիոյ նահանգներուն:*

*Այս կերպով, Փիլարտոս շահեցաւ բիւզանդական կայսրութեան բարեկամութիւնը, սակայն Բիւզանդացիք չկրցան ըմբռնել հայ եւ յոյն գործակցութեան մեծ կարեւորութիւնը եւ չօգնեցին* 1079—1080*-ին Կապադովկիոյ Հայ Արծրունի եւ Բագրատունի Թագաւորներուն, ինչպէս նաեւ առանձին ձգեցին Սելճուկներու դէմ Փիլարտոսը:*

*Եթէ Յոյները կարենային ըմբռնել վտանգին մեծութիւնը եւ ունենային զայն հեռացնելու համար պարագային պահանջած արթնամտութիւնը, Փիլարտոսը պիտի չձգէին առանձին երբ Սիւլէյման եւ Դանիշմենտ զինակցաբար կու գային Փիլարտոսի երկիրներուն վրայ: Այսպէս* 1084*-ին Սիւլէյման Իպն Գութուլմիշ անակնկալ կերպով կը գրաւէր Անտիոքը եւ կը տիրէր Կիլիկիոյ, Փիլարտոսի դաւաճանած որդին՝ Եդեսիոյ դուքս՝ Վարսամի կամ Պարսամի մեղսակցութեամբ, եւ Դանիշմենտի զօրավարներէն Պոլտաճի Ամիրան կը տիրէր Ջահան գաւառին* (*Ալպիսթան եւ Կէօքսիւ*)*: Այս յափշտակութիւններով անոր իշխանապետութեան կէսը կը կորզուէր իրմէ եւ թերեւս միւս կէսն ալ պիտի գրաւէին, եթէ Սելճուկները չպառակտուէին եւ Դդուշ՝ Ալփասլանի որդին եւ Մելիք Շահի եղբայրը եւ Սիւլէյման իրարու հետ պատերազմի չբռնուէին Անտիոքի եւ Հալէպի համար, եւ Սիւլէյման Իպն Գութուլմիշ, Իկոնիոյ առաջին Սուլթանը* (1075—1086) *չսպաննուէր: Փիլարտոս, որ այս պառակտումէն եթէ չօգտուէր Սիւլէյմանի եւ Դանիշմենտի միացեալ յարձակումներէն պահ մը ազատ մնալով, բայց այս անգամ ալ իր դէմը կը գտնէր Դդուշը, երբ Յոյներէն լքուած էր եւ կորսնցուցած՝ իրեն զինակից Մարտինի եւ Մուֆարղինի երկու իսլամ ամիրաները: Փիլարտոս յուսաց այս նեղ կացութենէն ազատիլ՝ հպատակիլ խոստանալով Մեծ Սելճուկին եւ կամ Պաղտատի ամիրապետին: Անիկա նոյնիսկ իսլամութիւնը ընդունելու չվարանեցաւ, իր պետութիւնը փրկելու համար, եւ արդարեւ յաջողեցաւ կերպով*

մը, քանի որ Պաղտատի խալիֆայէն արտօնութիւն ստացաւ իր երկիրը ետ առնելու, սակայն մինչեւ որ դարձաւ տիրանալու համար իր երկրին, մնացեալ մասն ալ գրաւուած գտաւ, հաւանօրէն Դղուչէն:

Այսպէս վերջ գտաւ նաեւ Փիլարտոսի իշխանապետութիւնը 1086–ին, Կապադովկիոյ հայ ճորտ թագաւորութիւններէն վեց տարի ետք միայն:

ԺԳ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՃՈՐՏ ԻՇԽԱՆՆԵՐԸ ԵՒ ԳԱԲՐԻԷԼ «ՅՈՅՆ»Ը

Ինչպէս տեսնուեցաւ, Փիլարտոս իր կառավարութեան տուած էր աւատապետական կազմ եւ իր տիրապետութեան շրջանակին մէջ հայ թագաւորական տուներէն իշխաններուն բնակութեան տեղեր յատկացուցած եւ իրեն ենթակայ ճորտ իշխանութիւններ հիմնած էր, կարեւոր ոյժ մը գոյացնելու համար Եփրատի հովիտին մէջ, Եփրատացւոց կամ Կոմմագինէի, հիւսիսային Սուրիոյ եւ արեւելեան Կիլիկիոյ մէջ:

Նաեւ այն ատենները, Փոքր Ասիոյ արեւելեան մասերուն մէջ տիրող խառնակ վիճակէն օգտուելով երեւան եկած էին կարգ մը բախտախնդիրներու գլխաւորութեամբ իշխանութիւններ, զորս նաեւ հովանաւորած էր Փիլարտոս, եւ անոնց ալ գերիշխանութիւնը իրեն սեպհականած էր:

Հետաքրքրական է լուսանցագրութիւն մը, որ Միքայէլ Ասորիի ժամանակագրութեան ձեռագիրներէն մէկուն մէջ գտնուած է եւ որ շատ բան կը բացատրէ ցոյց տալով որ «Փիլարտոս Թուրքերէն առած չէր այդ ընդարձակ հողերը եւ քաղաքները, այլ Յոյները անոնց վրայ իշխել տուած են անոր, որպէսզի իրենց համար պահպանէ: Սուլէյման (Իպն Գութուլմիշ) Անտիոք եկաւ եւ առաւ Փիլարտոսէն[1]: ... Թուրքերը Փիլարտոսէն առին Քայշումը (հաւանօրէն Քեսուն), Ռապատը, Ճիհունի քաղաքները[2] եւ ուրիշ քաղաքներ» (Michel le Syrien, Գ. հտ., էջ 173):

Ասիկա ցոյց կու տայ թէ Փիլարտոսի աւատապետութիւնը կազմուած էր մասնաւորապէս բիւզանդական ստացուածքներու վրայ, եւ առաւելապէս

(1) 1084-ին, ինչպէս տեսնուեցաւ վերը:

(2) Պոլտաճի ամիրայի գրաւումը (տես վերը):

*այն իշխանութիւններէն, որոնք Փոքր Ասիոյ արեւելեան կողմը կը գտնուէին, Բիւզանդացիներէ շնորհուած կամ յեղուզակութեամբ անոնցմէ յափշտակուած հողերու վրայ:*

*Միքայէլ Ասորի Անտիոքի Պատրիարքը* (1166—1199), *որ գրեթէ ժամանակակից կը համարուի, քանի որ* 1126–*ին Անտիոք ծնած էր եւ ապրած մինչեւ* 1199, *իր Պատմութեան մէջ կ'ըսէ թէ* «այն ատենները Հայեր կային, որոնք Փիլարտոսի օրերէն սկսեալ ինչինչ տեղեր կը գրաւէին: Ասոնցմէ մէկն էր Գող Վասիլ որ Քեսունի եւ Ռապանի կը տիրէր: ··· Հայեր ալ կային որոնք գրաւած էին Կիլիկիոյ զանազան մասերը: Ասոնք կը կոչուէին Ռուբէնի որդիք :

Հայերը գաղթած էին Վասիլ կայսեր օրով[1] եւ երբ Թուրքերը արշաւեցին Միքայէլ կայսեր[2] օրով, [Բիւզանդացիք] Փիլարտոսի իշխանութիւն տուին Կիլիկիոյ վրայ, որպէսզի դիմադրէ Թուրքերուն, որովհետեւ ռազմատենչ կ'երեւէր···

Այդ ատենէն ի վեր Հայերը տիրացան Կիլիկիոյ եւ Սուրիոյ մէջ տեղերու: Հարիւր տարի ետք կաթողիկոսը Մեծ Հայաստանի մէջ ենթարկուած ըլլալով հոն տիրող Թուրքերու ճնշումներուն, Կիլիկիոյ հայ իշխանները իրենց քով բերել տուին իրենց կաթողիկոսը[3]» (*Գ. Հտ.*, *էջ* 18):

*Ասորի պատմագիր պատրիարքին յիշատակած վայրերը, որոնց տիրացած էին Հայերը, ստորադասուած էին Փիլարտոսի, որուն աւատապետութեան շրջանակին մէջ արդէն գոյութիւն ունեցող եւ ապա իր կողմէ հիմնուած նորտ իշխանութիւնները տասնեակի մը չափ էին:*

*Այսպէս ինքը հաստատած կամ հովանաւորած էր Հայաստանէն Փոքր Ասիա տեղափոխուող Արծրունի եւ Կարսի ու Անիի երկու Բագրատունի թագաւորները, Մալաթիոյ, Քեսունի, Մարաշի*[4], *Եդեսիոյ, Անտիոքի, Ծովքի, Պիրի, Արեւրտնի, Կարկառի, Տարսոնի, Լամբրոնի եւ Պապեռոնի, Ռուբէնի իշխանութիւնները* (*տես* ՊԱՏ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, *էջ* 103—6):

*Ահա այս Փիլարտոսի ստորադասեալ բազմաթիւ մեծ ու պզտիկ իշխանութիւններուն մէջ կային մէկ քանիներ, որոնք մեր շահագրգռութեան առարկայ Մալաթիոյ շրջանակին մէջ կը գտնուէին:*

*Այսպէս Փիլարտոսի ամենէն կանուխ գրաւած վայրերէն մէկուն՝ Մալաթիայի, որ կը նկատուէր միակ բանալին Արածանիի հովիտէն դէպի Կա–*

---

*1 Վասիլ Բ.ին (976—1025) կ'ակնարկէ:*

*2 Հաւանօրէն Միքայէլ Դ. Պափլագոնացի (1034—1041) եւ Միքայէլ Ե. Կալափատէ (1041—1042) կայսրերէն մէկուն կ'ակնարկէ:*

*3 Խաչիկ Բ. Անեցի (1054—1060) եւ Գրիգոր Բ. Վկայասէր (1065 1105) կաթողիկոսներուն համար է խօսքը:*

*4 Մարաշը Փիլարտոս իրեն վերապահած եւ իր համադաշնակցութեան մայրաքաղաք դարձուցած էր: Իր մահէն վերջ «իշխանաց իշխան» տիտղոսով թաթուլ իշխած է Մարաշի մէջ, Փիլարտոսի պէս իբրեւ «զօրապետ Հոռոմոց» (Ուռ. 332 եւ 424):*

պարուրկիա երկարող մեծ պողոտային (հմմտ. Քասունի, ՓԻԼԱՐՏՈՍ ՀԱՅԸ, էջ 20), կառավարիչ նշանակած էր Թորոսը կամ Թէոդորոսը[1], որ որդին էր «յունադաւ»[2] Հեթումի մը (տես Michel le Syrien, Գ. 173—4), որուն ծագումը եւ նախընթացը ծանօթ չեն[3]։

Փիլարտոս զայն Մալաթիայէն Եդեսիա փոխադրած էր եւ նշանակած «Կիւրապաղատ Եդեսիոյ» (տես ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, տպ. 1871, Երուսաղէմ, էջ 403) ըստ Կոմմագենացիի (ՓԻԼԱՐՏՈՍ ՀԱՅԸ, էջ 86) 1089–ին կամ աւելի հաւանօրէն 1088–ին իբր յաջորդ իր դաւաճան որդւոյն Վարսամի, որ 1087–ին սպաննուած էր (ՉԱՄ., Գ. էջ 12, հմմտ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 410)։

Թորոս, որ փեսան էր Մալաթիոյ Գաբրիէլ իշխանին, երբ Սելճուկներէն պարտուեցաւ, ապաստանեցաւ Մալաթիա իր աներոջ քով։ Դղուշ ամիրան զայն վերահաստատեց Եդեսիոյ կիւրապաղատութեան մէջ 1094–ին (ՈՒՌ., էջ 300)։

Երբ Պարկիարուխի (1092—1104) դէմ մղուած պատերազմին մէջ Դըղուշ սպաննուեցաւ, Թորոս իբր երախտաւորեալ ապաստան տուաւ անոր որդւոյն Ռատուանին (ՈՒՌ., էջ 302) եւ օգնեց անոր, որպէսզի նստի սուլթան Հալէպի մէջ (ՎԱՐԴԱՆ, էջ 108)։

Քիչ վերջ Դղուշի ցեղէն ուրիշ մէկը՝ Ալփիլակ Բիւզանդացիներու օգնութեամբ սուլթան հռչակուեցաւ եւ Եդեսիա կամ Ուռհա գալով փորձեց տիրել քաղաքին։ Թորոս Կիւրապաղատ 33 օր յետոյ յաջողեցաւ զայն թունաւորելով սպաննել (ՈՒՌՀ., էջ 305 եւ ՎԱՐԴԱՆ, էջ 108)։

1095—6–ին Որթոքեան Սուգման եւ Սամոսատի[4] կամ Շամշատի Պալտուխ Դանիշմենտեան ամիրան Ուռհայի վրայ յարձակեցան (1095), սակայն չարաչար յաղթուեցան։ Թորոս սակայն վախնալով որ ի վերջոյ պիտի ընկճուի, ապաւինեցաւ Խաչակիրներուն, որոնք տակաւին Կիլիկիոյ սահմանները նոր հասած էին եւ զանոնք իր մօտ հրաւիրեց։

Պաղտին Կոմսը՝ յատուկ գունդով Եփրատացւոց կողմը արշաւեց եւ Թորոս Կիւրապաղատին օգնութեամբ Թլպաշարը գրաւելէն ետք հիւր գնաց Ուռհա, ուր հակառակ իր երդումներուն սպաննեց Թորոս իշխանը եւ տիրեց

---

1 Միքայէլ Ասորի միայն Թէոդորոս անունով յիշած է, իսկ Միքայէլ Ասորի (տպ. Երուսաղէմ, 1871, էջ 306 եւայլն) Խաւրիլ։

2 Michel le Syrien հաւանօրէն կը սխալի Հեթումը «յունադաւ» կոչելով։ Մատթէոս Ուռհայեցի (էջ 300) կը յիշէ «զիշխան Հոռոմոց զԹորոս որ ասէին Հեթմոյ որդի» առանց անոր հօրը ազգութեամբ զբաղելու։ Հ. Աճառեան Անձնանունների Բառարանին (Բ. հտ., էջ 346) մէջ զայն հայ կը ներկայացնէ, եւ կարծեմ շատ իրաւունք ունի։

3 Կոմմագենացի (Եղիա Քասունի) իր Փիլարտոս Հայը գիրքին մէջ (էջ 86) կ՚ըսէ թէ Թորոս «ժառանգաբար նախապէս կառավարիչը եղած էր Խարբերդի», սակայն առ այս ոչ մէկ փաստ կայ։ Մալաթիա շփոթուած պիտի ըլլայ Խարբերդի հետ։

(4) Այժմ Ալթուն Թաշ Գալէ։

Եղեսիոյ, 1097-ին կամ 1099-ին (ՈՒՌ., էջ 319, Ալիշան ՇՆՈՐՀԱԼԻ եւ ՊԱՐԱԳԱՅ ԻՒՐ, էջ 188, Օրմանեան ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 1321, Ալպոյաճեան, ՊԱՏ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 475)։

Թորոս Կիւրապաղատի, ըստ Միքայէլ Ասորի պատրիարքի (Գ. հտ. էջ 173—4) Եղեսիա փոխադրուելէն ետք՝ Մալաթիոյ կառավարիչ նշանակուած է Փիլարտոսէն «հայազգի» Հարէպ անուն մէկը, որուն յաջորդած է Balantinos (Վաղենտիանոս) (Michel le Syrien, Գ. հտ., էջ 173)։

Ո՛չ Հարէպ եւ ո՛չ Վաղենտիանոս մեր մատենագիրներէն եւ մեզի ծանօթ ուրիշ օտար պատմիչներէն չեն յիշուած։

Վերջապէս Մալաթիոյ իշխան կը նշանակուի Փիլարտոսէն Գաբրիէլ «յոյն», որուն Michel le Syrien (Գ., 173) «չարամանկ» ածականը կու տայ։

Կ'ըսուի թէ Գաբրիէլ յեղուզակութենէ առաջ եկած էր եւ իր կեանքով շատ կը յիշեցնէր Փիլարտոսը, որ զայն «կացուցեալ էր» Մալաթիոյ իշխան (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 406 կամ Michel le Syrien Գ. 179)։ Ուրեմն Փիլարտոս այս իշխանին վստահած էր Մալաթիոյ պէս ռազմական կայանի մը իշխանութիւնը, եւ զայն իր ճորտը (Vassal) կը նկատէր։

Այս Գաբրիէլը, որուն «Հոռոմ» մականունը տրուած է, յոյն չէր, այլ յունադաւան հայ մը (Zeitschrift für Armenische Philologie Marburk երկու հատոր, Ֆինքի տնօրէնութեամբ հրատարակուած. նաեւ Գուլիելմոս Տիւրացի [Guillaume de Tyr] եւ Աբուլ Ֆարաճ)։ Գաբրիէլ 1079–1080-էն առաջ իշխել սկսած է Մելիտինէի, ինչպէս կը հասկցուի Միքայէլ Ասորի պատրիարքի սա վկայութենէն թէ այդ թուականներուն «Մելիտինէի մէջ կ'իշխէր Գաբրիէլ[1] անուն թուրք մը» (Michel le Syrien, Գ. 180), որ ուրիշ մէկը չէր, այլ նոյն ինքն յունադաւան Գաբրիէլ հայը, որուն ինչո՞ւ «թուրք» ըսուած է, յայտնի չէ։ Թերեւս իբր անարգական մակդիր տրուած է իրեն այս կոչումը, վասնզի Ասորիները սաստիկ կ'ատէին Գաբրիէլը իր Ասորիներուն դէմ գործադրած անիրաւութիւններուն եւ անգութ արարքներուն համար։

Գաբրիէլի իշխանութեան ատեն 1079—1080-ին պատահած է սաստիկ սով մը (տես ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 261, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 483—4), որուն վրայ կը խօսի նաեւ Ասորի Միքայէլ Պատրիարքը եւ կ'ըսէ թէ երկու լեթրէ հացը ինչպէս նաեւ երկու լեթրէ գինին մէկ տինարի ծախուեցաւ (Michel le Syrien, Գ. 180)։

Իսկ Փիլարտոսի պատմութեան ասպարէզէն անհետանալէն (1086) ետք, իրեն ստորակարգ Մալաթիոյ այս իշխանը Փիլարտոսի ճորտ շատ մը ուրիշ հայ իշխաններու պէս, համակերպած է ստեղծուած կացութեան եւ առանձին կառավարած՝ իր երկիրը, գերիշխանութեանը տակ բարի վեհապետի համբաւով եւ քրիստոնէից պաշտպան ու բարեկամ մեծ Սելճուկին Մելիք Շահին

(1) Միքայէլ Ասորիի ասորերէն բնագրին մէջ հոս Գաբրիէլ անունին այլափոխուած ձեւերը գործածուած են, ինչպէս Geraoul, Khouril եւայլն, բայց միեւնոյն անձին համար գործածուած են։

(1072—1092), *որուն հարկատու դարձաւ եւ կրցաւ պահել իր իշխանութիւնը։*

*Գաբրիէլ ըմբռնելով թէ ի վերջոյ Բիւզանդացիները պիտի չկարենան դիմադրել Թուրքերուն, Մալաթիոյ վրայ իր տիրապետութիւնը հաստատել տուաւ խալիֆային։ Միքայէլ Ասորի պատրիարքը կը պատմէ թէ երբ Գաբրիէլ* «տեսաւ որ Յոյները յաղթուած են, իր կինը ղրկեց Պաղտատ եւ խալիֆային հրովարտակ առաւ, որով իրեն կը շնորհուէր Մելիտինէն» (Michel le Syrien, Գ. 179)։

*Որչափ կը հասկցուի Ասորի պատրիարքին գրածներէն, Գաբրիէլ կըրցած է զանազան խորամանկութիւններով հեռացնել Մալաթիայէն Թուրք սպաները, ինչպէս նաեւ պաշտպանել իր փեսան՝ Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատը* (*Հմմտ.* *ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ*, *էջ* 300)։

*Այսպէս, Միքայէլ Ասորի կը պատմէ թէ ի՛նչպէս Գաբրիէլ խորամանկութեամբ յաջողած է էմիր Ալ-Ֆարիճը*[1] (*որ Մալաթիոյ վրայ եկած էր* 1096-*ին*) *խաբել եւ հետը առնելով զայն Եդեսիա երթալ ու հոն թունաւորելով սպաննել* (Michel le Syrien, Գ., 179)։

*Ալ-Ֆարիճի մահէն ետք, Գաբրիէլ Թուրքերը մինչեւ Մելիտինէ տարաւ եւ զանոնք խաբեց։ Քաղաք մտաւ իբր թէ քաղաքը անոնց յանձնելու համար, եւ զանոնք դուրսըձգելով դուռները փակեց։*

*Թուրքերը այն ատեն իրենցմէ մէկը պետ ընտրեցին*[2] *եւ երկիրը աւերեցին ու քաղաքը պաշարեցին։ Գաբրիէլ, որ* 1086-*էն* 1092 *իր փեսին՝ Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին հետ իր իշխանութիւնը պահելու համար Դանիշմենտի հովանաւորութեան տակ մտած էր եւ այս կերպով եղած էր բոլորովին անկախ* (*Ա. Ալպոյաճեան*, *ՊԱՏՄ. ԵԻԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ*, *էջ* 196—7), *պաշտպանուեցաւ Դանիշմենտէն։*

*Կիւմիւշթէքին Իպն Դանիշմենտ*[3] (1084—1106) *միջնորդեց Թուրք սա-*

---

(1) Michel le Syrien-*ի թարգմանիչը այս Ալ-Ֆարիճը նոյնացուցած է Մատթէոս Ուռհայեցիէ* (*էջ* 305) *եւ Վարդան Պատմիչէն* (*էջ* 108) *յիշուած Ալփիլակ Սուլթանին հետ, որ Յունաց պաշտպանութեամբ Դղուշի Ռատուան որդիէն Հալէպի սուլթանութիւնը յափշտակած էր եւ Եդեսիոյ Թորոս կիւրապաղատը անոր հնազանդած էր, «որպէսզի առցէ վրէժ ի թշնամեաց իւրոց», բայց որովհետեւ ան չար խորհուրդը յղացած էր Թորոսը սպաննելու եւ քաղաքը կողոպտելու, Թորոս զայն թունաւորելով սպաննեց, անոր Ուրֆա գալէն 33 օր ետք եւ ինքը շարունակեց իր իշխանութիւնը* (*ՈՒՌ.*, 305, *ՎԱՐԴԱՆ էջ* 108-9)։

*Միքայէլ Ասորիի ֆրանսերէն թարգմանիչը* J. B. Chabot *մի քանի պարագաներու նմանութենէն տարուելով՝ հաւանօրէն Ալ-Ֆարիճը Ալփիլակի հետ նոյնացուցած է, ինչ որ շատ հաւանական չի թուիր։*

(2) *Այս պետին անունը* Tawil *նշանակած է Ասորի պատրիարքը, իսկ իր գործին թարգմանիչ* Chabot *կը կարծէ թէ ասիկա Դաւիթ անունին հայկական ձեւն է, ինչ որ ճիշդ չէ. հետեւաբար շատ կասկածելի է այս մեկնաբանութիւնը։ Նոյնպէս հաւանական չէ որ Թուրքերը հայ պետ մը ընտրած ըլլան։*

(3) *Դանիշմենտ այս էմիրը նաեւ կոչուած է այլազան անուններով, ինչպէս*

պատակներու եւ Գաբրիէլի միջեւ եւ անոնց միջեւ խաղաղութիւնը հաստատեց (Michel le Syrien, Գ., 173)։

Գաբրիէլ իր իշխանութիւնը արտաքին ոյժերու դէմ կրցաւ ամրապնդել զանազան միջոցներով, բայց դժբախտաբար չկրցաւ ներքնապէս զօրացնել՝ իր իշխանութեան ենթարկուած բնակչութիւնը կապելով իրեն։ Ընդհակառակը իր անողոք խստութեամբ եւ անգթութիւններով ու աւազակային արարքներով ժողովուրդը — մասնաւորաբար Ասորիները, որ մեծ թիւ ունէին — իրեն դէմ հանեց։ Միքայէլ Ասորի Պատրիարք իր պատմութեան մէջ զայն կը ներկայացնէ շատ սեւ գիծերով, վասնզի ան չէ յարգած Ասորիներու կրօնական զգացումները։ Միքայէլ Ասորի (Գ. 182) կը պատմէ թէ Ասորի եպիսկոպոսները 1089–ին[1] Ապու՛լ Ֆարաճը Պատրիարք կ՚ընտրեն, որ միաբան էր Ս. Պարսամի վանքին եւ ուսուցիչ հոն։

Ապու՛լ Ֆարաճ չուզեց ընդունիլ այս պաշտօնը, վասնզի Ապտուն անուն մետրոպոլիտ մը[2] պառակտած էր Ասորի Եկեղեցին։ Եպիսկոպոսները Ապու՛լ Ֆարաճը կախակայեցին եւ 9 ամիս վերջ զայն բռնի բերել տալով Գաբրիէլի միջոցով, ձեռնադրեցին (1 Դեկտեմբեր 1090–ին) եւ կոչեցին Աթանասիոս անունով։

Ապտուն երբ իմացաւ ասիկա, Գաբրիէլի դիմեց եւ խոստացաւ երկու հազար դարեհական կամ դահեկան, եթէ չճանչնայ Աթանասիոսը, սակայն Գաբրիէլ մերժեց այս առաջարկը եւ վռնտեց զայն։

Գաբրիէլ կ՚ակնկալէր որ Ապու՛լ Ֆարաճ ասիկա լսելով, պիտի գար ողջունելու զինք եւ շնորհակալութեան համար նուէրներ պիտի բերէր։ Պատրիարքը անոր սպասածը չըրաւ եւ Գաբրիէլ դառնացաւ անոր դէմ եւ զայն Ս. Պարսամի վանքէն բերել տուաւ եւ երբ ան իր ապարանքին առջեւ հասաւ, զայն դիմաւորեց անձամբ եւ անոր օրհնութիւնը խնդրեց, ինչ որ Պատրիարքը զլացաւ ըսելով որ «դուն յոյն ես եւ մենք՝ ասորի»։ Գաբրիէլ զայրացաւ եւ հրամայեց Պատրիարքը բանտարկել բողի մը տունը զայն անարգելու համար։

Պատրիարքն ալ փոխադարձաբար հրամայեց եկեղեցիները գոցել եւ զանգակները չհնչեցնել, մինչեւ որ զինք բանտէն հանեն։ Ասորիները իրենց միջեւ 400 տինար ոսկի հաւաքեցին եւ Գաբրիէլին տուին, որ արձակել տուաւ Պատրիարքը եւ թողուց որ դառնայ Ս. Պարսամի վանքը։

Գաբրիէլ ուրիշ ապաշնորհ քայլեր ալ առած է Ասորիներու դէմ եւ ատելի եղած է անոնց։

---

Մուհամմէտ Իսմայիլ Իպն Դանիշմենտ Կիւմիւշթէքին, Մուհամմէտ Իպն Կիւմիւշթէքին, Ահմէտ Իպն Դանիշմենտ, Ահմէտ Ղազի, Մելիք Ղազի Մուհամմէտ եւայլն։ Յաջորդած էր Դանիշմենտեան իշխանութեան հիմնադիր Տայլուի։

(1) Հաւանօրէն 1099 պիտի ըլլայ, վասնզի մինչեւ 1099 պատրիարք էր Միքայէլ Ասորի։

(2) Ասիկա եօթը հակաթոռ պատրիարք եղած է ըստ Chabot-ի։

Այսպէս երբ Հոկտեմբեր 1095–ին կը մեռնի Մելիտինէի Մետրոպոլիտը՝ Իգնատիոսը, Աբու՛լ Ֆարաճ անոր տեղ կը ձեռնադրէ 22 Մայիս 1096–ին Սայիտ Պար Սաբունին, որ բազմահմուտ աստուածաբան մը եւ հռչակաւոր հեղինակ մըն էր ասորերէն ու յունարէն երկասիրութեանց (Michel le Syrien, Գ. 185):

Իր ընտրութիւնը կատարուած ըլլալով Գաբրիէլի պահանջումով՝ Սայիտ Պար Սաբունին, որ Յովհաննէս վերակոչուած էր, Մելիտինէ եկաւ երբ քաղաքը Թուրքերու յարձակումին կ'ենթարկուէր: Իր քաղաք մտած օրն իսկ դռները գոցուեցան եւ Իկոնիոյ Գըլըճ Արսլան Ա. սելճուկ սուլթանը պաշարեց քաղաքը 1096–ին:

Գաբրիէլ եպիսկոպոսէն կը խնդրէ իրեն հետ հսկել պահապաններու վրայ եւ ան իր կարելին կ'ընէ այս ուղղութեամբ եւ կը քաջալերէ ժողովուրդը:

Գըլըճ Արսլան դեսպան մը կը ղրկէ, որ կը մօտենայ եւ եպիսկոպոսին կ'ըսէ որ լսէ իր խօսքերը:

Գաբրիէլի հրամանով եպիսկոպոսը պարիսպին վրայ կը բարձրանայ եւ Գաբրիէլ անոր ետին պահուըտած մտիկ կ'ընէ դեսպանին խօսքերը: Դեսպանը կ'ըսէ թէ «Սուլթանը ձեզի կ'ըսէ որ քաղաքը յանձնէք: Այն ատեն ձեզի խաղաղութիւն եւ բարիք պիտի շնորհէ, ապա թէ ոչ, սուրով պիտի դրաւէ եւ Աստուած ձեզմէ հաշիւ պիտի պահանջէ թէ՛ ձեր եւ թէ ամբողջ ժողովուրդին արիւնին համար»: Մետրոպոլիտը դեսպանին պատասխանեց ըսելով թէ «մինչեւ հիմա ոչ ոք կրցած է այս քաղաքը պատերազմելով գրաւել եւ երբեք պիտի չկարենայ: Տասը տարուան եւ աւելի ատենուան համար հաց ունի» եւ դեսպանը ետ դարձուց այս պատասխանով: Մետրոպոլիտը Գաբրիէլի ըսաւ. «Հիմա լսեցիր, տէր, թէ ի՞նչ ըսուեցաւ. լաւ է որ մեր կամքով յանձնուինք»: Եւ երբ Գաբրիէլ այս խօսքը լսեց, սկսաւ ատել եպիսկոպոսը եւ Գաբրիէլի դաւանակից Յոյները չատ դէչ աչքով նայիլ սկսան եպիսկոպոսին, զոր Ֆրանքները, այսինքն Խաչակիրները, արդէն չարունակ կ'ամբաստանէին թէ քաղաքը Թուրքերուն յանձնել կ'ուզէր, վասնզի լսած էին թէ անիկա իրենց դաւանակիցները պզտիկ կը ձգէր իր կրօնադաւանական հմտութեամբ:

Միքայէլ Ասորիի պատմութենէն կը հասկցուի թէ Գաբրիէլ եւ Յոյները տեսնելով որ ժողովուրդը որքան կը սիրէ եպիսկոպոսը, կ'որոշեն զայն սպաննել: Երբ պարիսպէն վար կ'իջնէ, անոր կը պատմեն թէ Գաբրիէլ հաւատացեալ մը (այսինքն Ասորի մը) մահուան դատապարտած էր: Եպիսկոպոսը, ընկերակցութեամբ քահանաներու, կը փութայ Գաբրիէլի քով, խընդրելու համար որ մահուան պատիժը չգործադրուի: Գաբրիէլը, որ դուրս ելած էր, եպիսկոպոսը գտաւ երկու պարիսպին միջեւ, ձի հեծած եւ շրջապատուած հետեւորդներով: Եպիսկոպոսը սկսաւ աղաչել ըսելով «Գթա, ո՛վ օրհնեալ իշխան, գթա՛ դժբախտներուն: Դուրսը կը սպաննեն, ներսն ալ թող մարդ չսպաննուի»:

Գաբրիէլ, որ միտքը դրած էր եպիսկոպոսը սպաննել՝ ըսաւ. «Ուրեմն դուն ալ քաղաքը յանձնել կ'ուզես Թուրքերուն» եւ հրամայեց նիզակաւորներէն մէկուն, «զա՛րկ»։ Բայց երբ ան չհամարձակեցաւ, ինքն առաւ նիզակը, զարկաւ գլխուն եւ սպաննեց (4 Յուլիս 1096–ին), անոր ձեռնադրութենէն միայն 40 օր ետք (Michel le Syrien, Գ., 191)։ Հոն գտնուող քահանաները փախան եւ ցրուեցան։ Ամբողջ քաղաքը յուզման ենթարկուեցաւ եւ բազմութիւն հաւաքուեցաւ եպիսկոպոսին նահատակուած վայրը։ Գաբրիէլ վախցաւ, երբ տեսաւ որ ժողովուրդը կը հաւաքուէր։

Հրամայեց եպիսկոպոսին մարմինը պարտէզ տանիլ եւ եղէգներու մէջ ծածկել։ Երկու օր ետք յուղարկաւորութիւնը կատարուեցաւ եւ մարմինը ամփոփուեցաւ եկեղեցիի մը մէջ (տես Michel le Syrien, Գ. հտ., էջ 186—187)։

Գաբրիէլի արարքներէն Միքայէլ Պատրիարք (Michel le Syrien, Գ. 180) կը յիշէ նաեւ 1098–ին կատարած անոր մէկ շատ անգութ գործը։

1098–ին Գաբրիէլ քաղաքին ազդեցիկ անձերէն[1] շատերը սպաննած է եւ անոնց տուներէն ոսկի, արծաթ եւ ուրիշ առարկաներ առած է, ինչպէս նաեւ գրաւած է Ասորի Եկեղեցիին խաչերը, բուրվառները եւ նոյնիսկ միւռոնի անօթը եւ ամբողջ գանձը։

Գաբրիէլ նաեւ քանդած է տուները եւ շինած քաղաքին միջնաբերդն ու պարիսպը (Michel le Syrien, Գ., էջ 180)։

Բոլոր այս արարքները կ'երեւի թէ ունեցան իրենց հակազդեցութիւնը եւ Գաբրիէլ բնաւ չսիրուեցաւ ժողովուրդէն։ Մալաթիոյ բնակիչները իրեն դէմ էին, այնպէս որ աւելի Թուրքերուն օգնեցին քան թէ իրեն։

Այս պայմաններուն մէջ անխուսափելի էր Մալաթիոյ Թուրքերու կողմէն գրաւումը։

Այն ատեն Սելճուկները Փոքր Ասիոյ մէջ ունէին երկու զօրաւոր իշխանութիւններ, այսինքն Սելճուկ Ռումի սուլթանութիւնը՝ Գոնիա մայրաքաղաքով, եւ Դանիշմենտեան էմիրութիւնը՝ Նիկսար մայրաքաղաքով, որոնք սպառնալիք մը կը կազմէին քրիստոնեայ — մասնաւորապէս հայ — տկար իշխանութիւններու, որոնք հաստատուած էին Եփրատի հովիտին մէջ եւ Տաւրոսեան լեռներուն վրայ։

Ամենէն աւելի վտանգուած իշխանութիւններն էին Մալաթիոյ եւ Եդեսիոյ իրարու բարեկամ կամ դաշնակից երկու հայ իշխանութիւնները, որոնք Ալփասլանի հիմնած երկու իսլամ իշխանութիւններուն գրաւել ծրագրած շըրջանակներուն մէջ կը գտնուէին։ Մալաթիա անմիջական դրացին էր թէ՛ Իկոնիոյ սուլթանութեան եւ թէ Նիկսարի էմիրութեան հողերուն։

Այս երկու իշխանութիւններն ալ չէին կրնար անտեսել Մալաթիոյ ռազմական դիրքին կարեւորութիւնը եւ հետեւաբար երկուքն ալ անխուսափելի

(1) Պատմագիր պատրիարքը անոնց անունները ամբողջ մի առ մի կը յիշէ։

էր որ պիտի ուզէին Մալաթիան գրաւել։ Եթէ միացեալ ոյժերով յարձակէին, Մալաթիա շուտով պիտի գրաւուէր. բարեբախտաբար անոնք իբրեւ մրցակիցներ իրարու հետ համաձայն չէին եւ Մելիք Շահի մահէն (1092) ետք իրարու դէմ կը մաքառէին (Ա. Ալպօյաճեան, ՊԱՏՄ. ԵԻԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 196)։

Դանիշմենտ էմիրները, որոնք ծագումով կ'երեւի թէ կը սերէին հայ կամ ուրիշ քրիստոնեայ ազգէ մը, աւելի քրիստոնեաներու օգնութեան վրայ յոյս դրած ըլլալ կը թուին, վասնզի, ինչպէս կը տեսնուի, իրենց դաշնակից կը նկատէին Տաւրոսի եւ հիւսիսային Սուրիոյ քրիստոնեայ պզտիկ իշխանութիւնները, ինչպէս նաեւ իրենց դրացի Մելիտինէի Գաբրիէլ եւ Եդեսիոյ Թորոս իշխանները. ուրեմն կը կռթնէին այդ շրջանակներու մէջ ապրող Հայերուն եւ Ասորիներուն վրայ, զորս սիրաշահիլ կ'աշխատէին։

Դանիշմենտ Ահմէտ Կիւմիւշթէկին Խաչակիրներու այս կողմերը գալուստէն, այսինքն 1097-էն առաջ, իբրեւ իր ճորտերը կամ հովանաւորեալները՝ կը պաշտպանէր, ինչպէս յիշուեցաւ, Մալաթիոյ Գաբրիէլ եւ Եդեսիոյ Թորոս իշխանները, Իկոնիոյ Սելճուկեան Գլըճ Ասլան Սուլթանին պահանջներուն եւ ասպատակներուն դէմ։

Սակայն Գլըճ Ասլան իր ոսոխին այդ դաշնակիցները կը հարուածէր շարունակ։ Այսպէս 1096-ին Մելիտինէի վրայ գնաց եւ քաղաքը պաշարեց ճիշդ այն օրերուն երբ Գաբրիէլ կը սպաննէր (+14 Յուլիս 1096) Յովհաննէս վերակոչեալ նոր եպիսկոպոս ձեռնադրուած ասորի գիտուն եկեղեցականը՝ Սայիտ Պար Սաբունին, ինչպէս տեսանք քիչ վերը։

Գլըճ Ասլան (1092—1107) գուցէ յաջողէր քաղաքին տիրել, եթէ Խաչակիրները 1097-ին Նիկիա չհասնէին եւ անկէ չանցնէին Փոքր Ասիա, վասնզի երբ Սուլթանը իմացաւ որ անոնք կը յառաջանան, Մելիտինէի պաշարումը ձգեց՝ երթալ պաշտպանելու համար իր հողերը (հմմտ. Michel le Syrien, Գ., 187)։

Դանիշմենտ ալ իր կարգին իր հողերը պաշտպանելու աշխատեցաւ։

Երկու հակառակորդները — Ռումի Սուլթանը եւ Դանիշմենտ էմիրը — առանձին-առանձին ճակատեցան եւ երկուքն ալ պարտուեցան Խաչակիրներէն։ Գլըճ Ասլան կը պարտուէր Խաչակիրներէն Հերակլիայի (հիմա Գոնիաէրէկլի) մօտերը եւ Դանիշմենտի զօրքերը ցիրուցան կ'ըլլային Դարիլէի մէջ (տես Ե. Քասունի, ԱԿՕՍ, թիւ ԻՁ., էջ 111), վասնզի անոնք զատ-զատ փորձած էին դիմադրել։

Այս ձախողութիւնները իրարու միացուց Գլըճ Ասլան Ա.ը եւ Ահմէտ Ղազի Կիւմիւշթէկինը, որոնք իրարու սերտօրէն գործակցեցան ընդդէմ առաջին Խաչակիրներուն (1097)՝ անոնց Երուսաղէմ երթալու ճամբուն վրայ Փոքր Ասիոյ մէջ։ Երկու զինակիցները մեծ չարիք հասցուցին Խաչակիրներուն, մինչեւ որ անոնք հասան Կիլիկիա, որուն հայ իշխանները անոնց օգնեցին ու զանոնք պարենաւորեցին։

Իսկ երբ Խաչակրութեան վերջապահներէն Պոլտուին ուղղակի խալիֆայութեան կեդրոնը Պաղտատի վրայ քալելու նպատակով դէպի Կեսարիա արշաւեց, Ռումի Սուլթանը եւ Դանիշմենտ իրենց միացեալ ոյժերով ամէն ճիգ ըրին հասարակաց թշնամիին դէմ կանգնելու համար, Մեծ Սելճուկին Պարկիարուխի հետ, որ 1097-ին մեծ բանակով մը իր սպարապետը Պիրպողան ղրկեց արեւմուտք, Ֆրանկներու դէմ։ Ան գրաւեց Անտիոքը, ուր իբրեւ Ամիրա նստաւ Պիրպողայի որդին՝ Աղիւսիան[1]։ Բայց Ֆրանկները, ութը-ինը ամիսներու պաշարումէ մը ետք, Անտիոքը վերագրաւեցին՝ քաղաքին քրիստոնեայ բնակիչներուն մատնութեամբ (Ա. Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 415), եւ Աղիւսիան ամիրա «փախաւ ի քաղաքէ եւ սպանաւ ի գեղացեացն մանկաղաւ հատեալ զգլուխ նորա» (ՈՒՌ., էջ 321)։

Գաբրիէլ, Մալաթիոյ իշխանը, տեսնելով իսլամ իշխանութիւններու գրգռութիւնը հանդէպ քրիստոնեայ փոքր տանուտէրներու, իբրեւ հետեւանք Խաչակրութիւններու, որոնք իսլամ-քրիստոնեայ գօտեմարտութիւն մը ըստեղծեցին Մերձաւոր Արեւելքի մէջ, յարեցաւ քրիստոնեաներու, նման Տաւրոսի եւ հիւսիսային Սուրիոյ քրիստոնեայ փոքր իշխաններուն, եւ Խաչակիրներուն հետ սիրով վարուեցաւ (Guillaume de Tyr =Գուլիէլմոս Տիւրացի. Թ. 21) եւ աշխատեցաւ իր դիրքը ապահովել։ Ասիկա պատճառ եղաւ որ երկու իսլամ զինակից պետութիւնները գրաւելու աշխատին Մալաթիան, որ իբրեւ կամրջագլուխ կարեւոր դիրք մըն էր։

Գըլճ Ասլան, որ երբ Խաչակիրներէն պարտուած էր, Դանիշմենտ Կիւմիւշթէկինի (1086—1106) քով ապաստանած էր, անոր թելադրութեամբ 1100-ին բանակով մը յառաջացաւ դէպի Մալաթիա։

«Եկից զօրօք առհասարակ զամենայն դաշտսն եւ յարուցանէր սաստիկ պատերազմ ի վերայ քաղաքին Մելիտինոյ, եւ եդեալ բաբանս նեղէր զքաղաքն»։ Գաբրիէլ «զամենայն քաջութեամբ կացեալ... ամրացուցանէր զքաղաքն». այնպէս որ «կացեալ անդ Սուլթանին զաւուրս բազումս եւ ոչինչ կարաց առնել, դարձաւ ամօթով եւ գնաց յաշխարհն իւր» (ՈՒՌ., էջ 306) կամ ինչպէս Վարդան (էջ 110) կը վկայէ, Գաբրիէլ Գըլճ Ասլանը «դարձոյց... անարգանօք» (հմմտ. F. Chalandone, Jean II. Comnène et Manuel Comnène, էջ 40)։ Գաբրիէլ ուրիշ ապաւէն չունենալով բոլորովին յարեցաւ Խաչակիրներուն եւ գրեթէ զինակցեցաւ անոնց, իր աղջիկը՝ Մարսիլը կամ Մորֆին կնութեան տալով Պոտուին Բ.ի (Bandour de Burg) (Ալիշան ՍԻՍՈՒԱՆ, էջ 47, ՎԱՐԴԱՆ, էջ 110), որ Եդեսիոյ կոմսն էր եւ լաւ յարաբերութիւններ պահեց իր աներոջ հետ։

Գաբրիէլ այս խնամութիւնը հաստատելով կը յուսար Խաչակիրներու օգնութեամբ ազատիլ սպառնացող վտանգէն, որ շատ վերահաս կը թուէր։

---

(1) Ըստ Լատինաց՝ Բագիսիոն կամ Ակսիէն, որ ըստ Միշոյի Խաչակիրներու Պատմութեան՝ 1097-էն մինչեւ 1098 Յունիս իշխած է Անտիոքի մէջ։

Գաբրիէլ, որ վարանող չէր խորամանկութիւններ եւ խաբէութիւններ գործադրելու, 1100-ին տագնապը անցընելու համար իբր հնարք հաւանօրէն առանց անկեղծութեան, ուրիշ ճար չգտաւ եթէ ոչ Մալաթիան Լատիններուն տալ խոստանալ եւ անոնցմէ օգնութիւն խնդրել (Michel le Syrien, Գ., էջ 182 եւ Guillaume de Tyr, Թ. 21 եւ ԺԲ. 4)։

Պոհեմունդ՝ Անտիոքի իշխանը որովհետեւ այդ օգնութիւնը տալու տրամադիր կը թուէր, Գիյոմ Ասլան խոհեմութիւն համարեց քաշուիլ Մալաթիայէն, սակայն Մուհամմէտ Իսմայիլ Իպն Դանիշմենտ Կիւմիւշթէկին[1] (1084—1106)՝ Սեբաստիոյ ամիրան՝ երբ սպառնալ սկսաւ, այն ատեն Պոհեմունդ, իր քեռորդիին ու զօրավարին՝ Ռիչարտի հետ հեծելագունդով մը «անմտաբար անպատրաստութեամբ» (ՈՒՌՀ., էջ 330) ելաւ Դանիշմենտի դէմ, չարաչար յաղթուեցաւ եւ Ռիչարտի հետ գերի ինկաւ, Մարաշի մօտ դարանի մը մէջ յինալով 1100 Յուլիսին (ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 197)։ Պոհեմունդ եւ Ռիչարտ երկաթէ կապանքներով Նիկսար կամ Սեբաստիա տարուեցան։

Այս պատերազմին մէջ Դանիշմենտ մեծ կոտորած կու տայ քրիստոնեաներու բանակին։ Ըստ Ուռհայեցիի (էջ 335) «եղեւ կոտորումն ամենայն զօրաց Ֆրանգաց եւ Հայոց»։

Պոհեմունդ եւ Գաբրիէլ այն ատեն դիմեցին Եդեսիոյ Պուտուէն կոմսին (Baudouin de Bouillon 1100—1101), որ օգնութեան հասաւ անոնց եւ վանեց Իսլամները, ու վերցնել տուաւ Մալաթիոյ պաշարումը եւ Կիւմիւշթէկինը (1084—1106) հետապնդեց երեք օր առանց անոր ետեւէն կարենալ հասնելու։

Պոհեմունդ երեք տարի (Յունիս 1100-էն մինչեւ 1103 ամառը) Դանիշմենտի քով գերութեան մէջ բանտարկեալ մնաց, եւ Դանիշմենտ, որ արդէն գրաւած էր Խարբերդը, այդ երեք տարիներուն ամէն տարի Սեբաստիայէն «եկն ... ի Մելիտինէ եւ այրեաց ի մուտսն եւ դարձաւ» (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 406)։

Ամառը կու գար, կ՚աւերէր երկիրը, հունձքերը կ՚այրէր եւ ձմեռը կը մեկնէր (Michel le Syrien, Գ., էջ 187)։ Այս երեք տարիներու յարձակումներուն եւ պաշարումներուն հետեւանքով, անկարելի կ՚ըլլար հունձք ստանալ եւ քաղաքը սովի կը մատնուէր (հմմտ. (Michel le Syrien, էջ 189)։

Ալեքս կայսեր (1081—1118) միջամտութեամբ ի փոխարէն 100,000 տինար փրկագինի մը (որուն 20.000ը Քեսունի Գող Վասիլ իշխանը տուաւ), Կիւմիւշթէկին 1103-ի ամառը ազատ արձակեց Պոհեմունդը, որ Քեսունի եւ Մալաթիոյ ճամբով դարձաւ Եդեսիա՝ իր քաղաքը (Michel le Syrien, Գ., 189)։

Գաբրիէլ, որ հաւանօրէն յուսահատական կը տեսնէր իր իշխանութեան վիճակը, Մալաթիան կը յանձնէ Պոհեմունդի՝ անոր ձգելով 50 ձիաւոր քա-

---

(1) Մելիք Ղազի Մուհամմէտ անունով ալ յիշուած է։

ղաքը պաշտպանելու համար ։

Այս կերպով Գաբրիէլ կը յուսար փրկել իր իշխանութիւնը Դանիշմենտի ճիրաններէն, բայց չյաջողեցաւ՝ ամենէն առաջ անոր համար որ Դանիշմենտի դէմ մղուած երեք տարուան պատերազմներուն մէջ ինք «խստագոյն նեղէր զՔաղաքն Քան զարտաքոյսն» (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 406), ինչպէս Ասորի Պատրիարքին ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ համառօտեալ թարգմանութեան մէջ այսպէս սեղմ տողով մը թարգմանուած է ։

Բնագիրին մանրամասն բացատրութենէն կը տեսնուի թէ Գաբրիէլ ի՛նչպէս գրգռած էր Մալաթիոյ բնակիչներուն ատելութիւնը ։

«Քաղաքին ներսը Գաբրիէլ Թուրքերէն աւելի կը հարստահարէր աղքատները ։ Երբ Հեթումի որդի Թորոս Կիւրապաղատը սպաննուեցաւ Եդեսիոյ բնակիչներուն կողմէ, Ֆրանքները եկան եւ իշխեցին Եդեսիոյ, եւ Գաբրիէլ աշխատեցաւ այդ Ֆրանքները բերել եւ Մելիտինէ մտցնել (Michel le Syrien, Գ., էջ 187) ։

Գաբրիէլ Մելիտինէի մէջ Դանիշմենտի ճնշումին ենթարկուած երեք անգամ երդումով կը խոստանայ Ֆրանքներուն իրենց յանձնել քաղաքը ։ Անտիոքի իշխանը Պոհեմունդ հաւատալով Գաբրիէլի խոստումին՝ վստահութեամբ եկաւ Մելիտինէ, զայն գրաւելու համար ։

«Երբ Հայոց կողմէ գրաւուած տեղերը հասաւ, Հայերը անոր դարաններ լարեցին, որովհետեւ կը վախնային որ մի գուցէ զիրենք հեռացնէ այն տեղերէն՝ երբ ինք իշխէ ։ Հետեւաբար Հայերը գաղտնաբար մարդ ղրկելով լուր տուին Դանիշմենտի ։ Եւ նոյն ինք անիծեալ Գաբրիէլ, երբ տեսաւ որ Թագաւորը (Պոհեմունդը ըսել կ՚ուզէ) Gafina ըսուած տեղը հասած է, զղջաց եւ չուզեց թողուլ որ քաղաք մտնէ, այլ ջանաց անոր յառաջանալը յապաղեցնել, զայն խաբելով սուտ խօսքերով, մինչեւ որ Դանիշմենտ կարենար հասնիլ, դարան լարեց Թագաւորին եւ զայն բռնեց ։ Այն ատեն, Գաբրիէլին եւ Հայերուն յանցանքով, Թուրքերը շատ զօրացան ։ Դանիշմենտ Պոհեմունդ Թագաւորը Սեբաստիա ղրկեց եւ Մելիտինէն պաշարեց ։

Ապիրատ Գաբրիէլ այս չարիքներուն վրայ աւելցուց նաեւ ուրիշ չարիքներ ։ Անգթօրէն կը կողոպտէր, կը կապտէր եւ կը կոտորէր ։ Ասոր համար է որ երկու գինուոր քաղաքը յանձնեցին Թուրքերուն, եւ Դանիշմենտ քաղաք մտաւ 18 Սեպտ.1101-ին[1]» (Michel le Syrien, Գ., էջ 188) ։

Միքայէլ Ասորիի հայ թարգմանութեան մէջ «յայսմ ամի ետ Գաբրիէլ յոյն զՄելիտինէ ի Դանիշման եւ ստեաց Ֆռանքին եւ ոչ ետ ի նոսա ըստ խոստմանն» գրուած է շատ համառօտելով անցքերը ։

Գաբրիէլի իր խօսքը դրժելուն պատճառը բացայայտ է ։ Հաւանական է նոյնիսկ մտածել թէ Գաբրիէլ երեք իրարու հակառակորդ ոյժերու — Սելճուկներու, Բիւզանդացիներու եւ Խաչակիր Լատին իշխաններու միջեւ սեղ-

(1) Այս թուականը ճիշդ չի թուիր. հաւանօրէն 1103—4-ին պէտք է ըլլայ։

*մուած չուարած էր ի՛նչ ընելը եւ դարձեալ իր սովորական խաբէութիւններով անելէն դուրս ելլել կը փորձէր։ Բայց դժբախտաբար Գաբրիէլ քաղաքին բնակիչներուն ատելի եղած էր, վերը բացատրուած պատճառներով։*

*Այնպէս որ երբ* 1100 (*ճիշդ* 1102) *աշնան Կիւմիւշթէկին Մալաթիոյ առջեւ եկաւ, քաղաքացիք Գաբրիէլը յանձնեցին Դանիշմենտ Կիւմիւշթէկինի, որ Մալաթիա մտաւ* 18 *Սեպտեմբերին* (Michel le Syrien, Գ., 188, Recueil des Historiens de Croisades, Historiens Orientaux, I, 5, 203, III 522, 526, ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ, էջ 333—335· E. I. Գ., էջ 211)։

*Վեր· Եղիա Քասունի այնպէս կը ներկայացնէ թէ Պոհեմունդի եւ Ռիչարտի գերութենէն ետք, Գաբրիէլ Յոյնը ստիպուած էր Մալաթիան յանձնել Դանիշմենտի եւ ընտանեօք Կ· Պոլիս անցնիլ* 1101-*ին* (*Կոմմագենացի*, ՓԻԼԱՐՏՈՍ ՀԱՅԸ, էջ 88—9), *սակայն Միքայէլ Պատրիարքը իր ժամանակագրութեան մէջ* (Michel le Syrien, Գ., 188) *բոլորովին տարբեր վախճան մը վերապահուած ցոյց կու տայ անոր։*

*Ան կը գրէ թէ* «Թուրքերը զայն անգթօրէն չարչարեցին։ Քանի մը քրիստոնեաներ (*այս չարչարանքները*) աւելի սաստկացուցին եւ իրենց չարչարանքներուն վրէժը լուծեցին հարուածելով զայն եւ անոր յիշեցնելով սուրբ եպիսկոպոսին սպանութիւնը եւ այլ ոճիրները։ Զայն անարգանքի ենթարկեցին եւ թունալից խօսքեր ըսելէ ետք, զայն տարին Gatya ամուր բերդին առջեւ, ուր կը գտնուէր իր կինը։ Երբ Թուրքերը իրեն հրամայեցին կնոջը ըսել որ ամրոցը յանձնէ, իր դիւային խորամանկութեամբ, ուզեց տակաւին զանոնք խաբել եւ ըսաւ· «Փոքր Միտասը իբրեւ նշան ղրկեցի, որ բերդը յանձնէ»։

Արդ, այս «մի տաս» բառը հայերէն լեզուով կը նշանակէ «մի՛ տար»։ Երբ Թուրքերը հասկցան թէ զիրենք կը խաբէ, սպաննեցին եւ մարմինը նետեցին շուներուն առջեւ, ուր զայն կերան» (Michel le Syrien, Գ., էջ 188—9)։

*Ինչպէս կը տեսնուի, շատ կասկածելի է Գաբրիէլի Կ· Պոլիս ապաստանած ըլլալու պատմութիւնը, որ Միքայէլ Պատրիարքի այս տողերով կը հերքուի։*

*Նոյնպէս այս տողերը կը ժխտեն նաեւ այն տեղեկութիւնը, զոր օտար աղբիւրներ կու տան, որոնց համաձայն Գաբրիէլ քաղաքին գրաւումէն անմիջապէս ետք սպաննուած է Դանիշմենտ Ահմէտ Ղազի Կիւմիւշթէկինի* (1084—1106) *կողմէ։*

*Ամէն պարագայի մէջ Մալաթիոյ Դանիշմենտէն գրաւումը կը հաստատուի բազմաթիւ աղբիւրներէ։ Ի մէջ այլոց Իպն էլ Աթիր պատմագիրն ալ կը հաստատէ թէ Պոհեմունդի գերի բռնուելէն ետք, Դանիշմենտ Ահմէտ Ղազի կամ Մուհամմէտ Իսմայիլ Կիւմիւշթէկին զանազան յաջողութիւններ եւ ձախողութիւններ կ'ունենայ եւ վերջապէս կը տիրէ Մելիտինէի, Սեբաստիոյ եւ ուրիշ քաղաքներու, որոնք կ'ենթարկուէին մահմետական տիրապետութեան*

*եւ մաս կը կազմէին Դանիշմենտ իշխանութեան*[1]:

*Մալաթիոյ գրաւումէն ետք* «Թուրքերը քաղաքին ամբողջ հարստութիւնը եւ ինչ որ գտան դժբախտ քաղաքին մէջ, կողոպտեցին, որովհետեւ Դանիշմենտ իր զօրքերուն ձգած էր անոր բոլոր հարստութիւնները, բացի մարդոցմէ: Արդարեւ թոյլ չտուաւ որ մէկը սպաննուի, որովհետեւ ինքը [գերի] առաւ բոլոր բնակիչները, զորս իրենց տուները դարձուց: Իր երկրէն հաց, կով եւ ուրիշ անհրաժեշտ բաներ բերել տալով՝ անոնց բաժնեց: Անոնցմէ շատերը ազատ արձակեց, որոնք իր երկիրին մէջ գերի էին երկար տարիներէ ի վեր եւ զանոնք Մելիտինէ դրկեց: Եւ Մելիտինէ բազմաթիւ բարիքներ տեսաւ Դանիշմենտի օրով[2]:

Առատութիւնը եւ բարգաւաճումը աւելցան: Հոն Գաթեպան դրաւ վասիլիկ[3] անուն սրտոտ եւ աստուածավախ մէկը» (Michel le Syrien, Գ., էջ 188):

*Մելիտինէի Դանիշմենտ տիրապետութիւնը անդորր ու խաղաղ չեղաւ դժբախտաբար, եւ քաղաքը երկար չմնաց իրենց ձեռքը: Մոհամմէտ Իպն Կիւմիւշթէկինի մահէն* (1104 *կամ* 1106)[4], *գահակալութեան վէճերէ եւ իր* 11 *եղբայրներուն սպանութենէն ետք, յաջորդեց իր անդրանիկ որդին, Էմիր Ղազի Պէն Մուհամմէտ Կիւմիւշթէկին կամ պարզապէս Միր կամ Էմիր Ղազի կամ Մելիք Ղազի* (1106—1136), *որուն գահակալութեան դէմ ելած էր Սելճուկ Սուլթան Գըլըճ Ասլան Ա.ի չորս որդիներէն մին՝ Արապ, որ սպաննուած է Էմիր Ղազիէն:*

*Այս պատճառով Դանիշմենտ եւ Ռումի սելճուկ իշխան երկու պետութիւնները թշնամացան իրարու հետ եւ իրարու հետ մաքառեցան, զինակցելով քրիստոնեայ իշխանութիւններու հետ: Այսպէս Սելճուկները՝ Բիւզանդիոնի եւ Դանիշմենտները՝ Անտիոքի Լատին դքսութեան հետ զինակցեցան եւ իրարու դէմ կռուեցան:*

*Այս պայքարը աղիտաբեր եղած է մասնաւորապէս Դանիշմենտի տան համար, որ տկարացաւ եւ ուժասպառ եղաւ (Հմմտ.* ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻԱՅ ՀԱՅՈՑ, *էջ* 200—1):

---

(1) *Դանիշմէնտեանց բաւական ընդարձակ եւ լրիւ պատմութիւնը տեսնել՝* Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց-ի *մէջ* (*էջ 188-217*):

(2) *Միքայէլ Ասորի Պատրիարքի ժամանակագրութեան հայերէն համառօտուած թարգմանութեան մէջ կը կարդանք թէ Դանիշմէնտ Մալաթիան գրաւելէն ետք* «աւրար դիւրութիւն եւ շինութիւն... եւ խնամ արկ ի վերայ նոցա տալով նոցա հաց եւ անասունս եւ ազատութիւնս եւ շինեցան» (*Միքայէլ Ասորի, 1871, Երուսաղէմ, էջ 406*):

(3) *Այս անունը ենթադրել կու տայ թէ Մելիտինէի քրիստոնեայ կառավարիչ մը նշանակած էին Դանիշմանեանք, շահելու համար զանոնք:*

(4) *Ըսուած է որ Մելիտինէի գրաւումէն երկու տարի ետք մեռած է Կիւմիւշթէկին: Արդ Մալաթիա եթէ 1101-ին գրաւուած է, Կիւմիւշթէկին մեռած պէտք է ըլլայ 1103-ին, մինչդեռ անիկա մեռած է 1106-ին. ուրեմն Մալաթիա գրաւուած է 1104-ին: Ժամանակագրական շփոթութիւն մը կայ, լուծումի կարօտ:*

*Ամէն պարագայի մէջ Փիլարտոսի անկումէն ետք, 15 տարի, այսինքն մինչեւ 1101, Մալաթիա տակաւին ապրած է Գաբրիէլ Յոյնին իշխանութեան տակ։*

*Գաբրիէլ Հայ–Հոռոմ կը թուի թէ Փիլարտոսի տեղ իշխանապետ դառնալ ուզող Մարաշի Թաթուլ իշխանին տեղ ուզած է ինքն իշխանապետի դեր կատարել, բայց ինչպէս տեսնուեցաւ, չէ յաջողած եւ Մալաթիա Սելճուկ* ***Ռումի Սուլթանութեան*** *կցուած է։*

*Դանիշմենտ Էմիրին մահը իմանալով Գըլճ Ասլան* 1106 *Յունիս* 28–*ին յարձակած է Մալաթիոյ վրայ եւ քաղաքին բոլորակաձեւ աշտարակին առջեւ, որ հիւսիս–արեւելեան կողմը կը գտնուէր, դրաւ պաշարման մեքենաներ եւ բազմաթիւ բուռն յարձակումներէ ետք քաղաքը ստիպուեցաւ անձնատուր ըլլալ» (տես* Michel le Syrien, *Գ., էջ* 192)*։*

*Գըլճ Ասլան Ա.* 2 *Սեպտեմբեր* 1106–*ին մտաւ Մալաթիա, Խապուրի ճակատամարտին մէջ իր սպանութենէն տարի մը առաջ։*

## ԺԴ.

# ՔԵՍՈՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ
# ԵՒ
# ԱՅԼ ՄԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆՔ ԵՓՐԱՏԱՑԻՈՑ ՄԷՋ

*Մալաթիոյ Գաբրիէլ իշխանին ժամանակակից, նոյն շրջանակին մէջ եւ գրեթէ համանման ծագումով, գոյութիւն ունէր Քեսունի իշխանութիւնը, որ Փիլարտոսի ստորադաս իշխանութիւններէն մին էր, որ հաստատուած էր իշխանապետէն եւ անոր ստորադասուած իշխանութիւններէն ամենէն կարեւորը կը հանդիսանար։*

*Փիլարտոս այս իշխանութիւնը տուած էր Գող Վասիլ*[1]*, որ որդին էր հաւանօրէն Գագրիկ անուն Հայու մը, որուն շուրջ* 1065–*ին, Անիի գրաւումէն ետք, հաւաքուած էին* 300–*ի չափ հայ գողեր, աւելի ճիշդ աւազակներ, որոնք*

---

*(1) Վեր. Եղիա Քասունի ինչպէս Փիլարտոսի նոյնպէս նաեւ Գող Վասիլի մասին ունի շատ արժէքաւոր ուսումնասիրութիւն մը, լի շահեկան մանրամասնութիւններով եւ ուշագրաւ տեսութիւններով (տես* ԱԿՕՍ, *Իթ., էջ* 101—112, *Ը., էջ* 88—101, *եւ* 6*րդ տարի, թ.* 1, *էջ* 114—123)*։ Այս ուսումնասիրութենէն օգտուած եմ Քեսունի իշխանութեան պատմութեան համար։ Լատին մատենագիրներէն ոմանք* Covasilius *կամ* Corovassilius *կը կոչեն Վասիլը։*

*Մելիտինէի լեռներուն մէջ գտնուող գաւառները կը կողոպտէին, եւ ասորի վանքերը կը թալէին, ինչպէս կը նկարագրէ Բարհեբրէոս (Աբուլ Ֆարաճ) ասորի պատմագիրը։*

*Մելիտինէի կառավարիչները կ'որոշեն անոնց ձգել Գուլոսի եւ Կղաւտիայի*[1] *անմշակ մնացած հողերը, եւ Բիւզանդիոնի կայսրէն հրովարտակ բերել կու տան, անոնց տալու համար չորս գիւղեր՝ այլեւս աւազակութիւն չընելու պայմանով (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, անգլ. թրգ., էջ* 217 *եւ* Michel le Syrien, *Գ., էջ* 163—5)։

*Այս Անիէն փախստական* 300 *Հայերու մէջ էին Գող Վասիլ, իր եղբայրը Բագրատ եւ այս վերջինին որդին Սմբատ, Անեցի Գորգ Շիրակացի եւ ուրիշներ։ Անոնք կայսերական շնորհի արժանացան բարեխօսութեամբ Փիլարտոսի եւ անոր գործակիցներուն, այսինքն Եդեսիոյ Հեթումի որդի Թէոդորոս կամ Թորոս իշխանին եւ Մարաշի Թաթուլ իշխանին եւ Մալաթիոյ Գաբրիէլ Յոյնին, եւայլք, որոնք* 7—8 *տարի առաջ պաշտօնի անցեր էին նմանօրինակ վիճակէ մը (Վեր. Եղիա Քասունի, ԱԿՕՍ, ԻԹ. էջ* 105), *այսինքն յելուզակութենէ։*

*Այս Անեցիները քիչ յետոյ Մելիտինէէն ուրիշ տեղեր փոխադրուեցան եւ Ուռհայի, Անտիոքի, Մարաշի եւ այլ տեղերու մէջ զինուորական բարձր պաշտօններու արժանացան (Քասունի, նոյն)։ Կիրակոս (էջ* 53) *եւ Սամուէլ Անեցի (էջ* 109) *պատմիչները կը խօսին Վանանդի կամ Կարսի թագաւոր՝ Գագիկի* 1065–*ին բիւզանդական երկիրներ փոխադրութեան վրայ, Կիրակոս այս առթիւ կ'ըսէ թէ* «Եւ միւս եւս Գագիկ Վանանդեայ եւ Կարուց, ··· գնաց առ Յոյնս, սակայն գլխաւորն դադարեաց յամուրս Գագկայ, եւ այլքն անձնատուր եղեն ընդ ձեռամբ վիշապին (*Ալփասլանայ*) եւ կէսք փախստական գնացին առ կայսրն Յունաց··· Իսկ Յոյնք գնացեալքն ետուն երկիրս եւ քաղաքս կալուածոյ» (*հմմտ. ՍԱՄՈՒԷԼ, էջ* 109)։

*Ասոնցմէ մէկն ալ Գող Վասիլն էր, որ թերեւս* 1068–*ին Ռոմանոս Դ. Տիոժէն կայսեր բիւզանդական կայսրութեան արեւելեան սահմանագլուխին պաշտպանութեան գործը հիմնովին վերակազմելու համար կատարած կարգադրութիւններէն օգտուած էր, հող մը ստանալով։*

*Գող Վասիլի մասին, Միքայէլ Ասորի որոշ կերպով կ'ըսէ թէ* «Փիլարտոսի օրերէն ի վեր» *կարգ մը տեղերու իշխող հայերէն մէկն էր եւ «կը գրաւէր Քեսունն ու Ռապանը»* (Michel le Syrien, *Գ.,* 187. *հմմտ. ԲԱՐՀԵԲՐԷՈՍ,* 1230)։ *Գող Վասիլ* 1075–*էն* 1082 *Փիլարտոսի ձեռքին տակ գործած է իբրեւ զինուորական պետ եւ* 1080–*ին Փիլարտոս զայն ղրկած է Ռուբէնի հետ, Անտի–*

---

(1) *Կղաւտիա*=Glaudia *կը յիշուի* Goubbas-*ի հետ. կը գտնուէր Մալաթիոյ հարաւ-արեւմուտքը, Եփրատի եզերքը։ Հոն* 1065-*ին Հայերը կ'ապստամբին եւ աւազակութեան կը ձեռնարկեն շրջականերու մէջ։ Կղաւտիա Եդեսիոյ կոմսութեան ստորադաս Կարկառի հողատիրութեան ենթակայ էր։ (Տես* Պատմութիւն կաթողիկոսաց Կիլիկիոյ, *էջ* 249)։

*տաւրոսի երկիրը:*

*Իսկ* 1082–*ին անոր տուած է Քեսունը եւ Ռապանը իբրեւ ճորտական իշխանութիւն, իր աւատական իշխանապետութեան կեդրոնական մասին մէջ, ինչ որ ցոյց կու տայ Փիլարտոսի Գող Վասիլի վրայ ունեցած մեծ վըստահութիւնը:*

*Գող Վասիլ վերաշինեց Քեսունի պարիսպը, որ քանդուած էր Արաբներու տիրապետութեան շրջանին* (Michel le Syrien, *Գ.*, 187):

*Ըստ Քասունիի՝ Փիլարտոս* 1086*ին կը քաշուի ասպարէզէն՝ յանձնարարելով իր ստորադասներուն որ համակերպին սելճուկ վերին իշխանութեան հրամանին եւ անջատ–անջատ կառավարեն իրենց հողերը:*

*Երեւոյթները այնպէս ցոյց կու տան թէ այդ թուականէն սկսեալ Գող Վասիլ կը դառնայ իշխանապետ* (*ԱԿՕՍ, ԻԹ. էջ* 108) *կամ աւատապետ մը, Մելիք Շահի գերիշխանութեան տակ, իր իշխանութեան տակ ունենալով Քեսունէն*[1] *Հիւսնի Մանսուր*[2], *Պեհեսնի*[3], *Հռոմկլայ*[4] *եւ Մարաշ բերդերը եւ անոնց միջեւ գտնուող բնակավայրերը, մեծ մասամբ գիւղեր եւ գիւղաքաղաքներ:*

1092–*ին Մելիք Շահ երբ մեռաւ, Վասիլ աշխատեցաւ չէզոք մնալ սելճուկ պետութեան ներքին խռովութիւններուն մէջ եւ յաջողեցաւ Ռուբէնի պէս իր երկիրը զերծ պահել աւերումէ: Այս պատճառով իբր ապահով եւ խաղաղ վայր, Գող Վասիլի քով հաւաքուեցան իշխանական տուներ* (*ՈՒՌՀ.*, *էջ* 381, 405—6) *եւ իր հրամանին ենթարկուեցան* «ազատագունդ Հայոց» «քաջագունդն Հայոց», «ամենայն զօրքն Հայոց» (*ՈՒՌՀ. էջ* 372, 380, 382, 403): *Այնպէս որ Փիլարտոս իշխանապետին եւ մանրապետութիւններուն վարիչի դիրքը փոխանցուեցաւ իր ամենէն կարող աջակիցին Գող Վասիլի* (*ԱԿՕՍ, ԻԹ.*, *էջ* 108): *Ասիկա լաւ յարաբերութիւններ ունէր Բիւզանդիոնի հետ, որ ճանչցած էր իր իշխանութիւնը, ինչպէս որ կը հաստատուի շնորհուած* Սեւաստոս *տիտղոսով, զոր Ալեքս Կոմնէն կայսրը* (1081—1118) *տուած էր* (*ՈՒՌՀ. էջ* 561): *Ասկէ կարելի է հետեւցնել որ Գող Վասիլ պահ մը եղած է ներկայացուցիչը բիւզանդական կայսրութեան, Եփրատացիներու* (*=Կոմմագինէ*) *շրջանակին մէջ, եւ այդ կողմերուն համար դրեթէ կը կատարէր դեր մը յար եւ նման Լամբրոնի Օշին իշխանին՝ Կիլիկիոյ մէջ կատարածին:*

*Գող Վասիլ, այսպէս մէկ կողմէն Բիւզանդացիները եւ միւս կողմէն Սելճուկեանները սիրաշահելով անոնց սահմանագլուխին վրայ ամրապնդեց իր իշխանութիւնը:*

*Վասիլ, որ մեծ կարողութիւններ ունեցող անձ մը կը թուի ըլլալ, շա–*

---

(*1*) *Քեսուն = Քասուն = Հասուն բառերը կը նշանակեն բերդ:*

(2) *Հիւսնի Մանսուր կը նշանակէ Մանսուրի բերդ:*

(3) *Պեհեսնի = Պէթհասնա կը նշանակէ «Տուն բերդի»* (*Մանուէլ Քասունի, Յուսաբեր, 1 Ապրիլ 1953*):

(*4*) *Հռոմկլայ յայտնի է թէ կը նշանակէ Հռոմի բերդ կամ Հոռոմի բերդ:*

ըունակեց Փիլարտոսի գործը եւ անոր աւատապետական վարչաձեւով իշխանապետութեան աւերակներուն վրայ հիմնեց իր տէրութիւնը, որ անոր ընդարձակութիւնը չունէր — վասնզի կարգ մը մասերը գրաւուած էին — բայց երեսուն տարի ապրեցաւ Փիլարտոսէն ետք:

Վասիլ (1082−1112) իր պետութեան կեդրոն ունենալով Քեսունը՝ տիրեց Մարաշի, Բերդուսի, Հաճընի, Ռապանի (=Կապան) Թոտէլի, Ուրեմնի, իրենց շրջանակներով (ՈՒՌՀ., էջ 372,380—2, 463), Եփրատացիներու շրջանակը, մինչեւ Դ. Հայքի կողմերը, որուն հնօրեայ անկախ իշխանները — որոնք երբեմն Բիւզանդիոնի եւ երբեմն Տիզբոնի կը հպատակէին — ճանչցած էին իր հեղինակութիւնը, ինչպէս Պիրի, Արեւընտանի, Կարկառի իշխանութիւնը (ՈՒՌՀ., էջ 422—3), որոնք Գող Վասիլի մահէն ետք նուաճուեցան Անտիոքի լատին տուներուն կողմէ (1116):

Գող Վասիլ, Մելիք Շահի մահէն (1092) ետք, առիթէն օգտուելով դէպի արեւելք տարածեց իր հողերը եւ գրաւեց Հռոմկլան՝ Եփրատի վրայ (ԱԿՕՍ, ԻԹ., էջ 110), ինչպէս եւ օգնեց Ապլղարիպի եւ Լիկոսի, որ գրաւեն Թլպաշարը եւ Պիրը (ՈՒՌՀ., էջ 422):

Գող Վասիլ մինչեւ Անտիոքի գրաւումը կրցաւ խոհեմութեամբ վարուիլ եւ հեռու մնալ Խաչակիրներէն, որոնց չգործակցեցաւ, սակայն յետոյ ակամայ խառնուեցաւ անոնց պայքարներուն իր Բագրատ եղբօրը պատճառով, որ անոնց հետ յարաբերութիւններ ունեցաւ:

Բագրատ համոզեց Պաղտուինը որ արշաւէ դէպի Եփրատացւոց երկիրը եւ գրաւէ Ռաւընդանը կամ Արեւընդածը (Քիլիսի մօտ), որպէսզի իրեն դարձընէ (Քասունի, ԱԿՕՍ, Լ., էջ 89. ՈՒՌՀ., էջ 383, 423) Թլպաշարը (ՈՒՌՀ., էջ 316, Լօռան, ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ, 1927, էջ 897) եւ Նիկոդիմոս անուն իշխանի մը հողերը (Լօռան, նոյն), Սրուճը, Եդեսիան եւայլն:

Սակայն ո՛չ ինք եւ ոչ իր եղբայրը տեւական բարեկամներ չեղան Խաչակիրներուն (Ե. Քասունի, ԱԿՕՍ, Ը., էջ 88—91):

Գող Վասիլ Կոտըֆրուայի եւ Պոտուինի յաջորդումին դիմադրեց եւ ակամայ խառնուեցաւ Խաչակիրներու ներքին վէճերուն, բնական դաշնակիցը ըլլալով Պոհեմունդի, որ կը գնահատէր այն օժանդակութիւնը, զոր կրնային հայթայթել իրեն երկիրին բնիկները եւ մանաւանդ հայ իշխանները, որոնց վրայ կ'ուզէր որ կռթնէր իր իշխանութիւնը:

Արդարեւ Գող Վասիլ օգնեց Խաչակիրներուն կողմնակից դառնալով Պոհեմունդի, իր Բագարատ եղբօրը պէս: Թէեւ պատմական փաստեր չկան որ հաստատեն Գող Վասիլ–Պոհեմունդ դաշնակցութիւն մը, սակայն Պոհեմունդի եւ անոր քեռորդի Ռիչարտի ազատագրութեան համար տրուած փրկանքին իր քով հաւաքուիլը եւ 20.000 տինարով իրեն մասնակցիլը անուղղակի կը հաստատեն գոնէ սերտ բարեկամութեան մը գոյութիւնը իրենց միջեւ:

Գող Վասիլ միշտ կասկածով վերաբերուելով հանդերձ Լատիններու հետ, ուրիշ օգնութիւններ ալ ըրած է Խաչակիրներուն, որոնք սակայն դէշ

վարձատրած են իր ծառայութիւնը։

Գող Վասիլի իշխանութիւնը, որ ոյժ մը կը ներկայացնէր, թերեւս տոկալ կարենար, եթէ Ֆրանքները չդաւէին իր գոյութեան դէմ եւ Լատիններու Արմենիան[1] արեւմուտքէն եւ արեւելքէն հաւասարապէս յարձակումներու չենթարկէին։

Անոնք այնքան դէշ վարուած են իրենց օժանդակող Հայերուն հետ որ անոնք երբեմն նոյնիսկ իսլամական տիրապետութիւնը նախընտրած են։ Այսպէս, Ալպիստանի եւ Ջահան գաւառի Հայերը Փռանկներու ճնշումէն ձանձրացած կ'ապստամբին եւ Իկոնիոնի Գըլըճ Ասլան Ա. Սուլթանէն (1092—1107) օգնութիւն կը խնդրեն։

Գող Վասիլ, նոյնպէս օգտուելով այդ դժգոհութիւններէն, գրաւեց Մարաշը, Հիսնի Մանսուրը եւ այլ քանի վայրեր, որոնք Խաչակիրներու կը պատկանէին (ԱԿՕՍ, Զ. տարի, Թ. 1, էջ 116)։

Նաեւ այս դժգոհութիւններէն օգտուելով իսլամ բանակ մը 1108-ին Տաւրոս լեռներէն անցնելով կը հասնի Անարզաբա եւ կը կողոպտէ «Ռուբէնի որդի Թորոսի ամբողջ երկիրը», ինչպէս կը պատմէ Ուռհայեցի (էջ 379—380)։

Այդ արշաւող բանակը ապա կու գայ Մարաշի դաշտը եւ անթիւ գերիներ առնելով կը հասնի Գող Վասիլի երկիրը, Բերդուս։ Վասիլ փառաւոր յաղթանակ մը կը տանի անոնց վրայ եւ ուրախութեամբ կը դառնայ Քեսուն։

Գող Վասիլ 1108—1109-ին կը դաշնակցի Պոտուին տը Պուրկի, Ճոսլինի եւ Էմիր Ճաուլիի հետ՝ դիմադրելու համար Տանգրէտին, որ չէր ուզեր տալ Եդեսիոյ կոմսին եւ Ճոսլինի այն հողերը, զորս գրաւած էր անոնց գերութեան ատեն (ՈՒՌՀ., էջ 382—4)։

Յաջորդ տարին (1109), Խլաթի Սուգման Էլ Գութպին, Շահի Արմէն վեհապետը կը յարձակի Հիսնի Մանսուրի կողմը, եւ անխնայ կը կոտորէ կամ կը գերէ արտերու մէջ հունձքով զբաղող մշակները եւ կ'իջնէ մինչեւ Հարթան բերդին առջեւ։ «Այն ատեն Վասիլ 500 ընտիր քաջերով միայն «գողաբար» եկաւ անոնց վրայ, ինքը, իր քեռին Պետրոս, քանամեայ Տղայ Վասիլ, Տարոնեցի Ապլասաթ Տաճատեան եւ Տիգրան Քաջ, իւրաքանչիւրը 100 մարդով, հինգ կողմերէ միանգամայն Գեղչոնեան ոճով խոյացան թշնամիին վրայ։ Այլազգիք այս անակնկալ յարձակումներէն շուարած ի փախուստ դարձան, «քաջազունք Հայոց ··· յաղթեցին զօրաց այլազգեացն մեծաւ յաղթութեամբ եւ արարին սաստիկ կոտորած զնոսա, եւ կալան զՍուլթանն Հայոց եւ զայլ բազում իշխանս Պարսից (իմա Սելճուկ) եւ Վասիլն ի գերութիւն վարէր զնո–

(1) Խաչակիրները երբ Փոքր Ասիան ճեղքելէ ետք հասան Եփրատացիք կամ Կոմմագինէ եւ Տաւրոսեան շրջանները, հոն գտնելով ստուարաթիւ Հայութիւն մը, երկիրը կոչեցին Արմենիա, իսկ բուն Հայաստանը անոնք կը կոչէին Իբերիա, այսինքն Վրաստան, վասնզի այդ երկիրը կը պահէր իր անկախ թագաւորութիւնը։

սա առաջի իւր» ։ (*ԱԿՕՍ*, *Ա*․, 1, *էջ* 117․ *հմմտ*․ *ՈՒՌՀ*․, *էջ* 380—2 *եւ էջ* 572․ *Ծանօթ*․ 235) ։

*Նոյն տարին*, 1109, *ինչպէս կը պատմէ Ուռհայեցի* (384—5), *Ֆրանկ իշխաններուն իրարու դէմ մղած մէկ կռիւին՝ Վասիլ, Անտիոքի իշխանին դէմ կողմ բռնած ըլլալով՝ անիկա վրէժխնդիր կ՚ուզէր ըլլալ, բայց անոր ոյժէն կը վախնար եւ չէր համարձակեր* ։

*Գող Վասիլ* 1111*-ին օգնեց Լատիններուն՝ Իկոնիոյ Մագսուտ սուլթանին դէմ*, *եւ* 1112*-ին՝ կրկին պայքար բացաւ Անտիոքի իշխանին դէմ* ։

*Տանգրէտ այն ատեն գրաւեց Ռապանը եւ քալեց Քեսունի վրայ եւ առաջացաւ մինչեւ Թիլ* ։ *Գող Վասիլ ստիպուեցաւ թողուլ Ռապանը՝ յաղթողին* ։

*Ֆրանկներու իրարու եւ Իսլամներու դէմ մղած յաջորդական կռիւներէն որքան կարելի է հեռու մնալով՝ մինչեւ իր մահը Գող Վասիլ պահեց իր իշխանութիւնը* ։

*Գող Վասիլը*, *զոր Ուռհայեցի* «մեծ իշխան հայոց» *կը կոչէ*, *իր իշխանութիւնը կազմակերպած է աւատապետական վարչաձեւի վրայ*, *ունենալով իրեն իբրեւ ճորտ՝ իր հողերուն հարաւային եւ արեւելեան կողմը մեծ ու պզտիկ հայ իշխանութիւններ*, *որոնք կարօտ էին Գող Վասիլի օգնութեան*, *որպէսզի կարենային իրենց գոյութիւնը պահել թէ՛ Սելճուկ եւ թէ՛ բիւզանդական յարձակումներուն դէմ*, *վասնզի իր իշխանութիւնը շատ ընդարձակած էր*, *նոյնիսկ իր մէջը առնելով Եփրատի արեւելեան կողմը*, *Եդեսիան եւ Սեւերեկը*, *ինչպէս նաեւ Թլխումի*, *Արգնիի եւ Շպղթանի* (=*Թլկուրան*) *շրջանները*, *որոնք ունէին հայ իշխաններ*, *թէեւ այդ վայրերուն բնակչութիւնը մեծ մասամբ Ասորի էր* ։

*Գող Վասիլ մեռաւ* 12 *Հոկտ*․ 1112*-ին*, *անորդի*, *եւ իրեն յաջորդեց իր քեռորդին Վասիլ Տղայ* (1112—1117), *որ կարճ իշխանութենէ մը ետք դաւով կորսնցուց իր տէրութիւնը* (*տես ՊԱՏՄ*․ *ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ*, *Բ*․ *հտ*․, *էջ* 420) *եւ Մալաթիոյ շրջանին մէջ կազմուած այս իշխանութիւնն ալ ջնջուեցաւ* ։

*Վասիլ Տղայի իշխանութիւնը կ՚ընդգրկէր Քեսունը*, *Ռապանը*, *Մարաշը*, *Հիւսնի Մանսուրը եւ Սամոսատը* ։

*Վասիլ Տղայ լաւ յարաբերութիւններ չունէր Եդեսիոյ կոմսին հետ*, *ինչպէս նաեւ Կիլիկիոյ Լեւոն իշխանապետին հետ*, *զոր թերեւս մրցակից մը եւ թշնամի մը կը նկատէր* ։

*Վասիլ Տղայ՝* 1116*-ին՝ երբ Լեւոն իշխանին տուաւ իր աղջիկը*, *հարսանիքէն ետք*, *Լեւոնին եղբօր՝ Թորոսին նիւթած դաւովը ձերբակալուեցաւ եւ յանձնուեցաւ Եդեսիոյ Պոտուին կոմսին* ։

*Վասիլ Տղայ իր ազատութիւնը ստանալու համար ստիպուեցաւ Պոտուին տը Պուրկի թողուլ իր հողերը* (1117) *եւ քաշուիլ նախ իր փեսին՝ Լեւոնի քով* (*ՈՒՌՀ*․, *էջ* 403—4) *եւ ապա անցնիլ Կ*․ *Պոլիս*, *ուր կայսրը սիրով*

*ընդունեցաւ զինք եւ իր հաւատարիմները* (ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, *էջ* 1317—8, ՋԱՄ., Գ., *էջ* 31)։

*Վասիլ Տղայի իշխանութիւնը ջնջուելէն ետք իր կողմնակիցներէն շատեր եւս ստիպուեցան Եղեսիոյ կոմսին քովէն խոյս տալ եւ ապաստանիլ Կ. Պոլիս*։ 1120–*ին Որտուքեան Էլ–Ղազի, Եղեսիոյ եւ Քեսունի շրջանակը աւերեց եւ մեծ կոտորած ըրաւ եւ բազմաթիւ անձեր գերի վարեց եւ Խարբերդ տարաւ* (ՋԱՄ., Գ., *էջ* 42)։

*Քիչ յետոյ Քեսունը գրաւեց Եղեսիոյ Ճոսլին Բ. կոմսը, որմէ յափըշտակեց Պաղտին*։ *Անտիոքի Ռեմոնդ իշխանի եղբայրը սակայն չկրցաւ զայն պահել*։

*Հայերը Անտիոքի Ռեմոնդ իշխանի հետ դաշնակցելով Յովհաննէս Բ. Կոմնէն* (1118—1143) *կայսեր դէմ պատերազմ բացին*։

*Կայսրը անձամբ գնաց անոնց դէմ եւ տիրեց Կիլիկիոյ եւ Անտիոքի Ռեմոնդ իշխանը խոնարհեցուց* (*Գելցեր, նոյն, էջ* 338)։

*Սակայն քիչ ետք Անտիոքի իշխանը, Իկոնիոյ սելճուկ սուլթանին եւ անոր դաշնակից դարձած Դանիշմենտ էմիրի հետ միացած, Բիւզանդական կայսրութեան դէմ յարձակումներ գործել սկսաւ*։ *Երբ դաշնակիցներէն Դանիշմենտ Մելիք Մոհամմէտ Տոլաթի սուլթանը* (1135—1143) 1136 *աշնան պաշարեց Քեսունը, սակայն երբ Պաղտին Բիւզանդիոնի Յովհաննէս Կոմնէն կայսեր* (1118—1143) *դիմեց, թողուց հեռացաւ* (ՋԱՄ., Գ., *էջ* 48), *Պաղտին ալ անապահով զգալով լքեց եւ գնաց Եփրատի կողմերուն ամրոցները գրաւելու*։ *Հայերը Քեսունի մէջ մնացին իրենք իրենց գլխուն եւ Վահրամ անուն Հայու մը — որուն* դուքս *տիտղոսը տրուած է* (ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ, ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀ., *էջ* 460) — *առաջնորդութեամբ անկախ եղան*։

*Վահրամի օգնականը եւ քաջալերողն էր Գրիգոր Երէց պատմագիրը* (*շարունակողը Մատթէոս Ուռհայեցիի*)։ *Այս հայ իշխանին տիրապետութիւնը շատ կարճ տեւեց, հազիւ երկու տարի* (1138—1140), *վասնզի Խարբերդի Դանիշմենտ տիրապետը Գարա–Ասլան եկաւ Քեսունի վրայ եւ զայն կրակի մատնեց*։

*Յովհաննէս Բ. Կոմնէն կայսրը ստիպուեցաւ Փոքր Ասիա երթալ բանակով մը ընդդէմ Սելճուկ–Դանիշմենտ դաշնակիցներուն*։ *Ան* 1139–*ին յաղթական հասաւ Դանիշմենտ մայրաքաղաքը՝ Նէոկեսարիա* (*Նիկսար*) *եւ յաջորդ տարի ուժգին հարուած մը տուաւ Իկոնիոյ սելճուկ սուլթանին* (*Գելցեր, էջ* 338)։

*Յաջորդ տարին կայսրը կրկին գնաց Փոքր Ասիա* (1140), *սակայն չկըրցաւ իր նպատակին հասնիլ, վասնզի որսի ատեն վիրաւորուած մեռաւ*։

*Լատինները սակայն վերագրաւեցին Քեսունը, որուն իշխեց Պաղտին կամ Սիր Պաղտին* (1142–*ին*) (ԳՐ. ԵՐԷՑ, *էջ* 472)։

*Գրիգոր Երէց Պաղտինը կը կոչէ* «տէր Քեսնոյ եւ Մարաշայ եւ գաւա–

ռաց ճոցա, ի սինոռէ[1] Մելտինոյ մինչեւ ի դուռն Անտիոքու» (*Գր. Երէց*, *էջ* 469), *ինչպէս նաեւ* «տէր երկուց աշխարհաց Գերմանիկեցւոց եւ Քեսունի» (*նոյն*, *էջ* 472)։

*Պաղտին* (=*Պաղտուն*=*Բոտուին*), *որ շատ լաւ հայերէն գիտէր, կերպով մը յաջողած էր Հայերու վրայ հիմնուած իշխանութիւն մը կերտել, բայց չկրցաւ զայն տեւականացնել, վասնզի Եղեսիոյ օգնութեան փութալու գնաց* (1144) *եւ պատերազմին մէջ սպաննուեցաւ*։

*Յովհաննէս Կոմնէն կայսրը* (1118—1143), *որ Կիլիկիա արշաւած էր քանի մը անգամներ, ինչպէս տեսանք, չկրցաւ վճռական արդիւնքի մը հասնիլ. ուստի դիմեց նենգութեան։ Սելճուկ Մագսուտ սուլթանը որսաց իր կողմը, ինչպէս նաեւ Անտիոքի իշխանը, եւ զանոնք Թորոսի դէմ արշաւել դրդեց*։

*Այս խառնակութեանց միջոցին* 1150-*ին Ռումի Սելճուկ Մագսուտ Սուլթանը կը գրաւէ Քեսունը, Պեհեսնին, Ռապանը* (*Գր. Երէց*, *էջ* 504)։ 1155-*ին լատին իշխաններ կ'առաջանան Այնթապ, Ռապան եւ Քեսուն, բայց դարձեալ չեն կրնար պահել եւ քիչ յետոյ ետ կը քաշուին* (*Գր. Երէց*, *էջ* 529), *եւ* 1160-*ին վերջապէս այդ շրջանակը Թուրք Ամիրայի մը կը հնազանդի* (*Գր. Երէց*, *էջ* 340)։

*Այսպէս վերջ կը գտնէ Քեսունի հայ իշխանութիւնը, որուն սահմաններուն մէջ Ասորիները մեծամասնութիւն էին եւ Հայերը եկուոր յափշտակիչներ կը նկատուէին, ինչպէս կը հասկցուի բնիկ Մարաշցի Դիոնեսիոս Բար-Սալիբիի գրութիւններէն եւ ինչպէս Քասունի կը խորհրդածէ. Ասորիները հակառակ էին Հայոց եւ համակիր Ֆրանկներուն* (*ԱԿՕՍ*, *Թ*., 1, *էջ* 122)։

*Քանի մը տարի յետոյ Մանուէլ Կոմնէնի շրջանին* (1143—1180) Kinnamos *կը յիշէ երկու ձեռնարկներ Գող Վասիլի յաջորդներուն դէմ՝ յոյն բանակին կողմէ* (Kinnamos, *Դ.* 24, *էջ* 119 *եւ Զ.* 7, *էջ* 2711)։

*Կոմմագինէի շրջանակին մէջ Գող Վասիլի եւ Տղայ Վասիլի իշխանութիւնը վերահաստատել փորձող Վահրամին ու անոր պէս ուրիշներու դէմ էր որ կը կատարուէին այդ երկու ձեռնարկները՝ Մանուէլ Կոմնէն կայսեր ատեն*։



*Ինչպէս տեսնուեցաւ Գող Վասիլի իշխանապետութիւնը ժամանակին սովորութեան համաձայն աւատապետական իշխանութեան բնոյթ ունէր, եւ իրեն ենթակայ էին բազմաթիւ մանր ճորտ իշխաններ*։

*Այս մանր եւ ճորտ հողատիրութիւններէն կը գտնուէին Մալաթիոյ շրջանակին մէջ եւ ուրիշ մաս մըն ալ անկէ դուրս, Եփրատի արեւելեան կող-*

---

(1) *Սինոռ կը նշանակէ սահման*։

*մը, ինչպէս Եդեսիա, Սեւերեկ, Թլկուրան Սրուճ եւայլն։*

*Ասոնցմէ Մալաթիոյ մերձակայ հողամասին եւ Եփրատի արեւմտեան կողմը՝ Սամոսատի մօտ հաստատուած էին Կարկառի, Քեախթայի եւ Բէթ–Բուղայի հողատիրութիւնները, որոնք կրնան հաստատուած ըլլալ նոյնիսկ Փիլարտոսէն։ Այս իշխանութիւնները թէեւ Քեսունի մօտ Գող Վասիլի իշխանապետութեան մաս չեն կազմած միշտ, այլ երբեմն կռուախնձոր ծառայած են ընդմէջ հայ, լատին եւ իսլամ շրջակայ իշխանութիւններուն եւ Քեսունի իշխանապետութեան միջեւ։*

*Ասոնցմէ Կարկառ, որ Եդեսիոյ եւ Մալաթիոյ կէս ճամբուն վրայ կը գտնուէր՝ երկու ու կէս օր հեռու երկու քաղաքներէն եւ կը գտնուէր Մալաթիոյ արեւելեան կողմը, առաջ ճորտութիւն էր Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին իշխանութեան տակ* (*ՈՒՌՀ.*, *էջ* 316—7) *եւ ապա Պաղտին Կոմսին։* Michel le Syrien (*Գ. հտ.* 199) *կը յիշէ Կոստանդին, Միքայէլ եւ Յովհաննէս անուն երեք եղբայրները, որոնք կ՚իշխէին Կարկառի, Քեախթայի եւ Բէթ–Բուղայի մէջ, երբ Սամոսատի կը տիրէր Պալտուխ Թուրքը։*

*Կոստանդին իշխան իբր Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին ճորտ, անոր եւ անոր դաշնակից Լատիններու հետ, Պալտուխ ամիրային դէմ պատերազմած էր։ Պալտուխ, որ առաջ խոհեմութիւն համարած էր պատերազմի չմըտնել, երբ տեսաւ թէ ջարդի եւ աւարի կը մատնուին իր հողերը,* 300 *զօրքով ինքն ալ յարձակեցաւ եւ Սամոսատէն մինչեւ Թլպաշար հազար հոգի ջարդեց։ Կոստանդին եւ Եդեսիոյ լատին կոմսը՝ Պաղտուին ապաստանեցան Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին քով* (*ՈՒՌՀ.*, *էջ* 316—7)*։*

*Կոստանդին կ՚օգնէ Պաղտուինի որ դրաւէ Եդեսիան դաւադրութեամբ եւ դառնայ իր աւատապետը։*

*Բայց Լատինները ինչպէս դաւած էին բազմաթիւ հայ իշխաններու եւ անոնց հողերը առնել տուած էին լատին իշխաններու, նոյնը ըրին Կարկառի։ Եդեսիոյ Պոտուին Ա. Կոմսին յաջորդներէն Պոտուին Բ.* 1017—8*–ին Կարկառը պաշարեց եւ կողոպտեց։ Կոստանդին իշխան սաստիկ դիմադրեց եւ ասոր համար չարաչար նեղութեամբ բանտարկուեցաւ Սամոսատի բերդին մէջ եւ հոն մեռաւ* 1117—8*–ին* (*ՈՒՌՀ.*, *էջ* 423—4, *Օրմանեան*, *ԱԶԳ.*, *էջ* 1357)*։*

*Այսպէս Կարկառը Լատիններէն գրաւուեցաւ, բայց երբ Երուսաղէմի Պաղտին Բ. Թագաւորը* 1123*–ին գերի ինկաւ Որթոքեան Պալաղ ամիրային ձեռքը, Կարկառը անոր տուաւ* (*ՈՒՌՀ.*, *էջ* 443)*, որ դարձեալ իսլամ տիրապետութեան ենթարկուեցաւ։*

*Կոստանդինի Միքայէլ որդին Կարկառը կը դրաւէ հաւանօրէն* 1124*–ին։ Ուռհայեցի կը վկայէ թէ* «Միքայէլ իշխան տէրն Կարկառայ, որդի Կոստանդնայ, ժողովեաց արս յիսուն եւ կացեալ ի վերայ մեծաւ աշխատութեամբ եւ նեղեաց զԹուրքն որ ի բերդին էր, եւ ոչ գտաւ ոք օգնական բերդին, անճարեալ գային ի հաւանութիւն, եւ տան զԿարկառ ի Միխայէլն» (***ՈՒՌՀԱՅԵՑԻ***, ***էջ* 451)**։

*Այսպէս Միքայէլ կը վերահաստատէ իր հօր իշխանութիւնը Կարկառի մէջ։*

*Սիւրիացի անանուն ժամանակագիր մը, որ Ա. եւ Բ. Խաչակրութիւններուն վրայ կը խօսի, Միքայէլը կը ներկայացնէ հպարտ երիտասարդ մը, որ չատ վնաս հասցուցած է պահելով աւազակներ եւ գողեր այս կողմերը* (Առաջին եւ Երկրորդ խաչակրութիւնները ըստ Սիւրիացի անանուն ժամանակագրի մը, *Թրգ. Յ. Քիւրտեան, էջ* 13)։

*Ասոնք կ'երեւի Հայեր էին, որ հրոսակութիւն կ'ընէին Մալաթիոյ Պալաք ամիրային երկիրներուն մէջ։ Պալաք, հայ հրոսակներուն ոտքը կտրելու համար, խոստացաւ տարեկան հազար բեռ ցորեն տալ Կարկառի բերդատէր Միքայէլին, որ չյարգեց համաձայնութիւնը. այնպէս որ օր մը, երբ Պալաք հազար բեռ ցորեն ղրկեց Կարկառ, Միքայէլի հրոսակները այրեցին Հանձիթի երկու գիւղերը, կողոպտեցին, ցորեն բերող Թուրքերն ալ սպաննեցին, երբ անոնք ապահով նստած էին դաշտին մէջ։ Պալաք սաստիկ զայրացաւ եւ ըսկըսաւ հետապնդել Հայերը։ Շատ խիստ ձմեռ եղանակին, երբ լեռները ծածկուած էին ձիւնով եւ Կարկառեցիք անհոգ ու անպահակ կեցած էին, Պալաք անցաւ սառած Եփրատի վրայէն, յառաջացաւ Գուբբոս, խաբեց Կարկառեցիները, այնպէս կարծել տալով թէ կը հեռանայ իր մարդոց առջեւէն. հազարաւոր մերկ ձիեր արձակեց Քարիունա կոչուած սեպ լեռներուն վրայ։*

*Ձիւնը հալեցաւ ձիերու սմբակներուն տակ, մարդիկ դիւրութեամբ եւ մէկ օրուան մէջ հասան Ս. Պարսամի վանքի հանդէպ. գիշերանց կտրեցին Կարկառի լեռը եւ արշալոյսին յարձակեցան դժբախտ երկիրին վրայ, զոր Պալաք գրաւեց երկուշաբթի օր մը Քանունի* 1. 1452 (=*Յունուար* 1122)։ *Դուրս հանել տուաւ բոլոր մարդիկը, անասունները, երկիրը աւերակ եղաւ*[1], *բայց Պալաք գթութեամբ վարուեցաւ ժողովուրդին հետ. ոչ գերի տարաւ զանոնք, ոչ ալ սպաննեց. ետ տուաւ անոնց իրենց կենդանիներն ու ինչքերը եւ բնակեցուց զանոնք Հանձիթի մէջ, որ իր իշխանութեան տակ էր, եւ երդում ընել տուաւ անոնց որ այլեւս պիտի չվերադառնան Կարկառ։*

*Բայց անոնք չպահեցին իրենց երդումը։ Տարի մը յետոյ Պալաք դրաւեց Կարկառը, գերեց բոլոր ժողովուրդը, այրեց գիւղերը, այգեստաններն ու ձիթաստանները։ Այն ատեն Ճոսլին դէմ ելաւ Պալաքին, որ լեռները փախաւ։ Ֆրանքներ չկրցան բան մը ընել։*

*Երբ Պալաք զօրացաւ, Թուրքերը հաւաքուեցան իր չուրջը եւ սկսան արշաւել Ֆրանկներու իշխանութեան տակ գտնուող երկիրներուն վրայ։ Կարկառի իշխան Միքայէլ տեսնելով վտանգը, իր բերդը տուաւ Ճոսլին Թագաւորին եւ ինք ստացաւ Տլուքը* (*Նոյն, էջ* 15) *անոր իշխանութեան մէջ։ Ճոսլին պահակախումբ մը դրաւ Կարկառ եւ ինք սկսաւ քշել Թուրքերը Հիւսնի*

---

(1) *Ուրիշ աղբիւրի մը համաձայն Պալաք ամիրան ազդարարած է Միքայէլի որ սանձէ գողերը, բայց անիկա չանսաց։ 1122ին Պալաք կը յարձակի Կարկառի վրայ եւ աւարի կու տայ երկիրը* (*տես Քիւրտեան, նոյն, էջ* 13)։

*Մանսուրէն եւ Քեսունէն : Պօտուլին գերի ինկաւ, ազատեցաւ Հայու մը հնարքով : Իսկ Պալաք նետահար ինկաւ* 1124 *Մայիս* 6*–ին* (Michel le Syrien, Գ., 205—6, 212) :

*Միքայէլ Ասորի Պատրիարքին այս տեղեկութիւնը կասկածի տակ կը դնէ Է. Րէյ, որ իր գործին*[1] *մէջ կ'ըսէ թէ* 1138*–ին Միքայէլ տուած է Կարկառի բերդը Ճոսլին Բ.ի* (*տես Բաբգէն Կաթ.*, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ, *էջ* 248) :

*Ճշդելու կարօտ հարց մը :*

1138*–էն տասը տարի ետքը* 1148*–ին, Վասիլ Պահլաւունին* (ԳՐ. ԵՐԷՑ, *էջ* 501—2) *կը յիշուի իբր տէր Կարկառի եւ Ծովքի : Յայտնի չէ թէ ինչ պայմաններու մէջ իրեն անցած էր այս հողատիրութիւնը :*

*Արդարեւ այդ Թուականին, Եդեսիոյ* 1144*–ին գրաւումէն եւ սոսկալի կոտորածէն ետք, երբ քրիստոնեաները տկարացած էին, Մասուտ Իկոնիոյ Սուլթանը* (1116—1156) 1149 *Սեպտեմբերի կիսուն կու գայ ինքն ալ գրաւել Մարաշը, եւ որովհետեւ բերդին մէջ զօրք չկար, կ'ասպատակէ մինչեւ Թըլպաշար, ամէն կողմ սուրի ճարակ կը դարձնէ ով որ կը գտնէ եւ սուտ երդումով անձնատուր ընելով բերդերու պահապանները, ամէնն ալ գերի կը վարէ : Երկիրին տէրը Ճոսլին Թլպաշարի մէջ կը հանդիպի Մասուտին, որ չկարենալով դիմադրել՝ փախուստ տուաւ եւ հեռացաւ իր առած գերիներով :*

*Ճոսլին ասոր վրայ ապահովուած՝ իր մնացեալ զօրքերը Վասիլին հետ կը ղրկէ Կարկառ պարենաւորելով զայն, որպէսզի իր բերդին մէջ ամրանայ* (ՈՒՌՀ., *էջ* 501—2) : *Սակայն Խարբերդի իշխողը Խարա–Ասլան յանկարծական յարձակումով Վասիլը իր* 400 *մարդերով գերի կը բռնէ* (*նոյն*) *եւ կը տանի Կարկառի բերդին առջեւ, եւ կը պահանջէ բերդը : Վասիլի կինը եւ զաւակները յանձն կ'առնեն բերդը յանձնել իբր Վասիլի փրկանք : Խարա–Ասլան սակայն չ'արձակեր Վասիլը, այլ կը պահէ իրեն հետ* «մեծաւ փառաւորութեամբ» *եւ անոր* «տուեալ երկիր որպէս սիրելի եղբօր իւր» (ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ, *էջ* 502) :

*Իսկ Վասիլի կինը եւ զաւակները անտէր մնացած՝ կ'ապաւինին Հռոմկլայ բերդը, որ Ճոսլինի կը պատկանէր :*

*Այսպէս վերջ կը գտնէ նաեւ Կարկառի իշխանութիւնը :*

* * *

*Կարկառէն զատ Մալաթիոյ աշխարհագրական սահմաններուն մէջ հաւանօրէն կային նաեւ ուրիշ մանրապետութիւններ, որոնք չեն յիշատակուած՝ թերեւս իրենց անկարեւոր եւ աննշան դիրքին համար :*

*Ասոնցմէ մէկուն յիշատակութիւնը անցողակի եղած է մեր պատմութեան մէջ :*

---

(1) *E. Rey, Les Colonies Franques de Syrie aux XIIième et XIIIième siècles, Paris, 1883.*

*Այսպէս յիշուած են որ Մար-Պարսումայի վանքին դրացի լերան վրայ, Կոստանդին, Դաւթուկ եւ Քրիստափոր, երեք եղբայրներ, «որդիք Սանբելի» (ըստ Քասունիի՝ Հաբելի), որոնք հայացած Ասորիներ էին եւ Հայերու յարած՝ երբ Կարկառի մէջ Հայերը կ՚իշխէին, բայց աւելի բան մը չենք գիտեր իրենց մասին:*

⁂

*Մալաթիոյ Գաբրիէլ «Յոյն» իշխանին եւ Քեսունի Գող Վասիլ իշխանին բաւական զօրաւոր իշխանութիւնները եւ անոնց ենթակայ ծանօթ եւ անծանօթ մանրապետութեանց գոյութիւնը բացորոշ ցոյց կու տան թէ Եփրատացիներու կամ Կոմմագենէի երկրամասը հայացած երկրամաս մը դարձած էր, ուր գոյութիւն առած էին աւելի կամ նուազ զօրաւոր հայ իշխանութիւններ, սկսեալ ԺԱ. դարու Ա. քառորդին վերջերէն՝ ժամանակակից Փոքր Ասիոյ մուտքին վրայ Բիւզանդացւոց կազմած հայ իշխանութիւններուն, Հայաստանէն փախստական հայ արքայազուններու իշխանութեան տակ:*

*Տեսնուեցաւ որ հայ այդ անուանական թագաւորները, ինչպէս նաեւ անոնց ենթակայ ճորտերը, Փիլարտոսի իշխանապետութիւնը եւ իրեն ստորադաս իշխանները կամ ճորտերը, բոլորն ալ դժբախտաբար երկար կեանք չեն ունեցած եւ ամէնքն ալ կա՛մ սախական բարբարոսներու դրոհով (1080) աւլուած են եւ կա՛մ անոր յաջորդող իսլամ եւ քրիստոնեայ իշխանութիւններու իրարու դէմ մղած պայքարի միջոցին իրենց հողերը եւ իշխանութիւնները կորսնցուցած են: Հետեւաբար ամբողջ շրջանը ենթարկուած է Դանիշմենտեանց էմիրներուն, որոնք շատ երկար չեն տիրած այն գաւառին, տեղի տալով Սելճուկ Ռումիներուն, որոնք այս շրջանը կցած են իրենց Սուլթանութեան:*



## ԺԵ.

# ՄԱԼԱԹԻԱ
# ԴԱՆԻՇՄԵՆՏԵԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՏԱԿ
## 1124 — 1178

*Մալաթիա այն քաղաքներէն մէկն էր որ ամենէն կանուխ նուաճուած է Դանիշմենտ էմիրներու կողմէ, սակայն ինչպէս տեսնուեցաւ՝ անիկա բնաւ չունեցաւ անդորր կեանք մը, վասնզի իր աշխարհագրական դիրքին բերմամբ միշտ կռուախնձոր եղաւ։*

*ԺԱ. դարուն վախճանին մօտ Փոքր Ասիոյ մէջ կազմուած երկու իսլամ բաւական զօրաւոր տէրութիւններ, այսինքն Իկոնիոյ սելճուկ սուլթանութիւնը եւ Նիկսարի Դանիշմենտ էմիրութիւնը, եղան այն երկու մրցակից ոյժերը, որոնք իրենց երկիրին ապահովութեան համար կը ցանկային Մալաթիոյ կամրջագլուխին, կամ Եփրատի այդ ամենակարեւոր անցքին։*

*Տեսնուեցաւ որ երբեմն զինակից եւ գործակից այդ երկու տէրութիւնները ի՛նչպէս իրարու դէմ ելան եւ 2 Սեպտեմբեր 1106–ին Իկոնիոյ Սելճուկ Սուլթանը Գլըճ Արսլան Ա.*[1] *գրաւեց Մալաթիան, ուր սակայն սելճուկ սուլթանը միայն ժամանակաւոր տիրապետութիւն մը ունեցաւ, վասնզի Գլըճ Ասլանի* (1092—1107) *մահէն ետք իր իշխանութիւնը տկարացաւ, երբ իր որդիները իրարու հետ մաքառեցան իրենց հօրը գահուն տիրանալու համար։*

*Գլըճ Ասլան Ա. իր կենդանութեան, Սելճուկներու սովորութեան համաձայն իր պետութենէն մասեր տուած էր իր որդիներուն, որպէսզի կառավարեն։*

---

(1) *Գլըճ Ասլան Իպն Սիւլէյման ուղղակի չէր յաջորդած իր հօր՝ Սիւլէյման Իպն Գութլումուշի* (1086), *վասնզի առաջին յաջորդը եղած է Դաւութ, որ 1092-ին իշխանութիւնը առած է Պարկիարուխի հրովարտակով եւ մինչեւ 1094-5 թուականը 2 կամ 3 տարի միայն թագաւորած* (*Ե. Քասունի,* փիլարտոս Հայր, *յաւելուած, էջ ԺԱ—ԺԲ*)։

*1097-ին երբ Ա. Խաչակիրները Փոքր Ասիա կը հասնէին, Գլըճ Ասլան Ռումի Սելճուկ գահը վաղուց գրաւած էր (նոյն)։ Պատմագիրներ կան, որոնք կ՚ըսեն թէ «Սիւլէյմանի մահէն յետոյ իր անդրանիկ որդին՝ Դաւութ թագաւորեց, մինչ ուրիշներ՝ ընդհարման շրջանէ մը վերջ Գլըճ Ասլան Ա.ի իշխանութեան անցնիլը կը գրեն» (նոյն)։ Ուրիշ ցանկի մը մէջ Դաւութի իշխանութեան կը յատկացուին 1086էն 1092 տարիները, այսինքն՝ ուղղակի ընդհարման շրջանը, որ կը նշանակէ թէ անուանական թագաւոր մըն էր ան (նոյն)։ Ինչպէս վերը տեսնուեցաւ, 1092-ին Պարկիարուխի արտօնութեամբ եւ Դանիշմէնտի օգնութեամբ Գլըճ Ասլան Ա. իր հօր գահուն եւ Փոքր Ասիոյ սիրտին վրայ անոր հիմնած պետութեան տիրացած է։*

Այսպէս, իր անդրանիկ որդին Մասուտ ստացած էր Գոնիան եւ կրտսեր որդին՝ Տողրուլ Ասլան՝ Մալաթիան, անոր դրաւումէն 2 Սեպտ. 1106 անմիջապէս ետք:

Երբ Գըլըճ Ասլան Խապուրի ճակատամարտին մէջ սպաննուեցաւ, 1117-ին, Մասուտ, իբրեւ օրինաւոր դահաժառանգ չկրցաւ գահուն տիրանալ, վասնզի զայն յափշտակեց իր եղբայրը՝ Մելիք Շահ կամ Շահին Շահ կոչուած Ասխան (1107—1116): Մասուտ ստիպուեցաւ Գոնիայէն ապաստանիլ Մալաթիա, իր եղբօրը Տողրուլ Արսլանի քով (RNC HO, Գ., 534), որ Գըլըճ Ասլանի կրտսերագոյն որդին էր եւ իր հօրը մահէն ետք բոլորովին անկախ եղած էր:

Անոր իշխանութեան առեն Pizmuth կառավարիչին սպանութիւնը քաղաքին համար դժբախտութիւններու աղբիւր մը եղած է ըստ Michel le Syrien-ի (Գ. էջ 184):

Այս ներքին քաղաքային կռիւներէն օգտուելով Պոհեմունդ յաջողեցաւ իր իշխանութեան ենթարկել Ալպիստանը, Ջահանի ընթացքին վրայ գտնուող հողերը եւ Մալաթիոյ շրջակայքը ամբողջովին (Michel le Syrien, Գ. 195): Բայց 1111-ին Մալաթիոյ Տողրուլ Արսլան սուլթանին Աթապէկը[1] ետ առաւ Ջահանի եզերքներու հողերը:

Գըլըճ Ասլանի այրին Մալաթիայէն կը մեկնի 1113-ին՝ ամուսնանալու համար քաջասիրտ Էմիր Պալաքին հետ[2], որուն համար ըսուած է թէ զօրացած էր եւ տիրած բազում գաւառներու (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, 1871, էջ 410):

Հեծելախումբի մը Թուրք պետը Մալաթիոյ իշխող Տողրուլ Ասլանին առաջարկեց գնել Խարբերդը (=Զիյատ բերդը). Մալաթիոյ երիտասարդ Սուլթանը չուզեց անկէ հրաժարիլ, բայց առանց կռիւի Խարբերդը իրմէ կորզուեցաւ:

Տողրուլ Ասլան ենթարկուած էր Պալաքի եւ Թերեւս իր մօր շնորհիւ,

---

(1) E. Honigmann (E. I., էջ 211) այս Աթաբէկը հաւանական կը կարծէ որ Պալաքն էր. սակայն առ այս փաստ մը կամ աղբիւր մը ցոյց չէ տուած: Պալաք (բուն անունով Պալաք Իպն Պեհրամ Իպն Օրթոք) քեռորդին էր Որթոքեան Էլ-Ղազիի, որ մեծ Սելճուկէն (Մուհամմէտ Տափար, 1103—1148) ապստամբած էր: Տափար իր սպարապետը՝ Աք-Սունկուր Պուրսուքին (Ուռհայեցիի Բուրսուխը) ղրկեց բանակով՝ զայն պատժելու համար, սակայն պարտուեցաւ Պալաքէն եւ խոյս տուաւ: Սուլթանին որդին գերի ինկաւ, բայց յետոյ արձակուեցաւ (հմմտ. Ուռհ. 412—413):

Պալաք դրաւեց նաեւ հիւսիսային Սուրիան, Հալէպը, Անտիոքը եւ Հայկական Միջագետքը՝ Եդեսիան (նոյն, 419): Էլ Ղազի եւ Պալաք կը տիրեն եւ կը մաքառին Խաչակիրներուն դէմ: Նոյնիսկ կը փորձեն Երուսաղէմը վերագրաւել (Արտաւազդ Արքեպ. Սիւրմէյեան, Հալէպ, 927—28):

(2) Հայերէն թարգմանութեան մէջ (էջ 410) կը կարդանք. «Եւ առ սա գնաց կինն Խլիճ Ասլանայ եւ եղեւ նմա կին, Թողեալ զորդիքն եւ յամէն Որթուխքն. չեղեւ ոք իբրեւ զՊաղակն»:

որ կինը եղած էր Պալաքի, Որթոքեանց պաշտպանութեան տակ կը պահէր իր իշխանութիւնը նոյնիսկ 1116–էն ետք։ Շահին Շահ կամ Մելիք Շահ, որ սելճուկ գահը բռնագրաւած էր, սպաննուեցաւ մատնութեամբ եւ գահուն օրինաւոր ժառանգը՝ Մանսուր Ա. (1116—1156) տիրացաւ իր իշխանութեան։

Միքայէլ Ասորի Պատրիարքը (Michel le Syrien, Գ. 204) իր ժամանակագրութեան մէջ կ'ըսէ թէ Մալաթիոյ Խաթունը[1] Եդեսիոյ տէր Ճոսլինի պաշտպանութիւնը խնդրեց՝ Մասուտ Ա.ի և Երզնկայի Մանկուճաքի սերունդ Մանուչեաններու դէմ, որ 1118–ին Որթոքեանց յաջողութիւններուն հանդէպ վրդովուած եւ յարձակումէ մը վախնալով աւարի տուած էր Մալաթիոյ շրջանը։

Պալաքի օգնութեամբ 1119–ին Մալաթիոյ Սուլթանը՝ Տուղրիլ Ասլան Ջահանի եւ Ալպիսթանի շրջանները հնազանդեցուց իրեն եւ նուէր ստացաւ Քեախթէն ամրոցը (Michel le Syrien, Գ., 205)։ Ապա մտաւ Պալաքի հետ Մանկուճակի երկիրը եւ յառաջացաւ մինչեւ Քեմախ եւ նոյնիսկ յաջողեցաւ զայն գերի բռնել (Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 319), ինչպէս նաեւ իր դաշնակիցը Տրապիզոնի դուքս Թէոտոր Կաւրասը (տես Յ. Քիւրտեան, ԵՐԻԶԱ ԵՒ ԵԿԵՂԵԱՑ ԳԱՒԱՌ, Ա. հտ., էջ 82 եւ 92)։

Պալաք օգնեց նաեւ Էլ Ղազի Իպն Դանիշմենտի, յաղթեց Յոյներուն, գրաւեց Խարբերդը (Հիսն Զիյատ) եւ Եփրատի վրայ յաղթեց Կարկառի Հայերուն (Michel le Syrien, Գ., էջ 285)։

Տուղրիլ Արսլան իր յաջողութիւնները կը պարտէր Պալաքին, զոր Որթոքեան ընդարձակ պետութեան վերակացու–խնամակալ կարգած էր 1122–ին Էլ–Ղազի Որթոքեան (ՈՒՌՀ., էջ 442) իր մեռած ատենը։

Պալաք[2], որ Նուր էր Տովլէ (Լոյս Տէրութեան) տիտղոսը ստացած էր, Մեծ Սելճուկէն առած էր իբրեւ ճորտապետութիւն (ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 30) Խարբերդ (նոյն, էջ 311), բայց Պալաք Ֆրանքներու վրայ յաղթութիւններ տանելով, վերջապէս Էլ–Ղազի Որթոքեանի հետ, գրաւեց նաեւ Հալէպը եւ անոր սուլթանը դարձաւ, Ֆրանկները մատնելով երկիւղի՝ իր յարձակումներով։

Պալաք սպաննուեցաւ Մանպիճի առջեւ 15 Ապրիլ 1124–ին (ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 318), եւ իր թագաւորութիւնը բաժան–բաժան եղաւ։

Այս խառնակութեան միջոցին Հալէպի Սուլթանութիւնը յափշտակեց Աք–Սունկուր Պուրսքի (1125—1127) (Արտաւազդ Արքեպս. Սիւրմէեան, ՀԱԼԷՊ, էջ 929)։

---

(1) Խաթուն բառը պէտք է վեհապետուհի իմաստով գործածուած ըլլայ։ Դժբախտաբար չէ ճշդուած թէ Մալաթիոյ Խաթունը ո՞վ էր։ Հաւանօրէն Գըլըճ Ասլան Ա.ի կինը եւ Տուղրիլ Ասլանի մայրն էր։

(2) Ուղղագրուած է նաեւ Պալագ եւ Պալախ ձեւերով։

*Դանիշմենտ Ամիր Ղազի երբ իմացաւ Պալաքի մահը, եկաւ Մալաթիա, բայց չկրցաւ գրաւել զայն եւ իր որդին հոն ձգելով՝ ինքն մեկնեցաւ* (*ՄԻՔ. ԱՍՈՐԻ*, *էջ* 412—3):

*Շատեր խոյս տուին Մալաթիայէն եւ ապաստանեցան Խարբերդ, ուր հիւրընկալուեցան* (*ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ*, *էջ* 320): *Դանիշմենտի բանակը սովի մատնեց Մալաթիան, որ անձնատուր եղաւ:*

*Ամիր Ղազի մաքառեցաւ նաեւ Հալէպի Սուլթանութիւնը յափշտակող Աք–Սունկուր Պուրսաքի որդւոյն եւ յաջորդին Մասուտ Սուլթանին* (1127—1128) *հետ եւ զայն սպաննեց:*

*Ահմէտ Ղազի ստացաւ Կարկառը եւ ուրիշ քանի մը վայրեր, բայց որովհետեւ իսլամ իշխանութիւններու միջեւ ալ սկսած էր մրցակցութիւնը, Խարբերդի տիրացող Սիւլէյման յարձակեցաւ իր վրան:*

*Սեբաստիոյ Դանիշմենտ Էմիրը Էլ–Ղազի եւ իր փեսան՝ Գոնիոյ Մասուտ Սուլթանը Մալաթիոյ վրայ քալեցին եւ զայն պաշարեցին* 18 *Յունիսէն մինչեւ* 10 *Դեկտեմբեր* 1124: *Այս պաշարումի միջոցին քաղաքը շատ նեղուեցաւ սովէն եւ Խաթունին հաստատած սարսափի կառավարութենէն: Վերջապէս քաղաքը ինկաւ Դանիշմենտ վեհապետին ձեռքը* (*ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ*, *էջ* 454, *ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ*, *էջ* 412, *Ա. Ճեմալ*, *ԹՈԳԱՏ*, *էջ* 23, *ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ*, *էջ* 176): *Բնակիչները շունչ առին երբ Խաթուն քաղաքէն մեկնեցաւ իր որդւոյն եւ բոլոր իր մարդերուն հետ* (Michel le Syrien, **Գ.**, 219): *Միքայէլ Ասորի* (413) *Մալաթիոյ մէջ անոր ունեցած յաջողութեան համար կը գրէ.* «զօրացեալ Ամիր Ղազի՝ ջնջեաց զԹուրքսն, որ կային յերկրին Կապադովկիացւոց եւ ինքն միայն թագաւորեաց»:

*Մելիք Ղազի* (1106—1134) *Դանիշմենտ վեհապետներէն ամենէն նշանաւորներէն մէկն էր: Ան բուռն կռիւներ մղած էր իսլամ եւ քրիստոնեայ դրացի երկիրներուն դէմ եւ յաղթանակներ շահած էր եւ ասոր համար խալիֆային եւ Մեծ Սելճուկին կողմէ պատուուած էր թագաւորական տիտղոսով:*

*Իր իշխանութեան օրով Մալաթիա վայելեց անվրդով խաղաղութիւն, բայց երբ մեռաւ* 1134*–ին, իր իշխանութիւնը երկուքի բաժնուեցաւ եւ երկու Դանիշմենտ իշխաններ նստան, մին՝ Սեբաստիա եւ միւսը՝ Մալաթիա* (*ՊԱՏ. ԵԻԴՈԿԻՈՅ*, *էջ* 202):

*Սեբաստիոյ բաժինին իշխեց Մելիք Մուհամմէտ կամ Մելիք Մուհամմէտ Տոլաթի* (1135—1143) *կամ Մուհամմէտ Իպն Ղազի, որ Մալաթիայէն շուտով հեռացաւ երբ լսեց որ Բիւզանդիոնի Յովհաննէս Կոմնէն կայսրը կը մօտենար* (Michel le Syrien, Գ., 237): *Արդարեւ Յովհաննէս Բ. Կոմնէն գրաւեց Կիլիկիան եւ յառաջացաւ մինչեւ Սիւրիա: Այն ատեն Գոնիոյ Մասուտ Սուլթանը Կիլիկիա խուժեց եւ Ատանայի բնակիչները գերի վարեց դէպի Մալաթիա* (Michel le Syrien, Գ., 245):

1139*–ին, Մելիք Մուհամմէտ ալ Կիլիկիոյ վրայ քալեց եւ Յոյներէն*

գրաւեց Վահկայի, իսկ Հայերէն՝ Կապանաբերդը։

Երկու տարի ետք՝ կռիւի բռնուեցաւ Ֆրանքներուն հետ, որոնք մինչեւ Մալաթիոյ ենթակայ Zibatra, Arka եւ Ալպխատան քաղաքները յառաջացած էին եւ վեց ամիս բանակեցաւ առանց կռիւի մտնելու, Նիկաարի մօտ Ցովհաննէս կայսեր դիմաց, որ նորէն պատերազմի կը ձեռնարկէր Թուրքերու դէմ (Michel le Syrien, Գ., 248)։

Մելիք Մուհամմէտ Իպն Ղազի կամ Տոլաթի երբ մեռաւ 6 Դեկտ. 1143, Դանիշմենտեան իշխանութեան մէջ իշխանութեան պայքար բացուեցաւ եւ երեքի բաժնուեցաւ երկիրը (տես Ալպօյաճեան, ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 208)։

Զիւնուն = Տընլուն = Տունուն կամ Իսմայիլ Տին Դ'ուլնուն Մելիք Մուհամմէտ, դեռատի որդին Մէհէմմէտ Ղազիի, որուն կտակած էր հայրը իր գահը, մեռած ատեն թէեւ յաջորդեց իր հօրը իբր օրինաւոր ժառանգ, սակայն իր դէմ ելան ուրիշ երկու թեկնածուներ, որոնք էին՝ Եաղը Պասան կամ Եաղուպ Արսլան, կրտսեր եղբայրը Մուհամմէտ Ղազիի եւ Սունկուր իր հօրեղբօրորդին, ըստ հայ պատմագիրներու, որ հաւանօրէն նոյն է իսլամ մատենագիրներու Մալաթիոյ Այն ալ Դաուլա[1] էմիրին հետ, որ Զիւնունի (Տունունի) եղբայր ներկայացուած է։

Այս էմիրը իշխած է 1143—1152, օրինաւոր ժառանգէն յափշտակելով գահը, կամ անոր իշխանութիւնը սահմանափակելով միայն Կեսարիոյ մէջ։

Այն ալ Դաուլա կամ Դուլա (=Տուլա) կը քալէ Զիւնունի դէմ, եւ ամենէն առաջ կ'երթայ Մալաթիոյ վրայ, որուն Թուրք կայազօրքը կը բանայ Buraidiya դուռը եւ կը յանձնէ քաղաքը (Michel le Syrien, Գ., 258), որուն տէր կը դառնայ Այն ալ Դաուլա։

Այսպէս, Դանիշմենտ էմիրութիւնը կը բաժնուի երեքի, ինչ որ տխուր հետեւանքներ կ'ունենայ երկիրին համար։ Նոյն իսկ Դանիշմենտեանց պատմութիւնը կը կորսնցնէ իր պայծառութիւնը, վասնզի նոյն իշխանական տոհմէն ուրիշ անդամներ Դանիշմենտեան տիրապետութեան արդէն ենթարկուած քաղաքներու եւ ուրիշ գրաւուած վայրերու մէջ պզտիկ իշխանութիւններ կը կազմեն։ Ուրեմն երկիրին աւատապետական կազմը աւելի կը շեշտուի, եւ զանազան էմիրներ կ'իշխէին համադաշնակցութիւն մը կազմելով Սեբաստիոյ էմիրին գերիշխանութեան տակ, որ անուանական էր իրականին մէջ, վասնզի այդ էմիրները յաճախ չէին ճանչնար զայն։ Այդ Թուականէն ետք կը քայքայուէր իշխանութեան միութիւնը եւ կը տկարանար իր ոյժը՝ ներքին պայքարներով։

Դանիշմենտ կոտորակեալ էմիրութեան մէկ կտորն էր Մալաթիոյ էմի-

---

(1) Dhul Nun-ը Արաբներու, Dauun-ը Ասորիներու (Michel le Syrien, Գ., 258 եւ յաւելուած LXII). Dadouanes-ը Յոյներու: Michel le Syrien պարզապէս Դուլա կը կոչէ զայն:

րութիւնը, որուն պետը մնաց Այն ալ Դաուլա (1143—1152), բայց իր երկիրները սահմանափակուեցան իր իշխանութեան վերջերը, վասնզի Սիւրիոյ մէջ երեւան եկած էր Հալէպի Սուլթան Նուրետտինի նոր ոյժը, որ 1150-ին Ճոսլինը գերի բռնելէն ետք գրաւեց Այնթապը, Թլպաշարը, Պիրը, Ռապանը, Մարաշը, Պեհեսնին, Հիսնի Մանսուրը, Սամոսատը, Կարկառը, Քաղթէն եւայլըն, բացի Հռոմկլայէն, ուր կը մնար Ճոսլինի կինը իր աղջիկներուն հետ: Այս վայրերէն մէկ մասը Մալաթիոյ աշխարհագրական սահմաններուն մէջ էր եւ այսպէս կը կորզուէին անոր վեհապետէն: Սակայն Նուրետտին չկրցաւ պահել եւ ստիպուեցաւ թողուլ այդ տեղերը Սելճուկ Ռումի Սուլթան Մասուտ Ա.ին (1116—1156), որ Սեբաստիոյ Դանիշմենտ Եաղուպ Ասլանը (1143—1167) իրեն փեսայացնելով զօրացած էր (տես Մանուէլ Քասունի, ԱՅՆԹԱՊ ԽԱՉԱԿՐԱՑ ՇՐՋԱՆԻՆ, Յուսաբեր, 14 Մայիս, 1955):

Այս միութիւնը երկար չտեւեց, վասնզի Մասուտ Ա. (1116—1156) ուզեց իր գերիշխանութեան ենթարկել Դանիշմենտները:

Հետեւաբար պահանջեց Այն ալ Դաուլայէն որ հպատակի իրեն, բայց Մալաթիոյ տէրը մերժեց:

Այն ատեն Մասուտ Սուլթան արշաւեց դէպի Մալաթիա եւ նախ 17 Յունիսէն 14 Սեպտեմբեր 1143 եւ ապա 1144-ին պաշարեց Մալաթիան, բայց չկրցաւ գրաւել քաղաքը (Michel le Syrien, Գ., 254—8 եւայլն):

Այն ալ Դաուլայի մահէն ետք 12 Յունիս 1152 իր որդին Դուլ Կայնէյն (Dhul—Karnain) (1152—1160), որ տակաւին անչափահաս էր, յաջորդեց իրեն[1]: Իր մայրը՝ անոր տեղը իշխեց իբր խնամակալ, բայց շուտով վտարուեցաւ՝ երբ փորձեց դեռատի վեհապետը սպաննել (Michel le Syrien, Գ., 305):

Իկոնիոյ Մասուտ Սուլթանը դարձեալ փորձեց Մալաթիոյ տիրել (24 Յուլիս 1152), բայց չյաջողեցաւ կրկին:

1153-ին Մասուտ Ա. Սուլթան Բիւզանդիոնի Մանուէլ կայսրէն օգնութիւն գտնելով, գրաւեց Հալէպի Նուրետտինէն Այնթապի շրջակայքը:

Իսկ երբ Մասուտ Սուլթան մեռաւ 1154-ին, որդին՝ Գլըճ Ասլան Բ. գահակալեց, բայց որովհետեւ իր եղբայրը՝ Շահնշահ իր դէմ ելաւ եւ իրարու հետ պատերազմեցան, Նուրետտին առիթէն օգուտ քաղեց եւ իրմէ գրաւուած վայրերը եւ ուրիշ միջագետեան քաղաքներ ալ գրաւեց, սակայն Խարբերդի Խարա-Ասլան Ամիրան[2] (1143—83) իրեն դէմ ելաւ եւ հարկադրեց որ ետ դառնայ (Մ. Քասունի, նոյն):

1157-ին Գլըճ Ասլան Բ. Խարբերդի Խարա-Ասլան ամիրայի հետ հաշտուելով, Միջագետք եկաւ եւ իր հօրը պատկանած տեղերը վերագրաւեց

(1) Պատմագիրներէն ոմանք կայն մեռած ցոյց կու տան 1169-ին:

(2) Խարբերդի մէջ հաստատուած Որթուքեան տան կը պատկանէր, եւ յաջորդած էր Խարբերդի Էմիր Տուար Ամիրայի (1124—1143) (Պատ. Հայաստանի Սահմանները, էջ 316):

(նոյն), բայց երբ 1158-ին Գըլճ Ասլան՝ Բիւզանդիոնի Մանուէլ կայսեր հետ պատերազմի բռնուեցաւ, Նուրէտտին զօրք հաւաքելով Գըլճ Ասլանի սեպհական Մալաթիոյ երկրամասէն Պեհեսնին եւ Ռապանը գրաւեց Մարաշի եւ այլ տեղերու հետ (Մ. Քասունի, նոյն), սակայն 1159-ին հաշտուելով անոր հետ իր գրաւած տեղերը դարձուց Գըլճ Ասլանին:

1160-ին Գըլճ Ասլան Բ. Դանիշմենտներու հետ կռիւի կը բռնուի եւ անոնց ձեռքէն կը խլէ Ալպիսթանը եւ Տարենտէն, որոնք երբեմն Մալաթիոյ էմիրին կը պատկանէին: Նուրէտտին առիթէն օգտուելով հաւանօրէն վերստին կը գրաւէ Մարաշի շրջանակը (հմմտ. Մ. Քասունի, ԱՅՆԹԱՊ ԽԱՉԱԿՐԱՑ ՇՐՋԱՆԻՆ, Յուսաբեր 14 Մայիս, 1953):

Այս շրջանին Տու՛լ Գարնէյնի իշխանութիւնը Մալաթիոյ մէջ կը շարունակուէր, թէեւ շատ պզտիկցած, բայց կը պահէր արտաքին նշանները անկախ վեհապետութեան մը: Այսպէս, ան Մալաթիոյ մէջ հատած է պղնձադըրամներ յունատառ, յոյն թուականով եւ միանդամայն արաբատառ: Անոնց առաջին երեսին վրայ կը կարդացուի՝

ΙΝΔΙΚΤΙΩΝΟΣ ΔΕΥΤΕΡΟΣ

(Երկրորդ Ինդիկտիոնին)

Իսկ երկրորդ երեսին գրուած է արաբերէն՝

الواثق ذو القرنين بن عين الدولة

«Էլ Վասըկ Տու՛լ Գարնէյն Պինի Այն-Ուտ-Դաուլա», այսինքն «[Աստուծոյ] ապաւէն Տու՛լ Գարնէյն, որդի Այն-Ուտ-Դաուլայի», իսկ շուրջը՝ ΟΜΕΤΑΣ ΑΜΗΡΑΣ ΛΟΥΑΧΑΡΝΑΙΝ որ է «Մեծ Ամիրան Դուլ Կարնէյն»:

1162 Հոկտեմբերին, Տու՛լ Գարնէյնի 10 տարեկան անչափահաս զաւակը՝ Նասեր-ալ-Տին Մուհամմէտ Պէն Տու՛լ Գարնէյն կամ պարզապէս Մելիք Մուհամմէտ Ամիրա (1162—9) յաջորդեց իր հօրը: Նասեր ալ Տին Մուհամմէտ Պէն Տու՛լ Գարնէյնի ատեն Դանիշմենտ էմիրներու մէջ գերագահը կամ աւագապետը դարձած էր Եաղուպ Ասլան, որուն նստոցն էր Սեբաստիա:

Նասեր ալ Տին Մուհամմէտ, Դանիշմենտ դերիշխան եւ ամենէն զօրաւոր այս վեհապետին հաւանութեամբ, ամուսնացաւ Շահի Արմէնի Թոռ Սուգմանի փեսին Սուլղուխի աղջկան հետ:

Գոնիայի Ռումի սուլթաններու հակառակութիւնը, որ վերջ չէր գտած, այս ամուսնութեան պատճառով վերարծարծուեցաւ, վասնզի Գըլճ Ասլան ինք առնել կ՛ուզէր այդ աղջիկը. ուստի պատրուակ ըրաւ ասիկա եւ յարձակեցաւ Եաղուպ Ասլանի վրայ:

Եաղուպ Ասլան յաղթեց եւ մտաւ Գըլճ Ասլանի բանակատեղին եւ առաւ «զգանձս ոսկեղէն եւ զամենայն պատրաստութիւն նորա» (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 442—443), բայց յետոյ դարձուց եւ վեհանձնութիւն ցոյց տուաւ, սակայն

Գըլճ Ասլան Բ․, որ կ՚ուզէր անպատճառ կործանել Դանիշմենտ իշխանութիւնը, երբ չկրցաւ զէնքով իր նպատակին հասնիլ, ջանաց զայն պառակտելով կործանել։

Այս նպատակով իրեն գործիք ըրաւ Կեսարիոյ Տանուն Իսմայիլ Իմատէլ-Տին Տու՚լ Նուն Մելիք Մուհամմէտ ամիրան, որ Գըլճ Ասլանի քեռայրն էր (ՊԱՏՄ․ ԵՒԴՈԿԻՈՅ, էջ 209)։

Փոխադարձաբար Եաղուպ Ասլան ալ աշխատեցաւ իր կողմը շահիլ Գըլըճ Ասլանի ստորադաս ամիրաները եւ «ընկենուլ զնա ի թագաւորութենէ եւ դնել զեղբայրն նորա» (ՄԻՔ․ ԱՍՈՐԻ, էջ 444)։

Գըլճ Ասլան վախցաւ եւ Դանիշմենտեան իշխանին դիմադրելու համար Բիւզանդիոնի Մանուէլ Կոմնէն կայսեր դիմեց (Ա․ Ճեմալ, ԹՈԳԱՏ, էջ 27, ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 444) եւ օգնութիւն խնդրեց եւ ստացաւ, բայց Եաղուպ Ասլան ինքն ալ պատրաստուեցաւ եւ Միջագետքի շատ մը ամիրաները հաւաքելով պատրաստուեցաւ դիմադրելու Գըլճ Ասլանի։

Երկու բանակները իրարու դէմ եկան, բայց իրարմէ պատկառելով առանց ճակատելու դարձան իրենց տեղերը։

Բայց Եաղուպ Ասլան տեսնելով իր երկիրին մէջ գոյութիւնը անջատողական հակումներու, որոշեց պետութեան ներքին միութիւնը վերահաստատել։ Եւ ամենէն առաջ ուզեց նուաճել Կեսարիոյ Տանուն ամիրան, որ Գըլճ Ասլանի ձեռքը գործիք եղած էր եւ պառակտած էր Դաշիմենտեան իշխանութիւնը։

Եաղուպ Ասլան զայն ընկճելէ ետք սպաննեց Կամախի ապստամբ Ամիրան։ Նոյնպէս փորձեց գրաւել 1167–ին Մալաթիան, զոր պաշարեց եւ «ոչ կարաց առնուլ եւ եթող ի վերայ նորա զօր եւ չոգաւ» (ՄԻՔ․ ԱՍՈՐԻ, էջ 441)։

Այս պատճառով շատեր կը փախչին Մալաթիայէն։ Խարբերդի տէրը Խարա-Ասլան այդ փախստականները կ՚ընդունի։

Եաղուպ Ասլան կը հաշտուի Մալաթիոյ դեռատի ամիրային հետ, որ իր եղբօրը որդին էր եւ անոր կը թողու Մալաթիան։

Եաղուպ Ասլան կը փորձէ նաեւ նուաճել Խարբերդի ամիրան՝ Խարա-Ասլանը, որ մինչեւ Ամիթ նուաճումներ ըրած էր ինքնագլուխ (ՄԻՔ․ ԱՍՈՐԻ, էջ 448)։ Խարա-Ասլան կ՚ուզէ համաձայնիլ, սակայն Եաղուպ Ասլան անոր համակերպութիւնը կեղծիք համարելով անոր երկիրը կը մտնէ եւ Չմշկածագը գրաւելով 100·000 անձեր գերի կը տանի (ՄԻՔ․ ԱՍՈՐԻ, էջ 448)։

Եաղուպ Ասլան կը մաքառի նաեւ ուրիշ ապստամբ էմիրներու հետ, որոնք կը գրաւէին ըմբոստութեամբ Դանիշմենտ իշխանութեան քաղաքները՝ պարբերաբար ստեղծելով Փոքր Ասիոյ մէջ խառնակ վիճակ մը[1]։

Սակայն Եաղուպ Ասլանի (1143–1167) ջանքերը հակառակ իր կարողու–

(1) Մանրամասնութիւնները տեսնել ՊԱՏ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 205–211։

թեան եւ ճարպկութեան անզօր եղան իշխանութեան միութիւնը վերաստեղծելու Դանիշմենտ էմիրութեան մէջ, այլ ընդհակառակը այդ միութիւնը բոլորովին քայքայուեցաւ, երբ մեռան Կեսարիոյ Զէննուն կամ Տանուն, որդին Մեհեմմէտ Ղազիի եւ Սեբաստիոյ մէջ Իպրահիմ՝ միւս որդին Մեհեմմէտ Ղազիի (1167)։ Ասոնցմէ զատ զանազան քաղաքներու մէջ այլ Դանիշմենտ իշխանութիւններ երեւան եկած էին, ինչպէս կը հաստատէ Միքայէլ Ասորի, որ 1166—1167 կը յիշէ Դանիշմենտ իշխանութիւններ Սեբաստիա, Կեսարիա եւ Ալպիստան կեդրոններով, առանց յիշելու Մալաթիոյ էմիրը, Նասիր ալ Տին Մուհամմէտ Իպն Տու՛լ Գարնէյնը (1162–9), որուն իշխանութեան սահմանները կը նեղնային դրացիներու դրաւումներով։

Այսպէս, 1168-ին Գլըճ Ասլան Դանիշմենտներէն յափշտակեց Կեսարիան եւ Ծամնդաւը։

Դանիշմենտ իշխող տունը շատ անկեալ եւ ապականեալ վիճակ մը ունէր։

Նասիր ալ-Տին Մուհամմէտ Իպն Տու՛լ Գարնէյն (1162–9) այնքան անժողովրդական եղած էր իր ցոփութիւններով որ ստիպուեցաւ հեռանալ Մալաթիայէն՝ 1170-ին։

Նասիր ալ Տին Մուհամմէտ Պէն Տու՛լ Գարնէյն եւս 1169-ին դրամներ հատած է, որոնց վրայ կը տեսնենք մէկ կողմը պատկերը Քրիստոսի, որ ձեռքը դրած է Թագաւորի մը գլխուն վրայ, իսկ միւս կողմը կը կարդացուի արաբատառ իր անունը ու տիտղոսը «Մուհամմէտ Իպն Զի էլ Գարնէյն» (Բասմաջեան, ՀԱՅԿ. ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ, էջ 163)։

Իր որդին էմատետտին Դու՛լնուն (մեր պատմիչներուն Տունուն-ը կամ Տանունը), զոր հայրը Կեսարիոյ կառավարիչ նշանակած էր, 1169-ին իր հօրը աթոռը գրաւելու համար Մալաթիա գնաց, բայց հոն չկրցաւ հաստատուիլ եւ Գլըճ Ասլան Բ.էն հալածական փախաւ իսլամութեան պաշտպան Սուրիոյ Նուրետտին Սուլթանի քով, որուն հետ դաշնակցելով 1172-ին սկսաւ կռուիլ Գլըճ Ասլանի դէմ, որ Նուրետտինէն վախնալով ետ քաշուեցաւ եւ Նուրետտին գրաւեց Մարաշը, Պեհեսնին, Քեսունը եւ այլ վայրեր մինչեւ Ջահան (հմմտ. Մ. Քասունի, նոյն)։

Մալաթիան չկրցաւ գրաւել։

Իսկ Մալաթիոյ մէջ Մելիք Մուհամմէտի գահը գրաւեց իր եղբօրորդին Ապուլ Գասըմ կամ Ֆախլ ալ Տին Գասըմ (1170–1172) որդին Տու՛լ Գարնէյնի (Y. H. Modtmann, ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆ. էջ 938), այսինքն եղբայրը Նուրետտին Մուհամմէտի Տու՛լնունի հօրը։ Հետեւաբար տղան չկարենալով տիրել, եղբայրը յաջորդած էր։

Այս վեհապետն ալ իր նախորդներուն պէս, պղինձ դրամ հատած է Մալաթիոյ մէջ «յունատառ եւ քրիստոնէավայել», ինչպէս կ՛ըսէ Բասմաջեան (ՀԱՅԿ. ԴՐԱՄԱԳԻՏՈՒԹԻՒՆ, էջ 114)։

Դանիշմենտ իշխանութեանց օրհասը սկսած էր։

Անոնց ամենէն զօրաւորին Եաղուպ Ասլանի իշխանութիւնն իսկ քայքայուիլ սկսած էր, վասնզի անոր մահէն (1167) ետք, ամէն կողմ ապստամբութիւններ ծագած էին: Իր որդւոյն՝ Ապու Մուհամմէտ Ճեմալ Ղազիի (1167—9) իշխանութիւնը ներքին խռովութիւններով անցաւ: Ասկէ քաջալերուած Գըլըճ Ասլան անգամ մըն ալ փորձեց գրաւել Մալաթիան, որուն վրայ յարձակեցաւ 1172–ին, սակայն դարձեալ չկրցաւ գրաւել քաղաքը (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 468), վասնզի Սանուխ (Սայտալ Տին) ներքինիին գլխաւորութեամբ բնակիչները արագօրէն պատրաստած էին ինքնապաշտպանութիւն:

Գըլըճ Ասլան ստիպուեցաւ նորէն քաշուիլ, բայց գերի տարաւ 30·000, ըստ ոմանց 12·000 հոգի Մալաթիոյ շրջակայքէն (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 468):

Նուրետտին Դամասկոսի Սուլթանը, որուն օգնութեան ապաւինած էին խալամ իշխաններ ընդդէմ Գըլըճ Ասլան Բ.ի, իրեն հետ ունենալով Սեբաստիոյ Մելիք Իսմայիլ (1169—1173) Դանիշմենտ վեհապետը եւ Գըլըճ Ասլանի ապըստամբ եղբայրը՝ Շահնշահը, արշաւեց մինչեւ Կեսարիա, բայց Գըլըճ Ասլան չուզեց պատերազմիլ անոնց դէմ, այլ միայն Շահնշահի իր քով գտնուող հինգ զաւակներէն մէկը խորովելով հօրը ղրկեց՝ սպառնալով միւսներն ալ այսպէս ընել եթէ չմեկնի:

Այսպէս Գըլըճ Ասլան Բ. զանոնք հաշտութեան հարկադրեց (ՄԻՔԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 468), եւ յաջորդ տարին (1174) օգտուելով Նուրետտինի մահէն գրաւեց Դանիշմենտ իշխանութեան հողերը իրենց Սեբաստիա մայրաքաղաքով 15 Փետր. 1175, մինչդեռ Մալաթիոյ մէջ կը շարունակուէր այդ քաղաքին տիրող տունը, Ապուլ Գասըմի վեհապետութեան տակ:

Այս իշխանը 1172 Մայիսին, 15 տարեկան հասակին Հիւսն Հիյարի (Խարբերդ) իշխանին աղջկան հետ ամուսնացաւ: Հարսանեկան խրախճանութեանց ատեն, ձիաւորներու հետ մարտախաղի մը ատեն ձիէն ինկաւ եւ մեռաւ (Michel le Syrien, Գ., 343): Եղբօր որդին Ֆիրիտոն (Afridun), որ իրմէ ալ աւելի երիտասարդ էր, յաջորդեց իրեն եւ ստիպուեցաւ ամուսնանալ Ապուլ Գասըմի նշանածին հետ:

Բայց երբ Ֆերիտոն սպաննուեցաւ 15 Փետր. 1175–ին իր եղբօրը Մուհամմէտի կողմէ, որ բազմաթիւ արկածախնդրութիւններէ ետք համաձայնելով Զիյատի (=Խարբերդ) իշխանուհիին հետ — որ իր ամուսինը լքած էր — ծպտուած Մալաթիա մտած էր (Michel le Syrien, Գ., էջ 262—4):

Գըլըճ Ասլան Բ., որ ամէն ջանք ըրած էր վերջ տալու Դանիշմենտ իշխանութեան, երբ այս եղելութիւնները իմացաւ, յարմար ժամանակը նկատեց վերջ տալու Դանիշմենտ իշխանութեան:

Արդէն Սեբաստիա գրաւած էր եւ միայն Մալաթիա կը մնար Դանիշմենտներու ձեռքը:

Գըլըճ Ասլան Բ. գնաց պաշարեց նորէն Մալաթիան: Քաղաքին մէջ այնքան դժգոհ էին Մուհամմէտէն որ այլեւս կեանքը վտանգուած զգաց հոն եւ ստիպուեցաւ Հիսն Զիյար (Խարբերդ) քաշուիլ: Զորս ամսուան պաշարումէ

*մը ետք*, 25 *Հոկտեմբեր* 1178–*ին*, *Գըլըճ Ասլան* *մուտք գործեց Մալաթիա* (Michel le Syrien, Գ., 373)։

*Ապահովաբար այս վեհապետին համար են Միքայէլ Ասորիի հայերէն թարգմանութեան* (*էջ* 482) *սա տողերը*, 1179 *թուականով*.— «Քրիստոնեայք որ կային ի Մելիտինէ՝ անկան ի մեծ նեղութիւն յերկուց պատճառաց, ի սովոյ եւ ի չարութենէ եւ ի խիստ բարուց ամիրային իւրեանց, որ մնացեալ էր յազգէն Դանիշմանայ»։

*Ի վերջոյ կ'երեւայ թէ իր խստութենէն հրաժարած է այս ամիրան, որ* «զղջացաւ ի գործս իւր եւ առաքեաց առ սուլթանն եւ առ ի նմանէ զանձ եւ ետ ի նա զՄելտինի եւ ինքն եկ եւ գնաց ի Խարբերդ, եւ եղեւ մեծ դիւրութիւն քրիստոնէից եւ առատութիւն հացի, եւ ամենայն իրաց ընդարձակութիւն» (*Նոյն*, *էջ* 483)։

*Ուրեմն Մալաթիա գրաւուած է Իկոնիոյ Սուլթանէն* 1178–*ին*։

*Հաւանօրէն այս վերջին իշխանն է որ*, *ըստ Ջոննարիի եւ Նուխրէթ ալ Թաւարիխի հեղինակին* (*յիշուած Համմերէ*, Geschichte d'Osman Reiches–*ի մէջ*, I, 622) *Գըլըճ Ասլանէն թունաւորուած է եւ անմիջապէս գրաւուած է Մալաթիան*։

*Այսպէս վերջ գտած է Դանիշմենտեանց այս ազգային ճիւղն ալ*։

## ԺԶ.

# ՄԱԼԱԹԻԱ ՌՈՒՄԻ ՍԵԼՃՈՒԿ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

## (1178 — 1315)

*Ասետտին Գըլըճ Ասլան Բ.* (1156—1191), *երբ* 1178–*ին* *գրաւեց Մալաթիան*, *Ռումի Սելճուկ Իկոնիոյ Սուլթանութիւնը հասաւ իր փառքին կատարը*, *որովհետեւ իր ամենէն գլխաւոր մրցակիցը կը դադրէր գոյութենէ եւ ինք կը տիրակալէր Փոքր Ասիոյ սիրտին՝ Կարինէն մինչեւ Յոնիական եւ Սեւ ծովէն մինչեւ Միջերկրական*։ *Բայց ինք չկրցաւ տեւականապէս պահել այս հողերը*, *վասնզի իր սահմաններէն դուրս Հայաստանի*, *Փոքր Հայքի*, *Միջագետքի եւ այլ վայրերու մէջ երեւան եկած էին դարուն սկիզբէն*, *զանազան Թիւրքմէն իշխանութիւններ*, *որոնք հետզհետէ դէպի արեւմուտք՝ Փոքր Ասիա առաջանալու կը ձգտէին*։ *Միւս կողմէ Եգիպտացիք Ասիա անցած դէպի հիւսիս կը յառաջանային՝ Սիւրիայէն Եփրատ եւ անկէ Հայաստան մտնելով*։ *Թիւրքմէն իշխանութիւններուն ամենէն զօրաւորներէն մէկն էր Օրթոքեանց*

իշխանութիւնը, որուն վեհապետը Թիմուր տաշ Որթոքեան երբ մեռաւ 1153-ին, իր պետութիւնը երեք որդիներուն մէջ բաժնուեցաւ։

Այս երեքէն ամենէն զօրաւորը հանդիսացաւ Նեճմետտին Ալի, որ ստացած էր Մարտինը եւ Մուֆարղինը։ Ասիկա էր «այր բարի եւ քաղցր ի վերայ քրիստոնէից» (ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 476)․ 22 տարիներու (1154—1176) իշխանութենէ մը ետք մեռաւ եւ իրեն յաջորդեցին իր որդին Գութպետտին Էլ Կազի (1176—1184) եւ ապա այս վերջինին անչափահաս որդին Հիւսամետտին Եուլուք Ասլան (1184—1207)։

Թիւրքմէն այս իշխանութիւնները հետզհետէ տարածուելով արդէն Եփրատ հասած էին։

Գըլըճ Ասլան Բ․ անշուշտ հաւանական բախումի մը նախատեսութեամբ, Մալաթիոյ ռազմական դիրքը նկատի ունենալով, հաւանօրէն կրկին վերանորոգեց քաղաքին երկու պարիսպները (1081) (Michel le Syrien, Գ․, 388)։

Այս էմիրներէն Թիմուր տաշ (1153), երբ տակաւին միահեծան կը տիրէր Որթոքեան Սուլթանութեան, Հասան Քէֆը գրաւեց Խարբերդի էմիրներուն ձեռքէն եւ իրեն հնազանդեցուց։

Խարբերդի ամիրան Նուրետտին Մահմուտ (1183—5) վերագրաւեց Հասան Քէֆը, ինչպէս նաեւ Ամիթը 1183—1184-ին եւ կրկին միացուց իր էմիրութեան (ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 448)։ Ան գրաւեց նաեւ Քեսունը։

Ճիշդ այդ օրերուն Սալահետտին Էյուպեան քիւրտը, որ Եգիպտոսի կը տիրապետէր, 1184-ին եւ 1185-ին — երկու անգամ — յարձակեցաւ Մուֆարղինի վրայ, Խլաթ գացած ատեն (ՄԻԽԱՅԷԼ ԱՍՈՐԻ, էջ 400)։

Սալահետտին Մուֆարղինը գրաւելէ ետք հոն իրեն ներկայացուցիչ կամ փոխանորդ դրաւ Էլ Մելիք Էլ Անուատ Նեճմետտին Էյուպը (1201—1220), եւ այսպէս խառնուիլ սկսաւ Ասիոյ մէջ կազմուած Սելճուկ եւ Թիւրքմէն էմիրութիւններու գործերուն։

Անոնք արդէն երկպառակուած, Սալահետտինի օգնութեան կը դիմէին որ ընդարձակ երկիրներու տիրակալած էր եւ ամենէն զօրաւորն էր այդ շրջանակին մէջ տիրող իշխանութիւններուն։

Վերոյիշեալ Խարբերդի ամիրան Նուրետտին Մահմուտ (1183—5) մէկը եղաւ այդ էմիրներուն, որ Սալահետտինի դիմեցին։

Նուրետտին Մահմուտ փեսան էր Ռումի Սելճուկ Սուլթան Գըլըճ Ասլան Բ․ի (1156—1193), բայց կ'ատէր իր կինը եւ ասոր համար պատերազմի մէջ էր Իկոնիոյ Սուլթանին հետ, յոյս դնելով Սալահետտինի վրայ։

Գըլըճ Ասլան Բ․ պատժելու համար իր փեսան «չոգաւ fակեաց զԲեսուն» (ՄԻԽ․ ԱՍՈՐԻ, էջ 487), այսինքն գրաւեց եւ քանդեց քաղաքը։

Սալահետտին օգնութեան հասաւ Նուրետտին Մահմուտի եւ զայն զօրացնելու համար գրաւեց Ամիթը, զոր նուիրեց Նուրետտինի, ապա գնաց Գըլըճ Ասլանի դէմ՝ վրէժ լուծելու համար անկէ։

Հասան անուն ամիրան միջամտեց այս երկու խլամ զօրաւոր իշխա–

կալներուն միջեւ եւ «իմաստուն բանիւ արար խաղաղութիւն եւ ոչ կռուեցան եւ դարձան խաղաղութեամբ ի տեղիս իւրեանց» ։

Հասան Բէյ մնաց Խարբերդի էմիրութեան, ոչ միայն Նուրետտին Մահմուտի, այլ նաեւ անոր յաջորդին՝ Էմատետտին Ապու Պեքիրի (1185—1205) իշխանութեան շրջանին ։

Սակայն Որթուքեանք, հովանաւորուած Սալահետտինէն, սպառնալիք մը կը կազմէին Իկոնիոյ Սելճուկ Ռումի Սուլթանութեան համար ։ Միւս կողմէ Թիւրքմէնները, ասիական բարբարոսները նոր խումբ մը, կ'արշաւէին դէպի արեւմուտք եւ 1185–ին Փոքր Ասիոյ մեծ մասը կ'աւերէին, ի միջի այլոց Մալաթիոյ սահմաններն ալ խուժելով եւ աւարի մատնելով(Michel le Syrien, Գ., 402) ։ Սելճուկ Ռումի Սուլթանութիւնը ուրեմն վտանգի տակ էր եւ պէտք էր դիմադրել այս յարձակումներուն, մինչ ներքնապէս ալ զօրաւոր չէր եւ քայքայման նշաններ ցոյց կու տար ։ Գըլճ Ասլան Բ.ի որդիները կ'ապստամբէին իրեն դէմ եւ իշխանութիւնը յափշտակել կը ջանային ։

Այս անբաղձալի վիճակը թերեւս պատճառ եղած է որ Գըլճ Ասլան Բ. փորձէ վերակազմել իր պետութիւնը, զոր ժամանակին տիրող վարչաձեւին համաձայն աւատական կարգերու պատշաճեցնել կ'ուզէ 1189–ին ։ Michel le Syrien–ի եւ այլ արաբ աղբիւրներու համաձայն՝ իր զաւակները իբրեւ ճորտ՝ իր գրաւած երկիրներուն կուսակալ եւ կառավարիչ նշանակեց, իսկ իր մահէն երկու տարի առաջ՝ 1191–ին իր պետութիւնը բաժնեց իր 10–12 զաւակներուն միջեւ ։

Այսպէս, ռումի սելճուկ պետութիւնը կոտորակուեցաւ 11 իշխանութիւններու ։

Այդ իշխանութիւններէն մէկուն կեդրոնը եղաւ Մալաթիան, զոր ըրջակներով ստացաւ Մուեզետտին Քայսար Շահ (Michel le Syrien, Գ., 407, RHC. HO Բ. 56 եւ Գ. 269) ։

Սակայն բաժանումը նպաստաւոր հետեւանք մը չունեցաւ, վասնզի Գըլճ Ասլան Բ.ի տասնեակ մը զաւակները սկսան արհամարհել իրենց հայրը եւ ինքնագլուխ գործել եւ իրենց սեպհական հաշուոյն նուաճումներ ընելով՝ ուզեցին իրենց սահմանները ընդարձակել, երբեմն դրացի օտար իշխանութիւններէ եւ երբեմն ալ իրարմէ հողեր կորզելով[1] ։

Այնպէս որ Գըլճ Ասլանի անխոհեմ կարգադրութեամբ պետութիւնը փոխանակ զօրանալու՝ աւելի տկարանալ սկսաւ ։ Հայոց Լեւոն Թագաւորը (1185—1219) եւ Ֆրետերիկ Շիկամօրուս (1182—1190), որ Խաչակիրներու բանակով մը Փոքր Ասիա եկած էր, կրցան յաղթանակներ շահիլ Ռումի Սելճուկ Սուլթանութեան դէմ (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 506—7) ։

Շիկամօրուս կայսրը յաջողեցաւ նոյնիսկ գրաւել Իկոնիան, սելճուկ

(1) Այս կռիւներուն շարքին յիշատակելի են մեր Կիլիկեան Թագաւորութեան դէմ մղուած կռիւները (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 504)։

*մայրաքաղաքը*, 1189–*ին* (De Hammer, **Histoire de l'Empire Ottoman,** *հտ.* 14)։

*Գըլըճ Ասլան Բ. ըմբռնելով իր գործած մեծ սխալը, ջանաց միացնել պետութիւնը իր անդրանիկ զաւակին՝ Խութպետտինի ձեռքին տակ, եւ անոր դիրքը զօրացնելու համար ամուսնացուց զայն հռչակաւոր Եուսուֆ Սալահետտինի աղջկան հետ։*

*Բայց չկրցաւ իր նպատակին հասնիլ, վասնզի իր զաւակները իրենց ստացած հողերէն չէին ուզեր հրաժարիլ եւ սաստիկ կը մաքառէին իրարու եւ իրենց հօրը դէմ (Ալեքսանդեան,* ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, *էջ* 194, ՍԻՍՈՒԱՆ, *էջ* 490, ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, *էջ* 507)։

*Ասոնց մէջ ամենէն ձեռներէցը եւ յաջողակը հանդիսացաւ կրտսերագոյնը Ղայասետտին Կայ Խոսրով Ա.* (1193), *որ գրաւեց մայրաքաղաքը եւ հօրը իշխանութիւնը յափշտակեց։ Սակայն միայն Լիկաոնիան եւ Պամփիլիան ունէր իր ձեռքը։ Իսկ Թոգատի տէր Ռուքնետտին Սեւ ծովու եզերքը քանի մը ամրոցներ գրաւած էր եւ Խութպետտին Մալիհ Սալէհ՝ անդրանիկը՝ թէեւ վանուած էր մայրաքաղաքէն, սակայն տակաւին իր իշխանութեան տակ ունէր Կեսարիան, Մալաթիան, Սեբաստիան եւ Կողոնիան (=Շապին Գարա Հիսար)։*

*Մասուտ գրաւած էր Ամասիան, Էնկիւրին եւ Դորելիան (=Էսկի Շեհիր) եւ ուրիշ քաղաքներ Պոնտոսի մէջ* (ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, *էջ* 195)։

*Այս խառնակութեանց միջոցին Գըլըճ Ասլան ստիպուեցաւ Մալաթիան տալ իր Խութպետտին Մալէհ Սալէհ որդւոյն, առնելով Միւեզետտին Քայսարշահէն, որ կ'երեւի թէ տկար արարած մըն էր։*

*Միւեզետտին Քայսարշահ ապաստանեցաւ* 1191—2–*ին (հիճրէթի* 587) *Եգիպտոսի Սալահետտին Էյուպի Սուլթանին քով եւ անոր օգնութեամբ յաջողեցաւ պահել Մալաթիոյ վրայ իր վեհապետութիւնը* (RHC. HO *Ա.*57, 68 *եւայլն. Գ.*, 264, *Ե.*, 24)։

*Գըլըճ Ասլան Բ.ի մահէն* (1192) *ետք, իր բոլոր զաւակները, որոնք, ինչպէս տեսնուեցաւ, իր կենդանութեան իրարու հետ մաքառիլ սկսած էին (Ա. Ալպօյաճեան,* ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, *էջ* 504 *եւ* ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, *էջ* 226–7), *ինքզինքնին սուլթան հռչակեցին եւ իրարու դէմ կռուեցան։*

*Ամենէն առաջ իրարու դէմ ելան Սեբաստիոյ Խութպետտինը եւ Կեսարիոյ Նուրետտինը, որ իր հողերէն վանուած էր։ Խութպետտին մեռաւ ճակատամարտին մէջ, սակայն Նուրետտին չկրցաւ տիրանալ իր հողերուն, վասնզի Թոգատի Սուլթանը՝ Ռուսետտին Սիւլէյման* (1193—1204) *ինք գրաւեց Կեսարիան, ինչպէս նաեւ մեռնողին երկիրը՝ Սեբաստիան, եւ զօրանալով գրաւեց նաեւ Իկոնիան՝ անկէ վանելով Ղայասետտին Կայ Խոսրովը, որուն տուաւ իբր ճորտութիւն՝ Ալպիսթանը։ Սակայն Ղայասետտին չհամակերպեցաւ եւ նախ Հալէպ, ապա Կիլիկիա եւ վերջապէս Տրապիզոն եւ Կ. Պոլիս ապաստանեցաւ* (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, *էջ* 508)։

Ռուքնետտին Սիւլէյման դարձաւ Սուլթան (1193—1204)՝ ընդհանուր ռումի պետութեան եւ յաջողեցաւ փրկել կայսրութիւնը սպառնացող քայքայումի վտանգէն եւ պետութեան մեծ մասը միացնել իր վեհապետութեան ներքեւ, սակայն բաւական ատեն Մալաթիան չկրցաւ միացնել իր պետութեան, վասնզի Միւեզետտին Քայսարշահ շնորհիւ Սալահետտինի կրցած էր իր վեհապետութիւնը պահել: Քայսարշահ, ամրապնդելու համար իր դիրքը, ամուսնացաւ Սալահետտինի որդւոյն Մելիք Էլ Ատիլի աղջկան հետ, եւ ընկերացաւ Սալահետտինի բանակներուն՝ անոր մղած պատերազմներուն մէջ ( **RHC. HO** Ե․ 117) : Սակայն հակառակ այս զօրաւոր պաշտպանութեան՝ ի վերջոյ Մալաթիան, 1200 Յունիսին, գրաւուեցաւ Թոզատի Ռուքնետտին Սիւլէյման սուլթանին կողմէ :

Միւեզետտին Քայսարշահ փախաւ եւ ապաստանեցաւ իր աներոջ՝ Մելիք Ատիլին քով (Բարհեբրէոս, ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ, էջ 406, **RHC. HO** Բ․ 71), որ իր փեսին չկրցաւ դրական աջակցութիւն մը ընծայել:

Ռուքնետտին Սիւլէյման սուլթան այնքան զօրացաւ որ իրեն հպատակեցուց 1203-ին Սալահետտինի միւս որդին եւ Մելիք Ատիլի եղբայրը՝ Մելիք Էլ Զահիրը, որ իր ժառանգութենէն միայն Սամոսատը պահած էր (Բարհեբրէոս, Ի․, էջ 408) :

Տարի մը ետք Ռուքնետտին Սիւլէյման գրաւեց նաեւ Անդարան, բայց քանի մը օր ետք մեռաւ (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 418) կամ սպաննուեցաւ, որովհետեւ անհաճոյ եղած էր մահմետական կրօնաւորներու, որոնք զինք իբրեւ անաստուած կ՚ամբաստանէին (ՊԱՏՄ․ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 508) : Սակայն Ռուքնետտին Սիւլէյման սուլթան (1192—1204) կատարած էր կարեւոր դեր մը՝ փրկելով սելճուկ ռումի կայսրութիւնը անոր սպառնացող քայքայումի վտանգէն :

Իր դեռատի որդին՝ Ասետտին Գլըճ Ասլան Գ․ յաջորդեց իրեն (1204), բայց շուտով գահընկէց եղաւ եւ բանտ նետուեցաւ Ղայասետտին Կայ Խոսրով Ա․ի կողմէ, որ Կ․ Պոլիսէն եկաւ Բիւզանդիոնի օգնութեամբ (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 419) եւ վերագրաւեց իր գահը, որմէ վանուած էր, ինչպէս տեսնուեցաւ (Ա․ Ալպոյաճեան, ՊԱՏՄ․ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 508 եւ ՊԱՏՄ․ ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 228) :

Այս կերպով երկար պայքարէ մը ետք պետութեան միասնականութիւնը վերստին կը հաստատուէր: Ղայասետտին Կայ Խոսրով հազիւ վերահաստատուած իր իշխանութեան մէջ, աշխատեցաւ ռումի սուլթանութենէն կորզուած հողերը վերագրաւել: Այսպէս, ան յարձակեցաւ Կիլիկիոյ Լեւոն Թագաւորին վրայ (ՍՄԲԱՏ ԳՈՒՏՍՏԱՊԼ, էջ 115, ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 508) :

Նոյնպէս նաեւ յարձակեցաւ ռումի պետութենէն բաժնուած միւս իշխանութիւններուն վրայ:

Ղայասետտին Կայ Խոսրով Ա․ Մալաթիոյ կուսակալ նշանակեց իր երէց որդին Ասետտին Կայ Քաուսը, որ իրեն յաջորդեց եւ երկիրը կառավարեց

1211-էն 1220։

Ղայասետտին Կայ Խոսրովի եւ իր որդւոյն Ասետտին Կայ Քաուսի իշխանութիւնները խաղաղ ժամանակամիջոց մը չէին ոչ միայն Իկոնիոյ կայսրութեան, այլեւ դրացի երկիրներու — ինչպէս Կիլիկիոյ Հայոց Թագաւորութեան, Նիկիոյ յոյն կայսրութեան, Կ. Պոլսոյ լատին կայսրութեան, Պոնտոսի յոյն կայսրութեան եւ այլ մանր իշխանութեանց համար, որոնք իրարու դէմ կը կռուէին անընդհատ (տես մանրամասնութիւններ, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 508—512), սակայն անոնք ուղղակի Մալաթիոյ հետ կապ չեն ունեցած։

Արտաքին այս կռիւներուն հետ ներքին միութիւնն ալ կը պակսէր Իկոնիոյ Սուլթանութեան, վասնզի Ասետտին Կայ Քաուս Ա.ի (1211—1220) դէմ կը կռուէր իր կրտսեր եղբայրը՝ Ալայետտին Կայ Խուպաթ, զոր իր հայրը՝ Ղայասետտին Կայ Խոսրով Թոգատի կուսակալ նշանակած էր։

Երկու եղբայրները իրարու դէմ մաքառեցան գահուն տիրանալու համար (ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ, էջ 228)։ Բայց յաղթանակը մնաց Ասետտինի, որ Ալայետտինը գերի բռնելով Մալաթիոյ կողմերը բերդի մը մէջ բանտարկեց։

Ասետտին Կայ Քաուս իր իշխանութեան շրջանին բոլոր դրացի երկիրներու հետ պատերազմեցաւ շարունակ եւ գեղազարդեց իր նախասիրած Սեբաստիա քաղաքը (ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ, էջ 229)։

1220-ին, Մելիք Էլ Աշրաֆի դէմ արշաւանքի մը ատեն Մալաթիոյ մէջ հիւծախտէ վարակուեցաւ եւ վերադարձին մեռաւ այս հիւանդութենէն (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 437, RHC. HO Բ. 150, եւայլ), հաւանօրէն Մալաթիոյ մէջ[1]։

Իրեն յաջորդեց Մալաթիոյ մօտակայ բերդի մը մէջ բանտարկուած Ալայետտին Կայ Խուպատ Ա. (1220—1236), որ Սելճուկ Իկոնիոյ սուլթանութեան ամենէն փառաւոր դէմքն է եւ կոչուած «Մեծ»։

Իր օրով այս պետութիւնը իր ընդարձակագոյն տարածութեան հասաւ։

Անիկա տիրեց Միջերկրականի երկայնքը՝ հայ եւ լատին ասպետներու իշխանութեան տակ գտնուած ամրոցներուն եւ տարածեց իր իշխանութիւնը մինչեւ Սելեւկիա քաղաքը, ուրկէ անդին անցնելէ հրաժարեցաւ միայն այն

(1) Մալաթիոյ հին քաղաքէն մէկ քիլոմեդր դուրս Մեծ Մզկիթին հարաւակողմը, նոր քաղաքին ճամբուն վրայ Սելճուկեան շրջանէն մնացած դամբարան մը կայ, որ կը թուի պատկանիլ այս Սուլթանին, վասնզի թէեւ արձանագրութիւնը անընթեռնլի եղած էր, բայց Grenard կրցած է որոշել Քայքայուշի անունը եւ Զիւլգատէ 610 թուականը (=1212), որուն 10-ն տարակուսելի էր՝ մաշած ըլլալով (Grenard, Note sur les monuments du Moyen Age de Malatia, Divrique, Sivas, Darendeh, Amasia et Tokat. Տես Journal Asiatique, XVII, 1901, էջ 551)։ Այդ թիւին ընթերցումը արդարեւ սխալ կը թուի, վասնզի Քայքայուշ 1220ին մեռած է, որուն Հիճրէթի համապատասխան թուականը պէտք է ըլլայ 618 եւ ոչ թէ 610։

պայմանով որ հայ իշխանները հարկատու դառնային իրեն Տրապիզոնի կոմնէններու պէս։

Հայոց Հեթում թագաւորը ինքն ալ ճանչցած էր Ալայէտտին Քայ Խոպատի գերիշխանութիւնը եւ նորոգած այն դաշինքը, զոր Լեւոն թագաւոր կնքած էր իր մահէն քիչ առաջ, Ալայէտտինի հօր հետ (հմմտ. ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ, էջ 95 եւ ՍՄԲԱՏ ԳՈՒՆՏՍՏԱԲԼ, էջ 121, ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 512)։

Այս սուլթանը նաեւ գրաւեց Մալաթիոյ շրջակայքը բռնակալող ճորտական Արդիկ օղլուներու իշխանութեան մէջ գտնուող Քեախթէն եւ Չմշկածագը իրենց շրջականերով։

Իր զինուորական յաղթանակներուն փառաւորագոյնը եղաւ Խուարէզմի շահ Մուհամմէտ Ճելալ–էտ–Տինի դէմ Երզնկայի մօտ — 1230–ին — իր շահած ճակատամարտը՝ իրեն զինակից Էյուպեան Աշրաֆ եւ Քեմալ իշխաններուն հետ, որոնք Ալայէտտին Քայ Խոպատ Ա.ի պէս Մահմետականներ էին, եւ ասոր համար թերեւս գթութեամբ վարուեցան իրենց համակրօն թշնամիին դէմ եւ չհետապնդեցին անոր փախչող բանակը (ԿԻՐԱԿՈՍ, էջ 119—120. հմմտ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 513)։

Ալայէտտինի այս յաղթանակը, որ մեծ խանդավառութիւն ստեղծեց իր պետութեան մէջ, քիչ յետոյ աղէտի մը պիտի վերածուէր, վասնզի այս յաղթանակով անիկա կը քանդէր միակ պատուարը, որ կը կանգնէր արեւելքէն սպառնացող նոր վտանգին՝ Մոնկոլներու արշաւանքին դէմ։ Ինչպէս որ Բիւզանդիոն քանդած էր Հայաստանի հայ թագաւորութիւնները ԺԱ. դարուն սկիզբը եւ դիւրացուցած էր Սելճուկներուն մուտքը իր հողերուն մէջ, նոյնը ըրաւ Ռումի սուլթանութիւնը, որ անհեռատեսութեամբ մաքառեցաւ Խուարէզմի Շահ Ճելալէտտինի հետ, Շահ Արմէններու մայրաքաղաքը Խլաթը գրաւելու համար։

Անոր յաղթելէն ետք վերջ տուաւ նաեւ Էրզրումի սելճուկեան կողմնական (Collateral) հարստութեան եւ անոր երկիրները կցեց իր պետութեան եւ պատուար մը եւս ջնջեց (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 513)։

Այս նոր նուաճումը սակայն պատճառ եղաւ նոր պատերազմի մը, որովհետեւ Ալայէտտին Քայ Խոպատի դաշնակից Էյուպեան Մելիք Էլ Քամել սուլթանը նախանձիլ սկսաւ, եւ Սիւրիոյ ու Միջագետքի տասնեւվեց մահմետական իշխանները, մեծ մասամբ Էյուպեան, առաջնորդեց մեծ ոյժերով դէպի Փոքր Ասիա Ալայէտտինի դէմ։ Բարեբախտաբար անոնք չվստահեցան Եգիպտացիին ոյժին վրայ եւ փորձը ցոյց տուաւ որ դժուար գործ մըն էր լեռնային լաւ ամրացուած անցքերէն թափանցել Փոքր Ասիոյ ներքին մասերը. այնպէս որ առաւելութիւնը մնաց Ալայէտտինի կողմը, որ Կարսի գրաւումէն ետք, ինչպէս Սմբատ Գունտստապլ կը գրէ «ոլորեցաւ անտի եւ երեկ էառ զՄելտինի եւ զԽարբերդ եւ զՉմշկածագքն եւ զԱմիթ եւ զԾոփքն եւ մինչ Եփրատ կտրէ, զամէնն մլքեց եւ կորոյս զՍուլտանայքն հայնց որ էլաւ, եկաւ Մըսրայ

Սուլտանն Անթափայ տիրոջն ի յօգն ու զկարայ իւր առնել, խանգարեաց զամէնն ու փախոյց»:

Սակայն չկրցաւ պահել իր գրաւած վայրերը, զորս կորսնցուց եւ 1231-ին իր իշխանութեան վերջերը Մոնկոլները յառաջացան մինչեւ Հիւսն Զիյար (=Խարբերդ), մինչեւ Եփրատ, Մալաթիոյ մօտերը (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 463): Ալայետտին 1232-ին գրաւեց Խլաթը Մելիք էլ Աշրաֆէն: Երբ յաջորդ տարին այս վերջինը Հիւսն Մանսուրը գրաւեց Եգիպտոսի Մելիք էլ Քամել եղբօրը հետ, Ալայետտին Մալաթիոյ մէջ հաւաքեց 100·000 հոգիէ աւելի բանակ մը, նուաճեց Հիւսն Զիյարը (Խարբերդ, նոյն, էջ 467) եւ պաշարել տուաւ 1233-ին Ալ-Րուհան (=Ուրֆա=Եդեսիա): Խարրանի բնակիչները յարձակումէ մը վախնալով, իրեն՝ Մալաթիա ղրկեցին իրենց քաղաքին բանալիները (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 468, Kamal-el-Din, թրգմ. Blochet, **Revue de l'Orient Latin**, V. 88): Այս կերպով առաջին անգամ ըլլալով Մոնկոլները թափանցեցին դէպի Անատոլու:

Առաջին անգամ Զարմաղան Նուին մոնկոլ հրամանատարին առաջնորդութեամբ առաջացաւ մինչեւ Սեբաստիա, աւերելով եւ սրբելով Ալայետտին Կայ Խոպատի ռազմական կարեւոր վայրերու մէջ կառուցած բերդերը, որոնք անզօր եղան մոնկոլ հեղեղը կասեցնելու:

Ալայետտին Կայ Խոպատ ասոր վրայ խոհեմութիւն համարեց Մոնկոլներու առջեւ խոնարհիլ եւ ընդունեցաւ անոնց գերիշխանութիւնը:

Իր որդին եւ յաջորդը՝ Ղայասետտին Կայ Խոսրով Բ. (1236—1246), որ իր հայրը թունաւորելով սպաննած էր, ժառանգեց իր հօրմէն ընդարձակ կայսրութիւն մը, որ գրեթէ կ'ընդգրկէր ամբողջ Փոքր Ասիան, բացի Նիկիոյ եւ Տրապիզոնի յոյն կայսրութիւններէն եւ Կիլիկիոյ հայ թագաւորութենէն, որոնք սակայն հարկ կը վճարէին եւ կ'օգնէին սուլթանին զօրքով: Սակայն Մոնկոլները, որոնք ողողած էին իսլամական տիրապետութեան ենթարկուած արեւելեան աշխարհը, Հայաստանը եւ Վրաստանը (1232), ջախջախած Ռուսիան, եւ զգետնած՝ Հունգարիան, անհարկու սպառնալիք մը կը ներկայացնէին այս պետութեան համար:

Հետեւաբար Ղայասետտին Կայ Խոսրով Բ., Մոնկոլներու սարսափին առջեւ չփոթահար, իրեն զինակից ունենալու համար Փոքր Ասիոյ բոլոր իսլամ եւ քրիստոնեայ իշխանութիւնները, միացաւ եւ իր իշխանութեան առաջին տարիներուն իր թագաւորութենէն վտարեց Խուարեզմները: Անոնք քաշուելու ատեն յաղթեցին Մալաթիոյ Սու Պաշիին (հրամանատար) Սայֆ-ալ-Տաւլայի եւ յետոյ Եփրատը անցան Մասարայի (տարբերակ Mukra=Մուգրա) մօտերը (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 471):

1239-ին պայթեցաւ թիւրքմէն ապստամբութիւն մը, զոր դրդած էր Պապա Իսհակ, որ ինքզինք Մարգարէ կամ Մահտի հռչակած էր:

Թիւրքմէնները հակառակ իրենց վրայ ղրկուած բանակներուն՝ անըմբռնելի կը մնային եւ կը յարձակէին քաղաքներու եւ գիւղերու վրայ: Անոնք կը

գրաւէին Մալաթիոյ, Թոգատի եւ Ամասիոյ շրջանները։

1241–ին Մալաթիոյ էմիրը ջախջախիչ պարտութիւն մը կը կրէր մոլեռանդ Թիւրքմէններու ապստամբախումբէ մը, զոր կ'առաջնորդէր անձամբ Պապա Իսհագ։ Վերջապէս սելճուկ ռումի սուլթանին բանակը մեծ դժուարութեամբ կրցաւ Պապա Իսհագը կալանաւորել եւ կախաղան բարձրացնել։

Սակայն պարտուած Թիւրքմէնները վերադրգռուեցան իրենց պետին կախաղան հանուած ըլլալէն, զայն նկատելով մարտիրոսացած աստուածային առաքեալ մը (Րեսուլ Ուլլահ) եւ աւելի կատաղութեամբ կռուեցան եւ տագնապի մատնեցին ռումի կայսրութիւնը, որ կը դժուարանար ընկճել այս ապստամբութիւնը, որ բաւական ատեն շարունակուեցաւ[1]։

Ասիկա տեսնելով Մոնկոլները, որ ասկէ առաջ վարանած էին Ղայասետտին Կայ Խոսրով Բ.ի Փոքր Ասիոյ իսլամ եւ քրիստոնեայ իշխանութիւններէն կազմած միութեան վրայ յարձակիլ եւ կանգ առած էին դէպի Փոքր Ասիա առաջանալէ, տեսնելով կայսրութեան այս ներքնապէս պառակտուած վիճակը, 1242–ին մտան Սելճուկ Սուլթանին հողերը Բաչու–Նուինի հրամանատարութեամբ եւ առաջին առթիւ պաշարեցին եւ գրաւեցին Մալաթիան եւ առատ աւարով եւ գերիներով դարձան (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 515)։

Ղայասետտին Կայ Խոսրով Բ. սաստիկ զայրացած, 1243–ին Մոնկոլներուն դէմ գնաց, բայց Աշխար Օվայի դաշտին մէջ կամ Քէօսէ տաղի մօտ չարաչար պարտուեցաւ 1243 Յունիս 26–ին եւ պարտաւորուեցաւ հարկատու դառնալ Մոնկոլներուն (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 515, ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 233), անոնց թողլով Երզնկան, Կեսարիան[2], Սեբաստիան, Տիվրիկը եւ Խարբերդը։

Երբ այս մեծ պարտութեան լուրը Մալաթիա հասաւ, Ռաշիտ ալ–Տին Սուպաշին եւ արքունիքին միւս պաշտօնատարները արքայական գանձարանին դուռները խորտակեցին եւ գանձը բաժնեցին իրենց միջեւ եւ Հալէպ փախան։ Քաղաքին ամենէն առաջնակարգ ընտանիքներուն պատկանող ստուարաթիւ քաղաքացիներ անոնց հետեւեցան, բայց Մալաթիայէն մէկ ժամ հեռու տեղ մը, յանկարծակի ենթարկուեցան Թաթարներուն յարձակումին, ոմանք սպաննուեցան, միւսները գերի ինկան։ Քաղաքին բնակիչները, մահմետական եւ քրիստոնեայ, խնդրեցին Մար Դիոնեսիոս Անկուր Մետրոպոլիտէն, ստանձնել քաղաքին պաշտպանութիւնը։ Երկու ամիս ետք, որուն միջոցին քաղաքին շուրջը խիստ հսկողութիւն կատարուեցաւ, Թաթարները քաշուեցան։

1244–ին ալ, Թաթարներուն պետը Իսավուր[3] Նուին բանակեցաւ Մալա–

---

(1) Թիւրքմէ՛ն այս ապստամբութիւնը հազիւ 1280ին արմատախիլ եղաւ։ Ինչպէս կը կարծուի, Պապաիներու շարժումը մէկ անդրադարձն էր Պաւղիկեան շարժումին, որ այդ շրջանակին մէջ ծագած էր եւ թէեւ ընկճուած, բայց բնաւ արմատախիլ չէր եղած (տես Պատմ. Եւդոկիոյ, 234—5)։

(2) Կեսարիոյ անձնատուութեան մանրամասնութիւնները տես Պատմ. Հայ Կեսարիոյ, էջ 515—6։

(3) Տարբերակ՝ Նասավուր։

*Թիոյ առջեւ եւ աւերեց շրջակայքը, մինչեւ որ Սուպաշի Բաշիտ ալ-Տին, ճոխ նուէրներով զայն հեռացուց* (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, *էջ* 477—9):

*Ղայասետտին Քայ Խոսրով Բ. ո՛չ Մոնկոլներէն կրցած էր ձերբազատուիլ եւ ոչ ալ Պապաիններու ըստ երեւոյթին կրօնական մեծ ապստամբութիւնը կրցած էր զսպել, երբ մեռաւ* 1246*-ին Ալայայի մէջ, իր գահը թողլով իր երեք անչափահաս*[1] *եւ երեք տարբեր մայրերէ ծնած զաւակներուն՝ Ռուքնետտինի, Ասետտինի եւ Ալայետտին Քայ Խոպատի, որոնք միաժամանակ իրենց կուսակիցներէն սուլթան հռչակուեցան: Ղայասետտինի վեզիրը*[2] *սուլթանին մահէն ետք, կնութեան առաւ անոր այրին, որ յոյն քահանայի մը աղջիկն էր եւ սուլթանին անկէ ծնած զաւակը՝ Ռուքնետտինը գահ բարձրացուց իր խնամակալութեան տակ, մինչ Ղայասետտին իրեն յաջորդ նշանակած էր իր նախընտրած կնոջը՝ Վրաստանի Ռուսուդան թագուհիի դուստր Թամարէն ունեցած զաւակը՝ Ալայետտին Քայ Խոպատը, որուն հաւատարմութիւն ուխտած էին բոլոր էմիրները* (Յ. Յակոբեան, ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ, Ա., էջ 32):

*Իսկ երրորդ որդին՝ Ազետտին, որ Իկոնացի հարիւրապետի մը աղջիկէն ծնած էր, իբրեւ իսլամածին խումբ մը Թուրքերու եւ Թիւրքմէններու համակրութիւնը իրեն հետ ունէր, կը դաւադրէ եւ Մալաթիոյ սուլթան կը հռչակուի: Իր դաւակիցները որոշած էին սպաննել Ղայասետտինի քրիստոնեայ կիներէն ծնած զաւակները, որոնք գահուն համար կը մաքառէին, եւ գահ բարձրացնել այս իսլամ կնոջմէ ծնած զաւակը:*

*Սակայն Ազետտին*[3] *պարտուեցաւ եւ իր հետեւորդներէն շատերը սպաննուեցան* (*տես* ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, *էջ* 518, ՊԱՏՄ. ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, *էջ* 235—239):

*Ազետտին Քայ Քաուս երկրորդ բանակ մը կազմեց եւ դարձեալ պատերազմ մղեց, սակայն այս անգամ գերի ինկաւ Ռուքնետտին եղբօրը ձեռքը, որ զայն գահապուրկ ըրաւ եւ ինք իշխեց Մալաթիոյ* (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, *էջ* 482):

*Ազետտին* 1253—1255 *տակաւին կը պահուէր շղթաներու մէջ:*

*Ռուքնետտին Գըլըճ Ասլան Դ. եւ Ալայետտին*[4] *երկու եղբայրները կը համաձայնին գահը բաժնելու:*

---

(1) *Ռուբրուք, որ այդ օրերուն* (*1253—1255*) *Գոնիա գտնուած է, իր ճամբուն վըրայ, հեգնօրէն պատմած է թէ երկիրը կը կառավարուէր «մանուկներով»* (Յ. Յակոբեան, Ուղեգրութիւններ, *Ա. հտ., էջ 30*):

(2) *Կը կարծուի ըլլալ Ռուքնետտին Սուլթանին Մուինետտին Սիւլէյման վեզիրը* (Encyclopedia Britannica, New York, *1911, հտ.* **ԻԴ** *եւ* **Յ. Յակոբեան,** Ուղեգրութիւններ, *Ա, էջ 32*):

(3) *Այս սուլթանին մէկ արձանագրութիւնը Կրէպիւլ Էվվէլ 645* (= 6 *Յուլիս 1247*) *թուականով հրատարակուած* Grenard*-էն* (*տես* Journal Asiatique, XII, 1901, *էջ* 551): *Զայն կը կոչէ Ասետտին Տունիա վ'Էտ-տին:*

(4) *Ռուբրուք Ալայետտինը կը կոչէ* «տկար արարած» *եւ* «փափկասուն»:

*Եթէ այս բաժանումէն ետք կարելի ըլլար խաղաղութեամբ ապրիլ եւ ներքին կռիւներուն վերջ տալ, թերեւս կարելի ըլլար Մոնկոլներուն դիմադրել, սակայն դժբախտաբար ներքին վէճերը եւ կռիւները կը շարունակուէին, երբ միւս կողմէ Մոնկոլները հետզհետէ կ՚առաջանային եւ երկիրը կ՚ընկճէին:*

*Մալաթիա այս շրջանին երկու անգամ պաշարուեցաւ: Նախ* 1251—1252–*ին (հիճրէթի* 649) *եւ ապա* 1252—1263 *Յուլիսին (հիճ.* 650) *Իսաւուրի հրամանատարութեան տակ եւ քաղաքին շրջակայքը աւերուեցաւ (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ* 481):

*Դիտուած ըլլալով որ Մոնկոլները ներողամիտ եղած են եւ խնայած են անոնց որ իրենց հնազանդած են, Ռուքնետտին Գըլըճ Ասլան Դ.՝ իր Ազետտին եղբայրը* 1254–*ին կը ղրկէ Մոնկոլ Մանկու խանին, իր վրացի մօրը ազգականներուն փափաքով, սակայն անիկա ճամբան կը մեռնի (Յ. Յակոբեան, նոյն, էջ* 32 *եւ ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ, էջ* 188—9), *հետեւաբար այս ձեռնարկը իր նպատակին չի հասնիր:*

*Հուլաղու խան* (1256—1265), *հիմնադիրը Իլխանեան հարստութեան, որ արեւմուտքի կ՚իշխէր, բոլորովին ընկճելու համար սելճուկեան իշխանութիւնը,* 1256–*ին հրաման կը ղրկէ բոլոր մոնկոլ իշխաններուն, որոնք Բաչու Նու զօրավարին հրամանատարութեան ներքեւ էին, որ թողուն իրենց բնակութեան կալուած երկիրները՝ Մուղանը եւ Աղուանից, Հայոց եւ Վրաց երկիրները եւ երթան բնակին իրենց կահկարասիներով եւ ինչքերով սելճուկ Ռումիներու աշխարհը,* «զի ինքն նստցի փոխանակ նոցա ի բարի երկիրն, զի յոյժ բազմութեամբ նեղեալ էր նա, մինչ զի ասեն՝ թէ ամիս մի հազիւ բովանդակեցաւ զօր նորա անցանել ընդ մեծ գետն Ջիհուն» (=*Ջահան*):

*Հուլաղուի հրամանը գործադրելու համար երբ մոնկոլ հրամանատարները գացին Ռումիներու երկիրը, Ռուքնետտին Գըլըճ Ասլան Դ. ընդդիմացաւ պատերազմով, բայց իր ոյժը անբաւական ըլլալով փախաւ Ալայա, Միջերկրականի եզերքը:*

*Իսկ թշնամիները անոր տէրութեան բոլոր գաւառներուն մէջ մինչեւ Միջերկրականի եւ Սեւ ծովու եզերքները, ահագին կոտորած տուին, գրաւեցին եւ ջարդեցին Կարինը, Երզնկան, Սեբաստիան, Կեսարիան, Գոնիան, Մալաթիան եւ անոնց շրջակայքը: Հուլաղու հրամայեց որ իրենց կահկարասին ետ դարձնեն, որպէսզի երթան իրենց իջեւանները եւ իրենք նոյն կողմերը շրջեցան ասպատակութիւններով: Անոնց քով հասաւ նաեւ Հեթում Հայոց թագաւորը, որ Մանգոյ խանին այցելութենէն կը դառնար եւ կեցաւ Բաչու Նուին քով, որ զինքը բազմաթիւ զօրքերով դարձուց Կիլիկիա՝ Սիս քաղաքը (ԿԻՐԱԿՈՍ, էջ* 217—220):

*Մոնկոլական այս արշաւանքները տկարացուցին ռումի սուլթաններուն իշխանութիւնը, որ ենթարկուեցաւ մոնկոլ գերիշխանութեան, ինչպէս կը հաստատէ Սուբրուք: Մոնկոլները միջամտել սկսան երկրին ներքին գոր–*

ծերուն եւ զայն երկուքի բաժնեցին։

Ազեատին Կայ Քաուս Բ. (1247—1266) արձակուելով իր գերութենէն, վերստին գահ կը բարձրանայ եւ կ'իշխէ Ալիսի արեւմտեան գաւառներուն վրայ, Ալայա մայրաքաղաքով, եւ Ռուքնետտին Գըլըճ Ասլան Դ. (1247—1267) կ'իշխէ արեւելեան նահանգներուն, Գոնիան ունենալով իրեն մայրաքաղաք։

Ազետտինի բաժինին մէջ էր Մալաթիա, ուր 1257-ին այս սուլթանը ղրկեց Թուղր Հաֆըսը այդ շրջանէն զօրք հաւաքելու համար։

Բայց Թուղր Հաֆըս քաղաքին գլուխը երբ դրաւ Քիւրտերու պետը՝ Շարաֆ Էտ-Տին Ահմէտ Իպն Պիլասը, բնակիչները մերժեցին անոր հնազանդիլ, որովհետեւ հաւատարմութեան երդում տուած էին Ռուքնետտինի եւ կը վախնային Թաթար Պայճուէն, որ կը պաշտպանէր Ռուքնետտինը։

Ազետտինի ղրկած երկրորդ անձը՝ Պիհատուրը միայն ընդունեցան, բայց անիկա փախաւ Պայճուին առջեւէն եւ Մալաթիա դարձաւ միայն այն ատեն, երբ Պայճու քաշուեցաւ։ Բայց դուռները գոց գտաւ եւ բնակիչները միայն այն ատեն թոյլ տուին որ քաղաք մտնէ, երբ սովը զիրենք ստիպեց՝ Պիհատուրի Մալաթիան պաշարելուն պատճառով (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 489—500)։

1260-ին, Հուլաղու խան շինել տուաւ Եփրատի վրայ կամուրջներ՝ Մալաթիոյ, Հռոմկլայի (Գալաթ էլ Ռումի), Պիրի (ալ Պիրա=հիմա Պերեճիկ) եւ Գարգխիայի (=անծանօթ) մօտերը՝ իր հսկայական բանակին համար (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 509)։

Ապաղա Մոնկոլ Իլխանեան խանը (1265--1282), որ Հուլաղուի յաջորդած էր, նորէն բաժնեց ռումի սելճուկ սուլթանութիւնը երկու զարմիկներու միջեւ։ Ասոնցմէ մէկը՝ Մանսուր, ստացաւ Երզնկան (Երզինճան), Կարինը (=Էրզրում), Սեբաստիան եւ Մալաթիան, Կայ Խոսրով Գ.ի կենդանութեանը (1282)։

Մանսուր, որ որդին էր Ասետտին Կայ Քաուսի եւ թոռը՝ Ղայասետտին Կայ Խոսրով Բ.ի, իր հօրը մեռած ատեն Խրիմ փախած էր, տեղւոյն մոնկոլ խանին մօտ։

Սելճուկ ռումի սուլթանութեան այս պառակտումէն եւ անոր հետեւանք տկարացումէն օգտուեցան բոլոր այս սուլթանութեան հակառակորդները եւ անկէ մասեր խլեցին։

Անոնցմէ մէկն էր մեր Կիլիկիոյ Հեթում թագաւորը, որ իբր դաշնակից Մոնկոլներու՝ անոնց բարեկամութեան վրայ յոյս դնելով, կը ջանայ վերադրաւել Անտիտաւրոսեան այն վայրերը, զորս Լեւոն գրաւած էր, եւ 1255-ին եւ 1259-ին երկու անգամ անցաւ Կիլիկեան դուռներէն (=Կիւլէկ պողազի) եւ դէպի Կապադովկիա, դէպի Արգէոսի փէշերը յառաջացաւ (ՍԻՍՈՒԱՆ, էջ 174, ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 520), բայց իր նուաճումները տեւական

*չեղան, վասնզի Սելճուկները չարունակ կը մաքառէին (ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ* 520—1)։

*Վերջապէս Մոնկոլներու միջամտութեամբ Հայոց Թագաւորը եւ Ռումի Սելճուկները հաշտութիւն կնքեցին։*

*Ազետտին Կայ Քաուս Բ. իր եղբայրը Ռուքնետտինը վտարելու համար այն երկրամասէն, զոր Մոնկոլները անոր տուած էին եւ իր անկախութիւնը ձեռք բերելու համար, Եգիպտոսի մեմլուք սուլթանին հետ կը դաշնակցի եւ կը յաջողի զայն փախցնել։*

*Ռուքնետտին կ՚ապաստանի Մոնկոլներուն քով, որոնք Ազետտին Կայ Քաուս Բ.ը պատժելու համար մոնկոլ բանակով մը կու գան եւ Ռուքնետտինի կը շնորհեն սելճուկ գահը։*

*Ազետտին կը փախչի Կ. Պոլիս, Մոնկոլներու ձեռքը գերի չիյնալու համար։*

*Ռուքնետտին Գըլըճ Ասլան Դ. սակայն կը դառնայ միայն անուանական վեհապետ մը, իրական իշխանութիւնը իր ձեռքերուն մէջ առած ըլլալով իր վեզիրը՝ Մուինետտին Սիւլէյման, որ* 1267*-ին Աքապայի մոնկոլ խանէն հրաման բերել տուաւ զայն գլխատելու համար։*

*Վեզիրը գահ բարձրացուց իր մանուկ որդին Ղայասետտին Կայ Խոսրով Գ.ը* (1267—1284) *եւ երկիրը կառավարեց դեռ տասը տարի* (1267—1277), *մինչեւ որ մասնակցեցաւ դաւադրութեան մը, զոր քանի մը էմիրներ սարքած էին Եգիպտոսի մեմլուք սուլթանին՝ Պիպարսի կամ Ֆունտուգտարի օգնութեամբ Մոնկոլները հեռացնելու համար ռումի սուլթաններու երկիրէն։*

*Պիպարս քալեց Փոքր Ասիա եւ Մոնկոլներուն յաղթեց Ալպիսթանի արիւնալի պատերազմին մէջ* (1277), *բայց երբ աւելի յառաջացաւ դէպի Կեսարիա, Մուինետտին Սիւլէյման քաշուեցաւ, վարանելով իրեն միանալ, գործելու բուն վայրկեանին։ Պիպարս եւս ետ քաշուեցաւ մատնելու համար դաւաճան վեզիրը վրէժխնդրութեանը մոնկոլ խանին, որ շուտով հասկցաւ անոր դաւը եւ հրամայեց բարբարոս գլխատում մը* (1277) *կամ գերեվարութիւն մը (աւելի մանրամասնութեանց համար տեսնել ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ* 521—2)։

*Մուինետտին Սիւլէյման վեզիրին գլխատումէն կամ տարագրութենէն ետք Ղայասետտին Կայ Խոսրով Գ. շարունակեց անուանապէս տիրել մինչեւ* 1284, *մինչ իրականին մէջ երկիրը կը կառավարէր մոնկոլ փոխարքայ մը։*

*Եգիպտոսի Մեմլուքները, որոնք Սիւրիոյ իրենց տիրապետութիւնը ընդարձակել կ՚աշխատէին եւ հակառակ էին Մոնկոլներու, չէին հանդուրժեր Մոնկոլներու գերիշխանութեան սելճուկ սուլթանութեան վրայ, միշտ յարձակում կը գործէին դէպի Փոքր Ասիա, Եփրատէ անցնելով։*

*Այս յարձակումներէն մէկուն միջոցին, որ* 1282*-ին կատարուեցաւ, Ալ-Պիրայի (Պիր=Պերեճիկ) եգիպտացի կառավարիչը Հիտար* (Khidr=

=Խոլը) աւերեց Մալաթիոյ շրջանը (ԲԱՐՀԵԲՐԷՈՍ, էջ 546)։ Այսպէս սելճուկ սուլթանութիւնը երկու սուրի միջեւ էր։ Եգիպտոսի Մեմլուքները մէկ կողմէն եւ Մոնկոլները միւս կողմէն կը ճնշէին այս պետութիւնը իրենց ենթարկելու համար։

Մոնկոլները, որ արդէն դայն ընկճած էին, Եգիպտոսի օգնութեամբ անոր զօրանալէն վախնալով, դայն տկարացնելու համար, բաժան-բաժան ընելու կ'աշխատէին։ Այսպէս, Ապաղա խանի մահէն (1282) ետք, երբ իր որդին՝ Ահմէտ խան (1282—1284) գահակալեց, բոլորովին ընկճելու եւ պառակտելու դիտումով Ռումի սուլթանութիւնը դարձեալ երկու մասի բաժնեց եւ Սեբաստիոյ, Մալաթիոյ, Երզնկայի եւ Էրզրումի կառավարութիւնը 1282-ին յանձնեց Ալեատին Կայ Քաուս Բ.ի որդւոյն՝ Մասուտի։

Մասուտ, որ ինչպէս տեսնուեցաւ իր հօրը մահուան ատեն Խրիմէն փախած էր մոնկոլ խանին մօտ, երբ այս քաղաքները ստացաւ, եկաւ անոնց տիրանալու, բայց Ղայասետտին Կայ Խոսրով Գ. չհամակերպեցաւ այս բաժանումին։ Մոնկոլ խանը (Ահմէտ Խան) սպաննեց դայն 1284-ին։

Այսպէս Մոնկոլները 1285-ին գրաւեցին Մալաթիան, որ տակաւին քրիստոնեայ քաղաքի երեւոյթը կը պահէր, վասնզի ունէր տակաւին բազմաթիւ Ասորի եկեղեցիներ, որոնց կ'առաջնորդէին եպիսկոպոսներ՝ ենթակայ Անտիոքի պատրիարքութեան։ Այս գրաւման ատեն Մոնկոլները աւարի տըւին, մեծ մասամբ քանդեցին եւ հրկիզեցին այս եկեղեցիները (Մ. Օրբերեան, ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 119)։

Այսպէս ընկճելէ ետք երկիրը, Արկուն խան (1283—1287) սելճուկ գահը շնորհեց Մասուտի, որ անզօր եւ հեղինակութենէ զուրկ էր, եւ անկարող զսպելու այն Թուրք էմիրները, որոնք անկախութիւն հռչակած էին։ Մոնկոլները, երբ Մասուտը պաշտպանելու համար կը մտնէին սելճուկ սուլթանին երկիրը՝ այդ ապստամբ էմիրները նուաճելու համար, անոնք լեռները կը քաշուէին, Մոնկոլներուն մեկնելէն ետք կրկին երեւան ելլելու համար։

Մասուտ Բ. զոհ գնաց հաւանաբար 1297-ին (ըստ ոմանց՝ 1305-ին) վրէժխնդրութեանը իր էմիրներէն մէկուն, որուն հայրը մահուան դատապարտած էր։

Մասուտ Բ.ի սպանութենէն ետք, Ալայետտին Կայ Խոպաթ Բ., որ Մասուտի եղբօր՝ Ֆարամարզի որդին էր, Գոնիա մտաւ 1298-ին, բայց իր տիրապետութիւնը այնքան մթին է որ ոչինչ կրնայ ըսուիլ անոր մասին։

Կարգ մը հեղինակներ կը հաստատեն որ անիկա կառավարեց մինչեւ 1300, մինչ ուրիշներ՝ իր իշխանութիւնը մինչեւ 1307 եւ նոյնիսկ ոմանք մինչեւ 1315 տեւած ցոյց կու տան։

Իրմով վերջացաւ Իկոնիոյ Ռումի Սելճուկներու կայսրութիւնը, որ մօտաւորապէս երկու դարեր կեանք ունեցաւ։

Իր վերջին օրերուն երկիրը անիշխանութեան մատնուած էր եւ երկըրին զանազան մասերը գրաւուած էր տէրէպէյիներէ, որոնք անիշխան կը կառավարէին երկիրը։

## ԺԷ.

# ՄԱԼԱԹԻԱ ԹԻՒՐՔՄԷՆ ԿԷՍ - ԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ՏԱԿ

## (1315 — 1516)

Մոնկոլներու Փոքր Ասիոյ մէջ գերիշխան եղած շրջանին, ըստ Ապուլ Ֆետայի, քրիստոնեաները եւ մահմետականները իրարու քով կ՚ապրէին կատարեալ խաղաղութեամբ եւ համաձայնութեամբ։

Բայց ինչպէս ամենահին օրերէ սկսեալ՝ այս աշխարհամասին ճակատագիրը եղած է երկու մեծ ույժերու միջեւ կռուադաշտ ըլլալ, այս շրջանին ալ դարձեալ Մոնկոլներու եւ Եգիպտոսի Մեմլուքներու միջեւ պայքարի առարկայ եղաւ։

Կոմմագինէն այս երկու ույժերուն միջեւ չփումի վայրերէն եւ կռուադաշտերէն մին էր, վասնզի Մեմլուքները հարաւէն գալով Սուրիան նուաճած եւ Եփրատ հասած էին։

Հազիւ սելճուկ ռումի սուլթանութիւնը Մոնկոլները կործանած էին երբ 1315–ին Եգիպտոսի սուլթանը՝ Մուհամմէտ Իպն Քալաուն էլ Նասր (1293, 1299—1309 եւ 1310—1341 գահակալած) Մալաթիոյ վրայ ղրկեց մեծ բանակ մը՝ հրամանատարութեամբ Դամասկոսի Նաիպ[1] Սայֆ էլ տին Թունկուզի, որուն միացաւ նաեւ իր ճորտը՝ Համացի Ապուլ Ֆետան։

Եգիպտական բանակը անցնելով Հալէպէն, Այնթապէն, Հիսնի Մանսուրէն եւ Զիպաթրայէն, 28 Ապրիլ 1315–ին բանակեցաւ Մալաթիոյ առջեւ։

Մալաթիոյ բնակիչները Պապ ալ Գատը հարաւային դուռնէն դուրս հանելով, իրենց Հաքիմը՝ Ճամալ էլ Տին էլ Խըլըը, որուն հայրը եւ մեծ հայրն ալ նոյն պաշտօնը վարած էին, ղրկեցին Թունկուզին։

Քաղաքը անձնատուր պիտի ըլլար պայմանով որ իրենց կեանքին ապահովութիւն տրուէր, ինչ որ Թունկուզ խոստացաւ տալ, բայց չկրցաւ յարգել իր խօսքը, վասնզի իր զինուորները չկրցան դիմանալ քաղաքը կողոպտելու եւ աւերելու փորձութեան։

Մեմլուք բանակը ասով ալ չբաւականացաւ, քաղաքին մեծ մասը հըրկիզեց եւ աւերակի վերածեց, իսկ բնակչութիւնը գերի վարեց։

Այս գերիներու մէջ կը գտնուէին ականաւոր մարդիկ, ինչպէս Քերպողա Թաթարը եւ Հիսն Արկանայի Սահիպը՝ Շէյխ Մինտու։

---

(1) Փոխարքայ կամ կուսակալ իմաստով կը գործածէին այս բառը Եգիպտացիք։

Մալաթիա մէկ-երկու տարի սարսափներու ենթարկուած է, ինչպէս հայ յիշատակագիրներ ալ կը հաստատեն։ Այսպէս 1315-ին Մելիտինէի մէջ գրուած Աւետարանի մը եւ 1316 Երուսաղէմի մէջ գրչագրուած Ճաշոցի մը գրիչը՝ Ստեփանոս «Երկայն» այս երկու ձեռագիրներուն յիշատակարաններու մէջ գրեթէ նոյն բառերով կը պատմէ Մալաթիոյ ենթարկուած աղէտը. «Չէ կար ,կ'ըսէ, ումեք ըստ գրով արկանել զազգի ազգի վիշտս եւ զնեղութիւն, որ հասեալ է ընդհանուր ի վերայ ամենայն քրիստոնէից յանաւրէն եւ յանաստուած պիղծ եւ գարշելի ազգէն Իսմայիլի՝ որ զամենեսեան մաշեցին ի սուր սուսերի եւ մնացեալսն ի գերութիւն վարեցին եւ ի սոյն ամին զմեծանուն մայրաքաղաքն Մելիտինի Հայոց առին յաւար եւ ի գերութիւն եւ զայլ բազում քաղաք եւ զգաւառս եւ զանմատչելի ամրոցս հիմն ի վեր տապալեցին» (Սիւրմէեան Արտաւազդ Արքեպս., ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, Ա. հտ., էջ 302 եւ Գարեգին Կաթողիկոս, ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 529—530)։ Սամուէլ Անեցի (էջ 116) նոյն դէպքին կ'ակնարկէ Թուականի մէկ տարուան տարբերութեամբ մը (1317 նշանակելով), գրելով որ «Ի սոյն ամին առաւ մայրաքաղաքն Մելդինի ի Հայոց եւ ի Հագարացւոց եւ խոտոր գերութեամբ վարեցին յԵգիպտոս» (Հմմտ. Աստուածատուր Եպսկ. Ծ. Յովհաննէսեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, Ա. հտ., էջ 203)։

Օրմանեան (ԱԶԳԱՊԱՏՈՒՄ, էջ 816) կը հաստատէ թէ 1315-ին Մալաթիան եւ 1316-ին Տարենտէն գրաւուած եւ աւերուած են։ Այսպէս ուրեմն, Մալաթիա եւ շրջակայքը ենթարկուեցան եգիպտական տիրապետութեան։

Եգիպտացիք իբրեւ ծայրագաւառ եւ սահմանագլուխի մօտ նահանգ մը, զինուորականապէս զայն ամրացուցին, եւ եօթը շրջանակի բաժնեցին (Khalil al Zahiri, էջ 52)։

Այս առթիւ Մալաթիոյ շուրջ հաստատուեցան եօթը ամրոցներ, որոնք էին.—

Mushar կամ Minshar
Kumi
Karahisar (Գարահիսար)
Kadasbirt
Kalah Akdja (Ադկճա բերդ)
Kalet Newhamam
Kalat al Akrad

(Տես Khalil al Zahirni Zubda.նոյն եւ Gandefroy — Demombzones, **La Syrie à l'Epoque de Mamelouks**, V. 97, Ա. 105)։

Հակառակ այս նախազգուշութիւններուն եւ պատրաստութիւններուն, Մալաթիա զերծ չմնաց նոր աղէտներէն, իբրեւ պատերազմի թատերավայր։ Մասնաւորապէս 1335-էն մինչեւ 1380 կէս դարու անիշխանութեան ժամանակամիջոցին (տես այս շրջանի մասին Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ

ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 332—7), ուր Մոնկոլ խաները Հայաստանի մէջ եւ Թիւրքմէն եւ Թուրք էմիրները եւ պէկերը Փոքր Ասիոյ մէջ իրարու դէմ անընդհատ կը կռուէին, վասնզի Թէ՛ Փոքր Ասիա եւ Թէ Հայաստան բազմաթիւ հողատիրութեանց բաժնուած էին։

Այսպէս, սուլթան Ալայէտտին Գ. Կայ Խոսրովի սպանութենէն (1107) ետք, իր պետութիւնըստորաբաժնուեցաւ անկախ պէյութիւններու, որոնք Խիւտեվէնտկեարի (Պրուսայի շուրջ), Գարասիի, Սարուխանի, Այտընի, Մենթեշէի, Թեքքէի, Համիտի, Կերմիանի, Գարամանի, Գասթեմունիի մէջ հաստատուած էին եւ յաճախ իրարու դէմ կը մաքառէին։

Ասոնցմէ ամենէն յաջողակը հանդիսացաւ Խիւտեվէնտիկեարի իշխանութիւնը, զոր Թուրք աշիրէթի մը պետը հիմնած էր։

Այս աշիրէթը (ցեղախումբ) կեդրոնական Ասիայէն արեւմուտք դաղթաշարժ կատարած եւ պահ մը Հայաստանի մէջ կանգ առնելէ ետք եկած մտած էր սելճուկ ռումի Ալայէտտին Ա.ի (1299—1335) հովանաւորութեան տակ (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ. հտ., էջ 233—4) եւ ստացած աւատ մը Փոքր Ասիոյ Էրթողրուլ գաւառին մէջ (Պիլեճիկի մօտ)։ Այս տասնտիրութիւնը հետզհետէ ընդարձակուեցաւ բիւզանդական հողեր նուաճելով։ Աշիրեթապետը՝ Էրթողրուլ մեռաւ 1288-ին եւ իրեն յաջորդեց Օսման, որուն անով կոչուեցաւ այս Թուրք աշիրէթը, եւ եղաւ բոլորովին անկախ (1299), երբ գրաւեց Պրուսան (1324-ին)։

Օսմանի իշխանութիւնը սելճուկ ռումի սուլթանութեան կործանումէն (1307 կամ 1314) մէկ տարի ետք, գրաւելով անոր զանազան մասերուն մէջ գոյութիւն առած վերոյիշեալ պէյութիւնները ռումի սելճուկ սուլթանութենէն աւելի ընդարձակ եւ աւելի զօրաւոր պետութիւն մը դարձաւ, որ ԺԴ. դարուն վերջը արդէն մօտեցած էր Եփրատի։

Այդ մէկ դարու շրջանին Փոքր Ասիոյ արեւելեան մասին եւ Փոքր Հայքի մէջ ալ պատահեցան կարեւոր փոփոխութիւններ։

Իլխանեան Ղազան (1295—1304) եւ Խուտապենդէ (1304—1316) մոնկոլ խաներուն երբ յաջորդեց անչափահաս Ապու Սայիդ Պահատուր խան (1316—1336), մեծմլուք եգիպտական յարձակումները եւ ներքին ապստամբութիւնները, որոնք գլխաւորաբար այս վայրերուն շուրջը կը կատարուէին, քայքայել սկսան մոնկոլ կայսրութիւնը։

Ապու Սայիդ Պահատուր խանի վեզիրը՝ Էմիր Չոպան այս ապստամբ իշխաններէն մեծ մասը հպատակեցուց (Քեմալեդդին, ԱՐԳԷԱԵԱՆ ԿԵՍԱՐԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԱԿՆԱՐԿ ՄԸ, Թրքերէն, 1934, Կեսարիա, էջ 244) եւ ինքը կառավարել սկսաւ Փոքր Ասիան, եւ կրցաւ հաստատել Մոնկոլներու հեղինակութիւնը Փոքր Հայքի վրայ, հակառակորդ Ցոյներու եւ Թուրքերու դէմ (տես (ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ)։ Բայց նոր ապստամբութիւններ ծագեցան, որոնց մէջ ամենէն գլխաւորներէն մէկը ըլլալ կը Թուի Ղուռումճիի յարուցածը 1319—1320-ին։ Էմիր Չոպան պարտուած փա–

խաւ, մինչեւ որ Ապու Սայիտ օգնութեան եկաւ եւ Ղուռումճին վանեց եւ Էմիր Զոպանը վերստին հաստատեց իր պաշտօնին մէջ (տես Գարեգին կաթ. Յովսէփեան, *ԽԱՂԲԱԿԵԱՆՔ*, Ա., էջ 205 եւ *ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ*, էջ 333):

Ապու Սայիտի այս իմաստուն վեզիրը, իր իշխանութեան առաջին տարիներուն, 1316-էն 1326, կռուով եւ ճարտարութեամբ կառավարեց Անատոլուն եւ 1323-ին հաշտութեամբ վերջ տուաւ Եգիպտոսի Մեմլուքներու դէմ մղուած պատերազմին:

Էմիր Զոպանի յաջորդն է իբր Ռումի կամ Հոռոմ երկիրներու կուսակալ, իր որդին Թիմուրթաշ, որ ժամանակ մը ետք ապստամբեցաւ Իլխանեանց դէմ (Քեմալլետտին, նոյն) եւ անոնց զինակից Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան երկիրները արշաւեց (*ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ*, էջ 333):

Ապու Սայիդ (1316—1336) իր վեզիրը՝ Էմիր Զոպանը ղրկեց իր որդւոյն Թիմուրթաշի դէմ, որ փախաւ:

Իր գործակիցներէն ձերբակալուողները պատժուեցան մահուամբ (*ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ*, էջ 167):

Թիմուրթաշի փախուստը պատճառ եղաւ Զոպանի պաշտօնանկութեան եւ փախուստին եւ մահուան (տես *ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ*, էջ 167): Այն ատեն իր որդին Թիմուրթաշ, եկաւ Երզնկայի վրայ (նոյն), բայց երբ իմացաւ որ Ապու Սայիդ կու գայ, փախաւ Եգիպտոս, ուր գլխատուեցաւ (*ՍՄԲԱՏ*, էջ 131. *ՍԱՄՈՒԷԼ*, էջ 167 եւ *ՊԱՏ. ՀԱՅ. ՍԱՀ.*, էջ 333): Թիմուրթաշի տեղ Ապու Սայիդ՝ «Պարոն Հոռոմոց» կամ ռումի հողերուն կուսակալ կարգեց Ալայետտին Արթինա պէյը, որ երբ Ապու Սայիդ խան սպաննուեցաւ (1326) եւ ամէն կողմ էմիրները ինքզինքնին անկախ հռչակեցին, ինքն ալ ինքզինքը ձերբազատելու համար իրարու դէմ մաքառող մոնկոլ խաներու իշխանութենէն, մտաւ Եգիպտոսի Էլ Մալիք Էլ Նասր սուլթանին (1293—1341) հովանաւորութեան տակ (Քեմալետտին, նոյն, էջ 234) եւ օգտուելով առիթէն հետզհետէ ընդարձակեց իր հողերը դէպի Երզնկա եւ Բաբերդ եւ այսպէս Ալիսէն մինչեւ Ճորոխ բաւական ընդարձակ պետութիւն մը կազմեց, իր սահմաններուն մէջ ունենալով, նաեւ Սեբաստիան, Եւդոկիան եւ Կեսարիան (*ՍԱՄՈՒԷԼ*, էջ 108):

Իսկ երբ Եգիպտոսի սուլթանն ալ մեռաւ (1341), Արթինա անկախութիւն հռչակեց եւ կազմեց իշխանութիւն մը, որուն մայրաքաղաքն էր Կեսարիա:

Մոնկոլ խաներէն Սիւլէյման խան (1339—1350), որ Հայաստանի տիրակալութեան համար կը մաքառէր, Արթինան իրեն հնազանդեցնելու համար արշաւեց Սեբաստիա, բայց պարտուեցաւ եւ խոյս տուաւ (Տաշեան, *ՄԱՅՐ-ՑՈՒՑԱԿ*, էջ 489):

Արթինա պէյ, որ ժողովուրդը կը կոչէր Քէօսէ Բէյղամպէր (Գոչ

Մարգարէ) կ'երեւի արդար մէկը ըլլալ, վասնզի իր իշխանութիւնը մեծ գոհունակութեամբ ընդունուած էր իր հպատակներէն:

Արթինա մեռաւ 1351-ին Կեսարիոյ մէջ եւ երկիրը կառավարեց իր կինը՝ Սուլի Սուլթան՝ իր որդւոյն Մեհմէտ Իպն Արթինայի հետ:

Ասոնց մահէն ետք այս երկրին բռնակալեց 1381-ին Գատը Ահմէտ Պուրհանետտին կամ Պուրհան Ղազի, որ Փոքր Հայքէն զատ կը տիրէր Հայաստանի Դ. Հայք եւ Բարձր Հայք նահանգներէն մասերու:

Գատը Ահմէտ Պուրհանետտինի եւ իր որդիին եւ յաջորդին Ապուլ Աբբաս Պուրհանետտինի իշխանութեան շրջանին, Մալաթիա պահ մը եգիպտական տիրապետութենէն անջատուեցաւ, վասնզի 1389-ին (հիճ. 731-ին), Հալէպի հետ օրօրանը եղաւ մեծ ապստամբութեան մը:

Այս երկու ծայրագաւառ նահանգներուն — Մալաթիոյ եւ Հալէպի — կուսակալները՝ Մինթաշ եւ Եէլպողա, ամբոստացան Սուլթան Զահէր Պարգուգի (1387—1388) իշխանութեան վերջին տարիներուն: Պուրհանետտին եւ Ապուլ Աբբաս, որովհետեւ ապաւէն ընծայեր էին Կերմիանի եւ Մինթաշի՝ փախստական իշխաններուն, Օսմանեան սուլթան Պայազիտ Եըլտըրըմ (1388—1403) թշնամացաւ անոնց հետ:

Եւ երբ Սուլթան Պայազիտ նուաճեց Գարամանը, իր վեզիրը Թիմուրթաշ անցնելով Ալիսը, գրաւեց Ջանկըրըն, Տիվրիկը, Շապին-Գարահիսարը, Տարենտէն, Կամախը, Երզնկան, Պայպուրդը եւ այս կարգին նաեւ 1391—9-ին (հիճ. 796) Մալաթիան եւ Պեհեսնին իրենց շրջականերով (Համմեր, Զ. գիրք), եւ յառաջացաւ մինչեւ Երզնկա, ինչ որ ցոյց կու տայ թէ Եգիպտացիք վանուած էին Մալաթիոյ շրջանէն գոնէ ժամանակաւորապէս:

Պուրհանետտին թշնամի էր նաեւ Գարա Եուքլուք կամ Գարա Օսման, որ Պայընտըր նոր տոհմին կամ Աք Գոյունլու Թիւրքմէններու պետն էր եւ թէպէտ Սուլթան Պայազիտի չափ զօրաւոր չէր, բայց անկէ աւելի վտանգ կը սպառնար, իբրեւ անմիջական դրացի, վասնզի այս Թիւրքմէն ցեղը, որ բընակութիւն հաստատած էր Ամիթի շուրջը, կ'ասպատակէր յաճախ իր հօտերով Մալաթիոյ եւ Սեբաստիոյ տափաստանները:

Ապուլ Աբբաս Պուրհանետտին տեսնելով որ ամէն կողմէ պաշարուած էր թշնամիներով՝ խոյս տուաւ Խարբերդի լեռները (Այվազովսքի, ՊԱՏՄ. ՕՍՄ., Ա., էջ 54), ուր ըստ ոմանց 1392-ին սպաննուած էր Սուլթան Պայազիտի դէմ կռուած ատեն (ՉԱՄ., Գ. հտ., էջ 138) կամ ըստ այլոց Գարա Եուսուֆ Գարա Գոյունլուէն (ՀԱՃԻ ԽԱԼԻՖԷ Ի ՀԱՄՄԷՏ, գիրք ԺԵ.) կամ 1397—9-ին ԳարաՕսման Աք Գոյունլուէն (Քեմալետտին, նոյն, էջ 214, Այվազովսքի, ՕՍՄ. ՊԱՏՄ., Ա., էջ 54):

Ըստղներ ալ կան թէ Ապուլ Աբբաս իր իշխանութիւնը շարունակած է մինչեւ 1402 եւ չկրնալով դիմադրել Լենկթիմուրի՝ Սուլթան Եըլտըրըմ Պա-

յազիտի քով ապաստանած է՝ իր երկիրը Օսմանեան Սուլթանին թողով[1]։ Ինչ որ ալ եղած ըլլայ, ստոյգ է որ այս իշխանութիւնը վերջ գտած է ԺԵ. դարուն սկիզբը, երբ արդէն Անատոլու — տիրող երկարատեւ անիշխանութեան եւ խառնակութեանց հետեւանօք — ողբալի վիճակի մը մատնուած էր եւ հարստահարութիւններու, սովերու եւ համաճարակներու հետեւանքով կը հիծէր, ինչպէս կը նկարագրեն ժամանակակից յիշատակագիրներ շատ դարերն տողերով (տես ԽԱՂԲԱԿԵԱՆՔ, Ա., էջ 327, ՍԱՄՈՒԷԼ ԱՆԵՑԻ, էջ 169 եւ ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ, էջ 203—4 եւայլն)։

Եփրատի արեւմտեան կողմը այսպէս խառնակ վիճակի մը մատնուած ատեն, անոր արեւելեան կողմը աւելի լաւ վիճակ մը չունէր, մանաւանդ կեդրոնական Ասիայէն նորանոր ցեղախումբեր դէպի արեւմուտք կը դիմէին եւ նոր իշխանութիւններ կը կազմէին։

Այսպէս, Մոնկոլ Արղուն խանի ատեն (1284—1289) արեւմուտք եկան երկու ցեղախումբեր — Աք Գոյունլու եւ Գարա Գոյունլու — Եփրատի արեւելեան կողմը տարածուած երկիրներուն մէջ եւ իրենց գաղթաշարժէն դար մը ետք, օգտուելով պատեհութիւններէ կազմած էին մեծ ամիրայութիւններ։

Այս երկու ցեղախումբերուն Մերձաւոր Ասիոյ մէջ որոշ դեր մը կամ դիրք մը գրաւելէն քիչ ետք, այդ շրջանին մէջ երեւցաւ ասիական բարբարոսներու երեք մեծ զանգուածներէն վերջինը, Խօզակ Թաթարականը, իր ահարկու պետին Լենկթիմուրի (1360—1405) առաջնորդութեամբ։

Լենկթիմուր, որ 1370-ին մեծ խան հռչակուած էր, մտադրած ըլլալով վերականգնել Ճենկիզ խանի մեծ պետութիւնը, Ասիան իր մականին տակ միացուց եւ կազմեց մեծ կայսրութիւն մը, որ Չինաստանէն մինչեւ Միջերկրական եւ Եգիպտոսէն մինչեւ Ռուսիոյ միջնաշխարհը կը տարածուէր։

Պարսկաստանը արիւնով ողողելէ, Հնդկաստանի մէջ մարդիկը անասուններու պէս մորթելէ ետք, 1380-ին եկաւ Միջին Ասիա, Ատրպատական եւ Հայաստան։

Այդ տեղերը տիրակալող բազմաթիւ ամիրաները եւ պէկերը սարսափած, ինքնաբերաբար հպատակութիւն յայտնեցին, իսկ անոնք, որ ընդդիմացան, չարաչար պատժուեցան։

Աք Գոյունլու եւ Գարա Գոյունլու Թուրքմէն իշխանութիւնները, որոնք Լենկթիմուրի արշաւուղիի վրայ կը գտնուէին, անխուսափելի էր որ գործ ունենային իրեն հետ։

Գարա Օսման կամ Գարա Սուլուգ (սեւ տզրուկ) Աք Գոյունլուներու պետը, խոհեմութիւն համարեց հնազանդիլ Լենկթիմուրի եւ անոր բարեկամութիւնը շահելով՝ նոյնիսկ անոր քաջալերութեամբ գրաւումներ ըրաւ

---

(1) Ինչպէս կը տեսնուի, բազմատեսակ պատմութիւններ կան այս տէրութեան վախճանին մասին։

Փոքր Հայքի մէջ։ Գարա Օսման Լենկթիմուրի օգնելով կը յուսար Փոքր Ասիոյ մէջ Սուլթան Պայազիտէն գրաւուած իր հողերը փրկել, եւ ասոր համար էր որ կը մտնէր Լօզպէք Թաթար աշխարհակալին հզօր պաշտպանութեան տակ։

Իսկ իր հակառակորդները Գարա Եուսուֆ, Գարա Գոյունլուներու յանդուգն պետը, որ 1375—1380-ին Սասունի լեռներուն վրայ անկախ իշխանութեան մը տիրացած էր, ընդդիմացաւ եւ միացաւ Լենկթիմուրի հակառակորդ Օսմանեան Թուրքերուն։ Սակայն Գարա Եուսուֆ չարաչար պարտուեցաւ եւ փախաւ Հայաստանէն եւ 1396-էն մինչեւ 1406 տարագիր եղաւ։

Լենկթիմուր երբ Մերձաւոր Ասիան իրեն հնազանդեցնելէ ետք արեւելք դարձաւ, իր նուաճած կամ պարտութեան մատնած երկիրները խլրտիլ սկսան, եւ իրենց երկիրը գրաւեցին։

Լենկթիմուր երբ կրկին արեւմուտք դարձաւ (1399-ին), իր երկրորդ արշաւանքէն (1394—1396) ետք, անցնող կարճ ժամանակին մէջ քաղաքական փոփոխութիւններու ենթարկուած գտաւ Փոքր Ասիան։ Ամենէն կարեւորը այդ փոփոխութիւններուն այն էր որ օսմանեան Սուլթանը Պայազիտ Ա. 1399-ին իր հզօր պետութեան միացուցած էր Աղ Գոյունլուներու հողերը եւ անմիջական դրացի դարձած էր Լենկթիմուրի պետութեան։

Երզնկա քաղաքը եւ շրջակայքը կամովին հնազանդած էին Լենկթիմուրի 1394-ին եւ կը գտնուէին անոր տիրապետութեան տակ։ Ուրեմն Պայազիտ Ա.ի կողմէ Երզնկայի գրաւումը պարզապէս մարտահրաւէր մըն էր՝ ուղղուած Լենկթիմուրի, որ պիտի չուշանար օսմանեան սուլթանին դէմ յարձակելու (Ալպոյաճեան, ՊԱՏՄ. ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., 203)։

Լենկթիմուր երբ կրկին արեւմուտք դարձաւ, 1399-ին, առաջին տեղը, զոր Թուրքերէն ետ առաւ, եղաւ Սեբաստիան (1400), զոր գրաւեց պաշարումով եւ հոն սարսափելի նախճիրներ գործեց, պատժելու համար քաղաքը, որ օսմանեան սուլթանին հնազանդած էր։

Իր արշաւանքը շարունակելէ առաջ՝ Լենկթիմուր ուզեց ապահովել իր բանակին թիկունքը, Սիւրիոյ կողմէն եւ 1400-1-ին գրաւեց կրկին Մալաթիան, եւ ինչ որ մնացած էր անոր բերդերէն եւ մզկիթներէն՝ ամբողջ աւերեց։

Լենկթիմուր Մալաթիոյ պաշտպանութիւնը յանձնեց Աղ Գոյունլուներու պետին՝ Գարա Սուլուք Օսմանին, որ իրեն օգնած էր, երբ Գարա Գոյունլուներու պետ՝ Գարա Օսմանին դէմ կը կռուէր։

Գարա Օսման, Լենկթիմուրի պաշտպանութեան ապաւինած, կը յուսար Փոքր Ասիոյ մէջ Սուլթան Պայազիտէն գրաւուած իր հողերը փրկել։

Օսմանեան Թուրքերը կը սպառնային նաեւ Տրապիզոնի Կոմնենեան կայսրութեան, որուն Ալեքսիոս կայսեր փեսան էր Գարա Օսման, վասնզի կայսեր Տեսփինա աղջիկը կնութեան առած էր (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ, Բ., էջ 204)։

*Այսպէս չահերու նոյնութեամբ եւ միութեամբ գոյացած էր Լենկթիմուրի, Գարա Օսմանի եւ Ալեքսիոսի միջեւ համաձայնութիւն մը ընդդէմ Օսմանեան Թուրքերու: Միւս կողմէն, Գարա Գոյունլուներու պետը՝ Գարա Եուսուֆ, Լենկթիմուրի դէմ իր երկիրը պաշտպանելու համար՝ միայն Օսմանեան Թուրքերէն աջակցութիւն կրնար ակնկալել. ուստի իր բախտը կապեց անոնց եւ այսպէս ստեղծուեցան երկու մեծ ոյժերու միջեւ տատանող փոքր իշխանութիւններով կազմուած խմբակցութիւններ:*

*Լենկթիմուրի առաջին խումբին գլխաւոր ոյժը արդէն սկսած էր հարուածել Թուրքերը, անոնց հողերէն գրաւելով Սեբաստիան եւ Մալաթիան:*

*Լենկթիմուր Մալաթիոյ ռազմական կայանը գրաւելէ ետք Թիֆլիսի ճակատամարտէն ետք մտաւ Սուրիա, անցնելով Պեհեսնիէն եւ Այնթապէն, այս երկու քաղաքներն ալ կոտորելով եւ աւերելով (Գր. Գալուստեան,* ՄԱՐԱՇ, *էջ* 212):

*Արիւնով ողողուեցաւ ամբողջ Սուրիան, եւ Հալէպ ու Դամասկոս սոսկալի խժդժութեանց եւ աւերներու մատնուեցան* (1400 *աշնան*):

*Սուրիոյ մէջ ձմեռելէ ետք,* 1401-*ին գարնան մտաւ Միջագետք, ուր Մերտին եւ Պաղտատ ապստամբած եւ Մեմլուքներու միացած էին: Այս քաղաքներն ալ՝ իր ոճովը եւ հասկցած եղանակովը պատժուեցան:*

1402-*ին գարնան, Լենկթիմուր կրկին մտաւ Փոքր Ասիա, վճռական հարուած մը տալու համար Պայազիտ Ա.ի, որ իր բացակայութենէ օգտուելով, վերագրաւեր էր Սեբաստիան եւ Երզնկան:*

*Ճակատամարտ տեղի ունեցաւ* 18 *Յունիս* 1402-*ին Անկիւրիոյ դաշտին վրայ: Պայազիտ Ա. պարտուեցաւ եւ գերի ինկաւ, Փոքր Ասիան Լենկթիմուրի տիրապետութեան ենթարկուեցաւ եւ Սելճուկեան ամիրաներէ անոնք, որ էնկիւրիի ճակատամարտէն առաջ իր կողմը անցած էին, իրենց իշխանութիւններուն մէջ վերահաստատուեցան, իսկ միւսները պատժուեցան:*

*Այսպէս օսմանեան պետութիւնը կազմալուծուեցաւ եւ Եգիպտոսի սուլթանը մինակ մնացած, խոհեմութիւն համարեց ճանչնալ Լենկթիմուրի գերիշխանութիւնը: Բայց երբ* 1405 *Փետրուար* 15-*ին Լենկթիմուր մեռաւ եւ իր պետութիւնը քայքայուեցաւ, իր զօրութեան առջեւ ընկճուած բոլոր իշխանութիւնները վերստին իրենց կորսուած երկիրներուն տիրեցին. Մեմլուքները վերագրաւեցին հիւսիսային Սուրիան (Հալէպ), իսկ Օսմանեան Թուրքերու սուլթանութիւնը վերակազմուեցաւ:*

*Այս վերակազմուած պետութիւններէն մին ալ էր Գարա Գոյունլուներու իշխանութիւնը, վասնզի Գարա Եուսուֆ Հայաստան դարձաւ* 1406-*ին եւ նորէն երկիրին հարաւային մասին տիրելով վերականգնեց իր պետութիւնը* (1408)*: Ան տիրեց գրեթէ բոլոր Հայաստանի, ինչպէս նաեւ Միջագետքի, եւ կազմեց բաւական ընդարձակ իշխանութիւն մը:*

*Նոյնպէս Գարա Օսման ինքզինք անկախ հռչակեց եւ տէր դարձաւ Եւ—*

դոկիոյ եւ Սեբաստիոյ շրջակայքին, եւ տիրեց նաեւ Հալէպի, Դամասկոսի եւ Մերտինի, որոնց իշխողները մէկ օրուան մէջ սպաննեց։

Ուրեմն այս իշխանութիւնն ալ բաւական ընդարձակ հողերու տէր էր։

Այս երկու Թիւրքմէն իշխանութիւնները երկուքն ալ բազմաթիւ փոքրիկ հողատիրութիւններու համամիութիւններ էին պետի մը գլխաւորութեամբ, եւ այս պատճառով չատ զօրաւոր ներքին միութիւն մը չունէին. յաճախ իրենց ստորադաս պէկերուն եւ էմիրներուն դաւաճանութիւններովը եւ ապստամբութիւններով կը զբաղէին։

Երզնկայի տէրը՝ Փիր Օմարը երկու հակառակորդ Թիւրքմէն պետերը, Աք Գոյունլու Օսմանը հաշտեցուց Գարա Գոյունլու Եուսուֆի հետ եւ Հայաստան երկու իշխանութեանց միջեւ բաժնուեցաւ, եւ Ամիթը վերստին տրուեցաւ Աք Գոյունլուներուն։

Մալաթիա, որ Աք Գոյունլուներու սեպհականութիւնն էր, պէտք էր համեմատաբար նպաստաւոր վիճակ մը ունեցած ըլլայ այս շրջանին, վասնզի Աք Գոյունլուներու այս պետը (Օթման) «սիրող յոյժ ազգիս Հայոց», «քաջ զօրական» կը ներկայացնէ Թովմա Մեծոփեցի (էջ 72)։

Այս երկու իշխանութիւններու ժամանակակից կար նաեւ Զիւլգատըրեան Թիւրքմէն իշխանութիւնը, որուն ցեղապետը Զիւլգատր Զէյնեդդին Գարաճա, 1378-ին օգտուելով Եգիպտոսի Մեմլուքներուն տկարութենէն՝ գրաւած էր Մարաշը եւ ապա Ալպիսթանը։

Իր որդին Խալիլ պէյ (1385—1386) գրաւելով Մալաթիոյ եւ Խարբերդի շրջանակներն ալ, ընդարձակեց իր տէրութիւնը։ Ասոր եղբայրը՝ Սիւլիպէյ (1386—1398) օգտուելով 1387-ին Մալաթիոյ եւ Հալէպի կուսակալներուն Եգիպտոսի Մեմլուքներուն դէմ ապստամբելէն՝ տարածեց իր իշխանութիւնը մինչեւ Համա, եւ կազմեց բաւական ընդարձակ իշխանութիւն մը, որ կը տարածուէր Մալաթիոյ քով Եփրատէն մինչեւ Այաս, եւ Մարաշը իրենց կեդրոնական քաղաքն էր (Գր. Գալուստեան, ՄԱՐԱՇ, էջ 213)։

Այս երեք Թիւրքմէն իշխանութիւններն ալ, ինչպէս կը տեսնուի, Եփրատի հովիտին եւ Փոքր Հայքի չուրջը կը գտնուէին եւ Մալաթիոյ չուրջը կը պայքարէին իրարու հետ։

Ասոնք որքան որ անկախ ըլլալ կը յաւակնէին, արբանեակ պետութեան վիճակի ենթարկուելու պատրաստուած էին, երբ մեծ ոյժեր իրարու բախէին։

Այսպէս, երբ Մոնկոլները եւ Մեմլուքները կը մաքառէին իրարու հետ՝ հիւսիսային Սուրիոյ եւ Եփրատի հովիտին կամ Կոմմագինէի չուրջ, Մալաթիոյ եւ Խարբերդի տիրող Թիւրքմէն Զիւլգատրեան իշխանութիւնը, որ ինչպէս տեսնուեցաւ, օգտուած էր Մեմլուքներու ժամանակաւոր տկարութենէն ու Եփրատէն մինչեւ Համա տարածուած էր, սակայն չէր կրցած կատարեալ անկախ ըլլալ։

Մեմլուք Սուլթան Պարգուգ էլ Զահր (1382—1388) յարձակած էր ա-

նոր վրայ եւ սպաննած զայն, եւ այս կերպով անոր ապստամբութիւնը զըսպուած էր: Սակայն Եգիպտոսի սուլթանն ալ երկար չկրցաւ երկրին տիրել, վասնզի Օսմանեան Թուրքերու վեզիրը Թիմուրթաշ 1396–ին գրաւեց Մարաշը եւ Մալաթիան՝ Գարամանի իշխանին յաղթելէ ետք եւ օսմանեան տէրութեան կցեց:

Զիւլգատրեանք ամրացան դաշտային Կիլիկիոյ Կարս–Բազար աւանին չուրջը, ուր հաստատուեցաւ Սիւլիւ պէյի եղբօր՝ Խալիլի որդին՝ Նասրետտին Մուհամմէտ (1398—1442), որ իր մէկ աղջիկը կնութեան տալով Թուրքերու Չելէպի Մուհամմէտ Սուլթանի (1413—1421) որդւոյն Պայազիտի, եւ միւսը՝ Սեբաստիոյ Գատը Պիւրանետտինի, հաշտուեցաւ անոնց հետ եւ յաջողեցաւ ետ առնել իր կորսնցուցած հողերը, որոնց մէջ էր Մալաթիան:

Սակայն Եփրատի հովիտին մէջ ո՛չ խաղաղութիւն եւ ոչ հաստատուն կացութիւն մը ստեղծուեցաւ: Զիւլգատրեան Նասրետտին Մուհամմէտ ինքզինք զօրաւոր զգալով այս խնամութիւններով, կռուեցաւ Եգիպտոսի Մելիք Միւեպպետի[1] սուլթանին հետ, բայց յետոյ հաշտուեցաւ եւ յարձակողական ու պաշտպանողական զինակցութիւն մը կնքեց: Մեմլուք սուլթանը հաւանաբար անոր զօրանալը եւ իբր արբանեակ Օսմանեան Թուրքերու՝ վտանգաւոր նկատելով անոնց հակառակութիւնը, համակերպեցաւ անոնց իշխանութեան վերահաստատութեանը՝ իր գերիշխանութեան տակ:

Այսպէս, Մալաթիա ենթարկուեցաւ կրկին Զիւլգատրեան իշխանութեան, որ Մեմլուքներու գերիշխանութեան տակ կը գտնուէր:

Զիւլգատրեան Նասրետտին Մուհամմէտ իբրեւ Եգիպտոսի սուլթանին ստորադաս իշխող մը՝ կռուեցաւ Կիլիկիոյ տիրող Ռամազանեաններու դէմ եւ գրաւեց Դաշտային Կիլիկիան:

Զիւլգատէր օղլու իշխանը նոյնպէս յաղթեց Գարամանի իշխան Մուհամմէտ պէյին եւ զայն գերի բռնելով շղթայակապ Եգիպտոս ղրկեց: Յետոյ օսմանեան սուլթան Մուրատ Բ.ի (1421—1451) օգնութեամբ յաղթեց Գարամանի իշխան Իպրահիմ պէյին եւ Կեսարիան ալ գրաւեց:

Եգիպտոս ալ գնաց եւ արտակարգ պատիւներու արժանացաւ: Իրեն յաջորդեց իր որդին Սիւլէյման պէյ (1442—1454), որուն դեսպան մը ղրկեց Մուրատ Բ. եւ իր որդւոյն՝ Մուհամմէտի[2] համար խնդրեց անոր գեղեցիկ մէկ աղջիկը՝ Սիթին:

Սիւլէյման պէյի յաջորդեցին կարգով իր չորս որդիները, որոնց իշխանութեան ատեն Թիւրքմէն այս տէրութիւնը չկրցաւ իր անկախութիւնը պահել եւ մեմլուք եւ օսմանեան սուլթանութիւններու գերիշխանութեան ենթարկուեցաւ փոխն ի փոխ: Անոնցմէ Արսլան կամ Հասան պէյ (1454—1465) չատ չա–

---

(1) Ապու Նասր Շէյխ էլ Մօայէտ (1412—1421):

(2) Այն որ վերջը պիտի ըլլար Ֆաթիհ Սուլթան Մուհամմէտ Բ. (1452—1481) եւ պիտի գրաւէր 1453ին Պոլիսը:

րիքներ հայոց Կիլիկիոյ։

Իր եղբայրը Շահ Պուտաղ Եգիպտոսի սուլթանին կողմէ իշխանութիւն ստացած ըլլալուն համար, երկիրին մեծամեծները դիմեցին Ֆաթիհ Սուլթան Մուհամմէտին (1452—1481, Մայիս 3+), որ զօրք ղրկեց եւ վանեց Շահ Պուտաղը (1467-ին) եւ անոր յաջորդ նշանակեց Շահսիւվար եղբայրը, որ Կիլիկիոյ մէջ իր նախորդին հարստահարութիւնները շարունակեց։

Վերջապէս Եգիպտոսի մեմլուք սուլթանը Գաթիպա կամ Գայեթպա[1]՝ գրեց օսմանեան սուլթանին որ Շահսիւվարը ճգէ իր բախտին, որպէսզի անկէ իր վրէժը լուծէ եւ այս երկիրը նուաճելով օսմանեան պետութեան յանձնէ։

Սակայն 1470-ին երբ յաղթեց Շահսիւվարի եւ զայն Եգիպտոս տանելով կախաղան հանեց, իր խօսքը դրժեց, վասնզի Ֆաթիհ Սուլթան Մուհամմէտ զբաղած էր Պալքանեան երկիրներու մէջ, եւ անոր հակառակորդ Շահ Պուտաղը վերահաստատեց Մարաշի մէջ։

Տասը տարի վերջը (1480) Ֆաթիհ Սուլթան Մուհամմէտ Բ. նուաճեց երկիրը եւ Շահ Պուտաղը ղրկեց իր իշխանութենէն, եւ իր տեղը դրաւ Ալայէտ-Տէօվլէ եղբայրը, որ երկար իշխեց (1480—1514)։ Եգիպտացիք վերստին մինչեւ Մարաշ առաջացան եւ սուլթան Պայազիտ Բ. թոյլ տալու համար որ անոնք ամրանան Տաւրոսի վրայ, յարձակեցաւ Եգիպտացւոց վրայ եւ յաջողեցաւ վերագրաւել Մարաշը (1493) (Գր. Գալուստեան, ՄԱՐԱՇ, էջ 238)։

Բայց Ալայէտ-Տէօվլէ մերժած ըլլալով Եաւուզ Սուլթան Սելիմ Ա.ի (1512—20) օգնել ընդդէմ Պարսից, սուլթանը Չալտըրանի յաղթութենէ դարձին (1515) անոր վրայ ղրկեց Սինան փաշան, որ Ալպիսթանի ճակատամարտին մէջ յաղթեց Ալայէտ-Տէօվլէին եւ սպաննեց զայն եւ գլուխը Եգիպտոսի սուլթանին ղրկեց (1517) (Չիւլղատրեանց մասին տես Եղիա Քասունի, ԱՆԹԷՊԻ ԵՒ ՇՐՋԱՆԱԿԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՆԹԷՊԻ ՀԱՅՈՑ, էջ 288—293)։

Չիւլղատրեանք այսպէս մինչեւ 1515 իշխեցին Մալաթիոյ։

1516-ին Գոչհիսարի ճակատամարտէն ետք, սուլթան Սելիմ Ա. տիրեց կրկին Մալաթիոյ, երբ քաղաքը աւերակոյտի մը վերածուած էր։ Այդ թուականէն ետք այլեւս չկրցաւ քաղաքի մը կարգին բարձրանալ։

Սելիմ Ա. այս յաղթանակով դէմ դէմի կու գար թէ՛ Եգիպտոսի Մեմլուքներուն եւ թէ Պարսից, որոնց երկուքին ալ դէմ կռուիլ սկսաւ Օսմանեան կատաղի սուլթանը։

Մեմլուքներու դէմ կռուած ատեն երբ Մարճ Տապիգի ճակատամարտը շահեցաւ, Սելիմ Ա. որոշեց ջնջել Չիւլղատէր օղլուներու իշխանութիւնը, որ անվստահելի երկսայրի դեր մը կը կատարէր՝ յարում ցոյց տալով երբեմն Եգիպտացիներուն եւ Պարսիկներուն։

Ուստի երկիրը կատարելապէս նուաճեց եւ Չիւլղատրեան Շահսիւվար

(1) Հաւանօրէն Քաիթ պէյ Ապու էլ Նասր էլ Աշրաֆ (1467-1496)։

օղլու Ալի պէյը Մարաշի կուսակալ ըրաւ։

Բաւական ատեն, այն էյալէթը (վիլայէթ=կուսակալութիւն), որուն մասը կը կազմէր նաեւ Մալաթիոյ սանճագը, այդ տոհմին անունով կը կոչուէր Զիւլգատրիյէ։

Երբ Եփրատի արեւմտեան կողմը եւ Տաւրոսեան լեռներու երկու զառիվայրերուն վրայ այս կռիւները տեղի կ'ունենային, Եփրատի արեւելեան կողմը կը կատարուէին ուրիշ դէպքեր, որոնք Եփրատի արեւմուտքը՝ Լենկթիմուրի մահէն ետք իրենց անկախութիւնը ստացած երկիրներուն վրայ ալ իրենց անդրադարձութիւնը ունեցան։

Երբ Լենկթիմուր մեռաւ, իր որդին եւ յաջորդը Միր Մուսային էտտին Շահրուխ (1404–1447) եւ Գարա Եուսուֆ (+1417), որդին Իսկենտէր (1417–1438), որ Շահի Արմէն (Հայոց Թագաւոր) տիտղոսը կը գործածէր, երկար ատեն մաքառեցան իրարու հետ։

Իսկենտէր 17 տարի (1421—1437) յամառութեամբ կռուեցաւ Շահրուխի եւ Աք Գոյունլուներու դէմ (տես ՊԱՏՄ· ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 78)։

1436-ին անիկա արշաւեց նաեւ Սեբաստիա եւ Տիվրիկ եւ Խարբերդն ու Դերջանը գերի վարեց։ Հաւանական է որ Մալաթիան ալ յարձակման ենթարկուած ըլլայ։ Իսկենտէրի մահէն (1435) ետք, երբ այսպէս կը շարունակուէր անիշխանութիւնը մերձաւոր Արեւելքի մէջ եւ տեղական իշխաններ իրարու հետ կը պատերազմէին շարունակ, յանկարծ անակնկալ կերպով կը ստեղծուէր նոր կացութիւն մը։

Ջիհան կամ Ջանան (1437—1467) Իսկենտէրի եղբայրը եւ յաջորդը, 1446-ին Շահրուխի հպատակութիւն կը յայտնէր եւ ՇԱՀԸ ԱՐՄԷՆ կամ Ատրպատականի ամիրա կը նշանակուէր։

Ջիհան Շահ օրէ օր աւելի կը զօրանար եւ կ'ընդարձակէր իր տիրապետութիւնը, եւ ի վերջոյ իրեն հարկատու կը դարձնէր նաեւ Աք Գոյունլուներու Սուլթանը՝ Ճիհանկիրը (1461), որ Թուրքմէն պետութեան վրայ իշխող երրորդ վեհապետն էր։ Այսպէս, Գարա Գոյունլուներու Ջիհան Շահ բովանդակ Հայաստանի եւ Պարսկաստանի տէր կը դառնար եւ բացառիկ բարեացակամութիւն մը ցոյց կու տար Հայոց նկատմամբ (ՊԱՏՄ· ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 80)։

Ջիհան Շահի (1444–1467) այս սիրաշահող քաղաքականութիւնը փոխուեցաւ իր մահէն ետք, վասնզի Աք Գոյունլուները կամ Պայընտըրեանք զօրացան եւ Ուզուն Հասանի (1467—1478) վեհապետութեան տակ, բացուեցաւ այս գերազանցապէս զօրացած պետութեան համար միահեծանութեան շրջան մը։ Գարա Գոյունլու եւ Աք Գոյունլու իշխանութիւններու միութեամբ կազմուած այս մեծ պետութիւնը, որ կը յաւակնէր ըլլալ տէրը բոլոր արեւելքի՝ Պարսկաստանի պատմական հնօրեայ կայսրութեան իբր շարունակութիւնը, անխուսափելի էր որ պիտի ընդհարէր Օսմանեան Թուրքերու կայսրու-

*թեան, որ տիրելով Փոքր Ասիոյ՝ կը յաւակնէր Արեւելեան Հռոմէական կայսրութեան տեղը գրաւել:*

*Այս երկու պետութիւններու ալ չփման վայրն էր դարձեալ Կոմմագինէն կամ Եփրատացիքը եւ անոր ամենէն մօտ մեծ քաղաքը՝ Մալաթիան, որ ոտնակոխ եղաւ իբր Եփրատի ամենէն գլխաւոր կամրջագլուխը իր ռազմական կարեւոր դիրքին համար, երբ այս երկու մեծ ույժերը մաքառիլ սկսան իրարու դէմ:*

## ԺԸ.

# ՄԱԼԱԹԻԱ ՕՍՄԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՏԱԿ

*Մալաթիա 1516-ին Օսմանեան Թուրքերու տիրապետութեան կ՚ենթարկուէր այնպիսի ժամանակ մը երբ արդէն յիսուն տարիէ ի վեր սկսած էր ահարկու պայքար մը երկու խլամ մեծ պետութիւններու, Պարսկաստանի եւ օսմանեան պետութեան միջեւ:*

*Պարսկաստան տեղական փոքր իշխանութիւններու ձուլմամբ կայսրութեան մը վերածուած էր՝ վեհապետութեանը տակ բնիկ դարձած Թուրք արքայական տան մը, որ ընդգրկած էր իբրեւ պետական կրօնք Պարսիկներու հերձուածը՝ Շիի խլամութիւնը: Այս պետութիւնը իր կազմութենէն քիչ ետք, պայքարիլ սկսած էր օսմ. պետութեան դէմ, որ հաւատարիմ Սիւննի դաւանանքին կրօնական ատելութեամբ ալ լեցուած էր Պարսիկներու դէմ:*

*Բախումը սկսաւ 1473-ին երբ Գարամանի Իսահակ պէյը Պարսկաստանի վեհապետ Ուզուն Հասանի քով ապաստանեցաւ եւ անկէ օգնութիւն խնդրեց, եւ խոստում Ուզուն Հասան զայն վերահաստատելու համար իր իշխանութեան մէջ օսմանեան պետութեան դէմ պատերազմի ձեռնարկեց: Ասիկա եղաւ ըսկիզբը այն երկարատեւ կռիւներուն, զորս Թուրքերը եւ Պարսիկները մղեցին աւելի քան 250 տարիներ:*

*Այս պայքարին մէջ յաղթանակներ եւ պարտութիւններ իրարու յաջորդեցին, բայց առաւելապէս Օսմանցիք էին որ յաջողութիւններ ունեցան եւ հետզհետէ դէպի արեւելք առաջանալով՝ Հայաստանի զանազան մասերէն Պարսիկները վանեցին եւ իրենք տէր դարձան երկիրին, մինչեւ որ պարսիկ տիրապետութեան տակ մնաց հայկական հողէն աննշան մաս մը:*

*Դերջանի (1473) եւ Չալտրանի (1514) երկու վճռական ճակատամարտները շահելով Օսմանեան Թուրքերը, Հայաստանի արեւելեան մասին տիրեցին եւ մինչեւ Ուրմիոյ լիճը առաջացան: Որչափ ատեն որ Թուրք եւ պարսիկ պատերազմները կը շարունակուէին, այս երկու մեծ պետութիւններուն միջեւ գտնուող կարգ մը իշխանութիւններ երկընտրանքի մը մէջ էին եւ երբեմն մէկ՝*

երբեմն միւս կողմին կը յարէին։

Գարամանի իշխանութեան նման երկու պետութիւններու սահմանին վրայ կը գտնուէր նաեւ Մալաթիոյ տիրող Թիւրքմէն Զիւլգատրեան իշխանութիւնը, որ Թուրք եւ պարսիկ պետութիւններէն զատ սահմանակից էր Եգիպտոսի Մեմլուքներու պետութեան, որ Սուրիոյ կը տիրէր։

Զիւլգատրեանք երեք հզօր դրացիներու միջեւ ինկած, նախընտրած էին այդ երեքէն ամենէն աւելի զօրաւորին եւ անգութին՝ սուլթան Սելիմի (1512—1520) դէմ միանալ Պարսկաստանի եւ Եգիպտոսի։

Սուլթան Սելիմ Ա. տեսնելով որ Զիւլգատրեան Ալայիւտտէօվլէթ իշխանը, հաւատարիմ իր Պարսկաստանի հետ ունեցած դաշինքին, մերժած էր 1514–ին օգնել իրեն, Պարսկաստան արշաւած ատեն, որոշեց նուաճել այս Թիւրքմէն զօրաւոր իշխանութիւնը. ուստի անոր դէմ ղրկեց 1515–ին Սինան փաշա վեզիրը եւ Ալի պէյ Շեհսիւվար Օղլուն 10.000 Ենիչէրիներով։ Ալայիւտտէօվլէթ պատերազմին մէջ սպաննուեցաւ եւ իր չորս զաւակները գերի ինկան։ Սելիմ Ա. անոնց գլուխները ղրկեց Զիւլգատրեանց պաշտպան եւ գերիշխան Եգիպտոսի սուլթանին եւ երկիրը տուաւ Ալի պէյ Շեհսիւվարին, եւ ինք պատրաստուեցաւ Եգիպտոս արշաւելու։

Արդարեւ յաջորդ տարին (1516) կը ձեռնարկէ այդ կարեւոր արշաւանքին, իր բանակին համախմբման վայրը կ՚ըլլայ Կեսարիա, ուր նախ կու գայ վեզիր Սինան փաշա 43.000 զօրքով (Այվազովսքի, ՕՍՄԱՆԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Ա., էջ 321)։

Գլխաւոր ճակատամարտը տեղի կ՚ունենայ Հալէպի մօտ Տապըդի դաշտին վրայ։ Եգիպտացիք կը պարտուին եւ ութսունամեայ Գանսու Ղաւրի Սուլթանը փախած ատեն ետեւէն իյնալով կամ իրեններէն սպաննուելով կը մեռնի (նոյն, էջ 323)։

Այս յաղթութենէն ետք Սելիմի առջեւ կը բացուի Սուրիան եւ Պաղեստինը, որոնց տիրելէ ետք Սելիմ կ՚անցնի Սինայի Թերակղզին եւ Սուէզի պարանոցը եւ կը մտնէ Եգիպտոս եւ կը տիրէ այս երկրին։

Սելիմ Ա.ի մահէն (1520) ետք, երբ Սուրիոյ կուսակալը Ճանպերդի Ղազալի ապստամբեցաւ՝ ուրիշ կուսակալներու աջակցութեամբ, Թիւրքմէնները, որոնք Տաւրոսի շուրջը հաստատուած էին, խլրտեցան եւ անոր միացան (Այվազովսքի, նոյն, էջ 351)։ Սուլթան Սիւլէյման Ա. (1520—1566) Ֆերհատ փաշան ղրկեց այս ապստամբներուն դէմ եւ ընկճեց զանոնք, բայց Թիւրքմէնները սաստիկ սրտմտած այն հարստահարութիւններէն զորս կալուածահամարի մը պատրուակով Թուրք պաշտօնատարներ կը գործադրէին, ապստամբեցան (Jonquière, Ա., էջ 155, Այվազովսքի, Ա., էջ 373, ԱԶԳԱՏԱՏՈՒՄ, էջ 2225) եւ Փոքր Ասիան տակնուվրայ ըրին։

Իրարու ետեւէ յաջորդաբար ղրկուած բանակները յաղթուեցան եւ զօրավարները սպաննուեցան եւ մեծ դժուարութեամբ վերջապէս կարելի եղաւ խաղաղեցնել երկիրը 1526–ին, աւելի իմաստուն եւ խոհական միջոցներու կի–

*բարկութեամբ քան թէ զէնքի ուժով (տես նոյնը)։*

*Սակայն հազիւ այս Տաւրոսի հարաւակողմեան ապստամբութիւնը զսպուած էր, ուրիշ խառնակութիւն մը պայթեցաւ* 1527*-ին նոյն լեռնաշղթային հիւսիսակողմը՝ Գարամանի մէջ* (Jonquière, *Ա.* 156) *եւ տարածուեցաւ պետութեան զանազան կողմերը եւ մեծ համեմատութիւններ առաւ։*

*Այդ ապստամբութեան պետն էր Գալենտէր Օղլու, որ յաջողեցաւ Տերվիշներու, Ապտալներու եւ Գալենտէրներու քարոզութիւններու շնորհիւ ըմբոստութեան մղել Փոքր Ասիոյ բնակչութիւնը եւ իր շուրջը հաւաքել խառնիճաղանճ բազմութիւն մը, զոր իր պատկառելի թիւով աննկատ կարելի չէր թողուլ* (Jonquière, *Ա., էջ* 156)*։*

*Անատոլուի պէյլէրպէյին, Պեհրամ փաշա, որուն կ'օգնէին նաեւ Գարամանի եւ Հալէպի կուսակալները, կատարելապէս պարտուեցաւ Թոգատի մէջ (նոյն)։*

*Բովանդակ Փոքր Ասիան շփոթի եւ խառնակութեան մատնուեցաւ եւ ըմբոստները օսմանեան բանակին դէմ կռիւներ մղեցին, որոնց մէջ յաճախ յաղթեցին քան յաղթուեցան (Այվազովսքի, Ա., էջ* 373)*։*

*Այս ապստամբութեան մէջ, որ այնքան մեծ ծաւալ գտած էր, դարձեալ լեռնային Կիլիկիոյ Թիւրքմէնները կարեւոր դեր կատարեցին, մեծ թիւով մտնելով Գալենտէր Օղլուի բանակին մէջ։ Մեծ վեզիրը՝ Իպրահիմ փաշա, ճարպիկ բանակցութիւններով եւ խոստումներով նախ իր կողմը շահեցաւ Թիւրքմէնները եւ ապա կողմնակի ու պզտիկ կռիւներով ապստամբները յոգնեցուց եւ ուժասպառ ըրաւ եւ յաջողեցաւ վերջապէս յաղթել եւ սպաննել Գալենտէր Օղլուն եւ իր գլխաւոր աջակիցը՝ Վէլի Տունտալը եւ խաղաղեցնել բոլոր երկիրը* (Jonquière, *Ա., էջ* 156, *Այվազովսքի, Ա., էջ* 373—5)*։*

*Սակայն խռովութիւններ իրարու յաջորդեցին եւ սուլթան Սիւլէյմանի ցոյց տուած կորովը պատժելու համար ապստամբութիւնները եւ անոնց գըլխաւոր պատճառ իր կեղեքիչ պաշտօնատարները անզօր էին պետութիւնը փըրկելու համար ներքին անկարգութիւններէ, որ հետեւանքներն էին պատահական անկազմակերպութեան եւ վարչական անմիօրինակութեան։ Անարդարութիւնը եւ անգթութիւնը պետութեան մէկ ծայրէն միւսը կ'իշխէր եւ Սիւլէյման Գանունի այս բարբարոսութեանց հանդիսավայր երկրին մէջ իր արդարութիւն բաշխող, շատ հեռու էր անստուեր ըլլալէ։*

*Պալատական խարդաւանքները եւ կնոջական-հարեմական նենգութիւնները նոյնպէս երկիրը դժբախտ ըրին (տես* ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 599)։

*Իր զաւակները եւ իր վեզիրները զոհուեցան այդ դաւերուն։ Իր Պայազիտ որդին Գարամանի մէջ ապստամբեցաւ Թիւրքմէններու, Քիւրտերու եւ Ասորիներու* 20.000*-նոց բանակով մը։ Սոգոլլու Մեհեմմէտ փաշա վեզիրը ընկճեց այս ապստամբութիւնը՝ ջախջախելով* 30 *Մայիս* 1559*-ին Գոնիոյ մէջ Պայազիտ իշխանին բանակը։*

Թիւրքմէնները իրենց անառիկ լեռները ապաստանեցան՝ սպասելով նոր առիթներու, որոնք չուտով ներկայացան:

Այսպէս, 1575–1585 տասնամեայ Թուրք եւ պարսիկ պատերազմէն ետք, ԺԶ. դարու վերջին տասնամեակին ծագեցաւ մեծ խռովութիւն մը, որուն միջոցին Հայաստան, Միջագետք եւ Փոքր Ասիա, այսինքն ընդհանուր առմամբ օսմանեան կայսրութեան ասիական բաժինը, ասպատակութեանց եւ հարստահարութեանց ենթարկուեցան: Վասնզի իրարմէ անջատաբար, բայց գրեթէ միաժամանակ ապստամբական շարժումներ ծագեցան, որոնք տասնեակ տարիներով վտանգեցին օսմանեան կայսրութեան գոյութիւնը Փոքր Ասիոյ մէջ եւ պատճառ եղան երկիրին աւերման ու ամայացման:

Այս ապստամբները երկու անունով կը կոչուէին, ՃԵԼԱԼԻ եւ ՖԻՐԱՐԻ:

Ճելալի կոչուած են հաւանօրէն 1517-ին:

Թոգատի կողմերը ծագած կրօնական բնոյթով ապստամբութեան մը պատճառով, զոր յարուցած էր Ճելալ անուն աղանդաւոր մը, որ անձաւի մը մէջ ամրացեալ իր արբանեակներով, կ՚ըսէր թէ կը սպասէր Մահտիին եւ աշխարհի կատարածը մօտ էր (Այվազովսքի, ՕՍՄ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Ա., էջ 340): Այս աղանդին հետեւողներն ալ Ճելալի կը կոչուէին, ուստի անհաւանական չէ որ բոլոր Փոքր Ասիան շփոթի մատնողները ասոր յաջորդները նկատուած ըլլան եւ ՃԵԼԱԼԻ կոչուած: Հայ ժամանակակից պատմագիրները՝ ՃԵԼԱԼԻ անունով կը ճանչնային զանոնք:

Իսկ Թուրք պատմագիրները զանոնք կը կոչէին ՖԻՐԱՐԻ (փախստական, դասալիք), վասնզի 1596-ին Հունգարիոյ Էրլաու (Հունգարերէն Էգէր, Թուրքերէն Էկրի) քաղաքին գրաւումէն եւ Քերեսթէի ճակատամարտէն ետք, մեծեպարքոս իտալացի հաւատուրաց Ճըղալազատէ Սինան փաշայի անտեղի խստութիւնը պատճառ եղաւ որ բազմաթիւ Ենիչէրիներ փախչին եւ յետոյ Ֆիրարի անունին տակ գործեն չուրջ երեսուն տարի:

Այս ապստամբութեան առաջին ազդանշանը տուած է քիւրտ Ճելալի ցեղին պատկանող Թոփալ Օսման փաշա, որ հաւանօրէն Ճելալի աղանդին կը պատկանէր (ԴԱՒՐԻԺԵՑԻ, էջ 79—80):

Թոփալ Օսման փաշա իր շուրջը հաւաքելով սրիկայ անձեր, հազարի չափ, Կարբին կայան կ՚ընէ եւ կը սկսի կեղեքել ամբողջ շրջանը:

Այսպէս, Արարատի ստորոտէն ծագում առած այս շարժումը կը տարածուի եւ բոլոր Հայաստան, Միջագետք եւ Փոքր Ասիա, այս ընդարձակ տարածութեամբ հողերը ապստամբութեանց եւ հարստահարութեանց կ՚ենթարկուին:

Ուրիշ պատմութեան մը համաձայն առաջին ապստամբը Գըզըլ Օղլու Մուսթաֆան էր, որ 1591-ին ապստամբութեան դրօշը պարզեց: Ան Տիվրիկի եւ Քեմախի միջեւ Տոսթալի գիւղէն էր:

Օրինակը վարակիչ եղաւ եւ օսմանեան կայսրութեան ասորական բաժ-

նին մէջ ուրիշ շատ մը վայրերու մէջ երեւան եկան ապստամբներ, որոնք Թուրք կուսակալներ էին: Անոնց միացած էին բանակէն դասալիք Ենիչէրինե-րը: Եւ անլուր խժդժութիւններ կը գործէին ապատակութիւններով, կողոպուտներով եւ աւերածութեամբ, 1590-էն մինչեւ 1608, 18 տարի, առաւելապէս օսմանեան պետութեան այն մասերուն մէջ, որոնք հազիւ թէ դարէ մը ի վեր Թուրք սուլթաններու տիրապետութեան ենթարկուած էին:

Նախապէս ապստամբները որոշ տեղերու մէջ կղզիացած էին, եւ միացեալ ոյժերով չէին գործեր, եթէ ոչ, Թուրք բանակը պիտի չկարենար ազատօրէն անցնիլ Հայկական բարձրաւանդակէն՝ երթալ կռուելու համար Շահ Աբբաս Ա.ի (1587—1628) բանակներուն դէմ, որոնք պարտութեան մատնած էին Թուրքերը Դաւրէժի մօտ Սուֆեանի մէջ եւ գրաւած Դաւրէժը, Երեւանը եւ Կարսը (1603), անշուշտ օգտուելով երկիրին տակնուվրայ վիճակէն, բայց յետոյ ստիպուած էին ընկրկիլ եւ քաշուիլ Արաքսէն անդին:

Ասիկա կ'ապացուցանէ թէ հակառակ բազմաթիւ ապստամբած վայրերու՝ օսմանեան կանոնաւոր բանակները ազատօրէն կրնային երթալ կայսրութեան արեւելեան սահմանները, ըմբոստացած բազմաթիւ շրջաններու մէջէն:

Այս ըմբոստութեանց ամենէն մեծը եղաւ այն, զոր Գարա Եազըճը Ապտիւլ Հալիմ եւ իր եղբայրը Տելի Հասան յարուցին:

Ասոնք պահ մը յաջողեցան կորզել Սուլթանէն ասիական բոլոր նահանգները եւ անկախ կառավարել իրենց գրաւած հողերը:

Գարա Եազըճը, որ Ենիչէրիներու Սեկպան (որսորդ) գունդին պետերէն էր, 1597-ին ապստամբեցաւ Եղեսիոյ մէջ: Հակառակ անոր որ «Ոչ մի թագաւորական տոհմէ եւ ոչ մեծ ազգէ էր, այլ գռեհիկ եւ ոչինչ թան զամենայն մարդիկ» (ԴԱԻՐ., էջ 569) եւ չորումցի սոսկական մըն էր եւ նախապէս Սոփտա (կրօն. ուսմանց ուսանող) եւ ապա եղած էր զինուոր: Ան կը ներկայացնէր ինքզինք Պենի Շետտատ (Beni Cheddat) ընտանիքէն սերած եւ զրոյց հանած էր թէ մարգարէն իրեն երեւցած եւ խոստացած՝ Փոքր Ասիոյ վեհապետութիւնը (Jonquière, Ա., 224): Գարա Եազըճը ալ կ'երեւի ունէր կրօնական աղանդ մը, որուն հեղինակը ինքն էր թէ ուրիշ մը, չենք գիտեր:

Այս աղանդին հետեւողներուն արգիլուած էր կոյս աղջիկներու կամ կիներուն մերձենալ: Գարա Եազըճի յաջողեցաւ 20.000 քիւրտ եւ Թիւրքմէն հաւաքել իր շուրջը (Այվազովսկի, նոյն, Ա., էջ 550):

Եւ շատ մը վայրերու տիրեց եւ երեք տարի յաջողութեամբ դիմադրեց կեդրոնէն ղրկուած զօրքերուն:

Իրմէ գրաւուած վայրերուն առաջիններէն մէկը եղաւ ՄԱԼԱԹԻԱ, ուր ճելալիները եկած էին Ուրֆայէն, ինչպէս 1603-ի աւարտած ձեռագիր Շարականի մը յիշատակարանին մէջ գրուած էր թէ «ՂԱՐԱ ԵԱԶԸՃԻ ՈՄՆ ՑԱՐԵԱՒ ՀԱԿԱՌԱԿ ԹԱԳԱՒՈՐԻՆ ԵՒ ԺՈՂՈՎԵՑ ԻՒՐԵԱՆ ՀԱՄԱԽՈՀ ԻՒ. (20.000)

ԱՅՐ ՊԱՏԵՐԱԶՄՈՂ: Նախ էառ զՈւրփա քաղաք եւ տիրեց իւր բոլոր գեղի եւ մանր քաղաքացն, եւ զամենեցուն զապրանքին եւ զմալն առեալ զոմանս ըսպանեալ եւ զտասն տարուն ի վեր եղած զտղայքն գերի առեալ: Եւ տարի մի այլ եկեալ Մալաթիա բնակեալ եւ զսա ալ թալանեալ եւ մերկացուցեալ ի հոգեւոր եւ ի մարմնաւոր բարութեանց: Եւ անդի եկեալ բազում զօրաւք ի Սեբաստիա քաղաք եւ մտեալ անդ զփաշայն ի բերդն փախոյց եւ զբազումս ի անկիչարացն եւ սպահոցն եւ շատք ի գեղէ եւ ի քաղաքէ սպանեաց եւ ի սուր մաշեաց, եւ զտունս եւ զբնակութիւնս, զպազաստան եւ զչարշուներս նախ թալանեցին եւ ապայ զամենեսեան հրով այրեցին, եւ զնոցա զտղայքն այլ գերի առին եւ իւրեանց չար գործոցն կցորդ արարին»:

*Այս յիշատակարանին շարունակութենէն կը հասկցուի թէ տարի մը յետոյ Գարա Եազըճին գրաւած է նաեւ Թոքատը եւ նոյն խժդժութիւնները գործադրած է նաեւ հոն, ինչ որ շատ աւելի մանրամասն նկարագրած է (տես* **ՅՈՅՍ**, *հանդէս*, 1876, *էջ* 126—7 *կամ Ալպոյաճեան* **ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ**, *էջ* 1575—7):

*Ապստամբութիւնը, ինչպէս այս յիշատակարանին մէջ նկարագրած է Ստեփանոս Թոքատցի, այս Տարականին լրացնողը, ստացած էր աւազակային բնոյթ:*

*Գարա Եազըճիի մարդիկը, ինչպէս Դարանաղցի ալ կը հաստատէ (էջ* 25—6), *ի սկզբան աւարառութիւն եւ թալան չէին ըներ եւ կամ մարդու վընաս չէին հասցներ, այլ միայն մարդոց պարէնը եւ անասուններուն կերը կ'առնէին:*

*Երբ Զօրում եկան եւ հոն ձմեռեցին, ոչ ոքի վնաս հասցնել չէին ուզեր:*

*Կը տեսնուի թէ, գէթ ապստամբութեան առաջին շրջանին, շարժումը ուղղուած էր օսմանեան պետութեան եւ հարուստներուն դէմ եւ ոչ՝ գեղացիներուն դէմ եւ նոյնիսկ վաճառականներուն:*

*Դարանաղցի տեղ մը որոշ կ'ըսէ արդէն թէ շատ աւելի կը վնասէին Թուրքերուն քան քրիստոնեաներուն: Այս վկայութիւնը կ'ենթադրուի թէ կը վերաբերի ապստամբութեան այն շրջանին, երբ սկզբնական յաղթանակներէ ետք զօրաւոր պետի մը չգոյութիւնը անիշխանութիւն ստեղծեց:*

*Ասկէ վերջն է որ կացութիւնը բոլորովին անտանելի դարձաւ Ասիական Թուրքիոյ:*

*Հայկ Պէրպէրեան, իր մէկ գրութեան մէջ՝ նուիրուած Ճելալիներուն ապստամբութեան, երկիրին վիճակը կը ներկայացնէ շատ դժբախտ.—*

«Ճելալիները կը կողոպտէին, կը յափշտակէին, կ'առեւանգէին, կը չարչարէին, կը հրկիզէին եւ կը սպաննէին, եւ միեւնոյն ատեն իրարու հետ ալ կը կռուէին իրենց իշխանութիւնը տարածելու համար. մահմետական Ճելալիներուն միացած քրիստոնեաներ ալ, անշուշտ Հայեր եւ թերեւս Ասորիներ, որ օգտուելով երկիրին անտէր վիճակէն, սկսան «թէ յայտնի յափշտակութեամբ եւ թէ գաղտնի գողութեամբ» (*ԴԱՐ. էջ* 85) ժողովուրդը հարստա-

խարել, ինչպէս որ կ'ընէին միւսները։

Այս համատարած աւարառութիւններն ու կռիւները խանգարեցին երկիրին տնտեսութիւնը՝ հողագործութիւնը եւ խաշնարածութիւնը, որ Փոքր Ասիոյ տնտեսական կեանքին գլխաւոր աղբիւրներն էին. այնքան դժուարացան որ սոսկալի սով մը չուշացաւ տիրել ամբողջ երկրին մէջ, մարդիկը մարդակերութեան մղելու աստիճան, եթէ մեր մատենագիրները չեն չափազանցած։ Այս կացութեան հետեւանքով, ժողովուրդին մէկ մասը ստիպուեցաւ հեռանալ ապստամբական շրջաններէն։ Թուրքեր, Հայեր եւ Յոյներ ապաստանեցան ի Պոլիս եւ շրջակայքը, Պոնտոսի ծովեզերքը, Խրիմ, Եւրոպական Թուրքիա, Պարսկաստան, Ռումանիա եւ մինչեւ իսկ Լեհաստան» (*Հմմտ. ԴԱՒ.*, *էջ* 88 *եւ ԴԱՐԱՆԱՂՑԻ*, *էջ* 18)։

*Գարա Եազըճիի ապստամբութիւնը այնքան ծաւալեցաւ որ մայրաքաղաքին դուռները հասաւ։ Այս ընդարձակ տարածութեամբ երկիրին* խարանը *(գլխահարկ) ինքը սկսաւ առնել եւ պետութեան գանձուն հասոյթները իւրացնել։ Սուլթանը հարկադրուեցաւ արտասովոր միջոցներու դիմել՝ ընկճելու համար այս ապստամբութիւնը։*

*Ուստի Եղեսիոյ վրայ ղրկեց իր վեզիրը, երբ Գարա Եազըճիի օրինակէն քաջալերուած բազմաթիւ ըմբոստութիւններ ծագեցան եւ անիշխանութիւնը համատարած հանգամանք մը առած էր։*

*Անոնք ահագին աւեր պատճառեցին պարսկական սահմաններէն մինչեւ Կ. Պոլսոյ մօտերը տարածուած երկիրներուն, որոնց գրեթէ տիրած էին, ինչպէս Դաւրիժեցի եւ Դարանաղցի կը հաստատեն.* «ի յԱմբայ կէս աւուր հողէն որ ելնուս, մինչ ի մեծ քաղաքն Ստամբուլ աւերութիւն է, ուր ուրեք գտանի շինութիւն» (*ԴԱՒՐԻԺԵՑԻ*, *էջ* 569, *Հմմտ. նաեւ ԴԱՐԱՆԱՂՑԻ*, *էջ* 15)։

*Այսպէս, օսմանեան պետութիւնը ամբողջական կազմալուծումի կ'ենթարկուէր, ինչպէս կը պատմէ Դաւրիժեցի (էջ 82), վասնզի ԺԶ. դարու վերջերէն սկսեալ ամէն կողմ ապստամբները ինքնիշխան կը գործէին։*

*Գարա Եազըճիի հետ, ժամանակակից հայ երկու պատմագիրները, կը յիշեն անուններով 15—20 ուրիշ ապստամբապետներու (տես ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 428), որ* «ոչ տեղի ուրեք զկայ առեալ բնակէին, այլ աշխարհաւերք եւ աշխարհակործանք, եւ ուր եւ լսէին զհամբաւ շինութեան, դիմեալ անդր հասանէին, աւարեալ կողոպտէին ու զշինուածսն հրդեհեալ այրէին» (*ԴԱՒ.*, *էջ* 87)։

*Գարա Եազըճիի դէմ ղրկուած վեզիրը չկարենալով յաղթել, գործը իրաւախոհութեամբ կարգադրած էր, գուցէ կաշառքով ապստամբէն չահելով։*

*Այս համաձայնութեամբ Գարա Եազըճին Ամասիոյ կուսակալ կարգուեցաւ* (Jonquière, *Ա.*, 224) *եւ «տիրեաց Թոխաթոյ եւ Ամասիոյ եւ Մարզուանու՝ Զառումուն» (ԴԱՒ., էջ 634, Հմմտ. ԴԱՐ., էջ 75) եւ քիչ յետոյ վերստին զէնք առաւ եւ միացաւ Պաղտատի կուսակալ Տելի Հասանի հետ եւ*

*կազմեց ընդարձակ պետութիւն մը, որ Պաղտատէ մինչեւ Փոքր Ասիոյ սիրտը կը տարածուէր։*

*Այս տարածութեան մէջն էր նաեւ Մալաթիա, որ ենթարկուած է անոնց պատճառած չարիքներուն։*

*Գարա Եազըճի Շահ (=Թագաւոր) տիտղոսը առաւ եւ սոնքալ սկսաւ որ յաղթած էր օսմանեան ոյժին եւ իշխանութիւնը բացարձակ իրեն կը պատկանէր (Հմմտ.* Jonquière, *էջ* 224)։

*Սոքոլլու Հասան փաշայի կողմէ սպաննուելէ ետք եղբայրը՝ Տելի Հասան շարունակեց իր գործը, նոյն սաստկութեամբ* (Jonquière, *Ա., էջ* 224. *Այվազովսքի Ա., էջ* 550. *ԴԱՐ., էջ* 26, *ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ, ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ* 428—9)։

1602–*ին Թոգատ կը գրաւուի ապստամբներէն, որոնք մեծ չարիքներ կը հասցնեն Փոքր Ասիոյ բնակչութեան (Այվազովսքի, Ա., էջ* 551)։ *Տելի Հասան նոյնիսկ* 1603–*ին պաշարեց Պէօթահիան։ Զինու զօրութեամբ գլուխ չկարենալով ելլել, Բ. Դուռը ոսկիով շլացուց Տելի Հասանը եւ համոզեց զէնքերը վար դնել* (1603), *բայց ապստամբութիւնը վերջ չգտաւ. Նոր պետեր երեւան եկան։*

*Եղաւ ատեն որ սուլթանին իշխանութիւնը Պոլսոյ շրջանակին մէջ սահմանափակուեցաւ եւ բովանդակ Անատոլու վերածուեցաւ պատերազմի դաշտի եւ սրածութիւններ, կողոպուտներ, աւարառութիւններ եւ սաստիկ հարկապահանջութիւններ իրարու յաջորդեցին։*

*Այս խռովայոյզ վիճակը արգելք եղաւ երկրագործական աշխատութեանց եւ զարհուրելի սով մը ծայր տուաւ, որ* 1599–*էն* 1610 *տեւեց, այնքան սաստիկ որ ոչ միայն շուները եւ կատուները կերան, այլեւ մեռած մարդիկը եւ նոյնիսկ ողջերը (ԴԱԻ., էջ* 88—9)։

*Ծղալլի Օղլու Սինան փաշայի* (1604), *բայց մանաւանդ խրուատ Գույուճու Մուրատ փաշայի* (1607 *Յունուար* — 1608 *Դեկտեմբեր) ջանքերով վերջապէս այս ապստամբութիւնը վերջ գտաւ, երբ երկիրը խորապէս ցնցուած եւ պարտուած էր, եւ քաղաքներն ու գիւղերը դատարկացած ու ամայացած էին բնակչութենէ*[1]։

*Հազիւ* 15 *տարի եղած էր ճելալիներու ապստամբութեան վերջ գտնելը, երբ Կարնոյ կուսակալ Ապազա փաշա, մնացորդ ապստամբներուն հետ ըմբոստացաւ Ենիչէրիներու պատճառով։ Եւ Կարինէն մինչեւ Էնկիւրիւ արշաւեց կոտորելով եւ Թափելով իր* 40.000 *զինուորներովը։*

*Սուլթան Մուրատ Դ.* (1622—1639) *մեծ դժուարութեամբ եւ Թուրքմէններու դաւաճանութենէն օգտուելով, հազիւ կրցաւ Ապազան հնազանդեցընել (ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ* 430)։

---

(1) *Այդ պատճառով Մուրատ փաշա* (1520—1611) *եւ Սուլթան Մուրատ Դ.* (1622—1639) *ջանքեր ըրած են փախչելով Կ. Պոլսոյ շուրջը համախմբուած գաղթականները իրենց տեղերը դարձնելու։*

Այս տեսակ ապստամբութիւններ սովորական էին օսմանեան պետութեան մէջ, ուր ամէն ատեն ըմբոստ տարրեր եւ պետութեան դէմ զէնք առնողները միշտ կային:

Այդ ապստամբութիւններէն շատերը, նոյնիսկ պատմութիւն չունին իբր ընթացիկ եղելութիւններ, որոնք պետութեան մէջ ամէն օր կը պատահէին, իսկ ոմանք երբեմն մեծ համեմատութիւններ կ'առնէին:

Այս վերջիններուն շարքին կրնանք դասել, երբ հետաքրքրական մէկ դրուագ օսմանեան պատմութեան այն ապստամբութիւնը, զոր լատին կրօնաւոր մը յարոյց Անատոլուի մէջ:

Այդ կրօնաւորը՝ Դոմինիկեան քահանայ Ճիովաննի Պաթթիսթա Պոթթին էր, որ Մուսուլ ղրկուած էր եւ տեղւոյն եպիսկոպոսին հետ խնդիր ունենալով բանադրուած էր Հռոմի Պապէն: Պոթթի այն ատեն թողուց իր եկեղեցականութիւնը եւ կազմեց ծրագիր մը՝ նոր կրօնք մը հիմնելու ու Փոքր Ասիան գրաւելու: Երկար տարիներու ուսումնասիրութիւններէ եւ պատրաստութիւններէ ետք Շէյխ Օղլու Օսլոյ անունը առած, 1785-ին Ամադիէի մէջ սկսաւ քարոզութեան, եւ քանի մը ամսուան մէջ յաջողեցաւ բոլոր Քիւրտերը իրեն կապել եւ գրաւել Կարինը, եւ անկէ ալ առաջանալ դէպի Սեբաստիա եւ Զմիւռնիա: Այս պատճառով 1785—1787-ին Փոքր Ասիան անգամ մըն ալ տակնուվրայ եղաւ:

Սակայն օճառի պղպջակի մը կեանք ունեցաւ այս շարժումը, զոր Բ. Դուռը կրցաւ ճարտարութեամբ մը խեղդել (ՊԱՏՄ. ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 430): Բայց բնաւ վերջ չգտան խռովութիւնները եւ օսմանեան պետութիւնը որեւէ ատեն չկրցաւ զօրաւոր կեդրոնական իշխանութեան մը ենթարկուած եւ պետութեան բոլոր մասերուն վրայ հաւասար հեղինակութեամբ կառավարուած պետութեան մը վերածուիլ եւ միշտ խռովութիւններու եւ խառնակութիւններու բոյն մնաց:

Այնպէս որ օսմանեան պետութեան պատմութիւնը եղած է շարք մը արտաքին եւ ներքին պատերազմներու, որոնք անվախճան եւ անվերջ շարունակուած են: Մալաթիա մինչեւ օսմանեան պետութեան ենթարկուիլը, երբ Եփրատի կարեւոր մէկ անցքը վաղուց շատ կարեւոր դեր կատարած էր, հարաւէն եկած արշաւանքներուն դէմ Անատոլուն պաշտպանելով:

Օսմանեան պետութեան կցուելէն ետք շատ կարճ ժամանակ մը եւս նոյն դերը կատարեց Սուրիայէն եգիպտական բանակներու կատարած յարձակումներուն դէմ:

Բայց երբ օսմանեան պետութիւնը ԺԶ. դարուն դէպի արեւելք՝ Ուրմիոյ լիճը հասաւ եւ Սուրիան ու Պաղեստինը եւ նոյնիսկ Եգիպտոսը նուաճեց, Մալաթիա կորսնցուց իր իբր սահմանագլուխի քաղաք ունեցած ռազմական նշանակութիւնը, վասնզի իբր Անատոլուի կեդրոնական քաղաքներէն մէկը, սահմանագլուխներէն հեռու կը գտնուէր: Այս պատճառով անուղղակի կերպով միայն կրած է արտաքին՝ մանաւանդ կեդրոնական Եւրոպայի կամ

Դանուբի շուրջը օսմանեան պետութեան մղած պատերազմներուն հետեւանքները եւ որոշ չափով միայն կրած է ազդեցութիւնը այն պատերազմներուն, զորս օսմանեան սուլթանները Պարսկաստանի եւ Ռուսիոյ, եւ ԺԹ. դարուն առաջին կէսէն վերջ Եգիպտոսի փոխարքային՝ Մեհմէտ Ալի փաշայի դէմ մղելու պարտաւորուեցան։

Ասոնցմէ միայն վերջինին մէջ է որ եգիպտական բանակները հասան մինչեւ Մալաթիա, եւ, ինչպէս պիտի տեսնուի, ճակատագրական հետեւանք ունեցան քաղաքին պատմութեան վրայ, հին Մալաթիոյ քով Նոր Մալաթիոյ հիմնարկութեան եւ քաղաքին տեղափոխութեան պատճառ ըլլալով։

Մալաթիա մասնաւորապէս ազդուած է ներքին խռովութիւններէ եւ անոնց տխուր հետեւանքները կրած է խորապէս։

Մալաթիա կրած է վերը ներկայացուած բոլոր ապստամբութիւններուն խառնակութիւններուն եւ յեղուզակային շարժումներուն հետեւանքները։

Մասնաւորապէս իր դիրքը իբրեւ Թիւրքմէններէ եւ Քիւրտերէ բնակուած հողերով շրջապատուած վայր մը, պատճառ մըն էր որ կրէր բոլոր անխուսափելի հետեւանքները այն Թշուառութիւններուն, զոր այս ապստամբութիւնները առաջ պիտի բերէին անպատճառ։

Մալաթիա, մէկ խօսքով, ենթարկուած է օսմանեան երկիրներուն ընդհանուր կերպով ճակատագրուած վիճակին, եւ Թուրք պետութեան դժոխային վարչութեան ստեղծած բոլոր չարիքներուն։

Կեղեքում, հարստահարութիւն, կաշառակերութիւն, յափշտակութիւն եւ հպատակներու արժանապատուութեան վիրաւորանք սովորական եղելութիւններ էին այս պետութեան մէջ, որ զինուորական կազմով, ուժի վրայ հիմնուած կառավարութիւն մըն էր եւ կը միտէր դէպի կեդրոնացում, սակայն իրականութեան մէջ կը կառավարուէր աւատական կարգերու մէկ չարափոխութիւնը եղող վարչաձեւով մը։

Պետութիւնը բաժնուած էր նախապէս երկու խոշոր մասերու, որոնք էին երկիրին ասիական (Անատոլու) եւ եւրոպական (Ռումելի) մասերը, իրենց գլուխը ունենալով մէկ-մէկ իշխանապետ (պէյլէրպէյի)։

Անատոլուի պէյլէրպէյին կը նստէր մինչեւ Կ. Պոլսոյ գրաւումը Էնկիւրիւ, բայց յետոյ փոխադրուեցաւ Քէօթահիա։

Պետութեան այս երկու մեծ հատուածները բաժնուած էին կուսակալութիւններու, որոնք հին ատեն Էյալէթ կը կոչուէին եւ յետոյ Վիլայէթ կոչուեցան։

Ասոնց գլուխը դրուած էր մէկ-մէկ կուսակալ (վալի), որ բացարձակ ինքնիշխան կը կառավարէր իրեն վստահուած երկիրը։ Կուսակալը իր պատասխանատու պաշտօնը կը ստանար ոչ Թէ իր արժանիքներով, այլ իր դրամով, պարզապէս կապալով։

Ով որ շատ կը վճարէր, անիկա կը տիրանար պաշտօնին եւ իր առաջին

մտահոգութիւնը կ'ըլլար կեղեքել ժողովուրդը իր տուած դրամը առնելու համար:

Ամէն էյալէթ կամ փաշայութիւն կը բաժնուէր Սանճագներու կամ Լիւաներու, որոնք կառավարչութիւններ էին: Ասոնց պետերը կը կոչուէին Միւթեսելլիմ կամ Միւսելլիմ, որ փոխանորդի իմաստ ունէր: Վերջը այս բառը փոխարինուած է Գայմագամ բառով, որ Տեղապահ կը նշանակէ:

Լիւաները (գաւառ) բաժնուած էին Գատըլըգներու կամ Գազաներու (Թեմ), իսկ Գատըլըգները՝ Նահիէներու, զորս Ինճիճեան Վիճակ կը կոչէ, սակայն աւելի լաւ է կոչել Գիւղախումբ, ինչպէս հիմա կը թարգմանուի:

Փաշայութիւններու մէջ ամբողջ իշխանութիւնը կը գտնուէր կուսակալ-փաշային ձեռքը: Փաշային տրամադրութեան տակ կը գտնուէր զինուորական ոյժը մը, ծագած խռովութիւնները եւ անկարգութիւնները զսպելու համար:

Հին ատեն փաշան ինքն կը նշանակէր սանճագներու պետերը, կը բաժնէր հարկը սանճագներու վրայ եւ զայն կը գանձէր սանճագներու կառավարիչներուն եւ մասնաւոր հարկահաւաքներու միջոցով:

Փաշաները թէպէտեւ կ'ընդունէին կեդրոնական կառավարութեան հեղինակութիւնը եւ Կ. Պոլսոյ սուլթանին կը հպատակէին, սակայն միշտ կը ձգտէին անկախօրէն վարել գործերը, եւ ըստ քմաց կառավարել:

Երբեմն ասով ալ չգոհանալով՝ բոլորովին անկախ ըլլալ կ'ուզէին եւ կը մերժէին ճանչնալ սուլթանին իշխանութիւնը եւ կ'ապստամբէին:

Մալաթիա մաս կազմած է Մարաշի պէյլէրպէյութեան կամ էյալէթին, իբր սանճագ, եւ երկիրը նախկին տէրերուն անունով կոչուած՝ ՁԻՒԼԳԱ ՏՐԻՅԷ: Իր կառավարիչները միւս կառավարիչներէն տարբեր չեն եղած իրենց ընթացքով եւ ապահովաբար անոնց նման չարունակ կեղեքած են ժողովուրդը:

Եւ այս անխուսափելի էր, քանի որ փաշաները յաճախ կաշառքով կ'առնէին կուսակալութիւնները, որոնք կարծես աճուրդով կը ծախուէին եւ շատ տուողին կը տրուէին:

Շահագործութիւնը այնքան սաստիկ էր որ նոյնիսկ կեղծ պաշտօնատուութիւններ ալ կը կատարուէին:

Յաճախ փաշան պաշտօնանկ կ'ըլլար իր պաշտօնը աւելի շատ տուողի մը տրուելու համար: Ասոր համար երկար չէին մնար իրենց պաշտօնին մէջ:

ԺԶ.—ԺԷ. դարերուն Թուրքիոյ վիճակը շատ լաւ ներկայացուցած են ժամանակակից մեր երկու եկեղեցական պատմիչները՝ Առաքել Դաւրիժեցի եւ Գրիգոր Դարանաղցի: Տիարպեքիրը «Ի վեց ամիսն ինն փաշայի ետուն» (ԴԱՒՐԻԺԵՑԻ, էջ 569) եւ «կաշառովի տային զիշխանութիւն գաւառապետութեանց եւ աշխարհակալութեանց եւ դատաւորութեանց եւ տակաւին դրա ի տեղին ոչ էին հասեալ, մանշուլ առնէին եւ զտեղին նոր այլ ումեման տային» (ԴԱՐԱՆԱՂՑԻ, էջ 14—5):

*Սուլթանը* «յորժամ… տայր քաղաք մի փաշայի մի, կամ պարոնի մը, յետ Ժ· (10) աւուր կամ Ի· (20) աւուր մայրն կամ քոյրն, կամ իւր կինն, կամ վեզիրն, տային այլ փաշային եւ առնէին բազում կարմիր դահեկան» (*ԴԱՐ–ՐԻԺԵՑԻ*, *էջ* 560): *Հետեւաբար անմիջապէս որ պաշտոնի ձեռնարկէին, կը սկսէին կեղեքել իրենց տուած դրամը գանձելու համար*: «Կայր որ փաշայն կու գայր, կայր որ փաշա վաքիլն կու գայր: Նոքա որ կու գային, գիտէին որ քանի յետքն փուչ էր, նոքա այլ կու սկսած էին ի կողոպտել· եւ ի թալանել զքաղաքն եւ զերկիրն» (*Նոյն*, *էջ* 569):

*Այնպէս որ կուսակալներու գլխաւոր գործը թալանելն էր որչափ կարելի է շատ*:

*ԺԷ· դարուն սկիզբը օսմանեան պետութիւնը մեծ աղէտներու ենթարկուած էր իր անկազմակերպ վիճակի բերմամբ եւ վնասուած մեծապէս, եւ դարուն վերջերը տակաւին չունէր զօրաւոր կազմակերպութիւն մը*:

Recunt *որ ԺԷ· դարուն անգլիական դեսպան եղած է Կ· Պոլիս եւ իր տեղեկութիւնները քաղած է Թուրք պաշտօնական աղբիւրներէ, իր գիրքին մէջ* (**Histoire de l'Etat présent de l'Empire Ottoman,** Paris, 1670, *էջ* 165–171· *Լէօ*, *ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*, *Գ·*, *էջ* 53) *ցոյց կու տայ թէ Մարաշի պէյլէրպէյութեան ենթակայ չորս սանճաքներէն մէկն էր Մալաթիա*[1]:

*Մարաշի պէյլէրպէյի եկամուտն էր* 628·458 *ասպըր* (*աքճէ*)՝ *անշուշտ անուանական*:

Recunt*–ի համաձայն այն ատեն* 17 *կուսակալութիւններ կային Անատոլուի մէջ սակայն ինչպէս այդ թուականէն առաջ, նոյնպէս նաեւ վերջը, այդ կուսակալութիւնները միօրինակ կերպով չէին կառավարուեր*:

*Վայրեր կային այդ կուսակալութիւններու մէջ, որոնք կուսակալին չէին հնազանդեր եւ անկախութիւն կը վայելէին՝ անուանական կերպով կուսակալին ենթակայ մնալով: Ամէն տեղ մէյ մէկ տեսակ կառավարութիւն կար: Շատ մը տեղեր, երկիրին զանազան մասերուն մէջ որջացած էին կարգ մը ձորապետներ* (*տէրէպէյի*) *եւ ուրիշ բռնապետներ, որոնք կաշառքով կը գոհացընէին կուսակալը, որպէսզի զիրենք անհանգիստ չընէ եւ իրենք կարենան շարունակել իրենց կեղեքիչ գործը, եւ իրենց հարստահարութեանց արդիւնքէն կուսակալին կարեւոր բաժիններ հանել, եւ անոր ընչաքաղցութիւնը գոհացնել*:

*Բնակչութեան, մանաւանդ* Րայաներու (*հպատակ*) *ո՛չ կեանքը, ո՛չ պատիւը եւ ո՛չ ստացուածքը ապահով էր*:

*Պարզ քմահաճոյքով՝ անդատաստան գլխատումներ, գեղեցիկ կիներու, աղջիկներու եւ տղաներու յափշտակութիւններ, եւ հողերու ու տուներու գըրաւումներ սովորական բաներ էին օսմանեան երկիրներուն մէջ* (*տես մանրա–*

(1) *Միւս երեքն էին ԱՋԱԲ* (?), *ԿԱՐՍ* (*հաւանօրէն ԿԱՐՍ ԲԱԶԱՐ Կիլիկիոյ մէջ եւ ՍԱՄՍԱՏ* (*որ ապահովաբար Սամոսատն է*):

մասնութիւններ Լէօ, ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Գ․ հատոր եւ ՀԱՅԿԱԿԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ, Ա․ հատոր, 1901, Թիֆլիս, էջ 28—39 այլ եւ այլ)։

Կառավարութիւնը կազմակերպուած աւազակութիւն մըն էր, եւ արդարութեան նշոյլը գոյութիւն չունէր, վասնզի արդարութեան գործը կամ դատական իշխանութիւնը ձգուած էր մահմետական կրօնաւորներու, որոնք օրինական քաշքշուքներով (Հիլէի Շերիէ) կամ դեղծարարութիւններով քըրիստոնեան անիրաւ կը հանէին, եթէ երբեք անիկա դատարանի դիմելու քաջութիւնը ունենար եւ զայն օրէնքի անունով ալ կը կեղեքէին ու կը կողոպտէին։

Երկիրը կազմակերպուած եւ կարգաւորեալ վարչութեան մը ենթարկուած չէր, այլ կային շրջանակներ, որոնք թէեւ կը ճանչնային սուլթանին գերիշխանութիւնը, բայց կը պահէին տեղական մասնաւոր առանձնաշնորհներ եւ կը կառավարուէին բնիկ ժառանգական իշխողներու կողմէ, մէկ խօսքով տակաւին նուաճուած չէին եւ պզտիկ կղզիացեալ միութիւններ կը կազմէին, որոնք չարունակ գրաղում կը հայթայթէին սուլթանին կառավարութեան, որ տարիներու ընթացքին պատեհութիւն ներկայացած ատեն զանոնք նուաճելու եւ պետական ընդհանուր կազմին մէջ ներմուծելու կ՚աշխատէր։

Թուրքիա հետեւաբար իր արտաքին թշնամիներուն դէմ սահմանագըլուխի վրայ կռուած ատեն, ստիպուած էր պահել նաեւ ներքին ճակատ մը, ընդդէմ կարգ մը ինքնիշխան շրջաններու եւ անկարգ ու ըմբոստ ցեղախումբերու՝ Թիւրքմէն, քիւրտ, աֆշար եւայլք (տես Ալպոյաճեան, ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ԵՒ ՆԵՐՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 85)։

Մալաթիոյ շուրջը ապրող ըմբոստ տարրերու մէջ կարեւորը կը ներկայացնէին Քիւրտերը, որոնց գլխաւոր կայաններէն մէկն էր այս քաղաքը, որ մինչեւ մեր օրերը պահած էր իր քրտական կեդրոնի մը հանգամանքը։

Քիւրտերը, որ այս շրջանակին մէջ բաւական պատկառելի թիւ մը ունէին, այնպէս կը թուի թէ հեռուէն եկած հաստատուած եկուորներ էին մեծ մասամբ եւ ոչ թէ բնիկներ։ Անոնք հաւանօրէն սելճուկեան արշաւանքներու ատեն գաղթած էին դէպի արեւմուտք, անշուշտ հետեւելով անոնց յաղթական բանակներուն եւ բնակութիւն հաստատած էին, Մուշէն մինչեւ Փոքր Հայք եւ մինչեւ Սեբաստիա եւ Կեսարիոյ մօտերը տարածուած երկրամասին վրայ։

Իրենց խիտ բնակութիւն ունեցած վայրերն էին Քղի, Խոզգուլջան, Զարսանճագ, Տերսիմ եւ Տուժիք։

Կը կարծուի թէ սոնք իսլամացած Հայեր են, բայց աւելի հաւանական է կարծել թէ անոնք եկուորներ են որ եկած բնիկ ժողովուրդին՝ Հայոց խառնուած են եւ տիրապետող եղած են։ Իսկ բնիկ տարրը անոնց մէջ ձուլուած է, պահելով հին հաւատքին եւ սրբատեղիներուն յարգանքը (տես Լեւոն Լիւլէճեան, Հայ եւ Քուրտ յարաբերութիւնները․ Տերսիմի Քուրտերը, ՊԱՅՔԱՐ Օ-

րաթերթ, 14 Մարտ, 1923)։

Բայց միշտ գոյութիւն ունեցած է զուտ քիւրտ տարր մը, որուն կեդրոնը եղած է Տիարպեքիրը։

Հայաստան երբ Պարսկաստանի տիրապետութեան տակ էր ԺԶ. դարուն, Շահ Իսմայիլ (1499—1525) ամբողջ քրտական շրջաններուն կառավարութիւնը յանձնած էր իրեն շատ անձնուէր քեռայրին՝ Կուստադեսալու Մահմուտ պէկին (Յովհաննէս Յակոբեան, ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ, Ա., էջ 291)։

Գաղափար մը տալու համար թէ ո՛րքան ընդարձակ էր այդ քրտական շրջանը, ըսենք թէ Տիարպեքիրէն զատ, որ այդ շրջանին Գարա Ադտ կը կոչուէր, անոր մաս կը կազմէին Մարտին, Ուրֆա (Եդեսիա), Ճեզիրէ, Հասան Քէֆ, Սղերդ, Խարբերդ եւ այլն. (The Travels of a Marchantine Persia, տես. Յովհ. Յակոբեան, նոյն, էջ 292) քաղաքները, որոնք կեդրոններ էին մէյմէկ աւատապետութեան։ Օրինակի համար, Հասան Քէֆ, որ կեդրոնն էր աւատապետութեան մը, որ կը բաղկանար ԺԶ. դարուն առաջին կիսուն բազմաթիւ քիւրտ իշխանութիւններէ եւ կը հպատակէր պարսիկ Շահին (նոյն, Ա., էջ 294—5) եւ կը տիրէր մինչեւ Սղերդ եւ Սասուն տարածուող հողերուն։

Երբ Շահը ուզեց բարեկարգել այս երկիրները եւ աւագակներէն մաքրել, Քիւրտերը դիմադրեցին եւ օսմանեան սուլթանին կողմը անցան այն յոյսով որ օսմանեան երկիրին մէջ իրենց ուզածը կրնային ընել։

Սուլթան Սելիմ Եաւուզի (1512—1520) ինքնաբերաբար օգտակար հանդիսացաւ քիւրտ մը՝ Մոլլա Իտրիս, Բաղէշի քրտական իշխանութեան տունէն մէկը, որ մեծ հեղինակութիւն կը վայելէր քիւրտ ժողովուրդին մէջ։ Անիկա օսմանեան հովանաւորութեան տակ քիւրտ անկախ իշխանութիւն մը ստեղծելու հեռապատկերը ունենալով, յաջողեցաւ շատ մը քիւրտ ցեղապետներ համոզել որ օսմանեան բանակին միանան (ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 436—7)։

Սուլթան Սելիմ շատ սիրով ընդունեցաւ իրեն դիմողները եւ անոնց իշխանութիւնները ճանչցաւ։ Քիւրտերը կապուեցան օսմանեան կայսրութեան, որ կրցաւ անոնց միջոցաւ Հայաստանի տիրապետութիւնը ապահովել (տես ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, էջ 437)՝ Քիւրտերը սիրաշահելով։

Տիարպեքիր եղաւ կեդրոն թրքական էլայէթի մը, որ Եփրատէն մինչեւ Պարսկաստանի սահմանագլուխը կը տարածուէր։

Այս վիլայէթը բաժնուած էր 19—20 գաւառներու, որոնցմէ 11-ը միայն ուղղակի Բ. Դուռէն կախում ունէին եւ 8-ը աւատառուներու տրուած էին (Տոմաշէկ, ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ, 1896, էջ 301), որոնք կը պահէին իրենց առանձնաշնորհները։ Անոնց թիւը հետզհետէ շատցաւ եւ եղաւ ատեն որ այնքան իշխողներ եղան, որքան կային լեռնային ամրոցներ եւ գղեակներ (Լէօ, ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Գ., էջ 177—9)։ Անոնք կը կազմէին մի քանի

աւատապետութիւններ:

Մոլլա Իտրիսի ծրագիրը անկախութեան կորիզ մը ստեղծելու համար ձախողեցաւ, վասնզի Քիւրտերը հասունութիւն չունէին եւ իշխանութեան հետամուտ կ'ըլլային միայն կեղեքելու համար:

Հետեւաբար հասարակաց թշնամին ձգած, իրարու հետ կռուեցան շարունակ: Եւ ասոր համար ոչ միայն Մոլլա Իտրիսի ծրագրած անկախութիւնը չունեցան, այլեւ կորուսին իրենց առանձնաշնորհները եւ պզտիկ իշխանութիւնները:

Օսմանեան կայսրութեան վարիչները որչափ որ կրցան, երբ առիթը ներկայացաւ, կրճատեցին Քիւրտերու առանձնաշնորհները, ջնջեցին անոնց ձորապետական իշխանութիւնները եւ աշիրէթներու պետերուն վայելած իրաւունքները:

Մալաթիա եւ շրջակայքը եւս՝ իբր խիտ քիւրտ բնակչութեամբ վայրեր, ունէին քիւրտ իշխանութիւններ, ինչպէս Տերսիմի, Խարբերդի, Բալուի եւ Էկլի կամ Ակլի մէջ կ'իշխէին քիւրտ Ամիրաներ կամ անկախ իշխաններ, որոնք ժամանակի ընթացքին հետզհետէ տկարացուած, ջնջուած կամ ընկճուած են: Մալաթիա ալ թերեւս ունեցած է իր քիւրտ ամիրան կամ պէկը, թէեւ չէ յիշուած:

Անոնցմէ ամենէն ուշ նուաճուածներէն մին էր Տերսիմ, զոր 1878-ին Սուլթան Համիտ միացուց նորակազմ Մամուրէթ էլ Ազիզ կուսակալութեան, որուն մաս կը կազմէր նաեւ Մալաթիա:

Ըստ Տոմաշէկի՝ այս լեռնային անառիկ շրջանի մէջ Քիւրտերը Դաւզիկեան կամ «Աւազակ Քիւրտեր» են, որոնց ծագումը որոշ չէ:

Ասոնց կրօնքը Ալեւի (Գըզըլ պաշ) աղանդն էր, որ խառնուրդ մըն էր իսլամութեան եւ քրիստոնէութեան, աւելի մօտ ըլլալով երկրորդին:

Ասոնք մինչեւ մեր օրերը անկախ եւ աննուաճ էին եւ աւազակութեամբ կ'ապրէին: Անոնց վարչութիւնը աշիրեթապետական էր եւ պզտիկ միութիւններու բաժնուած էին:

Քիւրտերը թէեւ շատ բան տուժած էին իրենց ազատութիւններէն, սակայն անժխտելի իրողութիւն մըն էր որ անոնք կը ներկայացնէին չփացած եւ անկարգ տարր մը, որ իր զէնքերը պահած էր իբր մարտական ոյժ եւ ասոր համար օսմանեան պետութեան կողմէ միշտ հաշուի առնուած էր: Այս կերպով որոշ չափով մը անխոցելի կը մնար:

Ասկէ քաջալերուած Քիւրտեր շարունակ կը կեղեքէին երկրագործ եւ խաղաղ ժողովուրդը, երբ մանաւանդ Բ. Դուռը իր սադայելական ծրագիրներուն գործիք կ'ընէր զանոնք, ինչպէս Սուլթան Համիտ ըրաւ եւ քիւրտ աշիրէթներէն իր անունով կազմեց Համիտիէ Քիւրտ զօրագունդերը, իբր թէ զանոնք կանոնաւոր զօրագունդերու վերածելու համար, մինչ բուն նպատակըն էր անոնց հարստահարութիւնները, կողոպուտները եւ կեղեքումները քաջալերել կամ նուիրագործել:

*Մալաթիոյ շրջանակին մէջ, ուր Հայերը թիւ մը կը կազմէին, ինչպէս նաեւ Քիւրտերը,* Հեքմէթը հէօքիւմէթով *իրարու դէմ հանուած այս երկու տարրերէն տուժողը անզէն Հայերն էին, որոնք իրր* րայա, *ոչխարներու պէս կը խուզուէին բռնակալ Քիւրտերէն:*

*Հետեւաբար Մալաթիոյ մէջ, ինչպէս այլուր Հայերը եւ Ասորիները չարաչար կը կեղեքուէին, վասնզի կը կողոպտուէին թէ՛ քիւրտ պէկերէն եւ թէ պետական պաշտօնատարներէն:*

*Կեդրոնական կառավարութեան հեղինակութիւնը ոչինչ էր պետութեան կարգ մը մասերուն մէջ:*

*Մալաթիոյ շուրջը, ինչպէս այլուր, կային թիւրքմէն ձորապետներ* (տէրէպէյիներ) *եւ քիւրտ անկախ իշխանութիւններ, ինչպէս Տերսիմի լեռնային գաւառը, որ գրեթէ բոլորովին ազատ էր:*

*Այս կացութիւնը շարունակուած է մինչեւ մեր օրերը, մինչեւ* 1938, *ուր վերջին անգամ Թուրքերը ընկճեցին Տերսիմը, քրտական այս անկախ շրջանը*[1]:

*Գերման նշանաւոր զօրավար Մոլթքէ, որ իբրեւ մարզիչ օսմանեան բանակին մէջ ծառայած է* 1830*–ական թուականներուն, երբ եգիպտական բանակը Հալէպի ճամբով մինչեւ Սամոսատ եւ Հիւսնի Մանսուրի բերդը առաջացած եւ նոյնիսկ Մալաթիան գրաւած էր, Կեսարիա–Գոնիա ճամբով մինչեւ Պրուսա առաջացած, շատ իրաւմբ դիտել տուած է թէ օսմանեան պետութիւնը իր սահմանները ընդարձակելու աշխատելու տեղ, աւելի լաւ կ՚ընէր եթէ իր սահմաններուն մէջ գտնուող աննուաճ եւ ըմբոստ շրջանները գրաւէր եւ անոնց տիրակալէր: Արդարեւ, Թուրքիոյ սահմաններուն մէջ բազմաթիւ էին վայրեր, որոնք կատարելապէս նուաճուած չէին (տես* ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ, *էջ* 85):

*Երկրին մէջ տիրող անհանդուրժելի կացութեան հետեւանքով հպատակ քրիստոնեայ եւ մահմետական ազգեր մղուեցան ապստամբութեան եւ օսմանեան պետութենէն բաժնուիլ եւ անկախ ըլլալ ուզեցին:*

*Եւրոպական մեծ պետութիւններն ալ, իրենց քաղաքական հաշիւներով օսմանեան պետութեան գործերուն խառնուիլ սկսան եւ անոնք, որ այս պետութեան գոյութիւնը հաւասարակշռութեան տարր մը կը նկատէին, անոր գոյութիւնը տեւականացնելու աշխատեցան, ուստի ջանացին Բ. Դուռը եւ սուլթանը համոզել որ բարեկարգ վարչութեամբ մը իր բոլոր հպատակներուն համար տանելի միճակ մը ստեղծէ: Ասկէ առաջ եկաւ բարենորոգմանց խնդիր մը, որով Թուրք պաշտօնատարներէն շատ քիչերը լրջօրէն զբաղած եւ*

---

*(1) Տերսիմի նուիրուած թրքերէն հատորի մը մէջ անանուն բայց Մ. Նուրի Տերսիմի* (Dr. Vit. M. Nuri Dercimi, Kurdistan Tarihinde Dersim, *Հալէպ.* 1952) *ունի բաւական մանրամասնութիւններ Մալաթիոյ Քիւրտերու մասին (տես նոյն, էջ* 59). *ըստ Տոքթ. Տերսիմիի՝ Մալաթիոյ կուսակալութեան Քիւրտերը ծագումով Տերսիմէն են եւ Ալեւի կրօնքին հետեւող:*

անհրաժեշտ նկատած են, իսկ անոնցմէ շատերը կեղծիք ի գործ դրած են, եւ պետութեան բաղկացուցիչ տարրերը, ինչպէս նաեւ եւրոպական պետութիւնները խաբելով, խաբխբելով ուզած են յաւերժացնել Թուրք խայտառակ վարչութիւնը։

Սուլթաններուն մէջ Սուլթան Մահմուտ Բ. Ատլի (1808—1839) միակ կարկառուն դէմքն է, որ ըմբռնած է թէ օսմանեան պետութիւնը կը կարօտէր վերանորոգութեան, եւ զայն իրագործելու համար աշխատած է եռանդով, գրեթէ միամիտակը։ Իր իշխանութիւնը, ինչպէս շատ գեղեցիկ կերպով սահմանած է Jonquière, (Ա. 422), եղած է մաքառումը միակ անձի մը ամբողջ ազգի մը դէմ, առանց վայրկեան մը իսկ տկարանալու, եւ նոյնիսկ առանց վարանելու ստանալու «Կեաւուր Սուլթան» տիտղոսը, զոր իրեն տուին իր խուլամ հպատակները՝ երկիրը եւրոպական ձեւով վերակազմել ուզելուն համար։

Այս սուլթանին առած բարենորոգչական քայլերուն մէջ ամենէն գլխաւորը եւ կարեւորը Ենիչէրիներու բնաջնջումն էր (16 Յունիս 1820), որ արմատական քայլ մըն էր փրկելու օսմանեան պետութիւնը իր վրայ ծանրացող զարհուրանքէ մը, որ իր ծագումէն մինչեւ այս վախճանը՝ պետութեան համար պատուհաս մը եղաւ, հակառակ անոր որ կը ներկայացնէր մարտական ոյժ մը, բայց չունէր զինուորական կարգապահութիւն եւ անիշխանութեան հակամէտ եւ պետական գործերու խառնուող ըմբոստ տարր մըն էր, ինչպէս Համի Պրետորեան գունդերը։ Այնպէս որ Սուլթան Մահմուտ Բ.ի ջանքերը պետութիւնը վերակազմելու համար գրեթէ անզօր մնացին։

Ադրիանապոլսոյ դաշինքով՝ Յունաստանի անկախութեան ճանաչումէն ետք 7 Հոկտեմբեր 1829-ի Եգիպտոսի կուսակալ Մեհեմմէտ Ալի փաշայի ըմբոստութիւնը եւ իր բանակներուն իր որդւոյն՝ Իպրահիմ փաշայի հրամանատարութեամբ Սուրիան նուաճելը եւ նոյնիսկ Տաւրոսը անցնելով Մալաթիան, Կեսարիան, Գոնիան եւ Քէօթահիան գրաւելը եւ մինչեւ Պրուսա առաջանալը (1831—1833), եւ եւրոպական միջամտութեամբ գոհացում ստանալէ ետք քաշուիլը եւ դարձեալ նոր պահանջներ ներկայացնելը եւ նոր յաղթութիւն մը շահիլը Նիզիպի մէջ 29 Յունիս 1839-ին, աղէտաբերութիւններ էին պետութեան վարիչներուն, որոնք Սուլթան Մահմուտի մահէն (1 Յուլիս 1839) ետք կոչուած էին այս ընդարձակ կայսրութիւնը կառավարելու։

Անոնցմէ միայն ոմանք ըմբռնեցան թէ պէտք էր երկիրին վարչութիւնը բարենորոգել եւ աշխատեցան այս ուղղութեամբ՝ հակառակ իրենց դէմ ցցուած դժուարութիւններու, որոնց քիչ անգամ կրցան յաղթել եւ հետեւաբար խնկական բարենորոգութիւններ ի գործ դնել չյաջողեցան (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 610—631)։

Եւ հարկադրանքի տակ կամ վտանգ մը անցնելու համար հռչակուած երկու Սահմանադրութիւնները (1876 եւ 1908) խաբուսիկ նկարագիր մը ունեցան եւ երկիրը վերակազմուեցաւ եւ իր հին վիճակովը ապրեցաւ, մինչեւ

1919—1920, *Մուսթաֆա Քեմալի մեծ յեղաշրջումը, որ իր արտաքին պատեանով իրապէս մեծ քայլ մըն էր, որ սակայն անկարող էր Թուրքին հոգին բարձրացնելու եւ քաղաքակրթելու ազգը որ կը մնար նոյնը, ինչպէս ցոյց տուաւ* 6 *Սեպտեմբեր* 1955*–ին օրը,* 35 *տարի ետք Թուրք Հանրապետութեան հռչակումէն։*

*Թուրքը մէկ պատմութիւն ունի ամէն ժամանակներու եւ ամէն պարագաներու համար, եւ Հայերը զայն շատ լաւ կը ճանչնան իրենց վեց դարերու դրացնութեան հետեւանօք։*

*Այդ պատմութիւնը ամէն Հայու ծանօթ է եւ այս տողերը գրողը զայն ներկայացնելու առիթ ունեցած ըլլալով իր գործերուն մէջ*[1] *քանի մը անգամներ, հոս վերստին կրկնելու պէտք չի տեսներ։*

---

(1) *Փափաքողներ կրնան կարդալ* 1. Պատմութիւն Հայ Գաղթականութեան, *Ա. եւ Բ. հատոր,* 2. Պատմական Հայաստանի արտաքին եւ ներքին սահմանները, 3. Պատմութիւն Հայ կեսարիոյ, 4. Պատմութիւն Եւդոկիոյ Հայոց, *եւայլն եւայլն։*

